Թիֆլիսի Հայոց Հրատարակչական Ընկերութիւն

№ 89



# ՀՆՈՒԹԻՒՆՔ ԱԿՆԱՑ



Ե. Կ. ՃԱՆԻԿԵԱՆ

ԹԻՖԼԻՍ
Տպարան Մ. Դ. Ռօտինեանցի
Типографія М. Д. Ротиніанца, Гол. просп., д. № 41.
1895

# ԱՌ ԾՆՈՂՍ ԻՄ

1847—48-ին ամառն երբ 8 տարեկան, յԱկն, Ներսիսեան դպրոցը կը յաճախէի, առաւօտ մը դպրոց գնացած՝ կրտսեր եղբօրս գալուն կըսպասէի անհամբեր։ Վերջապէս եկաւ և բացատրեց յապաղման պատճառը. մայրիկն հիւանդ էր։ Փութացինք ի տուն, և մահամերձին մահճին քով սկսայ արտասուել։ Մայրս, որ հնտախտի (խօլերա) մահաշունչ համաճարակէն վարակեալ կը տառապէր, չնայելով իւր կրած ցաւոց, «Մի լար, որդեակս, մի լար» կըսէր, կը մխիթարէր ու կը յուսադրէր զիս։ Դուրս ելանք սենեկէն և երեկոյ չեղած՝ նա իւր վերջին շունչը կը փչէր։ Հազիւ երկու օր անցած, կրտսեր եղբայրս՝ այն ոսկեհեր մանուկն ևս նոյն անողոքելի հիւանդութեան զոհ կերթար։ Հայրս որ՝ պանդուխտութենէ դեռ նոր վերադարձած՝ իւր կարօտացեալ ընտանեաց մէջ երջանիկ օրեր պիտի վայելէր, սոյն կրկին կորուստը կ՚ողբայր անմխիթար։ Այն չարաշուք, վշտալի օրերէն իվեր շուրջ կէս դար է անցեր, և յաջորդաբար լացած եմ երէց եղբայրս և քոյրս և հայրս (71-ին) և երկար տարիներ յետոյ մօրուս, բայց երբէք մտքէս ելած չէ այն սև օրն երբ մայրիկն տարինք յանձնեցինք սև հողին։

Նա ալ, մայրիկ, ես ալ վաղ կամ անագան անշուշտ պիտի հետևիմ ձեզի. միայն թէ կը փափաքիմ որ իմ սրտին պէս իմ գերեզման ևս մօտ ըլլայ ձեր ոսկերց և գերեզմանաց։ Այդ հանգստարանէն՝ որոց մօտն են դպրոց, եկեղեցի և առաջնորդարան, պիտի յորդորեմ իմ սիրելի ազգայինքն որ կըրթական գործին մէջ մտքի ու սրտի կրթութիւնն համընթաց լինելու փոյթ տանին. պիտի յիշեցունեմ թէ պէտք է եկեղեցին ոչ միայն աղօթատեղի, այլ և բարոյականի ուսումնա-

բան լինի. պիտի խնդրեմ ժողովականներէն ու ազգային ամէն կարգի պաշտօնեայներէն որ հայրենասիրաբար ուղղութեամբ ու խոհականութեամբ վարեն ու արդիւնաւորեն ազգային գործերը՝ որպէս զի լաւ ներկայ և լաւագոյն ապագայ մ'ու-նենանք։ Այն բարձունքէն՝ իմ հանգստարանէն աչկունքս յառելով՝ մեր դրախտավայր հայրենիքըն ուղղած՝ պիտի դիտեմ Եփրատն հեզիկ ու Եփրատ-Արածանին, նոցա ակունքն ու նոցա անցած բարեբեր դաշտերը. աւելի հեռուն՝ պիտի դիտեմ Բզնունեաց ծովն ու Վասպուրականը՝ մեր նախնեաց ծննդավայր երկիրները։

Իսկ այժմ, սիրեցեալ ծնողք իմ, քանի որ կենդանի եմ, ընդ միշտ պիտի յիշեմ զձեզ. և առ այս իբր առհաւատչեայ, սոյն մի քանի տողեր կը նուիրեմ ձեր անմոռաց յիշատակին։

Յովսէփ Կ. Ճանիկեան
Տփխիս, 10 Հոկտ. 1894 ամի

Նուէր իմ սիրելի բարեկամիս
պր[ն] [illegible]

Յ. Կ. Ճանիկեան

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Անտիական հասակէս ի վեր սիրող գոլով ազգային պատմութեան և ամեն իրաց որ ազգային են, թուականէս իբր 25 տարի յառաջ 150 տարուան ժամանակագրութիւն մ'օրինակած (տես գլ. գ.) և բաւական անտունիններ, բառեր ևայլն գրած էի։ 84 թ. փետր. ի սկիզբներն յԱկն տեսութեան գնացի մեր Առաջնորդին՝ գեր. Սրուանձտեանի. երբ այսպիսի գրութեանց վրայ խօսք բացուելով յիշեցի գրածներս, հոգելոյս սրբազանն յորդորեց և քաջալերեց զիս շարունակել։ Որովհետև Ապրիլին ի Կ. Պոլիս պիտի մեկնէր և կուզէր որ գրքուկս միասին զրկեմ ի տպագրութիւն, սկսայ տիւ և գիշեր աշխատիլ։ Ինքնին կը խորհէի, նիւթեր կ'ընտրէի և առ այս ի քաղաքիս և ի մերձակայ գիւղօրայս պէտք եղած տեղերն ու անձանց կը դիմէի։ Ժողովուելիք նիւթերն կը բազմանային ու կը բազմապատկէին։ Ապրիլն եկաւ, բայց գործս անպատրաստ էր։ Սրուանձտեանի մեկնելէն յետոյ շարունակեցի, զանազան նիւթեր յաւելցան և հազիւ թէ 87-ին վերջացաւ։ Իսկ այնուհետև լսածս, առած, ասացուած, բառ ևայլն, զատ տետրակի մէջ նշանակեցի։

Ժողովածոյիս աղբիւրքն են՝ պատմականին համար *), ինչպէս որ զոմանս իրենց տեղերը յիշած եմ, ծերունիք. յիշատակարանաց համար՝ եկեղեցեաց պահարաններն գտնուած մատեանք և Քրդաց ու բոշայից համար՝ տեղեկութիւն ունեցողք, իսկ մնացելոցն (առած, ասացուած, բառ, խաղ, սովորութիւն, երգ ևայլն) բազմաթիւ անձինք։ Բայց այս աղբիւրք տակաւ կը նուազին ու կը ցամաքին։ Ուստի ամեն կողմ գտնուող այն

*) Բացի Չամչ. Հայոց պատմութենէն, Ինճիճեան աշխարհագրութենէն, Առաքել պատմիչէն, ևայլն, յորոց ինչ ինչ հատուածներ ի մէջ բերած եմ։

ամեն ազգային որք դիւրութիւն ունին, պէտք է փութան ժողովեն հին յիշատակարանները, սովորութիւնները, առածները, երգերը և այն ամեն իրերը որք կրնան նոր լոյս մը սփռել մեր ազգային պատմութեան և ընտանեկան կենաց վրայ։

Շարունակեմք մեր գրքի պատմութիւնն։ Ինչպէս ըսի, 87-ին ժողովածոյս պատրաստ էր, բայց տպագրելու համար պարագայք աննպաստ էին։ Սպասեցի, տարիներ անցան և 92—ի գարունն Ակնէն ի ս. Էջմիածին և անտի ի Կ. Պոլիս, և 93-ի աշունն Կ. Պոլսէն դարձեալ ի ս. Էջմիածին ուղևորեցայ։ Վերջապէս, 94-ի գարունն եկի այսր և գիրքս Հրատարակչական պատուարժան ընկերութեան յանձնեցի ի քննութիւն։ Պատ. ընկերութիւնն իւր նպատակին յարմար գտաւ և ահա ի լոյս կ՚ընծայէ։

Վերջացնելէ առաջ սոյն գրուած, չեմ մոռնար շնորհակալութիւն մատուցանել յԱկն գտնուող այն ամեն անձանց որք խաղեր, երգեր խօսելով և զանազան նիւթոց վրայ տեղեկութիւններ տալով օժանդակեցին ինձ։

Տփխիս, 10 Հոկտ. 94 Յ. Կ. Ճ.

## ԳԼ. Ա.

*Վասպուրականի Հայոց գաղթականութիւնն եւ հիմնարկութիւն Ակնայ:*

Վասպուրականի Սենեքերիմ Արծրունի թագաւորն ի սկզբան անդ ԺԱ-րդ դարուն Թաթարաց յարձակումը տեսնելով և մօտալուտ վտանգը գուշակելով՝ իւրայնոց հետ խորհրդակցելէ յետոյ, Վասպուրականը (Վանայ նահանգը) Յունաց Վասիլ կայսեր կը թողու, և փոխանակ նորա ի փոքր Հայս Սեբաստիոյ նահանգն կըստանայ, ուր կը գաղթէ իւր որդւովք, զօրօք և այլն, 1021-ին։ Իւր հետ կը գաղթեն նաև գրեթէ մէկ-երրորդ մասն աշխարհին՝ իբր չորս հարիւր հազար Հայեր։ Սենեքերիմայ իշխաններէն ոմանք Սեբաստիայէն ելնելով կուգան և կը շինեն Եփրատայ եզերքը Ակն և Արաբկեր քաղաքները։ Մերձ ի Վան, Նարեկայ վանուց կրօնաւորք ևս սրբոյն Գրիգորի Նարեկացւոյ նշխարն իրենց հետ առած ըլլալով անոնք ևս կուգան այս կողմեր և սրբոյն նշխարքն կ'ամփոփեն յԱրակայ որ Ակնայ և Տիւրիկէի մէջ տեղն է *)։ (Տես պատմ. Ջամչ. հատոր 2-րդ. դիրք չորրորդ գլ. ԼԳ. նաև 1847-ին ի Կ. Պօլիս տպագրեալ Նարեկին վերջն «Յիշատակ վարուց»)։

Գաղթականութեան զանազան ապացոյցներուն վրայ գրելէ առաջ, աստ կարևոր կը համարիմ հետևեալ երկու խնդրոց վրայ գրել թէ՝ 1. Նախ քան զգաղթականութիւն

---

*) Տիւրիկէն արդէն կայ եղեր, զի կը գրէ պատմութիւնը. «Եւ էր այր ոմն իշխան այլազգեաց Կիւռ շահր կամ ըստ յունական բարբառոյ քրիսօխիրոս անուն, տէր քաղաքին Տիւրիկեայ որ և ասի Տիպրիկ, մօտ Ակնայ, և այլն.» Ջամչ. հատ. 2. երես 830. Թ. 643.

յԱկն բնակիչ կայի՞ն. և եթէ այո, ի՞նչ ազգի և կրօնի կը պատկանէին. Զ-րդ. Ակնեցիք Անիէն գաղթած լինելու աւանդութիւնն ի՞նչ ստուգութիւն ունի: *) Նախկին բնակչաց մասին որոշ տեղեկութիւնք կը պակսին մեզ. սակայն, որովհետև Զամչ. պատմութիւնը կ'ըսէ թէ «Շինեցին և ոմանք յիշխանաց նորա քանի մի քաղաքս ընդ որս և զՔաղաք Ակնայ առ Եփրատաւ և զԱրաբկեր, և զայլս», ըսել է որ գաղթականութենէն առաջ յԱկն բնակիչ չկայ եղեր, կամ եթէ կեցած է՝ նուազ թուով: Գալով սոյն ենթադրեալ փոքրաթիւ ժողովրդեան ազգութեան և կրօնին, ոմանք կարծեր են թէ նոքա ոչ միայն յունադաւան այլ և Յոյն էին ազգաւ և յետոյ իրենց լեզուն փոխած: Բայց երբ և ի՞նչ պարագայից մէջ փոխած են. թէ յունական կայսրութեան ժամանակներն և թէ յետոյ ի՞նչ պատճառ կար լեզունին հայերէնի փոխելու, և եթէ այդպիսի փոփոխութիւն մը տեղի ունենար, գոնէ չէ՞ր թողուր իւր հետքը, ինչպէս որ նմանօրինակ պարագայից մէջ կը տեսնուի: Շրջակայ լեռներու, ձորերու, քարայրներու և այլ տեղեաց անուանց մէջ կա՛յ յունարէն բառ մի. ո՛չ ապաքէն բոլորն ալ հայկական են: Աստ կարևոր կը համարիմ Հայր Ղուկաս Ինճիճեանի (1806-ին ի Վենետիկ տպագրեալ) աշխարհագրութեան Ա. հատորի 303 և 304 երեսներէն Ակնայ Հայ-հռոմոց վերաբերեալ գրուածն ի մէջ բերել: «Յառաջագոյն անխտիր առնուին և տային Հայոց զդստերս ի կնութիւն, այլ այժմ յաւուրս սուլթան Համիտի նոր քարոզիչք Յունաց առաքեալք առ նոսա ընդ նզովիւք պատուիրեցին չառնուլ և չտալ զդստերս իւրեանց ի կնութիւն Հայոց: Գտանին ի Հայ-հռոմոցն ի Կ. Պօլիս քաղաքի տունք երևելիք եկեալք ի գաւառէն Ակնայ: Ազգ սոցա յայտնի ինձ երևի սերեալ յազգէս Հայոց, և կրօնիւ դար-

---

*) Ակնայ բողոքական ազգայնոց երէցն պատ. Մարտիրոս Իգնատիոսեան 1880-ին իբր 10 թղթէ բաղկացեալ տետրակ մը գրած էր վիճեալ կրկին խնդրոց և ինչ ինչ աւանդութեանց վերաբերեալ:

ձեւալ ապա առ Յոյնս, և ոչ սերեալ ի Յունաց. և զլեզուն փոխեալ Հայկականն. այսպէս դնէ և Մխիթար Ապարանցին ի գիրս իւր յամի տեառն 1410, զոր ունիմք առ մեզ և կոչէ զնոսա Ծ ա թ հայեր։ «Եւ ոմանք կոչեն Ծաթ հայեր, որ լեզուով և գրով և ազգաւ են Հայք, բայց դաւանութեամբ և ամենայն օրինօք են Յոյնք, և ամենայն կերպիւ հնազանդ նոցա»։ Վասն այնորիկ կոչէ զնոսա Ծայթս *), զի յայնմ ժամանակի դնէ զնոսա միաբանս ընդ Ծայթ Յունաց ոմանց՝ որք զհետ երթային աղանդոյ Անդրէասայ ուրումն եպիսկոպոսի Կեսարու։ Հաստատեն զայս նախ առաջին պատմագիրք մեր յառաջ քան զՄխիթար Ապարանցին, որք թէ ի մէջն անդ ԺԱ. դարուն, ի ժամանակս Կոստանդին կայսեր Տուկիծ կամ Տուկաս կոչեցելոյ, նոյնպէս յետ անդ ԺԲ. դարու ի ժամանակս Բ. Սահակայ կայսեր, սաստիկ իմն բռնադատութիւն եղև Հայոց բնակելոց ի կողմանս Սեբաստիոյ կամ Սևաստոյ առ ի դարձուցանելոյ զՀայս ոչ միայն հաւատով, այլ և ծիսիւ ի կրօնս Յունաց և յայնմանէ դարձան ոմանք ի նոցանէ ի ծէսս Յունաց։ (Սոյն բռնադատութիւն ԺԱ. դարէն յառաջ ևս պատահած է. տես Չամչ. հատ. 2, երես 332, թ. 630, և անդ երես 830 թ. 943)։ Վերոյգրեալներէն ինչպէս կ'երևի, Վասպուրականի գաղթականութեններէն թէ առաջ և թէ յետոյ յունական հալածումներ տեղի ունեցած են, և նորա հետևանօք Հայերէն ոմանք յունադաւան եղած են։ Ասոնցմէ ոմանք թուի թէ յետոյ մահմետական եղած են, ոմանք Կեյվէի կողմերը գաղթած են և մնացած է չորս գիւղ (որոց վրայ պիտի գրեմ ի գլ. Է.) և Ակնէն իբր 2 օր հեռու Հոզուս ու Մամաս գիւղերը։ Կարելի է հարցուիլ թէ ինչ են այն սալորկապ կամ սալակապ ձևով գերեզմանք որք Ակնայ և Կամաբակայի մէջ մի քանի հատ գտնուած են։ Հաւանական է թէ կամ խնամութիւն եղած ժամանակներն Հայ-հոռոմներէ առ-

---

*) Ծայդ, ծայթ ծաթ, պակասաւոր, կիսատ, Նախատական բառ ռամկաց՝ իբր թերի ի հաւատս։ (Առձ. բառ.)

նուած կանայք այնպէս փափաքած լինին, և կամ՝ որովհետև հայ քահանայից գերեզմանք ևս սալորկապի ձևով կըլլան, նոյն գտնուած գերեզմանք հայ քահանայից եղած լինին։ Գանք երկրորդ խնդրոյն՝ «Անիի գաղթականութեան»։

Ժողովուրդը կը կարծէ թէ Անիէն մաս մի գաղթականք եկած և Եփրատն անցնելով «Անմահութիւն» կոչուած տեղը ելած են, որ ցարդ կայ իբր ուխտատեղի, և գետեզրին, ինչպէս և Մեծ ձորին մօտ է. *) Թէ՝ Նորեկք ձորին՝ ուղղութեամբ վեր ելնելով երբ գտած են ջրոյն ակն, տեղւոյն անունը կոչած են Ակն։ Քանի մը տարիէ ի վեր ոմանք կարծիք կը յայտնեն թէ Ակնայ քաղաքին Հայք՝ Անիի և մօտակայ Ապուչեխի և Կամարկապի Հայք՝ Վասպուրականի գաղթական են։ **) Անիի գաղթականութեան մասին յիշեալ աւանդութենէն իզատ հետևեալքն ևս կան։ Հանգուցեալ Փափազեան «Դասագիրք ազգային պատմութեան» գրքին 201 երեսին մէջ յիշելէ յետոյ Կ. Պոլսոյ ամիրայները, կ'ըսէ. «Այս ամիրայներուն գրեթէ ամենքն ալ Ակնցի կը գտնենք, ուր Անի մայրաքաղաքին կործանման ժամանակը եօթանասուն և երկուքի չափ երևելի հայ նախարարներ և իշխաններ իրենց ամեն պոյքով գնացին տեղաւորեցան և հետզհետէ սկսան Պոլիս գաղթել և հոն յառաջանալ»։ Փափազեանի սոյն գրուածն կարևոր է, բայց չի յիշեր թէ ուսկէ՞ց առած է այս տեղեկութիւնն։ Բ. կան յԱկն Մելիքենք 'ւ Գալէնտարենք *), բայց

---

*) Մեծ ձորին Եփրատ խառնուած տեղին ձախակողմն է։

**) Բայց այս կարծիքն հաստատող ապացոյց մի չներկայացնուիր. զի Ակնայ մօտակայ գիւղացիք լեզուի, սովորութեանց և հանդերձից մասին ունեցած տարբերութեան նկատմամբ Թորոսեան էֆ. և ընկերք գրած էին թէ «շատ հաւանական է, որ սոքա Վասպուրականի այլ և այլ քաղաքներէն եկած լինելով իրենց նախնական սովորութիւններն սիրած լինին պահել»։

*) Նաև Գորենք (թերևս Գորիենք) Ամիրենք և ի հնումն՝ Ջոհրապենք։

գիտէ Այրարատէն, Սիւնիքէն կամ ո՛ր կողմերէ գաղթած
։ Ինչպէս որ վերոյիշեալ Իգնատիոսեանի տետրակին մէջ
ամարկապէն Թորոսեան և ընկերք դիտել տուած էին, Վաս-
ւրականի գաղթականութիւնը 300 տարուայ չափ առաջ-
ւթիւն մ՚ունի քան զԱնեցւոյն, և Զամչեան Անեցւոց գաղ-
ած տեղերը թուած ժամանակ Ակնայ յիշատակութիւնը
ներ, և ոչ Առաքել պատմիչ։

Ահա այսպէս, մինչդեռ Անեցւոց ոմանց յԱկն գաղթելու-
ոյն ապացոյցք կը պակսին, Վասպուրականի գաղթականու-
եան մասին՝ բացի վերոյ գրկալ Զամչեանի վկայութեննէն՝
ն և հետեւեալքն։ Հայր Ինճիճեան կը գրէ. «Յակոբ Նա-
ան որ էր Ջիմարացի, ուստի և տեղեակ աւանդութեան իւ-
յ գաւառին *) Ակնայ, ի հաստատութիւն այսր բերէ երիս
անս ի գանձարանի ծանօթ. ի թղթի 309։ Առաջինն է
Ակնցիք զփակեղն նման Վանեցւոց դնէին առէ ի գլուխս
րեանց։ Բ. զի մենաստանն Ակնայ՝ կոչեցեալ ս. Երեւան, շի-
ցաւ փոխանակ Վարագայ ս. Նշանին Վանայ, թէպէտ զայս
ւրակուսանօք դնէ, և զայլ կործիս եւս յառաջ բերէ վասն
յն մենաստանին։ Գ. զի ի սահմանս Ակնայ է տեղի Արակայ,
նուն Նարեկայ Վանիցն որ ի Վան։ Դ. յաւելցուք և մեք
ի գիւղօրէս Ակնայ է գիւղ ինչ կոչեցեալ «Վան գեղ»։
լոյ գրեալներէն ի զատ կան և հետեւեալքն։ Մ. Կ. Մի-
խորեանի, Մասիսի 3522 թւոյն մէջ Վասպուրականի վա-
ւէից, գիւղօրէից եւայլն նկարագրութեան կարգին Իլի գիւղն
40 խորանով Իլու վանքն (զոր Գագիկ Արծրունին կառու-
ծ է) կը գրէ։ ՅԱկն եւս կան «Իլլուենք»։ Ըստ Միրա-
եանի «ոստանայ հովտին կեդրոնն է (Զագար) Զարահան
Նշան կոչուած վանքն եւայլն»։ Ակնայ Ապուշէխի եկեղեց-
ն անունն «ս. Նշան» է և իբր 10 վայրկեան հեռի է Զարագ
ղն որ հաւանօրէն «Զագար»էն աղաւաղեալ է։ Հաւանօրէն,
մին հատոր Թ. 157 Խոշապ գաւառի Հնստան գիւղէն

*) Ջիմարայ գիւղն այժմ Տիւրիկէի կը վերաբերի։

դաղթած են «Հնտուստանենք» որ յԱկն, և Ակնայ «Աւերակ»
«Այրանք» գիւղերու նախկին բնակիչք ի նոյն հատոր Թ. 14
և 162 Ավերակ և Այրանք գիւղերէն գաղթած են։ Թողու
«Աղին»ը «Փուլ»ը ևայլն։

Վերոգրեալներէն ինչպէս կ'երևի, Ակնայ հիմնարկութի
և նախկին բնակիչք Վասպուրականի գաղթականութեան
վերաբերին։ Կրնայ հարցուիլ թէ արդեօք մեր նախնիք ի
չու այս քարոտ և անբերրի երկիրն ընտրեցին իւրեանց բնա
կավայր. սորա բացատրութիւնը հաւանօրէն այս է թէ՝ Ակ
իւր առատ ջրերովն ու առողջարար օդովն բնակութեան յար
մար վայր մ'է. շրջակայ արօտավայրերն և մանաւանդ սար
չիչեկի (դեղին ծաղկանց) լեռներն մեծ դիւրութիւններ կ
ընծայէին ոչխարաց հօտեր ունենալու։ Ասոնցմէ ի զատ ա
տաքին յարձակումներէն պատսպարուիլ պէտք էր, և առ. ա
ամենալաւ երկիրն էր Ակն։

## ԳԼ. Բ.

*Գաղթականութենէն յետոյ մինչ Օսմանեանց տիրապ
տութիւնն: Հին փոփոխութիւնք: Կրօնափոխութիւնք: Գա
թականութիւնք: Ավան, Տէյի, Տէրէ-Պէյի. նախկին կառ
վարութիւնն (Մ'խաէլլիմ, Վօյվօտայ, սէրտար, Նազիր
Ախի):*

Ինչպէս գրուեցաւ Ա. գլխոյն մէջ, մեր նախնիք Վա
սպուրականէն ի Սեբաստիա գաղթեցին և անտի այս երկ
եկին հաստատուեցան։ Կը կարծուի թէ սոյն գաղթականու
մէջ գտնուած են Բենիկ, Մուշեղ և Աշոտ անուամբ իշխան
ներ, որք գիւղեր շինած հաստատուած են, որք իրենց ան
ուամբ կոչուած են Բենկայ կամ Բենկան, Մուշեղկայ կա
Մուշեղկան և Աշոտկայ։ (Սոյն վերջինն Արաբկերի կը վերաբ
րի և Թուրքաբնակ է)։

Գաղթականութենէն մինչ օսմանեանց տիրապետութիւն

500 տարիէն աւելի ժամանակամիջոց մը կայ, որոյ մասին ի պատմութենէ կը քաղեմք հետեւեալքն։ Ըստ Չամչեանի, 1021-ին Սենեքերիմ Արծրունի Թագաւորն Վանէն ի Սեբաստիա փոխադրուած է, և յետ մահուանն (1026-ին) որդիքն Դաւիթ (Նաև Ատոմ, Աբուսահլ, Կոստանդին) 50-60 տարուայ չափ տիրած են Սեբաստիոյ։ Յետոյ կ'երևի թէ դարձեալ Յոյնք տիրած են։ Չամչ. հատ. 3, երես՝ 49. Թ. 1136, կ'գրէ Սկիւթացւոց արշաւանքն և «Ալիբաս» Ամիրայէ մը բազմաց նահատակութիւնքն, երես 173, Թ. 1202, Իկոնիոյ ամիրային Սեբաստիոյ և Կարնոյ տիրելն և Տոփաց ամիրային նուաճելով մինչև Մելիտինէ երթալն, երես 217, Թ. 1243, Իկոնիոյ ամիրային ի Թաթարաց պարտութիւնն, և Սեբաստիոյ՝ ինչպէս և Տիւրիկէի Թաթարաց անձնատուր լինելն, երես 481, Թ. 1387, Լէնկթէմուրի ժամանակներն Պուրհանատին ոմն Սեբաստիոյ Ամիրայն սպանելն և նորա տեղ նստելն։ Ըստ պատմութեան Մ. Աշճեանի, 1389-ին Սեբաստիա և 1515-ին Տիարպէքիր, Քրդաստան եւայլն, միացած են Օսմ. երկրաց հետ։ Աւելի յետոյ, ըստ աւանդութեան՝ Սուլթան Մուրատ Դ-ի ժամանակն տիրած են և Ակնայ։ Ըստ յիշեալ պատ. Իգնատիոսեանի (տես Գլ. Ա.), «Թուրքք բազմացած էին ի Տաճկաստան և տէր էին երկրին եւայլն, շուրջ ԺԷ-րդ դարուն՝ ըստ աւանդութեան տաճկաց, Զօպի անուն Թուրք բռնաւոր մի առաջնորդեց խումբ մը գաղթականաց որք վանեցին ըզՀայս ակնեզրէն և իրենք բնակեցան։ Ասոնց թիւն աւելացաւ գամ քան զգամ, և Ակնայ ջրին եզերքը խմբեցան, քաղքին անունը Թրքերէն տառադարձութեամբ կոչեցին Էկին։ Եւ իրենց թաղը՝ հաւանականաբար իշխանին կամ բռնաւորին հոն բնակելոյն պատշաճաւորութեամբ՝ անուանեցին Գ ա տ ը մ ա հ ա լ լ է ս ի և Ակն՝ Գ ա տ ը կ է օ լ ի ւ։ Այս թաղի Հայոց տուները մինչ այս դար կային և նորոգ փոխուեցան ոմանք, ինչպէս են Գ ո ւ ր ո ւ կ ե ա վ ո ւ ր ե ն ք (Հայ ընտանիք մ'են), 15 տարի չըներ որ տներնին ծախեցին»։ Իմ լսածս աւանդու-

թիւնն Ջուղիի աւանդութենէն տարբեր է։ 10-15 տարի յառաջ Թուրքաց երեւելիներէն լսած եմ թէ Սուլթան Մուրատ Դ-րդ. երբ ի Պաղտատ կ'արշաւէր, Զիւլֆիկար աղա անուն զօրաւոր Թուրք մը՝ իրեն հետ ունենալով 40 հոգի եւ սուլթանին կը ծառայէ եւ վերադարձին երբ սուլթանն կ'ուզէ զայն վարձատրել, Զուլֆիկարն՝ ի սէր ջրոյն՝ կը խնդրէ Ակն (կառավարութիւնն կամ տուրքն) եւ կը շնորհուի նմա։ Վերոյ յիշեալ աւանդութեանց որն ճշմարիտ է, չգիտեմք։

Յետ հաստատութեան Տաճկաց կամ որ նոյն է Թուրքաց կամ Օսմանեանց, բաւական փոփոխութիւններ տեղի ունեցած է ի քաղաքին եւ ի գիւղօրէս։ Բազումք կը վկայեն թէ հին տեններըը Ակն ըստ պաշտօնական արձանագրութեան «Մարնտուրիկ գազասը» (Մարնտուրիկի գաւառ) կը կոչուի եղեր, Զարաղի մօտ «Մարն տուրիկ» (Մայրն տիրուհի) ուխտատեղւոյն անուամբ։ Անկէ առաջ եւ այսօր ոմանք այն Հայերը որ ամրան համար յԱրեգի եւ ձմրան համար ի քաղաքիս տուն ունէին, քաղաքիս տունը «գեղի տուն» կը կոչէին։ Նաեւ Թուրքք քաղաքին վերին թաղին համար «Քէօյ պաշը» կ'ըսեն ցարդ։ Անկից կ'ենթադրուի թէ հին տեններըը Արեգիի եւ Ապուչեխի կողմերն աւելի շէն են եղեր։

Քիչ մ'ալ կրօնափոխութեանց վրայ գրեմ։ Քաղաքիս Թուրքք որ ի սկզբան սակաւաթիւ են եղեր, յետոյ բազմացեր են։ Ըստ Ինճիճեանի, ԺԷ եւ ԺԸ-րդ դարուց մէջ քաղաքիս Հայերէն բազում անձինք կրօնափոխ եղած են. ինչպէս կան ցարդ Թուրք տուներ որոց ազգանունք հայերէն են։ Կաշօյի գիւղացւոց կրօնափոխութիւնն 160—170 տարւան դէպք մ'է։ Հաբեշնոց, Ագրակ, Բակեր, Պզմըշէն, Ապրանք, Վեց փարա գիւղի Ագրակ, Միջին-գեղ, Վան-գեղ եւ Փշատիի Ուռեկ, Ափարիկ (Աւերակ), Արտօս, Հերտար, Բօշայի, Կաղրտան, Սերկեւիլ եւ այլն հայանուն գիւղերուն մէջ այժմ ոչ ոք կայ ի Հայոց։ Ակնայ արեւելեան կողմն Ձմշկածագի «Ս. Թորոս»-ի 20-ի չափ Թուրք գիւղերուն գրեթէ բոլորին անուններն ալ

թէև հայկական են, զօ. Խնձոր, Կծու, Դրնիկ, Վանկուկ, Վանք, Վարդենիք, Գանսար կամ Գոմսար, Պարաձոր, Հաստեաի, Ագրակ կամ որ նոյն է Արջ-ագրակ և այլն, բայց այս գիւղերուն մէջ ևս Հայ չկայ։ Թողունք Ակնայ սահմանակից Կամախի (Անի ամրոց) և այլ գաւառաց մէջ գտնուած հայկական անուններով գիւղերն, յորս հայաբնակքն սակաւաթիւ են։

Սկսիմք այժմ թէ այլ և այլ քաղաքներէ յԱկն և թէ Ակնէն յայլ և այլ քաղաք գաղթողաց վրայ գրել։ Վասպուրականի մեծ գաղթականութենէն յետոյ զանազան ժամանակներ, զանազան քաղաքներէ Հայեր եկած են յԱկն, որք են Վաննենք, Էրզրումցոնք, Քըղըցոնք, Բալուըցոնք, Խարբերդցոնք, Ուրփացոնք, Մատէնցոնք, Արաբկերցոնք, Տիվրիկցոնք, Զառայենք Սեւաստցոնք, Թոխատցոնք և այլն և այլն։ (Կան նաև Մանիսենք, Պայինտուրենք, Կեօրտէզենք և Տինարենք։ Այստեղեր Զմիւռնիոյ և Պրուսայի նահանգաց մէջ են և գաղթականութեան հոսանքն սովորաբար այս կողմերէն դէպի այն կողմերն է, ինչպէս կ'ըլլայ որ ասոնք այն կողմերէն յԱկն եկած կ'ըլլան։)

Չըմոռնամք աստ յիշել թէ հին ժամանակներէ ի վեր Քղիէն, Խարաչորէն (Չարսանճագ), Չմշկածագի Պարաձոր գիւղերէն և այլ կողմերէ Քուրդ, Հայ և Թուրք գործաւորներ կուգան, ի քաղաքիս և ի գիւղօրէս բեռնակրութիւն կ'ընեն, պարտէզներուն և շինութեանց մէջ կ'աշխատին, քանի մ'արծաթ մէճիտ, կամ ոսկի շահերով կը վերադառնան։ Ոմանք երկար կը մնան, կ'ամուսնանան և կ'ըլլան բնիկ։

Գանք այժմ Ակնէն այլ և այլ քաղաք գաղթողները գրել։ Վերոյիշեալ Միրախորեանն այժմ (1884) Կալլի պօլսէն (Կէլլիպօլու) ի մէջ այլոց կը գրէ. «ըստ ծերոց աւանդութեան և թերի յիշատակագրոյ մը՝ Կալլի պօլսոյ Հայերն 350 տարի յառաջ գաղթած են գլխաւորաբար Ակնէն և իւր վիճակէն, և իրենց այն ժամանակներն ունեցած տառապանքներէն և

հարստահարութիւններէն (կ՚աւանդուի նաեւ պարսկական հալածանքէն *) փոքր ինչ մխիթարութիւն եւ հանգիստ գտնելու յուսով կը թողուն իւրեանց պապերուն եւ մամիկներուն երկիրն ու նոցա նուիրական տեղիք, խուռն բազմութեամբ կը գաղթեն այլ եւ այլ երկիրներ, ոմանք ձորերու եւ լեռներու մէջ բնակութիւնք կը հաստատեն։ Ասոնցմէ 18—20 տան չափ ճանբայ կելնեն եւ կուգան կը հասնին Մարմարայի ափունքը եւ այլն։ Յետոյ, եկեղեցի մ՚ունենալու համար կրած տառապանքնին եւ ՌՂԳ-ին եկեղեցւոյ հաստատութիւնն, հայ լեզուն կորուսանելնին, այժմ 194 տուն 1088 բնակիչ ըլլալնին եւ այլն. կը գրէ։ Ասկէ զատ, Կեյվէի կողմերն ալ կան մի քանի Հայ եւ Հայ-հոռոմ գիւղեր որ Ակնայ շրջակայ գիւղերէն գաղթած են։ Միայն ներկայ դարուս մէջ ի Կ. Պոլիս գաղթող Ակնեցի եւ գիւղացի ազգայինք հաւանօրէն քանի մը հարիւր տուն եւ գուցէ աւելի են։ Յիշեմք նաեւ այն երիտասարդներն որ Պոլիս կամ այլ քաղաք՝ պանդխտած եւ յետոյ ամուսնացած են, եւ որոց թիւն ալ գուցէ ընտանեօք գաղթողներէն պակաս չէ։ Այս թիւեր ենթադրական են, բայց ներելի է ստոյգ համարել թէ Կ. Պոլսոյ հայ գաղթականութեան մէջ Ակնեցին՝ բազմահայ գաւառաց համեմատութեամբ իւր համեմատական բաժինն եւ գուցէ աւելին ունեցած է։ Մեր թուրք հայրենակիցներէն ալ ոչ նուազք գաղթած են ի Պոլիս եւ յայլ քաղաքս։ Կ. Պոլսէն յետոյ Ակնեցւոց շատ գաղթած քաղաքն է Խարբերդ, ուր գաղթողաց թիւն 40—50 տուն կը հաշուուի։ Կան նաեւ շրջակայ եւ հեռաւոր քաղաքներ գաղթողներ 5—10-ական տուն։ Կը կարծուի թէ մօտակայ գիւղացիք աւելի կը գաղթեն քան զքաղաքացիս, եւ գաղթողաց մեծագոյն մասն վարի թաղէն են։ Հետաքրքըրաց համար զայս ալ ըսեմք թէ իբր արդիւնք այսքան պանդխտութեան, Ապուչեխի եւ Կամարակապի Հայք քիչ թէ շատ

*) Թուի թէ «պարսկ. հալածանք»-ն Կէլի պօլու գաղթողաց նախնեաց համար ըսուած պիտի ըլլայ։

կը պակսին, բայց քաղաքիս Հայոց թիւն գրեթէ նոյնն է։ Անցեալ տարի (83—84) կատարուած մարդահամարին ժամանակ կ'ըսուէր թէ իբր 30 տարիներէ ի վեր քաղաքէս գաղթող կամ ուր ըլլալն անյայտ ազգայնոց թիւն 4—500-ի կը հասնի, որք՝ նախկին մարդահամարի տոմարին համեմատ՝ պակսած են, բայց նորածինք՝ քիչ տարբերութեամբ պակսած թիւը լցած են։

Որովհետեւ հին դէպքերու վրայ կը գրեմ, աւելորդ չեմ համարիր գրել և հին ժամանակաց *) բռնաւորներու վրայ։ Ինչպէս այլուր, նոյնպէս յԱկն ու շրջակայքն Տէրէպէյի կոչուած բռնաւորներ կան եղեր։ Թուականէս իբր 65—70 տարի յառաջ Զմշկածագի Ս. Թորոսի գիւղերէն Վարդենեկցի Խ ա ր ա Խ օ թ ի կ օ ղ լ ո ւ Ահմէտ պէյ լսուած անձն իբր 1000 սպառազէն մարդերով յանկարծ կոխած է Ակն, և 2—3 օր վերջը զօրքը իրենց տեղերը ղրկելով ինքն 100 մարդով յԱկն մնացած և փ օ յ փ ո տ ա յ ո ւ թ ի ւ ն ըրած է։ Անկէց յետոյ, Պօլուի կողմերէն Գ ա տ ը Գ ը ր ա ն անուամբ բռնաւոր մի իբր 1500 մարդերով այս կողմերն եկած է. Ակնեցիք մինչի Բենկայ և Արմտան գիւղերը, ուր էր բռնաւորը և իւրայինք, ընծայներ ղրկած են և հաճեցուցած են չ'այցելել այսր։ Գատը Գըրանին համար Պէրպէրեան Հայոց պատմ. կը գրէ. «Փախուցեալ ի սահմանս Ռուսաց և ըմբռնեալ յԱխլցխա՝ առաքեցաւ ի Կ. Պօլիս կապեալ, և սատակեցաւ ի թի նաւատեղեացս։ (Երես 487, թ. 1834 փետր. 28)։ Հին ատեններէ ի վեր մերթ ընդ մերթ Հայլթա և Տէլլի կուգան եղեր. սոնք Գասթամպօլուի և Պօզուգի կողմերէն էին։ Այրուձի էին և իրենց գլխաւորն Տէլլի պաշին, հարիւրապետն և յիսնապետն ունին եղեր։ Թըմ-

*) Աւելի հինն «Ճէլալիք» անուամբ, տես Չամչ. պատմ. հատ. 3, երես 376 (1598—1606=ՌԽԷ)։ Առաքել պատմիչ ևս կը թուէ (24) զանոնք յիշելով և զՔեօր-օղլուն «Այս այն Քօր օղլին է որ բազում խաղ է ասացեալ զոր այժմ աշըղներն եղանակեն»։ Երես 84—86. Թ. ՌԽԷ։

բուկն զարնելով կուգան և սովորաբար Հայոց տուներն կը բաժնուէին, կ'ուտեն ու կը խմեն և հետեւեալ օրն՝ երբեմն ալ ընծայներ առնելով կը մեկնեն եղեր։ Հայթայներուն հանդերձն Թուրքական հին հանդերձն էր, բայց տէլլիներուն իբր 1 կանգ. երկայնութեամբ սև մորթէ գլխարկ (գալբագ) կը կրեն եղեր։ Ասոնք կը շրջէին այլ և այլ քաղաքներ, և ամենուրեք ահ ու սարսափ կը ձգէին։ Հայեր ասոնց «Ավան» կ'ըսէին և որովհետև օթեւանած տեղերնին սովորաբար բրնձէ փիլաւ կ'ուտէին և Հայերէն ոմանք կը մասնակցէին, կ'ուզէին որ Ավան գայ, ուստի առածի կարգ անցած է թէ՝ «Ավան գայ, փիլաւ ուտինք»

Կ. Պոլսոյ և գաւառաց «Իէնի-չէրի»-ները 96 կամ 120 (ըստ պատմ. Պէրպէր. ի 196) դասերու (օրթայ) բաժնուած են եղեր։ Քաղաքիս Թուրքք 31-րդ. օրթային և Արեգիրինն 25-րդ. ին կը վերաբերէին։ Կուսակցական կռիւներ յաճախ տեղի կ'ունենային։ Կը յիշուին Քըռա·պէկի և այլ երևելի Իէնի չէրիք։ Տէլլիներու ժամանակն ընծայներ տալու համար ազգայնոց ծախքերն ալ կ'աւելանային որ մ ա ն կ ը ռ ւ ի հաշուով կը բաշխուէին ժողովրդեան վրայ։

Վերոյ գրեալքն հայ ծերունի մը խօսած է։ Ուրիշ ծերունի մ'ալ խօսած է թէ՝ կուսակալաց հրամանին ներքև էին Տէլի և Տէլի պաշիներ՝ զորս կուղարկէր ապստամբաց վրայ և այլ գործերու։ Կուսակալն կ'արտօնէր Տէլիպաշի մը 300, 500 կամ 1000 մարդ պահել. Տէլի պաշին ալ կը պահէր և Թոշակն կուսակալին Թոշակին գումարին հետ կը վըճարուէր։ Ավան կամ Տէլիներն գործ չունեցած ժամանակնին այլ և այլ քաղաքներ կ'երթային, ինչպէս և Ակն կուգային, Հայոց տուները կ'իջնէին, «Աթըմա՝ արփա, պանա՝ իւմիւրթա» (ձիուս՝ գարի, և ինծի՝ հաւկիթ) ըսելով ձրիաբար կ'ուտէին կը խմէին և նեղութիւններ կուտային այնչափ, որ Հայերը Տէլի պաշիին՝ պարագայից համեմատ՝ 1-2 հազար դահեկանի ընծայներ տալով կը հաճեցունէին մեկնիլ։ Երբ պարապ մնա-

յին, դարձեալ կուգային։ Սերտարն կամ Վօյվօտան դարման մը չէին կրնար ընել։

Ինչպէս կը տեսնուի երկրորդ ծերունւոյն խօսածները մեծ տարբերութիւն մը չունին։ Գուցէ սոյն տեղեկութեանց մէջ սխալներ գտնուին, բայց բռնութեանց վերաբերեալն այլ ծերունիք ևս կը հաստատեն։ Կան եղեր Իէնիչէրի կամ պաշտօնեայ որ «Զօպի» կը կոչուին. նաև Սպահի և Զայիմներ, որոց զինուորական ծառայութեան փոխարէն մէկ կամ աւելի գիւղերու ցորենի և այլն տասանորդական տուրքն կը շնորհուէր եղեր։ Ասոնց վրայ աւելի տեղեկութիւն չունիմք։

Խրիմու պատերազմին ժամանակներն (1854—55) թէև կանոնաւոր զօրք կային, բայց երբեմն Խարբերդու, Բալուայ և այլ կողմերէ խումբ խումբ անկանոն զօրքեր (Պաշը-պօզուգներ) կուգային և ի Կարին կ'երթային։ Ասոնցմէ ոմանք անվնաս էին և ոմանք ուտելեաց կամ օթևաններու առթիւ մեծ նեղութիւններ կուտային։ Վերջին (1876—77) պատերազմին ժամանակն ալ Խարբերդի, Տիգրանակերտի և այլ գաւառներէ կանոնաւոր զօրքեր եկին օթևանեցան, բայց՝ գրեթէ առանց ումեք վնասելու՝ խաղաղութեամբ մեկնեցան ի Կարին և անտի ռուսական սահմանագլուխին։ Արդարև Ակնեցին և կառավարութիւնն ուտելեաց մասին հոգ կը տանէին և պանդոկներ վարձած պատրաստած էին զինուորաց համար ուր կրնային հանգիստ վայելել։

Տէյլիներու և Իէնիչէրիներու վերոյ գրեալ պատմութիւններէն ինչպէս յայտ է, հին ատենները չկայ եղեր պատուոյ կենաց և ընչից ապահովութիւն։ Վերջապէս Սուլթան Մահմուտ Բ. քաջակորով ինքնակալն տեսնելով Իէնիչէրեաց բռնութիւնքն ու յանդգնութիւնն նոյն իսկ Պոլսոյ մէջ, Իէնիչէրի (Նոր զօրք) կոչուած հին կարգն ու կեդրոնն (օճախ) ջնջեց 1826-ին, և կանոնաւոր զինուորագրութիւնն հաստատեց։

Ակնայ գաւառը՝ ըստ պատմութեան ծերունւոյ մը 'ի

հնումն Սեբաստիոյ կուսակալութեան կը վերաբերէր եղեր։ Ցետոյ, Թուականէս իբր 90 տարի առաջ Կապան Մատէնի իշխանութեան կ'ենթարկի *) 40—50 տարի անցնելէն յետոյ կեդրոնավայրն. ի Խարբերդ կը փոխադրուի, և յայնմ հետէ Ակն Խարբերդի կուսակալութեան կը վերաբերի իբրև գաւառակ (գազա)։

Հին ժամանակներն յԱկն Միւսէլլիմ կամ Վօյվօտա կը նստէր, որ Զապիթ ալ կ'ըսուէր։ Կապան Մատէնն երթալով, պաշտօնն կըստանար, սովորական մուշտակն կը հագնէր, կուգար և պաշտօն կը վարէր։ Երբեմն կուսակալն կ'ընտրէր Վօյվօտան, երբեմն ալ ժողովուրդը հանրագրով կը խնդրէր։ Կային նաև Սէրտար և Նագիպ։ Սէրտարը Թուրքաց կառավարիչն էր և Նագիպն կանաչ փաթտոցաւորներուն (էմիր)։ Երբ Թուրք մը Հայէ կամ Հայ մի Հայէ գանգատ ունենար, Վօյվօտային կը դիմէր։ Երբ գանգատն Թուրքէ մ'է, սէրտարը կրնար միայն խառնուիլ, իսկ եթէ Հայ կամ Թուրք մի էմիրէ մը գանգատ ունենար, պէտք էր Նագըպին դիմել։ Ասոնց իւրաքանչիւրն իրենց յատուկ ոստիկանն ու բանտըն ունէին. կը դատէին ու կը պատժէին։ Նագըպին պաշտօնը յորդւոց որդի ժառանգական էր։ Կային նաև դատաւոր (Գատը) և կրօնական օրէնսգէտ (միւֆթի)։ Սոյն վերջինք այժմ ևս կան։ Զմոռնանք և Ախին՝ որ այլ քաղաքաց մէջ ևս կան և Շեյխ կը կոչուին եղեր, բոլոր արհեստաւորաց պետ Թուրք մ'էր, և պաշտօնն ժառանգական։ Ամեն արհեստաւոր իր միջէն ընտրեալ Քեհեա մը և Իկիտ-պաշի մը (արհեստաւորաց գլխաւորք) ունէին, որք՝ Ախիին հետ՝ պատահական վէճերը կը քննէին և արհեստաւորին պատիժներ կ'որոշէին՝ կամ տուգանք առնելով և կամ խանութն քանի մ'օր գոցել տալով։ Շինուածոց մէջ ևս եթէ վէճ պատահէր, Ախին ալ կը խառնուէր։ Աշակերտ մ'որ բաւական ուսած էր, Խալֆա կ'ըսուէր։ Ախին կամ վարպետք կ'առաջարկէին հօ-

*) Տես և ԻՆՃԻՃ. աշխարհագր. հատ. Ա. երես 234։

րը կամ վարպետին Խ ա լ ֆ ա ն վարպետ հանել։ Արարողութիւնը կը կատարուէր այսպէս։ Ախին և այլ վարպետք նախ կը ճաշէին, յետոյ Ախին յոտին կը կանգնէր, իւր Զ ա վ ո ւ շ կոչուած սպասաւորն Խալֆայից մօտենալով որք կարգաւ յոտին կանգնեալ են, անոնց մէկին ղենջակ մը կը կապէ. Ախին մօտ կուգայ խալֆային որ ըստ հրահանգին՝ իւր աջ ձեռքը իւր գլխոյն վրայ դնելով ձախովն ալ ձախ ունկն կը բռնէ. Ախին կը հարցունէ. «Ներբէտէ փիրի *) փէրվար օլտըն (Երբեղ վարպետ եղար). խալֆան կը պատասխանէ. «Սաղ էլիմ պաշըմտա, սօլ էլիմ գուլաղըմդա, կէօկ գուպպէնըն ալթնտայ, էրէնլեր **) մէյտաննտա փիրի փէրվար օլտըմ» (=Աջ ձեռքս գլխուս վրայ, ձախ ձեռքս՝ ականջս, երկնից գմբէթին ներքև, վարպետաց ներկայութեանն կամ յասպարիզին վարպետ եղայ»։ Այս խօսքէն յետոյ, Ախին և այլք կ՚օրհնէին զայն, և Ախին վարպետ եղնողին պարանոցին ետևին մեղմիւ ապտա՛կ մը կը զարնէր, և խալֆան վարպետ կ՚ըլլար։ Երբ սոյն արարողութիւնը լրանայր, սուրճ կը խմէին և իրենց կամաւոր ընծաները կը մատուցանէին Ախիին, չավուշին և իկիտ-պաշիին։ Ախիութիւնն արդէն տկարացած էր. երբ 25 տարի յառաջ վերջին Ախիին մեռնելովն այս պաշտօնն ալ վերջացաւ։ Այժմ՝ կարծեմ՝՝ կօշկակարք միայն ք ե հ ե ա և ի կ ի տ պ ա շ ի մ՚ունին, բայց անոնք ալ նախկին ազդեցութիւնն չունին։ Սոյն տեղեկութիւնքն ևս վերոյ յիշեալ ծերունին խօսած է։

## Գ.Լ Գ.

*Ամիրայք. թաղային քաժանումներն. արքունի տուրքեր. ամնութիւն կամ ուտելեաց եւ այլոց գներն. 160 տարուան ժամանակագրութիւն մը:*

Ակնեցի Եաղուպ ամիրային մասին Զամչ. պատմ. կը գրէ. «Յաւուրս սորա (Գէորգ պատրիարքի) երևելի էր յոյժ ի Կ. Պօ-

*) Փիր (պարսկ.)=1. ծերունի, 2. գլխաւոր, պետ։ (ըստ Աբիկ. բառարանի)։

լիս ի մէջ հայոց Եաղուպ ի յԱկնայ, որ և էր պատուեալ և մեծարեալ յոյժ ամենայն ազգաց եղելոց անդր. և համբաւ նորա հռչակեալ էր ընդ ամենայն տեղիս, որոյ հաւասար չէր ոք լեալ ի հայոց մինչև ցայն ժամն։ Հատոր 3-րդ երես 864, 1752=ՌՄԱ։ Ցետոյ ընտանեօք ի ս. Երուսաղէմ յուխտ գնալըն, վերադարձին պատրիարքաց փոփոխութիւն կատարելն և նոյն տարին գլխատուելն կըգրէ։ Ներկայ դարուս սկիզբներն Երամեան Մ. Աբրահամ Ամիրայն և եղբայրն Մ. Երամ աղայն Եգիպտոսի Մէհէմմէտ Ալի փաշային սեղանաւոր լինելով մեծ պատիւ ու հարստութիւն շահած են։ Մ. Աբրահամ Ամիրայի որդիքն են վսեմ: Գէորգ ու Կարապետ պէյերը որք շարունակած են Մէհէմմէտ Ալի փաշայի որդւոց կամ թոռանց սեղանաւորութիւնը։ Գէորգ պէյի որդիքն են վսեմ. Աբրահամ փաշայն և Երամ պէյն։ Երամեաններէ յետոյ են Միսաքեան Միսաք Ամիրայն և եղբարքն։ Կ՚ըսեն թէ Խորասանճեան և Քիւրքճի խանլեան Ամիրայից նախնիք ևս Ակնէն գաղթած են։ Լսած եմ նաև Արզումանեան, Բարունակեան և Արապեան Ամիրայ կամ աղայքն։ Տատեան, Ճէզայիրեան, Փեշտիմալճեան ամիրայքն գիւղօրէից մէջ ի կարգին պիտի գրեմ։ Ակնէն և շրջակայներէն ի Պօլիս և այլ քաղաք գտնուած առաջին և երկրորդ կարգի երևելի անձինք շատ կան, բայց երկար չըլլալու համար, վերօգրեալ մի քանին միայն գրեցի։

Հին առեններըը քաղաքին Հայք 4 թաղերու բաժանուած են, (Պասսապ-օղլու, Փչիկ-օղլու, Էսկիճի-օղլու և Գազանճի), և տուրքերը մանկըռի հաշուով կը բաշխուէին եղեր։ Իմացածիս նայելով մանկըռն գործածական դրամ մի չէ. այլ իբր բաժին։ Ամենէն մեծ հարուստ տունն 20—30 մանկըռ կը վճարէ եղեր և արհեստաւորք 1—2 կամ 4։ Երբ պատահական ծախքերը շատ ըլլան, մանկըռը մինչև 100 ղրշ. կը կտրեն եղեր։ Թուականէս 40—50 տարի յառաջ հին թա-

**) Էրէն. (թուրք.)=1. հասնող, 2. ճշմարիտ հաւատոյ հասնող սուրբ և առաքինի։ (Ըստ Աբիկ. բառարանի)։

ղերը եղծուելով 16 թաղի բաժանուած են. իբրև ս. Աստուածածնայ եկեղեցւոյ թաղ՝ Տափուռը և Արեգին միասին՝ 8, և ս. Գ. եկեղեցւոյ՝ 8։ Սալեան տուրքն սկսած է տուն գլուխ 50 ղրուշ որ ըստ կարողութեան կը բաշխուի եղեր։ Յետոյ, թուականէս 12 տարի յառաջ կալուածագրութիւն կատարուելով 7 թաղի վերածեցաւ, և Սալեանին փոխարէն կալուածական և շահու տուրքերն սկսան։ Յետոյ մարդահամարն կատարուելով՝ 12 թաղ եղաւ 16-ի հիման վերայ։ Ի հնումն քրիստոնեայներէն խարած ի տուրք մ'ալ կառնուէր, որոյ յաջորդեց զինուորական տուրքն։ Օղիի կամ գինւոյ, աղի, դըրոշմաթղթի և այլ 6 անուղղակի տուրքերը ընդհանուր պարտուց վարչութեան և ցորենի չափու, կշռոյ, ոչխարաց զենման նայլն տուրքերը թաղապետութեան (պէլէտիյէ) յատկացեալ են։ Հին ժամանակաց աժնութեան գալով՝ ծերունիք կը պատմեն թէ ամեն ուտելիք աժան էր, դրամոց գներն ալ աժան էին և քիչ կը գտնուէր։ Եագըլը Մահմուտիյէի ոսկին որ այժմ 95—100 ղրուշ է։ *) ի հնումն 25 ղրուշ դին որոշուած է. Պոլսոյ հին ոսկւոյ կէսն որ այժմ 18 ղրուշ է, 2 1/2 ղրուշի կ'առնուն կուտան եղեր։ Կամարկապցի ծերունի մը՝ Հալաճ օղլու Աւետիս՝ որ որմնաշէն գործաւոր է եղեր, երեք տարի առաջ կ'ըսէր թէ «97 տարեկան եմ և մայրս՝ որ 2 տարի առաջ մեռաւ, 127 տարեկան էր»։ Աւետիսն կը պատմէ թէ տղայութեանս կով մի գնեցինք 110 փարայի, հաւս բարկացաւ թէ 10 փարա աւելի տուած էք. չափ մի ցորենն՝ 63–64 օխայ՝ 72 փարա և իւղին օխան 10 փարայի, 60 օխա խաղողն՝ 1 ղրուշ-ի կուտային։ Տան մը մէջ երեք վարպետ կային, նոցա օրական վարձքն 1 ղրուշ էր. գործաւորք օրական 6 փարայի կ'աշխատէին»։ Կ'ըսեն թէ

---

*) Օսմանեան 40 փարայն 1 ղահ. (ղրուշ) է և 100 ղրուշն 1 ոսկի (լիրայ) որ իբր 23 Ֆրանգ է։ 400 տրամն հին 1 օխայ է, իսկ նոր օխան՝ 1000 կրամ, (312) տրամ է։ (Յիշեմք նաև թէ մանաւ. կանգ. 27 ինչեզ է, որոյ 40-ն մի մեթր է։

հին արծաթ 1 փարա-նոցն այժմեան 1 ղրուշ-նոցին գրեթէ համարժէք էր. ըստ այսմ, երբ հին և այժմեան գներն համեմատենք, գնոց մեծ տարբերութիւն մը չկայ։ Կ՚ըսեն նաև թէ հին ատեններր մեծատունք կամ հարուստք միայն շատ ծախք կ՚ընէին. իսկ միջին կարգի ժողովուրդը սակաւապէտ և խնայասէր էր։

Տէր-Առաքելեանց քով 160 տարի յառաջ սկսուած ժամանակագրութիւն մը կար. 1869 ին կարևոր համարուածս մասերը օրինակած էի, այժմ ինչ ինչ մասերն յապաւելով ի ստորև կը գրեմ։ Սոյն գրուածէն ևս կարելի է հին կացութեան վրայ գաղափար մ՚առանալ։

---

«Թուին Հայոց ՌՃՀԱ ին մայիսի Է.ին սուրբ Գէորգայ եկեղեցին հիմնարկեցին շինութեան. տէր Աստուած հաստատ պահեսցէ ամէն։

Զայս տէֆթերիկս ես անարժան Աստուածատուր դպիրս սահմանեցի որ ինչ անցք անցանի զամենայն կարգաւ գրիմ վասն օգտի ի գիւղօղ ժամու։

Թուին ՌՃՁԳ մեծ պահոցն լուսաւորչին տօնին եղուն հինգշաբթի օրն որ է մերձ Ղազարու յարութեան. զՏէր-Ղազար քահանայն և զմելիք օղլի խօճա Մարգարն Խամայիլ փաշան ի կամուրջն կախեց զերկուսն ալ։

Թվին ՌՃՁԳ։—և ՌՃՀԸ,—և ՌՄՀԳ։—և ՌՆՁ։ ՌՇԻ։ յայս թուին տարիցս մէկ շրջանն ՇԼԲ տարի է, ի մէկ շրջանն Ե անգամ մոլորին յոյնք և այլազգ քրիստոնեայքն, բայց մենք Աստուծով պատրաստ լիցուք որ չի խաբուինք. Աստուծով յիշեցէք զՏէր Յօհան երեցն, հայր մեզայիս։ (Յետոյ, ՌՃՀԸ ին ծաղկազարդին զատիկ ընելնին և լոյս չծագելն և Հայք ապր. ԺԳ ին զատիկ ընելն և լոյս ծագելն ևայլն կը գրէ)։

Թուին ՌՃՁԸ սուրբ Յակոբայ բարեկենդանին շաբաթ օրն կամուրջն երեցաւ. գնացաք բարեկենդան կրկին շինեցինք Բ

կողմն ալ, անտի գնացաք զատկին կիրակին օրն Մէմիշ փաշան եկաւ Կամրակապ իջաւ ցորենին չափն Ե ըռուպ գարիին չափն Բ ղրուշ շատ նեղութիւն կրեցաք Ակնեցիք։

Թուին Փրկչի ՌՉՃԽԱ (=1741) թուին հայոց ՌՄՂԱ յարեւելից կուսէ գիսաւոր աստղ մի ծագեր է, գիշերն մինչ հաւու խօսուն երևէր. մարտ 1 ին անյայտ եղև. այս տարի սաստիկ սով եղեր է որ հարք զորդիս վաճառեր են և բազումք սովամահ եղեր են. միւս տարին ցորենին չափն Դ ղրուշ ելեր է։

ՌՃՂԱ դարձեալ յայսմ տարւոջ մեծ պահոցն սուրբ Լուսաւորչին շաբաթ օրն Ակինը (կէօլը) ցամաքեցաւ, որ առ Տէր աղաղակեցաք Դ. Ե օր յետոյ կրկին բղխեցոյց բղխումն ի հօրէ սուրբ հոգին Աստուծոյ. ցամաքած օրը տաճկները միւրասէլէ տվին թէ եկեք դուքալ Ինճիլն կարդացէք կէօլին վըրայ մենք ալ շաբաթ երեկոյին հսկում արարաք և կիրակի առաւօտու Բ եկեղեցւոյ պաշտօնեայք և բաղմամբոխ ժողովրդովք գնացաք Զ ջրօրհնեաց կարգն սկսաք կատարել վասնորոյ...տանշմանքն լցան բազում նախանձու և դիմեցին ի վերայ մեր և դարձուցեալ զբանն և ասէին թէ ձեր կարդալուն ձայնին կամ խնկին հոտն կուգայ մենք չենք ուզեր և սկսան զմեզ հարկանել ոմանք քարիւ և ոմանք ձիւնէ թօփով ալ մեզ ցրուեցին. անարգ Աստուածատուր դպրիս մէջքն քար մի զարկին որ կարծեմ թէ մինչև հիմակ կուցաւի։ Թուին հայոց ՌՃՂԷ յուլիսի ամսեանն ԺԴ օրն Ե շաբթի մէջ կէս աւուրն և իքինտուին, արեգակն Գ բաժին խաւարեցաւ Գ. Դ սըհաթ և ապայ լուսաւորեցաւ։

Ակնցի Պօղոս վարդապետն մեծ Վարդան վարդապետին աշակերտացն էր սերեալ ի Թադէոս առաքելոյ գաւազանէն յառաջացեալ օծումն և Տէր Օհաննէս կոչեցեալ։

Մեր սուրբ Գէորգ եկեղեցին կար Տէր Մինասն, Տէր Ղազարն, Տէր Մատթէոսն, Տէր Ստեփաննոսն և Տէր Կարապետն։

Թուին ՌՃՂԸ մեծ պահոց եաքի շաբթուն Ապուչեխուլին ըեառն փլաւ շատ աւեր արաւ այգիներուն և կամուրջն փ[illegible]

Թուին հայոց ՌՃՂԸ. համբարձման Քրիստոսի որ էր մայիսի ամսեանն Ը-ին։—յօրն Բ-շաբթի. անարժան Ցոհան երէցըս մըտի ի Մշու Սուրբ Կարապետ և առաջի գիշերիս լուսըն գեղեցիկ էջ յերկնից ի վերայ Կաթողիկէին լուսացնցուց սուրբ գերեզմանի Մկրտչին Քրիստոսի, զոր ականերև տեսեալ ուրախացաք և գոհութիւն մատուցաք. և այլն. Ք. ծառայ Տէր Ցոհան։

Թուին հայոց ՌՄԶ հոկտեմբերէն սկսաւ սղութիւնն որ չափ մի ցորենն Ը ղշ ելաւ և ՌՄԷ փետ.-էն մինչ յուլիս ցորենին չափն Դ. ոսկի մինչ Է ոսկի. չափն ԻԵ օխյ էր, և բազում տեղ հայրք զորդիսն և մայրք զդստերսն իւրեանց վաճառեցին և բազում զատնդեայ մանկունս ընկեցին ի փողոցն և բազումք ի ճանապարհի սովամահ եղեն, և այս քաղաքիս մէջն օխյ մի հացն ԺԸ փրյ. օխյ. մի չոր միսն Լ փր. և այլն և այլն մայիս որ հասանք նոր ցորենն Բ ղշ։

Թուին հայոց ՌՄԸ. Ս. Հրեշտակապետացն տօնին օրն շաբաթ երեկոյին ի Ժ ժամուն Պօղոս աստուածաբան հայր ճգնազգեաց վարդապետն վախճանեցաւ և երկուշաբթի ի տապան իջուցաք Տէր Ցիսուս լուսաւորեացէ զհոգի նորա ամէն։

Թուին հայոց ՌՄԺԸ օգոստոսի ամսեան Ժ ս. Աստուածածնայ պասին օրն Բ-շաբթի Զոլախենց երանելի Ալէքսանն վասն սիրոյն Քրիստոսի նահատակեցին և յայնմ գիշերին յորում էր ի մէջ շուկային կախեալ առ ի ծառին սաստիկ լոյս էջ յերկնից ի վերայ նորա զոր ականերև տեսին հայք և տաճիկք . . . և մեք հաւատացեալքս ուրախացաք և փառս մատուցաք Աստուծոյ որ սքանչելեօք փառաւորէ զսուրբս Իւր։

Թուին հայոց ՌՄԺԸ օգոստոսի ամսոյ սկիզբն յարևելից կուսէ փոքրիկ և նսեմ գ լուսով աստղ մի ելաւ և ունէր իւր առաջին ձողանման շառաւիղ մի մինչև արևմտեան մօտն և ամիսն որ լինեցաւ նէ անյայտ եղև. սակայն յայս կէտս օսմանցուն էսկէրն ի մօսկօֆու վրայ պատերազմ էր գնացեր։ (Կը գրէ և հարկապահանջութիւնքն, աւազակքն և այլն)։

Ասկէ վար անարժան Տէր Առաքելս գրելոց եմ որքան անցք անցեն Աստուծով։

Թուին հայոց ՌՄԽԱ մեծ պասին առջի շաբթին կամուրջն այրեցին որ գնացաք օգոստոսի ամիսն Աստուծով կըրկին նորոգեցին։

Թուին հայոց ՌՄԽԶ Միքայէլ վարդապետն առաջնորդ եղաւ ամենաստուրբ Փրկչայ վանուցն մեր կամ քաղաքիս Տէր Աստուած երկար կեանս պարգեւեսցէ։

Թուին հայոց ՌՄԼ մէկին յուլիսի ամսեանն մեր ամիր աղայներն կամեցան որ եկեղեցւոյ աւլուին պատն նորոգել տային. գնացին Խասուն կամ Վօյվօտայ աղային կամ այաններուն քով զրուցեցին. անոնք ալ որը հա՛ էին ըսեր որ չէ. վերջն զօհրապցիք դրացներն գնացին տավաճութիւն արին թէ մեր տղոցը վրայ կը փլչի կամ անոնց ժամուն ձայնը մեզի կուգայ. հիւճէթ արին Խասին ալ ելաւ պատին վրայ քէշֆ արաւ շինելու միւրասէլէն տուաւ։ (Ասկէ յետոյ շինութեան համար ազգայնոց աշխատութիւնն գրելէ յետոյ կ՚ըսէ)։ ժողովեցան.... գնացին առ Գիզատոս ըսին թէ դուն ժամ շինել կուտաս.... վերջն միջնորդ ինկաւ Խասին իւրեանց ոսկի գլխուն։ (Յետոյ, հինն կամ նոր հիմն ձգուածն քանդելնին. կը գրէ և կ՚ըսէ) Այս ամենայն եկն ի վերայ մեր վասն մեղաց մերոց, և յետ այսորիկ վերջն Խասին ելաւ.... գնալն իքէն սեւաստ հանդիպեր Օսման փաշային գանկտեր էր թէ ակին զօրպայները այսպիսի բան արին իմ գլխուն. Օսման փաշան ալ այն միջոցին քրդուն վրայ սէֆէր կերթար ճամբան ընկաւ եկաւ ակն. հաճի հօճա ժողվեց ըսս ինչ է որ արերէք ըսաց... կամ ժամ քակեր էք. բռնեց... աղայենց... աղան կամ... անց... աղան խղդեց . մէկ երկու խանութ կամ մէկ երկու տուն քակեց պիրազէն ալ տակ առաւ ելաւ գնաց. դարձեալ թուին ՌՄԼԲ որ մտաք Ստամպօլ տաճկլներն արզուհալ էին տուեր թագաւորին թէ զապի Մուսթաֆան նոր ժամ է շի-

նել տուեր. Թագաւորն ալ Խափուճի պաշին Թայյին արաւ Թէ գնա տես Թէ սուտ է Թէ իրաւ. մեծ պասին իջէնքի կիրակին Խափուճի պաշին եկաւ ելաւ ժամուն վրայ. տաճկը-ները ոտք կոխեցին Թէ ժամ է պարիսպ չէ. խափուճինալ խուսուր մնացածն ալ քակել տուաւ քարն ատախ անդին տեղվր ընել տուաւ. շատ ստակ գնաց Թէ խափուճուն Թէ խասուն իլամին կարծեմ Թէ Ճ քսէ ստակ գնաց պատն ալ մնաց այնպէս երեսի վրայ։

Թուին ՌՄԼԸ մարտի ամսեանն Սոսամպօլու ալահօռ և սեաստու վօյվօտան բազում հեծելօք եկին։ (Ասկէ յետոյ կը գրէ զօրպայներուն Ապուչեխ. . . պէկին-քով գնալն ու անոր պաշտպանելն և վերօյիշեալ զօրաց Գ օր ամբողջ պատերազմըն և քանի մի տուն այրելնին, աւարառուԹիւնն, և ապա բերդն առնելնին և չարագործաց ոմանց փախուստը)։ Ցատ անտանելի տէրտ քաշեցաք քաղաք կամ գիւղ ոչ լսեր էաք ոչ տեսեր էաք այսպիսի բան ստակն Ծ ղշ սալեան արին այամ տարոջ շատ նեղուԹիւն քաշեցաք Տէր ողորմեա։

Թուին հայոց ՌՄԽԳ մայիսի մէկին վերի սուրբ Աստուածածնայ եկեղեցւոյն հիմն արկին գնացաք սեպտեմբերի ամսեանն Ե-ին աւարտն հասաւ. վերացման խաչին կիւրակի օրն օծումն ընկալաւ տէր հաստատուն պահեսցէ ի վերայ առաքելական. . .։

Թուին հայոց ՌԲՃԽԳ-ին սեպ. ԺԸ սուրբ Գէորգայ եկեղեցւոյն հիմն արկին գնացաք Թուին ՌԲՃԽԴ-ին օգոս. ԺԹ-ին ս. Աստուածածնայ է երրորդ աւուր կիւրակէին ընկալաւ օծումն Էջմիածնայ նուիրակ աստուածաբան վարդապետ Բարսեղէ Տէր հաստատուն պահեսցէ։

Թուին հայոց ՌԲԾԷ (հաւանօրէն ՌՄԾԷ) օգոս. ամսոյն Միքայէլ աստուածաբան վարդապետն ի հող տապան իջաւ Տէր լուսաւորեսցէ իւրեան հոգին։

Աստ պատշաճ կը Թուի իբր կէս դարէ ի վեր տեղի ու-նեցած փոքր ի շատէ կարեւոր դէպքերն եւս համառօտակի

նշանակել։ 1839 կամ 40-ին ամառն հնդախտն (քօլերայ) ճարակած, 1—2 ամսոյ չափ տեւած և քանի մը հարիւր զոհեր տանելէ յետոյ դադրած է։ 56 Յունուար 3 կամ 4-ին երեկոյեան ժամը 10-ին երկրաշարժ մը եւ յետոյ ցնցումներ տեղի ունեցած են, բայց միայն քանի մը շէնքեր վնասուած են։ 67—68-ին մարախ եկած՝ բաւական վնասած է, և կառավարութեան հրամանաւ ժողովուրդը ժողված է։ Ազգային դէպքերըն են. 1859-ին միջոցները քաղաքիս երկու եկեղեցեաց կոչնակ զարնելու հրաման առնուած էր։ Ընդդիմութիւն և դէպքեր տեղի ունեցան, բայց վերջապէս Խարբերդէն պաշտօնեայ եկաւ և կոչնակն զարնել տուաւ։

---

## ԳԼ. Գ.

### *Տեղագրութիւն եւ վիճակագրութիւն (բնակիչք, արհեստք եւ այլն):*

Ակն քաղաքն Եփրատայ աջակողմեան եզերքը, Փոքր Հայոց սահմանին մէջ, լերան մը ստորոտն կառուցեալ է։ Միւս երեք կողմերն ևս բարձրաբերձ լեռներ կան։ Քաղաքին երկայնութիւնն հիւսիսային կողմէն Սանտըգ-պաղիէն սկսեալ մինչի հարաւ՝ Արեգի, Գոչան և Մահալլէ թաղերն —$1^1/_2$ ժամ կը տևէ, կամ հաւանօրէն 4—5 հազար մեթր է։ Հարաւային կողմն են Ապուչեխ, Կամարակապ և Կարուշլայ գիւղերն, որք իւրեանց մօտաւորութեամբ և կենցաղով արուարձաններ կըրնան համարուիլ։

Քաղաքին օդն՝ մանաւանդ բարձր դիրք ունեցող թաղերունն՝ լաւ է։ Ջուրերուն մէջ լաւագոյնն բերդի աղբիւրի *) ջուրն է, որ վերին թաղն է, յետոյ վերի եկեղեցւոյ աղ-

*) Վերի թաղի վերևն լերան մէջտեղն է «Բերդին քար» ըսուած ահագին վէմն որ կանգուն դիրք մ'ունի և քովերը մեծ ու փոքր ժայռեր կան։ Բերդին քարին քովն հիւսիսային կողմն է աղբիւրին ակնը կամ բաժնուելիք տեղը։

թիւրի ջուրն։ Կան նաև Կաթն-աղբիւրի, Ակն-ծովի կամ Ակն-գովի և Խնաձկի ջրերն։ Բերդի ջրին մէկ ճիւղն Ակնա մեծ ջրոյն վերեն մզկիթին քովէն կը վազէ։ Ամենէն առատ վճիտ ու զով ջուրն է Ակնայ ջուրն որ «Ակինը կէօլ-ին ջուրը» կ'ըսուի, ըստ Թուրքաց «Գատը-կէօլի»։ Սա՝ Վերի Թաղի հիւսիսային կողմը, մեծ մզկիթին վերևը ապառաժի մ ներքևէն կը հոսի իբր 1 կամ 1½ կանգ. տրամագծով և դուրս ելած տեղն մեծամեծ ապառաժներով շրջապատե աւազանն կը կազմէ, ուսկէց առուակներու բաժնուելով մէ մասն ջրաղացները դարձնելու, պարտէզները ջրելու կը ծառայէ, և մէկ մասն խողովակաց միջոցաւ Թաղերը կ'եր թայ, ուր են փողոցներու մէջ հասարակաց և տուներու մէջ մասնաւորաց աղբիւրները։ Ակնայ մեծ ջուրը գարունն յոր դելով և վրայի կողմերէն՝ հաւանօրէն միևնոյն ջուրը՝ Քարէ պնակէն և Վանկուկցիի պարտէզէն բղխած ջրերուն հետ միա նալով գետակի մը չափ կ'առատանայ և Մեծ ձորն ի վայ քարերուն զարնուելով՝ սպիտակափրփուր և անհեղագոչ՝ կը հոսի արագընթաց և կը թափի յԵփրատ։ Բացի վերո յիշեալ ջրերէն կան նաև այլ և այլ Թաղերու մէջ բարեհամ ջրեր զորս զանց կ'առնում գրել։ Ակնայ մեծ ջրին երակէն կըսեն և Վերի Թաղի վերևը Խնկաձորի ջուրը որ 1—2 տա րին անգամ մի ելնելով Թաղին մաքրութեան կը ծառայէ և 1—2 ամիս յետոյ կը ցամքի։

Զորերն են ի Սանտըգպաղի Զրիկ կամ Ծաւիկ ըսուածն որ փոքր է։ Ակնայ աւազանին դէպ ի հիւսիս Պզտի կամ Տափակ-ձորն որ գարունն կը յորդի 4—5 աղօրիք դարձնելու չափ, 1—2 ամիս կը տևէ և տակաւ կը նուազի։ Մեծ-ձորոյն հարաւային կողմն է «Հէզըրտար»-ն ուր յաւելեալ ջրերն կը ժողովեն *)։ Արեգիի ձորն որոյ ջուրն բակերէն և աւելի հե-

*) Մեծ-ձորոյն և Հեզետարի մէջտեղը գտնուող տանց մէջ կարիճ չի գտուիր։ Կըսեն թէ ժամանակաւ վարդապետ մը կապեր է զկարիճն որ յիշեալ սահմանաց մէջ չի գտնուի։

տուններէն կուգայ, Զոխ-մարի (ըստ ոմանց Ծոխ-մայր) և Գոջանի ջուրց հետ կը միանայ, ջաղացներն կը դարձունէ. պարտէզներն կը ջրէ և կը թափի յԵփրատ։

**Եփրատ գետ։** Եփրատայ այս ճիւղն որոյ ակունք Կարնոյ կողմն են, անցնելով Եզնկայի մօտէն և Կամախէն՝ կուգայ կանցնի Ակնայ ճիշտ ստորոտէն։ Ձկունքն են շիշէկ, մող, վազ, թեփիկ, շաղփուլ, ցուիկ, տափակ-բերան ևայլն։ **) Եփրատայ վրայ տիկալաստ կամ որ նոյն է քալակով ուղևորութիւնն և ապրանաց փոխադրութիւն կը լինի հոսանքն ի վար միայն։ Երիզայի կողմերը հուն ունի կ'ըսեն։ Ակնէն 10—12 ժամ վար ևս տեղ կայ, ուր ջուրն տարածեալ է. գրաստով կ'անցնին։ Ակնէն 3 ժամ վարը Հիւտիւի և 10 ժամ վարը Ծնկախի առջև նաւակներ կան որովք ուղևորք և գրաստք մէկ կողմէն միւսն կը փոխադրեն։ Եփրատ խորերէն կ'երթայ և արտօրէից օգուտ մը չունի։ Ջուրն բարեհամ, լաւ ջուր է. հիւանդոտ անձինք եթէ ուզեն թակոյկները կը լեցունեն, կը պարզուի և կ'ըմպեն։

Ակնայ առջևը՝ Եփրատին վրայ կամուրջ մի կայ, որոյ երկու կողմը քարէ որմեր՝ և մէջ տեղերն փայտաշէն են։ Բենկանի հին կամուրջն և Շրչուի և Լիճի առջևի նորաշէն կամուրջներն ևս նոյն թուով շինուած են։ Քաղաքի մեծ և փոքըր ձորերու կամուրջներուն երկու կողմն քարաշէն են. և վըրան գերաններ ձգուած. իսկ Արեգի, Ապուչեխի և Կամարկապի ձորերու կամուրջներուն մեծ մասն ամբողջ քարաշէն են։

Քաղաքիս և մօտակայ գիւղօրէից տուներ մեծաւ մասամբ երկայարկ և եռայարկ են։ Կան միայարկ տներ և քառայարկ, ապարանքի պէս մեծ տներ ալ։ Ներքևի յարկերը քարէ որմերով շրջապատեալ՝ և վերին յարկերը փայտաշէն են։ Վերին թաղի և թաշ տիպիի տուներն մեծաւ մասամբ իրարու վը-

---

**) Այս առթիւ յիշեմք որսի թռչունքն. քօլօլի, Գ ա ր ա  թ ա վ ու գ (սև-հաւ), ս ա ր ը  ս ա մ ա ևայլն։

բայրի կողմը շինուած են, այնպէս որ տանց տանիքներն միանգամայն ճամբայ են։

Պարտէզներն։ Բացի վերին և Թաշ-տիպիի թաղերէն որք պարտէզ չունին, Մնացեալ թաղերն փոքր իշատէ պարտէզներ ունին, որք տուներուն առջևն կամ քովերն են։ Կը գտնուին թութ, սալոր, խաղող, ընկոյզ և գրեթէ ամեն տեսակ պտուղք և բանջարեղէնք, բայց սոքա չեն բաւեր, և մեծաքանակ խաղող Եւայլն գիւղերէն կուգայ։

Շրջակայ քաղաքներն՝ յարևմուտս՝ Տիւրիկէ՝ 12 ժամ, ի հարաւ Արաբկիր՝ 8—9, Կապան-Մատէն՝ 18, յարևելս՝ Չմշկածագ՝ 14, Կամախ (Նախկին Անի ամրոց) 18 և Գուրուչայի գաւառակն՝ 8—9 ժամ կը տևեն։ Իսկ Մալաթիա, Խարբերդ և Երզնկայ՝ 28 ական ժամ, Շապին Գարահիսար և Սեբաստիա 36 ական ժամ են։ Երբ բոլոր ճանապարհները շինուին և կառք բանին՝ նշանակեալ ժամերէն կարելի կ'ըլլայ բաւական զեղչել։

Վիճակագրական։ Բոլոր տունք ի քաղաքիս իբր 2000, կէսէն քիչ մ'աւելին Հայ և Մնացեալն Թուրք։ Բնակիչք իբր 10,000. նոյնպէս մեծագոյն մասն Հայ *)։ Հայոց լեզուն ազգային է։ Եկեղեցիք՝ 2 և վարժարանք՝ 2 (տես յաջորդ գլուխըն)։ Մզկիթ՝ 12 յորոց 5-ն աշտարակաւոր և մնացեալ 7 գմբեթաւոր, 2—3 բաղնիք. խանութք՝ 300 էն աւելի. պանդոկ՝ մի քանի հատ։

Արհեստաւորք։ Ոստայնանկ, կօշկակար, դերձակ, երկաթագործ, դարբին, պղնձագործ և կլայեկ զարնող, ոսկերիչ, ներկարար, խաղախորդ և սեղանաւոր արհեստաւորք՝ նուազ բացառութեամբ՝ բոլորն ալ Հայ են։ Հացագործաց մէկ մասն Թուրք, մէկ մասն Կիւմիւշ-Խանէցի պանդուխտ Յոյներ և մէկ մասն ալ բնիկ Հայ են։ Վաճառականաց, մանրավաճառաց, դեղագործաց և ժամագործաց ալ մեծագոյն մասն Հայ են։

*) Ըստ 1302 (1886) Խարբերդ տարեցոյցի, Ակնայ գաւառակի (հարկաւ Ակնոյ գիւղախումբն ալ միասին) արու Իսլամք՝ (Թուրք և Քիւրտ) 12700. իսկ ոչ Իսլամք (քրիստոնեայք) 5507 են։

Մսավաճառաց և որմնադրաց մեծագոյն մասն կամ կէս առ կէս Թուրք են, հիւսն կամ ատաղձագործք և սափրիչք՝ իբր կէս առ կէս։ Իսկ Նպարավաճառք, մսավաճառք, պայտառք, ջորեպանք և քալակավարք՝ դոյզն բացառութեամբ՝ Թուրք են։ Վարչական, դատական և այլ պաշտօնէից իբր $^3/_4$ն և ոստիկանաց ամբողջն Թուրք են։ Խանութներու մեծագոյն մասն Թուրքաց և փոքր մաս մը Հայոց կը վերաբերին. սակայն վարձակալաց մեծագոյն մասն Հայ են։

Ցորեան, ոչխար, պանիր, իւղ և այլն շրջակայ գաւառներէն, անուխն վերի լեռնէն և Գուրուչայէն և փայտն Նարվերէն և լեռնէն կուգայ։ Հանդերձի կերպասներ, շաքար, խահուէ, օճառ, եւայլն մեծ մասն Կ. Պօլսէն և մասմ'ալ Բերիայէն (Հալէպ) և այլ գաւառներէն կուգայ։

Ակնայ կառավարութիւնը։ Նախկին վօյվոտայէն ու աէրտարէն յետոյ Միւտիրութիւն եղաւ. 30—40 տարի շարունակելէն յետոյ, Կապան-Մատէնի ստորադասեցաւ, որ երկար չըտեւեց։ Յետոյ փոխ-կառավարչութիւն (գայմագամութիւն) եղաւ։ Աղինու գիւղախումբն (Նահիյէ) ալ որ Արաբկերի կը վերաբերէր, Ակնայ կառավարութեան ենթարկեցաւ։ Աղինու միւտիրութիւնն 55 գիւղերէ բաղկացեալ է որ 3—4 փոքր գիւղախմբերու բաժնուած է։ Գիւղօրէից իբր 13-ն (Մաշկեր, Անջրդի, Սաղմկայ, Աղին, Վաղշէն, Ծագ և այլն) հայաբնակ կամ՝ խառն են ընդ Թուրքաց։ Սոյն գիւղեր Արաբկերի թեմ են։ Ակն գայմագամութիւն ըլլալէ յետոյ դատարանն եւս ըստ Նոր օրինաց վերակազմեցաւ։ 2—3 տարի է որ հեռագրական թղթատարութեան պաշտօնեայ կայ. սուրհանդակն (նամակք և ծրարք) Կ. Պօլսէն Տրապիզոն երթալով անտի Եզնկայ և Ակն կուգայ, Ակնէն Արաբկեր և Խարբերդ կ'երթայ և սոյն գծով կը վերադառնայ։ Ակնայ շրջակայքն բաւական ճամբաներ շինուեցան. կը յուսամք թէ մնացեալ ճամբաներն եւս պիտի շինուին, որուն յոյժ պէտք ունի Ակնայ ժողովուրդն։

Գիւղօրայք։ Ակնայ կողմը՝ յարեւմուտս գտնուած գիւղերն են՝ ըստ հայերէն հնչման Սանտուխ, Նարվեր, Զալթու (Մեզրէ ագ-ուշաղը էշրէթի (քուրդ), Ապրանք, Տիլլու, Աղըն Գըզմըշէն, Սարը չիչէկ (լեռն, Քուրդ)․ ի հարաւ՝ Բակեր, Ապուչեխ, Կամրկապ, Կարուշլայ, Արկու, Հարեզնոց, Հարեզնոցի Ագրակ, Քինտիր։ Իսկ Եփրատայ ձախակողմը գտնուածներն են՝ Վանք, Շրզու, Շրզուի Ագրակ, Միջին գեղ, Վան գեղ, Աղըրիկ, Սալահլու, Կաշօ, Զորակ, Մուշեղկան, Փետղան, Կեճէկիւ, Ուռեկ, Եաղուպլու, Աւերակ, Լիճք, Սանախսի, Աթմա, Բաղըշտաշ, Գախճա, Զեօփլէր, Թավուխ, Խասա, Հըզտար, Բօշայի, Կաղըրան, Գոմըսկան, Փաշաղի, Ոսպատ, Արտոս և Սերկևիլ։

Վերոյիշեալ 47 գիւղօրէից 5-ն հայաբնակ են խառն ընդ Թուրքաց, 4-ն հայ-հոռոմ՝ նմանապէս խառն, 4-ն քըրդաբնակ, և մնացեալքն Թուրք են։ Կ'ըսուի թէ քրդաբնակ 4 գիւղերէն 3-ին և Թրքաբնակներէն 5-ին բնակիչք ամբողջովին կամ ըստ մասին Շիի (աղանդաւոր մահմեդական) են։ Գիւղացիք ընդարձակ հող չունին, գրեթէ բոլորն ալ ցորեանի մեծագոյն մասն դուրսէն կը գնեն։ Գիւղացիք եւ՝ քաղաքացւոց չափ՝ պանդխտութեան կ'երթան ի Պօլիս, ուր՝ սովորաբար՝ մսավաճառութեամբ, ածխավաճառութեամբ և այլ արհեստից կըզբաղին։ Գիւղերու Թուրքաց մէջ եւս բաւական հարուստ և կրթեալ անձինք կը գտնուին։

Աշինու գիւղախումբն ալ որ ինչպէս ի վերև գրեցի 55 գիւղերէ կը բաղկանայ, Ակնայ կառավարութեան ենթարկեալ է։ Ակնայ գիւղօրէից բաղդատմամբ Աշինու գիւղացիք բաւական հող և երկրագործութիւն ունին, սակայն անոնցմէ եւս պանդխտութեան գնացողներ պակաս չեն, մանաւանդ հայերը որք Ակնայ և գաւառին Հայոց չափ ի Պօլիս, նաև Բերիա և այլուր պանդխտութեան կ'երթան։

## ԳԼ. Ե.

*Վիճակագրական, Վանօրայք, եկեղեցիք, վարժարանք, կրթ. ընկերութիւնք, առաջնորդք եւ վարչութիւն: Բողոքական ազգայինք, զանազանք:*

Վանօրայք: Ս. Երեւման կամ ս. Փրկիչ (վանք): Եփրատայ ձախ կողմն, Ակնէն 6 ժամ հեռու ի հիւսիս, Ձեօփլէր Թրքաբնակ գիւղի վերեւն լեռան մը մէջ տեղն կառուցեալ է *): Դիրքը՝ բարձր, օդն ու ջուրն՝ առողջարար: Կ'աւանդուի թէ Պլատիկոս կամ Ապլակիտոս, Եւստաքիոս կամ Եւստաթիոս զօրավարին անուամբ շինուած է յամի Տեառն 100—120: Վարք սրբոց Զ հատորին **) թիւ 285-ին մէջ եւս կը գրէ. «Լսեմք թէ ի կողմանս Ակնայ կայ վանք մի. . . թէ ակնեցիք առանձին ջերմեռանդութեամբ պաշտեն զսուրբն Ապլակիտոս, եւ այլն»: Այժմ կայ եկեղեցի մը եւ իբր 8 սենեակ, փուռ, ախոռ եւ այլն: Վանուց վերեւն է ս. Երեւման մատուռն: Սորա շէնքն հին է, բայց եկեղեցւոյ շէնքն մատրան չափ հնութեան երեւոյթ չունի: Կ'ըսեն թէ 50—60 տարի յառաջ Ակնայ վիճակայինք սենեակներ, շէնքեր շինած են: Վերի յարկը Փիշմիշեան թաղըն եւ այլ սենեակներ կային, որք 2—3 տարի առաջ քակուեցան: Վանահայրն է արդի առաջնորդ Յակոբ Ծ. վարդապետ Հոփիկեանն: Մի քանի մշակ եւ սպասաւոր միայն կան: Վանահայրը կ'ըսէր թէ վանուց մատենից մի մասն ի քաղաքիս են, որոց մէջ թէ եւ կան ձեռագրեր բայց հին չեն: Վանքին մէջ կան երկու ձեռագիր աւետարանք, յորոց մին թուական չունի եւ միւսն, ըստ վկայութեան վանահօր 250—300 տարուան է: Վանքն ունի իւր առջեւն 20—25 արտ (20—25 չափ ցորեան

*) Վանուց աջակողմն կը գտնուի «Գոհանամ» կոչուած լեռն ուր կ'ելլեն ուխտաւորք յուխտաւորաց:

**) Անդ, 251—255 երեսին մէջ գրուած է թէ Ապլակիտոս, ալստեղ, եղջեր ու մի եւ ի մէջ եղջերացն խաչն եւ խաչեցեալն է տեսել, հաւատացել եւ մկրտուել է:

ցանելիք), քիչ մը ճէհրիլի տունկ, 50—60 ոչխար։ Ունի նաև եկեղեցական զգեստք և անօթք, որոց մեծագոյն մասն՝ առ ի ապահովութիւն՝ քաղաք բերուած է։ Ի հնումն աշխարհական աթոռակալներ, հոգաբարձութիւն ունէր, այժմ վանահօր ընտրութեամբ հոգաբարձու մի կայ։ Վանքն ունի նաև ի Կ. Պոլիս Վալիտէ խանի վերնայարկը թիւ 54 քարուկիր սենեակ մի որ այժմ տարին 10—12 լիրա վարձք կը բերէ. Սիւմպիւլլիւ խանին սենեկի գետին մը (միւլք) և Ալաճա համամ փլած խանի մը մէջ վերնայարկ սենեակ մի։ Հասոյթներն են՝ վիճակայնոց պտղիի նուէրներն, պսակի հրամանի տուրքն, ուխտաւորաց և զանազանաց նուէրներն։ Հազիւ թէ հասոյթք ծախքերն կը գոցեն։ Ներկայ արժ. վանահօր պաշտօնավարութենէն ի վեր պարտք չի մնար։ Մերձակայ հայաբնակ գիւղն է Լիճ գիւղն որ $1^1/_2$—2 ժամ կը տևէ. Բենկան—3 ժամ։

**Սրուշայի կամ ս. Գրիգոր Նուրէնկոցոյ վանք։** Արակայ գիւղն՝ որոյ բնակիչք (հաւանօրէն 40—50 տուն) թուրք են, առաջ Ակնայ գիւղ է եղեր, բայց այժմ Տիւրիկէի կը վերաբերի։ Ակնէն և Տիւրիկէէն 6-ական ժամ է։ Գիւղին վերեւն է վանքն, իբր 12 մեթր երկայնութեամբ և 10 մեթր լայնութեամբ պարսպով պատած, որոյ ներսն է մատուռն, գաւիթն և մատաղատունն։ Մատրան խորանին վրայ քանի մը փայտով ծածկուած է, միւս տեղերու վրան բաց է։ *) Վանքին հարաւային կողմն մատաղատան կից է գերեզմանատունն։ Դուռսի դրան մօտ կառուցեալ է աղբիւր մի արդեամբ Միսաք Ամիրայի տիկնոջ։ Շրջակայքն ունի բաւական գետին, ուր վրաններ կը կանգնեն ուխտաւորք և մատաղ կ'եփեն։ Ի հիւսիս քիչ մը վար կը գտնուի Զոպնի (չոպանի) գերեզմանն որ ուխտատեղի կը համարուի և որոյ քով մացառ մի, ուր քուրջեր կը կապեն։ Ընդ. հարաւ 2—3 վայրկեան վերեւն կը

---

*) Թուականիս (1887) մատրան և մատաղատան որմունք չինուած, բարձրացուած և վրան ամբողջապէս ծածկուած են։

գտնուի ջուր մի որ «Լուս աղբիւր» կը կոչուի։ Վանքն չունի ոչ կալուած, ոչ անօթ և ոչ պահապան. դուռը բաց է միշտ և Արակացիներէն ոմանք կ՚աւլեն։ Երբեմն Տիւրիկէն և Արաբկերէն ալ ուխտաւորք կուգան, բայց Ակնայ վիճակայինքն են որ յաճախ և բազմութեամբ կը դիմեն այսր։ Լուսնոտներ երբ մատրան վերև 5—10 վայրկեան մնացած՝ առուակը կ՚անցնին և Նարեկացւոյ հողը կը մտնեն, նոցա հիւանդութիւնն երևան կ՚ելնէ, ոմանցն ալ մատրան մէջ մտածնուն պէս կըսկսի և կը տարածին գետնին վրայ։ Լուսնոտ և ախտաժէտներէն շատեր հաւատքով բժշկուած են։ Ուխտաւորք սովորաբար ս. Լուսաւորչայ գիւտ նշխարաց տօնին, Վարդավառին և ս. Աստուածածնայ տօներուն կ՚երթան։ Բազումք հեծեալ և ոմանք հետիոտն։ Հրաւէրով կամ առանց հրաւէրի երբեմն մէկ երկու քահանայ ալ կ՚երթան, կը պատարագեն և մատաղները կ՚օրհնեն։ Կ՚ըսեն թէ խորանին ներքև շէնք մը կայ, հոն է սրբոյն մասունքը։ Ուխտաւորաց նուէրներն՝ քանի մը տարի՝ Նարվէրի Հայոց վարժարանին յատկացեալ էին։ Ի քաղաքիս կայ այժմ հոգաբարձութիւն մի որ համարատու է վարչութեան։ Մերձակայ հայաբնակ գիւղն է Նարվէր գիւղն, իբր 2 ժամ։

**Ուխտագնացութիւն։** Ամենէն մեծ ուխտատեղին է ս. Երուսաղէմ։ Ուխտաւորք աշունն ճանբայ կ՚ելնէին և Մալաթիա, Անթապ, Բերիա, Դամասկոս և անտի Երուսաղէմ կ՚երթային 40—50 օրուան մէջ։ Ձմեռն անդ անցունելով Զատկէն յետոյ կը վերադառնային։ Ասոնք կ՚ըսուէին և կ՚ըսուին Հաճի կամ Մահտեսի (մագտեսի)։ Ոմանք ալ՝ մասնաւորապէս այրերը՝ Մշոյ ս. Կարապետ կ՚երթային Խարբերդու, Բալուայ և Ճապաղջուրի ճանբով։ Կիները՝ Հերովդիադային կին մ՚ըլլալուն պատճառաւ՝ ս. Կարապետ չեն երթար։ Անկէց յետոյ են ս. Փրկիչ, Արակայ և քաղաքիս մօտակայ ուխտատեղիքն։

**Եկեղեցիք եւ քահանայք։** Ի քաղաքիս վերի Թ[illegible]

Աստուածածնայ եկեղեցին որ Թուականէս իբր 40 տարի յ-
առաջ ի հիմանէ վերստին կառուցաւ քարուկիր և սիւնաւոր
Երկայնութիւնն որմերովն $40^1/_2$ վաճառ. կանգ. (=27 մեթ
լայնութիւնը՝ $25^1/_2$ և բարձրութիւնն իբր 15 կանգ.: Հաւա-
նօրէն 5—6 հազար ոսկի ծախք եղած է: Ճարտարապետ
էր Բաբերդցի հայազգի Երանոս վարպետն: Ցետոյ սեբաստացի
հայ նկարիչ մ'ալ պատերուն և ձեղուններուն վրայ պատկեր-
ներ և ծաղիկներ նկարեց: Վարի թաղն է ս. Գէորգ եկեղե-
ցին: Նոր շէնքն 1874-ին սկսեալ և 76-ին լրացած է. բաղ-
դատաբար աւելի ճարտարարուեստ և գմբէթաւոր. երկայն. 3
կանգ. լայն., (մէջտեղը) 16 մեթր. բարձր. նոյնպէս 16 մեթր
Գմբէթին տրամագիծն է իբր 12 մեթր. ծախք իբր 6 հա-
զար ոսկի: Ճարտարապետն էր Բալուայ Սաղամ գիւղէն Յով-
հաննէս էֆ. Տօնիկեան: Ժողովուրդը երկու եկեղեցեաց շինու-
թեան ժամանակն ալ աւազ, քար, ևայլն կրելով աշխատած
է, որ 2—3 հազարական լիրայ և թերևս աւելի կ'արժէ
Ս. Գէորգ եկեղեցւոյ գմբեթն առ այժմ տախտակապատ է
ժողովուրդը մտադիր է որ երբ կարողութիւն ունենայ և
կառավարութենէն հրաման շնորհուի, կապարեայ տախտակո
պիտի պատէ: Ս. Աստուածածնայ եկեղեցւոյ մէջ երեք և ս.
Գ. եկեղեցւոյ մէջ երկու քահանայք կան:

Յիշեմք աստ և գերեզմանատներն որ ս. Աստուածածնայ
եկեղեցւոյ վերի կողմերէն սկսելով մինչ լերան ստորոտը և
հարաւ տարածեալ է: Շուրջը որմն չունի: Ամեն ընտանեաց
համար փոքր միջնորմներով բաժնուած զատ զատ թաղեր կան:

Չմոռնանք նաև ուխտատեղիքն. 1 «Անմահութիւն» (տես
Գլ. Ա). և «անմահութեան ջուրն» որ քիչ մը վերևն է: 2.
«ս. Յակոբ» Թաշտիպիի վերևն, լերան ստորոտն մեծ վէմ մ'է.
3. «ս. Թալալոս» վերի եկեղեցւոյ վերևն՝ գերեզմանատան մէջ
է, երբեմն ժամերգութիւն ևս կը կատարուի: 4. «Ս. Լուսա-
ւորիչ» Արեգի Թաղէ վերևն, որմնապատ, խորան մ'ունի.
«Գիւտ Նշխարաց» տօնին պատարագ կը մատուցուի: 5. «Ս.

Սարգիս. Վանք գիւղի Հայ-Հոռմոց եկեղեցւոյ կից մատուռ մ՚է. տարին մի անգամ պատարագ կը մատուցուի: 6. «Լուս աղբիւր». Ակնայ դիմացն Ցնծալենց պարտէզներուն վերև է:

Վարժարանք *): Ծերունիներէ լսած եմք թէ 70—80 տարի յառաջ քաղաքիս երկու թաղին մէջ ալ կան եղեր 2—3 քահանայ որք իրենց հաշւոյն դպրոց բացած և աշակերտներէն դոյզն ինչ վարձք կը ստանան եղեր: Ուսումն՝ ընթերցանութիւն, գիր և սակաւ ինչ թուաբանութիւն: Յետոյ աշխարհականներէն ալ վարժապետներ եղած են Թարխանա Կարապետ, Զոհրապ վարժապետ, և այլն: Թուականէս 40 տարի առաջ վարի թաղի Ներսիսեան վարժարանին **) համար, ուր կը յաճախէին և վերին թաղէն բազում աշակերտք, հոգաբարձութիւն մը կազմուեցաւ ազդեցիկ անձերէ, որ դրամ հաւաքեց, վարժարանն նորոգեց, դրասեղաններ շինել տուաւ և նոր ուսուցիչներ բերաւ, բայց այս բարեկարգ վիճակ երկար չտևեց: Յետոյ դարձեալ նոր հոգաբարձութիւն, նոր հանգանակութիւն և այսպէս շարունակեցաւ: Հետզհետէ ուսմանց առարկայք՝ աշխարհագրութիւն, տոմարակալութիւն, թուրքերէն, ֆրանսերէն և այլն, աւելցան: Քրիստոնէական, ս. Գրոց և ազգ. պատմութիւն, քերականութիւն և թուաբանութիւն արդէն կային: Վերի թաղի Նարեկեան վարժարանն ալ՝ Ներսիսեանին պէս՝ մերթ անխնամ թողուած և մերթ հոգաբարձութիւն և բարեկարգ վիճակ ունեցած է: Գաւառիս ազգ. վարժարանաց ներկայ վիճակին վրայ տեղեկութիւն մ՚ունենալու համար, 1883 ին Կ. Պոլսէն Ուսումնական խորհուրդէն եկած «Հարցարան»ին՝ Ակնայ ուսումն. խորհրդէն գրուած

---

*) Երբեմն՝ վարժարան, երբեմն՝ դպրոց, երբեմն ալ ուսումնարան կ՚ըսուի:

**) Առաջ ս. Գ. եկեղեցւոյ վրայի կողմն էր. սոյն վարժարանն. 1880-ին քակուելով եկեղեցւոյն առջևը շինուեցաւ աւելի ընդարձակ:

պատասխանէն քաղուած մը կ'ընեմք որ հետեւեալն է։ (Գիւղերուն վերաբերեալն իրենց տեղերը պիտի գրեմք)։

...«Ի. Ժողովրդեան նիւթական վիճակն երբեմն բաւական լաւ էր, իսկ այժմ մի քանի ընդհանուր և ծանօթ պատճառներով խիստ անկեալ է։ Գալով բարոյական վիճակին, առաւել ի լաւ անդր կը միտի։

«Բ. Դպրոցք։ Վիճակիս ազգ. վարժարանք 9-են թուով որոց 5-ը երկսեռ են և մնացեալ 4-ին մէջ որ մանկանց կը վերաբերին, սակաւաթիւ աղջկունք կը յաճախեն։

| | Արու տղայք | Աղջկունք | տար. ծախքն երկու վարժ. |
|---|---|---|---|
| Ի քաղաքիս Ներսիսեան վարժ. | 200 | 80 | 17,700 ղրշ. |
| » (վերին թաղ) Նարեկեան | 180 | 54 | 10,800 |
| » (Արեւելի թաղ) Հայկազ. ծաղկոց | 20 | 5 | 800 |
| | 400 | 139 | 29,800 |

«Գ. Աշակերտք։ Աշակերտաց նուազագոյն տարիքն է 6 և առաւելագոյնն 15։ Ընդհանրապէս 6—7 տարեկան հասակի մէջ վարժարան կը մտնեն և 12—13 տարեկան հասակի մէջ դուրս կ'ելնեն։ Ծնողաց մեծագոյն մասն փոյթ չունին որ իրենց զաւակունք դպրոցական շրջանն աւարտեն։ Պատուհասը դեռ ընդհանրացած չէ աստ և անփոյթ իսկ են առ այս։ Աշակերտաց սնունդը սովորական կերակուր է։ Աշակերտաց հագուստն կէս ի կէս ասիական և եւրոպական են։ Աշակերտաց, քիչ բացառութեամբ բոլոր տարւոյն մէջ ընդհանրապէս 15 օր արձակուրդ կը դրուի։ Դպրոցաց մէջ ուսանողք միայն Հայ են։ (84-էն Վանք գիւղէն 2—3 Հայ-հռոմ տղայք, և Կիւմիւշխանեցի պանդուխտ Յոյներէն 1—2 տղայք ևս կը յաճախէին։) Սեռերըն բաժանեալ են և ծնողք չեն հաճիր որ խառն կրթութիւն ստանան»։ Պատասխանագրոյն մնացեալ մասն վանօրէից, ազգայնոց վիճակին, կրթ. ընկերութեանց, դատաստանաց անուանց կը վերաբերի։ Գալով յայտագրին որ ցարդ գործածելի է, բովանդակութիւնն է հետեւեալն։

«Ա. Ընտելարան կամ Ծաղկոց.—տեւողութիւն 2 տարի։

Բ. Նախակրթարան։ Տեւողութիւն 6 տարի։

**Ուսմանց**։ Կրօն, բարոյական, ազգ. լեզու, ազգ. պատմութիւն, հաշիւ—թուագիտութիւն և հաշուակալութիւն, աշխարհագրութիւն և գեղագրութիւն։ Երգեցողութիւն, մարմնամարզութիւն։ Նաև առողջաբանութիւն, սկզբունք բնագիտութեան, սկզբունք լեզուագիտութեան տաճկերէնի և գաղղիերէնի։ Ընդհանուր աւանդելի դասք ի նախակրթարանի՝ բարոյախօսութիւն և քաղաքավարական պատուէր.—Ազգային երգք.—իսկ եկեղեց. երգեցողութիւնն՝ յարմարաւորաց։—Մարմնամարզութիւն՝ զբօսանաց ժամերու մէջ»։ Կը գրէ նա և «Ամէն վարժարան ունի ներքին կանոնագիր և ժամանակացոյց»։

**Կրթական ընկերութիւնք**։ «Ազգասիրական ընկ.» կազմեալ 1862 Մայիսի 1. Նպատակն է՝ երբ դրամագլուխն (շաբաթականով, նուէրով ևայլն) 1000 հատ օսմ. լիրայի հասնի վարժարան մի բանալ. նաև միմեանց օգնել։ 64—65 ին վարժարան մի բացած են, բայց 1—2 տարի յետոյ գոցուած է։ 73-ին ևս «Լուսաւորչեան» անուամբ վարժարան մի բացին, բայց դրամագլուխն և եկամուտն որոշեալ գումարին հասած չլինելով 1—2 տարի յետոյ գոցեցին։ Ունի իւր ժողովներն ու կանոնագիրն որ վաւերացեալ է։ Այժմ ունի 500 հատ (Դ սէրի) օսմ. նոր գոնսոլիտ 20 Ռուս. երկաթուղ. բաժնետոմս. 30 ոսկւոյ չափ պահանջ ևայլն։ «Ուսումնասիրական ընկ.» կազմեալ 1872. Նպատակն էր շաբաթական և այլ նուէրներով, թանգարանով ընթերցարան մը բանալ։ «Արամեան ընկ.» 78—79 ին ի Կ. Պոլիս Ակնեցիներէ կազմեալ. Նպատակն էր Ակնայ ազգ. վարժարանաց նպաստել։ «Կրթական միութիւն». յիշեալ ուսումն. ընթերց. և Արամ. (սոյն վերջինն դադրած էր). 1882 ին միացան և նպատակ ունեցան ընթերցարան մ'ու աղջկանց վարժարան մի բանալ, բայց անհամաձայնութեան պատճառաւ ակնկալեալ արդիւնքը

չունեցաւ։ Միացեալին դրամագլուխն է իբր 200 ոսկի, մեծաւ մասամբ պահանջ։

**Առաջնորդք։** Ի հնումն առաջնորդք միանգամայն ս. Էրեման վանուց վանահայր են եղեր, և կ՚ըսեն թէ էջմիածնէն կուգային։ Պօղոս եպիսկոպոսէն յետոյ (ՌՃՂԱ—ՂԸ) մինչ Զմիւռնացի Յովհաննէս եպիսկոպոսն մի քանի եպիսկոպոսք պաշտօն վարած են. (Միքայէլ, Ղազար, Գալուստ, Յակոբ և այլն)։ Կէս դարէ և այսր պաշտօն վարող առաջնորդաց անուանքն և՝ վեր ի վերոյ հաշուով՝ թուականներն հետևեալքըն են. Զմիւռնացի Յովհաննէս եպիսկոպոս. Ակնցի Պետրոս վարդապետ. Տիգրանակերտցի Յակոբ եպիսկ. (իբր 1854), Կ. Պոլսեցի Նիկողայոս եպիս. Աղաս. (1861). Ակնցի Յակոբ վարդապետ Հօփիկեան (68—69 էն մինչ 73). Տիգրանակերտցին Բ. անգամ (74—76), Գարեգին վարդ. (յետոյ եպիսկ.) Սրուանձտեանց՝ (78—84), բացակայութիւն՝ 3 տարիէն աւելի. Յ. Վ. Հօփիկեան Բ. անգամ, (85—86), ցայսօր կը շարունակէ։ Իսկ փոխանորդաց անուանքն են. (1860) ս. Գ. եկեղ. Տ. Մկրտիչ քահանայ, Կամարկապցի Տ Կարապետ քահ. (1878), Լիմ անապատի Կիւրեղ վարդ. (1881) և ս. Աստուածածնայ եկեղ. Տ. Նիկողայոս քահանայ։

**Ազգային վարչութիւն։** Կէս դարէ և այսր մերթ ընդ մերթ ժողովներ ունեցած եմք, որք սովորաբար անհաստատական վէճերը հաշտարար եղանակաւ կը կարգադրէին, արքունի տուրքերը կը բաշխէին և եկեղեցեաց ու վարժարանաց վերաբերեալ պատահական գործերը կը տեսնէին։ 1872-ին սահմանադրութիւնը գործադրեցաւ, Գաւառական ընդհ. ժողովն, վարչութեան կրօն. և քաղաք. ժողովներն կազմուեցան, որք՝ նուազ ընդհատմամբ՝ կը շարունակեն ցայսօր։ Յետոյ ընտրուեցաւ ուսումն. և տնտեսական խորհուրդներն և ատ-կան ի քաղաքիս և ի գիւղօրէս ըստ օրինի կազմեալ թաղ. խորհուրդք և վարժարանաց հոգաբարձութիւնք։ Սոյն ժողովք

և խորհուրդք ունին իրենց դիւաններն ու արձանագրութիւններն։ *)

Բողոքական ազգայինք։ 1871-ին քաղաքիս միջին կարգի ազգայիններէն 5—10 անձինք բողոքականութեան յարեցան, յետոյ 1—2 հարուստ և ազդեցիկ անձինք և այլք ևս աւելնալով՝ այժմ 25 տուն կը հաշուուին։ Ունին իրենց ժողովարանն և վարժարանն։ Ի սկզբան և յետոյ ևս երկար տարիներ քարոզիչն (նաև ուսուցիչն) էր Ակնեցի Մարտիրոս պատուելի Իգնատիոսեանն։ Առաջին տարիները ազգայնոց հետ փոխադարձ հակառակութիւնք և վէճեր տեղի ունեցան, բայց այժմ յարաբերութիւնք լաւ են։ Ընտանեկան սովորութիւնք նոյն են, միայն՝ հարսանեաց և այլ խնջոյքներու մէջ՝ սիրահարական երգերն, խաղն, պարերն և օղին արգելեալ են։

# ՋԱՆԱՋԱՆՔ

Ծնունդք։ **) Մկրտութեան արձանագրութեան համեմատ 84-ին սուրբ Գ. եկեղեցւոյ մէջ 80 երկսեռ մանկունք մկրտուած են. 120 ալ ս. Աստուածածնայ եկեղեցւոյ մէջ. գումար՝ 200։

Ամուսնութիւնք։ Միջին թիւն է 30 (զոյգ), մեծ մասն կոյս ընդ կուսի և մնացեալն այրի ընդ կուսի կամ այրի ընդ այրւոյ են։ Ի տղայ հասակի և մինչև իսկ յօրրանի (պէշիք քէսմէ) նշանելն վաղուց վերջացած է, այժմ ամուսնացող երիտասարդաց տարիքն սովորաբար 20—25 և աղջկանցն 15—18 է։ Ամուսնաթողութիւնն հազուադէպ է։ Առևտրոյ և արհեստից բանուկ կամ ուտելեաց աժան տարիներն ամուսնութիւնք աւելի կը կատարուին։ Բայց յետոյ։

*) Երկու եկեղեցեաց քով կայ մէյմէկ առաջնորդարան ուր կը ժողովին Վարչական ժողովք և Խորհուրդք և Թաղ. խորհուրդներն։

**) Վարի Թաղի իբր 500 տանց 200-ն Վերի եկեղեցւոյ ժողովուրդ են։

«Աստուած ողորմած է» կ՚ըսեն։ Թողունք այս խնդիրն որոյ մասին կ՚արժէ սակայն խորհիլ։

Երկայնակեցութիւն։ Վեր ի վերոյ գաղափար մ՚ստանալու համար մեր Թաղէն դէպ ի վար 15, և ի վեր՝ 5=20 հայ տանց բնակիչքն ի գիր առի (84—85-ին) և հետևեալ վիճակն տեսնուեցաւ։

| | | | | |
|---|---|---|---|---|
| Նորածիններէն մինչ | 10 | տարեկան | 26 | հոգի |
| տասն տարեկանէն » | 20 | » | 20 | » |
| » | 30 | » | 11 | » |
| » | 40 | » | 13 | » |
| » | 50 | » | 18 | » |
| » | 60 | » | 7 | » |
| » | 70 | » | 6 | » |
| » | 80 | » | 4 | » |
| | | | 105 | հոգի։ |

Ի սոցանէ 54-ն արու և 51-ն էգ են։ Արուներէն 10 անձինք կան ի պանդխտութեան, որք 20-էն 55 տարեկան են։ Դիտելի է թէ 70-էն 80-ն տարիք ունեցող 4 անձանց բոլորն ալ կին են և 75-էն վեր տարիք ունին։ Մեր Թաղի վարի կողմը գտնուած Թաղէն ալ 20 տանց բնակիչքն հաշուելով քիչ տարբերութեամբ նոյն արդիւնքն ունեցայ։ Քաղաքիս վարի Թաղի բնակիչքն տուն գլուխ միջին թուով 5-ական և վերի Թաղինն $5^1/_2$—6-ական հոգի են։ Վերին Թաղի ազգայինք բաղդատաբար աւելի քաջառողջ են։ 1000 տան 5000 բնակիչ հաշուելով՝ սորա 100-ին 85-ն 50 տարեկանէն վար և 15-ն 50-էն վեր են։ Յիշեալ 10 պանդուխտներու համեմատութեամբ կարելի է 5000-ին 500 պանդուխտներ հաշուել, որոնց մեծագոյն մասն ի Կ. Պօլիս և Ռուսցեալքըն մեզ մօտակայ գաւառներն են։ Կան և ոմանք որ հեռաւոր գաւառաց և երկրաց մէջ են։ Պօլսոյ պանդխտոց մեծագոյն մասն մանրավաճառ (աթթար) են, իսկ Ռուսցեալք հա-

ցավաճառութեամբ, սեղանաւորութեամբ, յանձնակատարութեամբ և այլ գործերով կը զբաղին։

---

## ԳԼ. Զ.

### ՀԱՅՔ ԳԻՒՂՕՐԷԻՑ

#### Ապուչեխ *)

Մեծագոյնն ի գիւղորէս, Ակնայ հարաւային կողմն, Արեգի Թաղի և Ապուչեխի բարձրաբերձ լերանց մէջ տեղն բլրոյ մի վրայ կառուցեալ է։ Տունք՝ 400, կէս առ կէս հայ և թուրք. Կ'ըսուի թէ 40—50 տարի յառաջ հայք 80—100 տուն աւելի էին, բայց հետզհետէ ի Խարբերդ, ի Մարսուան և այլուր գաղթելով և իբր 40 տարի առաջ պատահած մեծ հրդեհէն ալ պակսելով այժմ քանի մը տուն միայն աւելի են ի Թուրքաց։

Հայք։ Գաղթականութիւն Վասպուրականի։ Եկեղեցի՝ 1՝ Վարագայ ս. Նշան. վարժարան—երկսեռ՝ 1, ըստ վերոյիշեալ «պատասխան գրոյն» արու տղայք՝ 90, և աղջկունք՝ 56, դասատու՝ 3, վարժուհի՝ 1։ Տարեկան ծախքն է 9300 դահեկան. ուսումն՝ հայ՝ և տաճկ.։ Ընկերութեանց կարգին մէջ ալ «Գ. Վարագայ սանուց ընկ. Ապչեխ-Զարաղ գիւղի, կազմեալ ի Կ. Պոլիս, 1878, նշանաւոր գործունէութիւն մը ցոյց տուած չէ ցարդ։» Վարժարանին բարերարներէն կը ճանչցուին Ա. Մ. Յովհաննէս աղա Անտոնեան որ ի հնումն՝ առանց աշակերտներէ թոշակ ստանալու՝ վարժարանին ծախքը հոգացած է, և յետոյ 10,000 դահեկան կտակեր է իբրև դրամագլուխ, որ

---

*) Պաշտօնական գրութեանց մէջ հայերէն՝ Ապուչեխ և թուրքերէն Էպճաղա կ'ըսուի, իսկ հայերը «Էպիչէխու» կ'ըսեն։ Ոմանք թուրքաց «Էպջաղա» ըսելէն առնելով կը ստուգաբանեն «Ապա-Ջուղայ»։

սպառելէ յետոյ գիւղացիք 16000 ղահ. հաւաքեր են ընկերութեամբ։ Երկրորդ. Մ. Յարութիւն աղա Փափազեանն որ 100,000 ղրուշնոց 10 տարեկան սէրկի ըսուած Օսմ. արժեթուղթ շնորհած է, որ նոյն ժամանակին 40,000 ղահ. (=400 լիրա) կ'արժէր և տարիկան 6000 ղահ. տոկոս կը բերէ եղեր. յետոյ Գօնսօլիտի վերածուած է, որոյ այժմեան արժեքըն է 100 լիրա։ Թէ այս և թէ յիշեալ հաւաքուած գումարէն մնացածն եկեղեցւոյ հաշուոյն հետ է, յորմէ կը վճարուի վարժարանին ծախքն։ Եկեղեցին ալ ունի ի Պոլիս կալուած և սատ եկեղեցական արծաթեայ զարդ, անօթ ևայլն։

Զարազ թաղը 10 վայրկեան հեռի է գիւղէն, Ակնայ Արեգի թաղի մօտ։ Բնակիչքն են 10 տուն հայ։ Զարազ թաղէն են կ'ըսեն Զարազեան ամիրայքն, և նախնիքն եղբարց Գ. և Մ. Զերազի որք իբրև գրագէտ շատերուն ծանօթ են։

Գերեզմանատունը պարսպապատ է և նորա ծայրը կը գտնուի «Ս. Յակոբ» ուխտատեղի մը։ Կան նաև ս. Սահակ, ս. Մինաս, ս. Թորոս, և Զարազ թաղին մօտ «Մարընտուրիկ» կամ «Մարընտունիկ»։

Հայոց ապրուստի միջոցներն են ըստ մասին պանդխտութիւն և ըստ մասին արհեստք, որք են ե ա զ մ ա ճ ի, ոստայնանկ, կօշկակար, հիւսն, որմնաշէն և այլն։ Գիւղին մէջ կայ փոքր շուկայ մի ուր 1—2 փուռէ և մի քանի հատ խանութներէ բաղկացեալ է։ Պարտէզներն գիւղին երկու կողմն ալ կան, ուր ամեն պտուղ կը գտնուի։ Բերքն է գլխաւորաբար իբր 800 լիտր (որ է 4800 օխա) ճէհրի, թութ, ընգոյզ և այլն։ Պարտէզներուն մէջ ունին ամարանոցներ որոց «Հնծան» կըսեն։

Ապուչեխի Թուրքք ևս նուիթապէս անկեալ վիճակ մ'ունին այժմ։ Ասոնց տուներուն մեծագոյն մասն գիւղին շուրջըն, և մզկիթն ու մաս մը տուներ գիւղին մէջն են։

**Նշանաւոր ազգայինք։** Ապուչեխի ազգայիններէն ի Կ. Պոլիս երևելի հանդիսացած են Փիշմիշեան, Ազնաւուրեան, Անտոնեան, Հովուեան կամ Ճէզայիրլեան, և Ապուչեխի մէջ՝ Թա-

մուրեան, Ակոլեան, Տ. Պօղոսեան, Պէկեան, Արփիարեան և այլ ամիրայքն։ Նաև Փիրիխաննեան, Ֆերուխեան եայլն։ Արփիարեանք՝ որ Վառենք ալ կ՚ըսուին, ներկայ դարուս սկիզբն Փիլիպպոս Ամիրայի օրով յառաջադիմած են։ Փիլիպպոս Ամիրային արհեստաւոր մ՚է եղեր, կ՚ըսէր ծերունի մը (Գլ. Բ.). յետոյ Կապան-Մատէնի սեղանաւոր եղեր, մեծ պատիւ և հարստութիւն շահեր է։ Յետոյ զրպարտուելով Պոլիս կը կանչուի, կ՚արդարանայ և կը վերադառնայ։ Կ՚ըսեն թէ նոյն միջոցին շնորհուեր է «Պուզտան-Պէյի» ի սատիճանն։ Երբ Մատէնէն յԱպուչեխ կամ գիւղէն յԱկն այցելէ, հետն չափուշներ ունի և առաջքէն թմբուկ (տէնպէլէկ) կը զարնուի եղեր։ Կը թողու 5 որդի, յորոց Արփիար Ամիրային կը յաջորդէ հօրն։ Յետոյ նոյն պաշտօնն կը վարեն Փիլիպպոս Ամիրայի միւս որդիքն՝ Մ. Մանուկ և Մ. Գասպար Ամիրայքն։ 40 տարիէն աւելի է որ ընկած են. միայն ի Խարբերդ Մ. Գասպար Ամիրայի թոռունքն կան։ Կան նաև ի Պոլիս Արփիար էֆ. Արփիարեան և եղբարքն (Ալիքսան և Տիգրան էֆ.) որք իբրև գրագէտ բազմաց ծանօթ են։

### ԿԱՄԱՐԿԱՊ ԿԱՄ ԿԱՄՐԿԱՊ

**Գաղթականութիւն**։ Հաւանօրէն Կամարկապցիք ևս Վասպուրականի գաղթականութեան կը վերաբերին. յետոյ Տերսիմ-Օվաճըգի և Չարսանճագի կողմերէն ալ բաւական Հայեր եկած են։

**Վիճակագրութիւն**։ Ակնայ հարաւային կողմն Ապուչեխի լերանց արևելեան մասին ստորոտն կառուցեալ է։ Տունք Հայոց՝ 150, Թուրքաց՝ 25—30. (Թուրքք մզկիթ մ՚ալ ունին)։ Եկեղեցի «ս. Աստուածածին», քարուկիր և միջակ մեծութեամբ. իբր 50 տարի առաջ վերանորոգեալ՝ գիւղին կեդրոնն է։ Քահանայ՝ 2. գիւղին մէջ կայ նաև քարուկիր մատուռ մը՝ «ս. Գէորգ», որ ի հնումն «Անապատ» ալ կը կոչուի եղեր։ Գերեզմանատունն որ գիւղին արևելեան կողմն է, բաւական [illegible]

Վարժարանն՝ Նախնթաց «Պատասխանին» տեղեկագրին համեմատ՝ «Արամեան», արու տղայք՝ 78, աղջկունք 54, դաստատու՝ 5, վարժուհի՝ 1, տարեկան ընդհ. ծախք՝ 11.000 դահ. ուսումն՝ հայ. տաճկ. թուաբանութիւն, աշխարհագրութիւն, եւայլն։ Ընկերութիւնք՝ (Ազքանազեան, Դպրոցասիրաց եւ Յոյս ի պսակ) 1879-ին միացեալ. Նպատակն է ընթերցանութեամբ պարապիլ եւ վարժարան մի բանալ։ Եկեղեցին եւ վարժարանն ունի, կ'ըսեն, ի Կ. Պոլիս 20—25 հատ խանութ՝ որոց մեծ մասն եկեղեցւոյն անուամբ եւ փոքր մասն մասնաւորաց անուամբ արձանագրեալ են պետական արձանագրութեանց մէջ։ Ասոնց արժէքն է՝ 2—3 հազար լիրայ, եւ տարեկան եկամուտըն՝ 200 ոսկւոյ կհասնի, յորմէ վարժարանին ու եկեղեցւոյ ծախքերն կը հոգացուին։ Եկեղեցին ունի նաեւ արծաթեայ զարդ եւ զգեստներ։

Նիւթական վիճակ։ Դեռ 20—30 տարի առաջ բաւական հարստութեան տէր 10—15 անձինք կը գտնուէին, բայց այժմ հազիւ թէ 3—4 հարուստ գտնուին։ 50 տարի առաջ Հայերն 200 տունէն աւելի են եղեր, բայց ի Պոլիս, յԱմասիա եւ այլուր գաղթելով եւ 1880-ին ս. Յակոբայ թաղն հրոյ ճարակ լինելուն այժմ 150 տուն մնացած է։ Բերքն է 7—8 հարիւր լիտր ճէհրի, նաեւ թութ, ընգոյզ եւ այլն։ Գիւղացիներէն շատերը ի Պոլիս կը պանդխտին եւ մնացելոց մէկ մասն ալ հիւսն, որմնաշէն եւ այլ արհեստաւորներ են։

Ուխտատեղիք։ Աւագ երէց Տ. Կարապետ քահանայն կը պատմէ թէ ի հնումն Կաղանդին օրը գիւղին հարսները ժողվուելով կը հագուին, կը շքուին, իւրաքանչիւրը ձեռքը մէկմէկ մկրատ՝ բռնած գիւղին ներքեւ տէօրթ լիւլէ (Չորս ծորակ) ըսուած տեղը կ'իջնեն եղեր, ուր ջուր մը կը վազէ, եւ հետեւեալը կ'երգեն։

«Ջրին բարին, ջրին մորին.

Անդնդային Թագաւորին. *)

Ջուր կապընտմը եա։

Եւ վերջին խօսքին հետ միրատոմէն ջուրը կտրել կը ձևացնեն եղեր։ Իբր հարիւր տարի յառաջ աւագ երէց Տէր Գրիգորին արգիլմամբ այս սովորութիւն՝ իբրև հեթանոսական դադարած է։

Եկեղեցիք։ Ս. Թորոս. գիւղին վերևն իբր կէս ժամ։ Ներսէս Շնորհալի կամ «Վզայի եղկեցի». Վզայի լերան անդիի կողմըն է. քարէ շրջապատ մ'ունի։ Ս. Յակոբ. գերեզմանատան մէջն է, խորան մ'ունի։ Ս. Խաչ. մերձ յԵփրատ, օծեալ քար մ'է. 81-ի հեղեղն քշած տարած է, ուխտատեղին կայ։ Ս. Նիկողոս կամ Խորշուքի եկեղեցի. ս. Յակոբայ կողմն է. «Որձնուտ» ի այգեստանաց մէջ քարի մ'ստորոտն է. քովն ջուր մը կայ, ուր ուխտի կ'երթան մորթային հիւանդութեանց ի դարման։ Ուխտաւորք ջրին մէջ հաւկիթ կը թաղեն իբր «նուէրք»։ Ս. Սանդուխտ. Ս. Աստուածածնայ եկեղեցւոյն մէջ, յաջակողմն, ստորերկրեայ նկուղի մը մէջ։ Աստ կը հանգչի կ'ըսեն Սանատրուկայ դստեր Սանդուխտ կուսին ոսկերքն։ Աչքի հիւանդութիւն ունեցողներ կը դիմեն այսր։ Խամիրխաթուն գիւղէն առջևը պարտէզներու մէջ է։

Երևելի անձինք։ Այս գիւղէն իբրև ազնուական՝ Տատեան գերդաստանն կը յիշուի, որ Պեռենք կ'ըսուին եղեր. ըստ ոմանց՝ Պեռոզենք։ Իբր մի դար առաջ Հաճի Տատ որ է մահտեսի Տատ Ամիրայն ի Պոլիս գաղթելով, արքունի Վառօդապետութեան պաշտօնին հասած է։ Նորա յաջորդած են եղբայրն Սիմօն և որդիքն Յովհաննէս և Պօղոս պէյերն, որք դեռ 20—30 տարի առաջ նոյն պաշտօնն կը շարունակէին։ Յովհաննէս պէյի որդւոց մէջ վսեմ. Յարութիւն էֆէնտին քանի տարիէ ի վեր արտաքին գործոց նախարարի խորհրդականութեան բարձր պաշտօնն ունի։ Սոյն ընտանիքէն կան

*) Տես նաև Մասն Բ. Գլ. Ե. «Անդնդային ծառ մի կար»։

և այլ պէյեր որք պետական զանազան պաշտօններու մէջ կը գտնուին։ Կամարկապէն կան և այլ երևելի անձինք՝ Աշնանեանք և այլն։

## ԿԱՐՈՒՇԼԱՅ

Քաղաքէս իբր կէս ժամ ի հարաւ՝ Կամարկապի մօտ է։ Բնակիչ՝ 40 տուն Հայ և 20 տուն Թուրք, որք մզկիթ մ'ունին։ Եկեղեցին՝ «Զարխափան ս. Աստուածածին»՝ միջակ մեծութեամբ և քարուկիր է, իբր 60 տարի առաջ վերանորոգեալ։ Ունի 'ի Կ. Պոլիս 2—3 խանութներ որոնց հասոյթներովը եկեղեցւոյ և քահանային ծախքերը կը հոգացուին։ Քահանայ՝ 1։ Ըստ Նախընթաց տեղեկագրին «Վարժարան ծաղկոց» ս. Սահակեան, տարեկան ծախք՝ 2000 դահ. ուսանողք՝ արու 9, աղջկունք՝ 10, ուսուց՝ քեր. Թուաբան. քրիստոնէական։ (Զարգացեալք Կամարկապու վարժարանն կը յաճախեն)։ Դաստուն յիշեալ քահանայն է։ Բարոյքն ու սովորութիւնքն նոյն են ընդ Կամարկապու։ Նիւթական վիճակն ևս միջակ է։ Բերքն է գարի, թութ և այլն։ Կան բաւական պանդուխտ։ Գիւղին մէջ գտնուողներն ոմանք արհեստաւոր և ոմանք գործաւոր են։

**Ուխտատեղիք**։ Ս. Կոզմոս և Դամիանոս որ ա. Ջուխտակ՝ ալ կ'ըսուի եղեր, Կարուշլայի և քաղաքիս Արեգի թաղի մէջտեղը. բլրակի մը կամ ապառաժի մը վրայ, չեչ քարով կառուցեալ 2 խորանով փոքր եկեղեցի մ'է։ Վերնայարկ ևս ունի, ուր 2 խորան կայ, բայց վրան բաց է։ Կը կարծուի թէ 6—700 տարուան շէնք մ'է. ոմանք կ'ըսեն թէ շէնքին կէսն յետոյ շինուած է։ Քովը ունի մասի տուն մի և մատաղատուն մի, նաև ընդարձակ գետիններ ուր է և գերեզմանատունն Կարուշլայցւոց։ «Ս. Կոզմոս» թէ՛ ջերմի համար ուխտատեղի է և թէ՝ իբրև կեդրոնավայր՝ Ակնայ ազգայնոց հանդիսավայր և զբօսավայր է։ «Զարխափան». գիւղին վերևն, մեծ ճանբուն ստորևն, քարով շրջապատեալ տեղ

մ՚է։ Քովը մնացած մի կայ ուր քուրջեր կը կապեն։ Մոքոս Թագաւոր *) Խորու-ձորով Կարուշլայէն ի Կամարակապ գընալիք ճանբուն վրայ, ձորոյն քով, Կարուշլայի կողմն տապառած քար մ՚է։

## ՆԱՐՎԵՐ **)

Քաղաքիս արեւմտեան կողմն 3—4 ժամ հեռի է այս գիւղըն, որ Եփրատայ աջ եզրէն կէս կամ 1 ժամ վերեն է։ «Նաւվեր» կը ստուգաբանեն որ հաւանական է։ Բնակիչք՝ 25 տուն Հայ և 10 տուն՝ Թուրք։ Եկեղեցի՝ ս. Մինաս. քահանայ՝ 1։ Ըստ «պատասխան» տեղեկագրոյն՝ «Վարժարան» (ծաղկոց) Սըմբատեան. աշակերտք—տղայ՝ 15, և աղջկունք՝ 5. Ծախք 1200։ Դասատու՝ 1 (գիւղին քահանայն է). ուսումն—Նախապատրաստական և ընտելարանի դասեր։

Նարվեցիք պանդխտութեամբ և երկրագործութեամբ և ոմանք ալ կաղնւոյ փայտ վաճառելով կ՚ապրին։ Փայտն Ակնեցի Թուրք քալակավարք (քէլլէքճի) կը գնեն և քաղաք բերելով կը վաճառեն։

[illegible]» Գիւղին առջեւ՝ 10 վայրկեան հեռի՝ ս. Աստուածածին անուամբ եկեղեցւոյ աւերակ մը կայ. կըսուի թէ Թադէոս առաքեալ կառուցած է «Գետահայեաց ս. Աստուածածին» անուամբ, և իբր 150 տարի առաջ գիւղին եկեղեցին այն է եղեր։ Այս մատուռ պարտէզի մը մէջ է որ դամբարանն է գիւղին քահանայից։ Աստ կայ մի գերեզման «ս. Յակոբ» անուամբ։ Խաչաղբիւր և Խնդրակատար անուամբ երկու ուխտատեղիք կան որք գիւղին շրջակայքն են, և ս. Նիկողայոս և ս. Թէոդորոս՝ որ Եփրատայ եզերքն են։ Անկէ 5 վայրկեան վեր, գետին եզերքն «Նաւ տուն» անուամբ քա-

---

*) «Մոքոս» մեծ ըսել է, կըսեն. դարբինք և որմնադիրք եւ մեծ մուրճ մ՚ունենն զոր «մոքոս չաքուճն» (չէքիճ) կը կոչեն։

**) Նարվերցի էր «Ինճէ» մականուանեալ զինավարժ և քաջ ազգայինն՝ որ երկար տարիներ մաքառեցաւ շրջակայ Քրդաց հետ։

րայր մը և Եփրատայ միւս կողմը (ի Մեծ Հայս) տանց աւերակք կան, որոց վերևն է «Սոսեկ»ի մատուռն։ Նարվերէն 1 ժամ է «ս. Նիկողայոս» որ լերան մը գագաթն է և ուր ուխտի կ'երթան կարմիր գլուխ (Շիի) Քրդեր և երբեմն Թուրքք, որք «Ջիյարէթ Թէփէսի» կը կոչեն. Հայոց պէս՝ մոմ կը վառեն և ըստ սովորութեան՝ իրենց հանդերձէն քուրջ մը կը փրցունեն և հոն գտնուած ծառին վրայ կը կապեն։ Երբեմն ալ կտոր մի դերձան կը կապեն։ Հայք այս սովորութիւնը դադրեցուցած են։ Նարվերի և Ապրանքի մէջտեղն է «ս. Սարգիս», ուր գետինն քարին վրայ պայտի նշան մը կայ, զոր կը համբուրեն։ Նարվերէն 2 ժամ կը տևէ Արակայի ս. Գ. Նարեկացւոյ վանքն։ Վանուց և Նարվերի մէջտեղն արոտակ (արտուճի պէս) ծառ մի կայ, զոր նուիրական կը համարին Հայք և Քուրդք և որոյ վրայ ևս կապ կը կապեն։ Ասկէ 5 վայրկեան հեռու, կայ աւերակ եկեղեցւոյ տեղ մը որ «Սենեկներ» կը կոչուի և կ'ըսուի թէ Սենեքերիմ Արծրունի թագաւորն կառուցած է։ Նարվերի այգեաց (պարտէզ) մէջ կան ս. Խաթունիկ և ս. Ճամամ ուխտատեղիքն ևս. նաև աղբիւր մը զոր Հայք և Թուրքք ևս «Դրախտ» կը կոչեն։ Գիւղին վրայի կողմը, լերան բարձունքը, ապառաժին գագաթն քարաշէն տեղ մը կայ «Բերդ» կոչեցեալ. սորա ստորոտն աւերակ տանց հիմունք կան, որք «Աւեր-տնուիք» կ'ըսուին։ Աստ նիզակ, նետ և այլ զէնք և գործիներ կը գտնուին երբեմն։

Նարվերէն կէս ժամ է Ապրանք գիւղն որ Թուրքաբնակ և 60—70 տներէ բաղկացեալ է։ Աստ կայ աւերակ եկեղեցի մը և կամարակապ շէնք մը։ Կ'ըսեն թէ քանի տարի յառաջ յիշատակարանով քար մը գտնուած է։ Շրջակայքն կան Փարախ, Խաչուկ օղլի, Թարան (դարան) պաղլարը և այլ հայկական անուամբ տեղեր։ Վերոգրեալ տեղեկութիւնքն գիւղին Տ. Գրիգոր քահանայէն առնուած է։

## ԼԻՃ ԿԱՄ ԼԻՃՔ.

Ակնայ արևելեան կողմն ի Մեծ հայս, 8 ժամ, Եփրատէն իբր 3/4 ժամ վերևն դաշտավայրի մը մէջ գիւղ մ'է, որ Փշատիի գիւղախմբին կեդրոնն է։ Բնակիչ՝ 70 տուն հայ և 30 տուն Թուրք։ Ունի 1 եկեղեցի և մի քահանայ։ Ըստ պատասխ. տեղեկագրոյն՝ վարժարան՝ Հայկեան, տղայք՝ 30, աղջկունք՝ 10, ծախք՝ 900 դահ., դասատու՝ 1, ուսումն՝ հայերէն, Թուաբան. աշխարհագր. ևայլն։ Լճեցի մը կ'ըսէր թէ գիւղն սալորկապ գերեզմանք կան։ Կը կարծուի թէ Ուռեկ, Կաղըբան, Արտոս և այլ շրջակայ գիւղօրէից մէջ ի հնումն Հայ բնակիչ կան եղեր, զի եկեղեցւոյ աւերակներ կան և շատ տեղեաց ու արտերու անուանք հայերէն են։ Գիւղացի Թուրքք կ'ըսեն եղեր «Ինէկի մուսուրա պաղլատը՞ն մի» (այսինքն՝ կովը մսուրը կապեցի՞ր)։ Լճեցիք ի հնումն ի Պօլիս ջաղացպանութեամբ և հացագործութեամբ կը պարապէին և նիւթական վիճակնին լաւ էր, բայց այժմ անկեալ կը համարուին։ Մէկ մասն պանդխտութեամբ և մէկ մասն գիւղին մէջ երկրագործութեամբ և առևտրով կ'ապրին։

## ԲԵՆԿԱՑ ԿԱՄ ԲԷՆԿԱՆ *)

Ակնայ հիւսիսային կողմն, 6—7 ժամ հեռի, ի Մեծ Հայս, յեզեր Եփրատայ կառուցեալ 160 տուներէ բաղկացեալ հայաբնակ գիւղ մ'է, որ ըստ ազգ. վարչութեան՝ Ակնայ, և ըստ քաղաք. կառավար. Տիւրիկէի կը վերաբերի։ Ի Կ. Պօլիս, հանրածանօթ Սոեփան էֆ. Փափազեանի նախնիքն այս գիւղէն են։ Գիւղէն 5 վայրկեան հեռի է Ռապատ գիւղն՝ յեզեր Եփրատայ, մի քանի տուն Թուրք բնակչօք։

---

*) Մարթ է ասել թէ ի սոյն դարս էր և բանիբուն վարդապետն Բանիկ կամ Բենիկ ասացեալ, որ արար զպէսպէս ճառս, և այլն. «(Զամչ. հատ 3, երես՝ 244, թ. 1251)։ Նաև ի ցանկն Զամչ. երես 139, «Բանիկ անեցի, բ. 1005»։

Բենկանի վերաբերեալն գրելու համար գիւղին արժ. Տ. Ցակոբ քահանային գրած էի և նա 84 թ. օգոստ. 13 նամակաւն պատասխանած էր, զոր նոյնութեամբ ի ստորև կը գրեմ։

«1. Գաղթականութիւն.—Այնպէս կ'աւանդուի թէ Սենեքերիմ թագաւորին իշխաններէն Բենիկ այս գիւղ շինել տուած է, թերևս Անիէն կամ Վասպուրականէն եկող գաղթականաց ի բնակութիւն, որք հետզհետէ բազմացեր են Ջմշկածագէն, Բալուէն և այլ տեղերէ եկած գաղթականութեամբ։

2. Արդի կացութիւն. — Ազգային. սկիզբէն ի վեր մեր Նախնիք ինքնապաշտպանութեան և քաջասրտութեան մեծ փորձեր տուած են. անոր ապացոյց է, մինչև ցայժմ Քրդաց (Օվաճըգ-Տերսիմի) տուրք չի վճարելնին, որոց համար Բենկայ իւր շրջակայ գիւղօրէից մէջ միմիայն է. իսկ զալով դաստիարակութեան, այս մասին ալ Բենկացիք սկզբէն մինչև ցայժմ մեծ փոյթ տարած են. սորա ապացոյց ևս կրնայ լինել այն ընկերութիւններ որք սոյն նպատակաւ կազմուած են, և ներկայն բաւական գոհացուցիչ է։

Տնտեսական վիճակն նախ քան զանկումն արժէնթղթոց բաւական լաւ էր. ներկայն գոհացուցիչ. մեծ մասն երկրագործութեամբ կըզբաղին, մաս մի պանդուխտ են և մաս մ'ալ կալուածատէր. իսկ քաղաքականն Տիւրիկոյ գայմագամութեան ներքև միւտիրութիւն է զոր կը վարէ գիւղիս երևելի ազգայիններէն մին. (Մեծարեան կամ Մեծատուրեան)։

3. Եկեղեցի և ուխտատեղի, վարժարան, աշակերտ և ուսումն.—Գիւղս ունի երեք եկեղեցի. մին Ս. Հրեշտակապետ՝ գիւղին մէջ, իսկ երկու հատ՝ Ս. Աստուածածին և Ս. Երեք Մանկունք յայնկոյս Եփրատայ, մին տասն, միւսն քսան վայրկեան հեռի գիւղէն. երեք ուխտատեղի գիւղի մէջ և մէկ հատ գիւղէն դուրս։ Գիւղէն կէս ժամ հեռի Եփրատայ եզերքի վրայ կայ մի փլատակ որոյ համար կ'ըսուի թէ եկեղեցի եղած է։

Վարժարան երկու. մին մանկանց ս. Մեսրովպեան, միւսն աղջկանց Նունեան՝ յորս կը յաճախեն 110 մանկունք և 30 աղջկունք. կ'աւանդուին հայերէն, թուրքերէն, Փրանսերէն, կրօնագիտութիւն, պատմութիւն, աշխարհագրութիւն, թուագիտութիւն, բնագիտութիւն, երաժշտութիւն և մարմնամարզութիւն. դպրոցաց ներկայ վիճակը բաւական գոհացուցիչ է *)։

Դ. Հնութիւնք.—Ս. Հրեշտակապետ եկեղեցւոյ մէջ կան մի քանի մագաղաթեայ աւետարան և մաշտոց յորոց մին կը կրէ հայոց Գ. Թուականն և որոյ վերջն գրուած է հետևեալն զոր աստ կ'օրինակեմք։ (Յիշատակարանն տես գլ. Ժ.)։

---

## ԳԼ. Է.

### ՀԱՅ-ՀՌՈՄՔ.

Ա. Գլխոյն մէջ Հայ-Հռոմոց նկատմամբ գրուածներէն կարելի է ենթադրել, թէ ասոնք Ակնայ միւս բնակչաց հետ Վասպուրականէն գաղթած են կամ բնիկ Հայ լինելով, ապա յունական հալածանաց ժամանակ անոնց դաւանութիւնն ու ծէսն ընդունած լինին, հայ լեզուն, սովորութիւնքն և անուանքն իսկ պահելով։ Ըստ Ինճիճեանի, ասոնց քահանայից զգեստն հայկական եղածեն, սակայն թուի թէ, յունանալու ըղձիւ կամ Մետրոպոլիտաց պատուէրներով, քահանայից տարազն այժմ յունական է **), ինչպէս որ հայկական անուններն հետզհետէ տեղի կուտան յունականին։ Վերոյ գրեալ փոփոխութեանց պատճառ կրնան համարուիլ՝ ըստ մասին՝ այլ և այլ քաղաքներէ

---

*) Ըստ «պատասխ.» տեղեկագրոյն կը յաւելումք. «դասատու՝ 5, ծախք՝ 10,000 դահեկան»։

**) Հայ-Հռոմք ցայսօր իրենց քահանայից «պապա» (հայր) կ'ըսեն և կնոջն «պապա կին»։ Հայք քահանայից «տէր-պապա» և կնոջն՝ «իրիցս կին» (=երէց-կին) կ'ըսեն.

եկող ու գիւղն ամուսնացող Յոյնք՝ որք հայերէն չգիտեն և բնական է որ սիրեն իրենց որդւոց յունական անուններ դնել և յունարէն խօսիլ, և ըստ մեծի մասին՝ գիւղացւոց 'ի Կ. Պօլիս պանդխտութիւնն և Յունաց հետ ունեցած խնամութիւնքն։ Պէտք է յաւելուլ թէ, երբ յիշեալ յոյն փեսաները տակաւ առ տակաւ ընտանեկան լեզուին՝ հայերէնին կը վարժուին և կը խօսին։ լսած եմ թէ Հայ-հոռոմներէն շատ երիտասարդներ ալ 'ի Պօլիս յունական կրթութիւն ստանալով մոռացած են կամ մոռանալ կ'ուզեն իրենց հայկական ծագումն.

Հաւանական է թէ հին ատենները այլ գիւղօրէից մէջ ևս Հայ-Հոռոմ գտնուած ըլլան և ապա գաղթած (Տես Գլ. Ա.) կամ թուրքացած (Տես Նարվերի մօտ Ապրանք գիւղի Արստօլ օղլու եայլն), սակայն այժմ միայն չորս գիւղ մնացած են, որք են՝ Վանք, Զորակ, Տրզու, Մուշեղկայ, որք Տիգրանակերտի յունական լծեմին կը վերաբերին։

Վանքի եկեղեցւոյն մէջ ծէսերը յունական են, սակայն ընթերցուածոց բոլորն ալ յայսմաւուրք, մաշտոց, ժամագիրք, պատարագի խորհրդատետր յունականէն 'ի Հայ թարգմանեալ են։ Մաշտոց և ժամագիրքն տպագրեալ, իսկ խորհրդատետրն և յայսմաւուրքն ձեռագիր են։ Աւետարանն և Աստուածաշունչի մի մասն հայերէն և ձեռագիր, իսկ Սաղմոսն հայերէն տպագրեալ։ Կայ նաև վերոյիշեալ ս. Գրոց յունարէնն տպագրեալ։ Այսպէս, երբ ընթերցողն յունարէն գիտէ, յունարէն մատեանքն, և եթէ չգիտէ՝ հայերէնն կ'ընթեռնու։ Եկեղեցւոյ մէջ հայերէն ընթերցանութիւնքն այնպիսի արտասանութեամբ և եղանակաւ մ'է որ յունարէնի կը նմանի, և անվարժ անձինք դժուարաւ կը հասկանան։

Ինչպէս վերը ըսինք, Հայ անուանք տակաւ կը փոխուին. 20—30 տարի յառաջ դեռ կը գտնուէին Պետրոս, Գէորգ, Ղազար և այլ անուններ, բայց այժմ Բեթրօ, Եօրկի և այլն կը գործածեն և հազիւ կը գտնուին։ Հայ անուանք, ինչպէս է Նշան և այլն։ Մխիթարական է սակայն թէ, իրենց նամակ-

*ներն, տօմարներն, ընտանեկան խօսակցութիւնն, բոլորն հայերէն են, և վարժարանաց մէջ հայերէնն՝ իբրև մայրենի լեզու կ'ուսուցուի, սովորաբար հայ դասատուներէ որք քաղաքէն կ'երթան։ Իրենց ընտանեկան հայերէնն ըստ բառից և ըստ արտասանութեան կը տարբերի վիճակային ազգայնոց լեզուէն։*

*Արանց զգեստն յար նման է Ակնայ Հայոց, բայց կանանց զգեստն սակաւ ինչ կը տարբերի, և պճնասէր համարուած են։ Կերակրոյ մասին կ'ըսուի թէ Հայոց չափ հոգ չեն տանիր։ Գողովա *) կոչուած տեսակ մը ուտելիք ունին զոր կը պատրաստեն ձաւարէ, ընկոյզով և շաքարով խառն, և վրան նուշով և նուռով կը զարդարեն։ Կարծեմ, սովորաբար ննջեցելոց յիշատակութեան առթիւ կը պատրաստեն գողովան։*

*Զորս գիւղօրէից Հայ-Հոռոմք ըստ վարուց և ըստ բարուց, փոքր 'ի շատէ կը տարբերին 'ի միմեանց. Վանեցիք և Զորեցիք աւելի կրթեալ և ազնուաբարոյ են։*

*Այս երկու գիւղերն շատ հարուստ սեղանաւորաց և երեւելի անձանց հայրենիքն է։ Տրզուցիք՝ միջակ վիճակ մ'ունին, իսկ Մուշեղկացիք պարզ գիւղացիներ են։*

*Այս ընդհանուր ծանօթութիւնքն տալէ յետոյ, անցնինք իւրաքանչիւրին նկարագրութեանն։*

## Վ Ա Ն Ք.

*Ակնայ հիւսիսային կողմն Սանտգպաղի թաղին դիմացն, 'ի Մեծ-հայս, Եփրատէն հինգ վայրկեան վերև գիւղ մ'է։ Բընակիչ՝ 40 տուն Հայ-Հոռոմք և 5—10 տուն Թուրքք։ Դեռ 25—30 տարի յառաջ իբր 80 տուն բնակիչ ունէր, բայց երկիցս հրկիզմամբ՝ 10—20 տուներէ զատ բոլորն այրած և յետոյ վերստին շինուած է։ Գիւղին եկեղեցին՝ ս. Գէորգ, Եփրատայ եզեր-*

---

*) Կուլիբաչ, կամ կոլիվաչ, ի, իգ. գոյ.=(Յունարէն) հատիկ-ցորեն խաշած։

քը ապառաժի մը վրայ կառուցեալ է. ըստ յիշատակարանին, Փրկչի 1722 և Հայոց ՌՃՀԲ Թուականին նորոգեալ: Քահանայ՝ երկու: Հաւանականաբար, 'ի հնումն վանք մ'է եղեր, և սորա անուամբ գիւղն Վանք կոչուած է: Եկեղեցւոյն դրան կից կայ ս. Սարգսայ մատուռ մի որ Հայոց կը վերաբերի և ուր տարին մի անգամ՝ քաղաքիս ս. Գ. եկեղեցիէն քահանայ կ'երթայ և կը պատարագէ: Գիւղին մէջ է վարժարանն որ երկսեռ է. *) Ծախքն եկեղեցիէն: Հետևեալ տեղեկութիւնքն գիւղացիներէն առացուած է: Գիւղին վերև ապառաժ լերան ստորոտն կայ տեղ մը որ կ'ըսուի «Բերդ» և ուր կը գտնուին տանց հիմունք և քարէ սիւնք: Ըստ աւանդութեան, անդ կը բնակին եղեր եօթը տունք՝ որք յետոյ իջած, կազմած են այժմեան գիւղն: Այս բերդէն դէպ 'ի հիւսիս Տրզուի կողմն կայ այր մի որ կ'ըսուի Ճայ քարար (քարայր): Կայ նաև Մութքարայր որ «Ալայի մաղարա» կ'ըսուի և որ Տրզուէն Մուշէգկան գնալիք ճամբուն վրայ է, լերան ստորոտն: Կ'ըսեն թէ այս այր այնչափ ընդարձակ է որ ծայրն գտնուած չէ, թէ այրին մէջ աքաղաղ մի թող տուած են, որ Կարին քաղաքէն դուրս ելած է, և թէ՝ հովիւ մի մտած է այրն և կորսուած է: Կայ յայրին աւազան մը ուր կ'երթան ալայ (մորթին վրայ ճերմակ կամ թուխ բիծեր) ունեցողք. ախտաւորք կը լուացուին և կը բժշկուին: Սոքա պարտին կամ իւրեանց շապիկը և կամ քանի մը փոքր ձգել յաւազանն 'ի նուէր: Գիւղին վերև մորիներու մէջ կայ ուխտատեղի մը որմնապատ, որոյ մէջ կայ քարէ պատկեր:

Այս գիւղէն շատ երևելի անձինք կը յիշուին, ինչպէս է ներկայ դարուս մէջ ի Կ. Պօլիս իւր հարստութեամբ ու պատուով հռչակեալ սեղանաւոր Անաստաս աղայն: Թէ Վանեցւոց և թէ միւս երեք գիւղօրէից ապրուստն ըստ մասին պանդըխ-

---

*) Դասատու՝ 2. մին կրտսեր քահանայն է և միւսն Հայ դասատու մ' է ի քաղաքիս.

տութեամբ և բառ մասին՝ արհեստով և առևտրով կը հոգացուին։

## ԶՈՐԱԿ

Ի Մեծ-Հայս, Ակնէն մի ժամ հեռի 'ի հիւսիս-արևելս։ Բնակիչք՝ 10 տուն Հայ-Հոռոմ և 10 տուն Թուրք։ Եկեղեցի՝ ս. Նիկողայոս *)։ Քահանայ՝ 1։ Դեռ 25 տարի յառաջ իբր 30 տուն Հայ-Հռոմ կային այս գիւղն, բայց հետզհետէ ի Կ. Պօլիս և այլ կողմը գաղթելով տուններն կը քակուին։ Կ'ըսեն թէ այս գիւղն ալ 'ի հնումն յոյժ փայլուն վիճակ մը ունեցած է և 'ի Կ. Պօլիս այժմեան Լօղօֆէթ Արիսթարքի պէյի նախնիքն այս գիւղէն են։ Իբր 15 տարի յառաջ, գիւղին մէջ կը գտնուէին 2—3 տուն Հայք ևս, յորոց մէկ տունն քաղաքս փոխադրուած է և միւսքն աստ և անդ ցրուած են։

## ՏՐՋՈՒ

Ակնայ հիւսիսային կողմն ի Մեծ-Հայս, նոր կամուրջէն իբր կէս ժամ։ Բնակիչք՝ 30 տուն Հայ-Հոռոմք և 20 տուն Թուրք։ Եկեղեցի՝ ս. Յովհան. Ոսկեբերան։ Քահանայ՝ 1։ Կայ

*) Քաղաքիս և մօտակայ գիւղօրէից Հայերն գրեթէ Հայ ուխտատեղեաց և եկեղեցեաց հաւասար յարգ կ'ընծայեն սոյն եկեղեցեաց ևս. զոր օրինակ, շատեր իրենց ճամբորդին նաւ նստելու օրն հաշուելով ուխտի կերթան ի ս. Նիկողայոս որ պաշտպան կը համարուի նաւորդաց։ Նաև ի ս. Սարգիս, 'ի Տրզու ս. Յովհան, Խանըրկտուր և Ալայի Մաղարա ուխտի կ'երթան։ Ինճիճ. հատ. Ա. 308՝ 'ի կարգի Հայ-Հոռոմ գիւղօրէից կը գրէ. «Զորակ. եկեղեցի որ յանուն սրբոյն Նիկողայոսի, առ որով և մատուռն Հայոց յանուն սրբոյն Գէորգայ։ Առ Զորակաւ է բարձր լեառն կոչեցեալ «Սարին Սուրբ Սարգիս», յորոյ գլուխն կայ աշտարակ քարաշէն, որոյ այժմ հիմունք և ստորին կողմանք միայն երևին բարձր իբրև երեք գրկաչափք. ընդ երկրաւ անցուղս գտանին երբեմն տէգք երկաթիք»։ Ըսել է որ ի հնումն Զորակի ս. Ն. եկեղեցւոյ քով, յանուն ս. Գէորգայ, Հայոց մատուռ մի կայ եղեր, որպէս 'ի Վանք և ի Մուշեղկայ դեռ ցայսօր կան։

վարժարան մի և հայ դպստատուն մի որ 'ի քաղաքէս էր Տաճկերը եկեղեցիէն: Տրդուլ վերևն ուխտատեղի մը կայ զոր Խանդկեսուր կ'անուանեն: Փորու խիթ (խոստուկ) ունեցողք կ'երթան:

## ՄՈՒՇԵՂԿԱՑ ԿԱՄ ՄՈՒՇԵՂԿԱՆ.

Այնայ Հիւսիս-արևելեան կողմն Զորակէն 1 ժամ հեռի: Բնակիչք՝ 15 տուն Հայ-Հոռոմք և նոյնչափ Թուրքք: Եկեղեցի՝ ս. Գէորգ: Քահանայ՝ 1: Այժմ 1 տուն Հայ կայ սոյն գիւղն, և եկեղեցւոյ մէջ խորան մի կայր Հայոց վերաբերեալ: 2—3 տարի յառաջ եկեղեցւոյն ի հիմանէ վերաշինութեան ժամանակ, Հայոց հետ համաձայնութեամբ, եկեղեցւոյ կից առանձին խորան կամ մատուռ մի շինուած և որոշուած է Հայոց համար:

## ԳԼ. Ը.



## ՀԱՅ ԲՈՇԱՅՔ. ԿԱՄ ՄԱՂԱԳՈՐԾՔ

Սոքա 10—15 տուն, քաղաքիս վերին Թաղի Խնկաձորի մօտերը կը բնակին: Ե՞րբ և ուստի՞ եկած են և իրենց հին սովորութիւնին ի՛նչ են, չգիտեմք. միայն 30—40 տարիէ 'իվեր, զայս գիտեմք թէ, բոշայի կանայք մուրացկան են, և խօսքի մէջ, երբեմն, ժլատ և աներեսութեամբ շնորհ խնդրող անձանց բոշայ է, Զինկեանէ է կ'ըսուի, նմանութեամբ: Ասոնք՝ Թափառաշրջիկ բոշայից պէս՝ մաղ շինելով և մուրալով կ'ապրէին: Լսած եմ թէ, հին ատեններն սովորութիւն է եղեր որ երբ Բոշայ մի ամուսնանայ աղջկան մը հետ որ բոշայի ցեղէ է, ամուսնացող այրն մազէ մեծ պարկի մը (խարար) մէջ կ'իջեցունեն, և կինն կ'ըսէ. «Ել խարարէն, ել խարարէն, ըսպէնջդ (արքունի տուրք մ'է եղեր 'ի հնումն) պիտի տամ, խարաճդ (նմանապէս տուրք մ'է հպատակ ազգաց համար, տես գլ. Ե.) սաղլամիշ պիտի ընեմ, ես պտտիմ քեզ պահեմ»: Կինն՝ զայս երիցս կրկնելէ յետոյ, այրն պարկէն դուրս կ'ել-

նէ, և կինն՝ իւր հանդիսաւոր խոստման համեմատ՝ իբրև պարտաւոր զայրն կերակրելու և ապրեցունելու, կը սկսի տոպրակ յուս կամ ի ձեռին, բոշայ ընկերուհւոյ մը հետ մուրացկանութիւն ընել, և օրական ժողվածն տուն կը բերէ առն և ընտանեացն համար։ Այս սովորութիւն հաւանականաբար այժմ դադրած է, Կ'ըսեն թէ Ակնայ բոշայք հին ատենները Տիւրիկէի Հայ բոշայից հետ խնամութիւն կ'ընեն եղեր, բայց 15—20 տարիէ 'ի վեր, տեղւոյս Հայոց հետ խնամութիւն ընելով, հին բոշայներն տակաւ սպառեցան և նորերն բոշայութենէ դադրած են։ Զուտ բոշայ համարուածին իսկ եթէ բան մը հարցունես, «ես կամ մենք բոշայ չենք», կը պատասխանէ. հայրս կամ մայրս Հայ է և Սևաստէն կամ Տիւրիկէէն և կամ այս ինչ տեղէն եկած է և այս ինչ Հայ ընտանեաց հետ խնամութիւն ունինք» ըսելով երբէք չեն ուզեր ընդունել բոշայութիւնն։

Լսած լինելով թէ ասոնք առանձին լեզու մ'ունին, բոշայ ճանչցուածներէն մէկը կոչեցի (84 ի գարունն), որ 40 տարեկան կար, հարցայ, և՝ շատ դժուարութեամբ՝ հետևեալ բառերն խօսեցաւ. յաճախ կրկնելով թէ «հայրս ասանկ կ'ըսէր»։

| Բոշայերէն | Հայերէն |
| --- | --- |
| Մալավ | հաց. |
| Մանկէ | տուր. |
| Խաթինք | ուտինք. |
| Թահի | (այս) կին. |
| Սամել է | լաւ է, աղէկ է. |
| Քըլ | իւղ. |
| Մանկիկ (մանկինք) | ուզենք, խնդրենք. |
| Քուիչ մը եփենք | ճաւար մը (պուլղուր) եփենք |
| Կլար | պանիր. |
| Խալիպ | միս. |
| Մօշ | մոմ. |
| Ջինիշ | դրամ. |

| | |
|---|---|
| *Քարդի* | *հաւ, աքաղաղ.* |
| *Գրաշ* | *գինի.* |
| *Մայլ* | *օղի.* |
| *Գիհիճ* | *ծխախոտ.* |
| *Մանուսը ավեծ* | *հայրս եկաւ.* |
| *Թահին ավեծ* | *մայրս եկաւ.* |
| *Ջայրաւ* | *հարսն.* |
| *Ճոքի* | *աղջիկ.* |
| *Թաւիմ* | *ընեմ, առնեմ.* |
| *Սոլավ* | *շուն.* |
| *Աքեհ* | *աչք.* |
| *Աթ* | *ձեռք* |
| *Ճումիմ. (աթը ճումիմ)* | *համբուրեմ, (ձեռքը պագնեմ).* |
| *Լութ* | *թութ* |
| *Անքոտ* | *ընգոյզ.* |
| *Տըլըսուր* | *քահանայ, վարդապետ.* |
| *Մուլեր է* | *մեռեր է.* |
| *Խարի* | *էշ.* |
| *Գար* | *տուն.* |
| *Կահ* | *վառելու փայտ.* |
| *Պըսու* | *Թուրք, Տաճիկ.* |
| *Պըսուն ավեծ գարը* | *Տաճիկը եկաւ (կուգայ) դուռը* |
| *փայլէ* | *դիր.* |
| *Իննավ* | *տղայ, պատանի.* |
| *Սըվեր է* | *քնացեր է, պառկեր է.* |
| *Ջաղան (կուլայ)* | *մանուկն կուլայ.* |
| *Ջըպուն* | *պարեգօտ, տճ. էնթարի.* |
| *Խարավանա* | *անդրավարդիկ, տճ. շալվար.* |
| *Կըլոըր* | *բաճկոնակ, տճ. սալթա.* |
| *Մանկեցի նալեց* | *ուզեցի չտուաւ.* |
| *Խենաւ (իմ)* | *կոռը ապականիմ.* |
| *Մշախը (ցաթերէ)* | *արևը ցաթեր է.* |

| | |
|---|---|
| Անծին | աղ |
| Մայլավոտեր է | գինովցեր է, արբեալ է. |
| Աղուէս | Չղքալիկ (կաթնէն եղած տեսակ մը ուտելիք). |
| Մանուսը գմըրն է | Հայրդ տունն է՞. |
| Ուչեր է | ոչ. |
| Մանուսը (վերէն կուգայ) | Մարդը վերէն կուգայ. |
| Պետեղուր է. | չղացած է. |
| Ջայրաւը պետեղուր է | Հարսը չղի է. |
| Թիուլ | գերեզման. |
| Մուս | մարդ. |
| Մուսը (եկաւ) | մարդը (ոմն) եկաւ. |
| Մուսը ավեծ (քանի մը) չինիշ մանկէ | մարդը եկաւ (քանի մը) փարա ուզէ. |
| Խննավ[1], (փիլան ճան)[2], Գարէ[3], (գնա) մայլը[4], (բեր) ճանակ[5] մը պիհին[6], (ու) ուչին[7], | Տղայ[1], այս ինչ[2], տեղէ[3], գնա օղի[4], բեր քիչ[5] մը խմեն[6], ու երթան[7]. |
| Ծունակ | քիչ. |
| Նաթըլի | չունի, չկայ. |
| Աքիհ նաթըլի | աչք չունի կոյր է. |
| Աթավ | ձեռք |
| Լէ | տուր. |
| Աթավդ լէ | ձեռք տուր. |
| Բրավ | Քուրդ. |
| Կոհրաֆ | գող. |
| Լօմ | բոշայ. |
| Լօմէ, մերավնոցս գարէն է | բոշայ է, մեր տնէն է. |
| Մերավնոց | մեր. |

Յայտնի է թէ վերոյ գրեալ բառերու մէջ կան որ Հայերէնի աղաւաղեալն է. կան որ պարսկերէն կամ արաբերէն են կամ այլ լեզուաց կը վերաբերին։ Եւ ինչպէս յայտ է,

թէ և անուանց հոլովումն ու. բայից խոնարհումն հայերէն են, բայց արտասանութիւնն՝ տարբեր 'ի հայերենէ՝ ատամանց միջէն և ռնգային էր։

Վերոգրեալ բառերն խօսող անձն կ'ըսէր թէ, երէց եղբայրս և բոշայենց այս ինչ անձն որ ի Մալաթիա կը գտնուի, անոնք ալ գիտեն։ Եղբայրն կոչեցի, հարցայ, խնդրեցի, դրամական վարձք խոստացայ, բայց երդուաւ թէ չըգիտեմ։ Ի Մալաթիա Ակնեցի բարեկամի մը գրեցի, որ այն անձին խօսած, հարցած էր, բայց նա ևս «չըգիտեմ» ըսած էր։ Աստ ևս 50—60 տարեկան երկու բոշայից ալ հարցայ, նոյնն պատասխանեցին։ Զարմանալի բան. եթէ բոշաները չունէին իրենց յատուկ լեզու մի, սոյն բառերն խօսողն ինչպէս յանպատրաստից հնարեց և խօսեցաւ յիշեալ 60-էն աւելի բառերն, և ինչու ըսէր թէ եղբայրն կամ այս ինչն ալ գիտեն։ Կամ այն է որ յիշեալ սակաւաթիւ բառերն «Արկոտեան» լեզուի պէս այլոց անհասկանալի լինելու համար հնարուած են, և կամ բոշայից լեզու մի կայ թերի և աղաւաղեալ և բոշայք չեն ուզեր յայտնել. հաւանականաբար այսու պատճառաւ թէ, իրենց բոշայ լինելուն վերաբերեալ ապացոյց կամ նշան մի տուած կ'ըլլան։ Իմանալով թէ Կամախի քաղաքէն ալ հայ բոշայք կան, հոն առևտուր ընող Ակնեցւոյ մը հարցայ, նա ևս պատասխանեց թէ որոշ լեզու մի չունին, այլ հայերէն կը խօսին։

Աւելորդ չեմ համարիր զայս ևս գրել թէ, հայ բոշայից անուանքն, կրօնն և սովորութիւնքն այժմ ազգայնէն տարբերութիւն մի չունին. և՝ ինչպէս ըսի, կան մէկ քանի տուն որ Հայոց հետ խնամեցած և բոշայենց տան անունն փոխելով այլ տան անուն կը կրեն, և կան որ թէև բոշայենք կ'ըսուին, բայց բոշայութիւն չեն ըներ, այլ ստացնականութեան կամ այլ արհեստի ու աշխատութեանց կը պարապին։

---

# ԳԼ. Թ

## ՔՈՒՐԴՔ։

Իբրև լրացուցիչ մասն Ակնայ վիճակագրութեան, կարեւոր համարեցայ Ակնայ Սարը-չիչէյի լերան և այլ կողմերու Քրդերի բնակութեան, ապրուստի, սովորութեան մասին եւս գրել։

1. Գոմրաշցիք։ Տիւրիկէի հողն, Թողուտու մօտ Պուռմայի խանն կը ձմերեն. իբր 30 տուն, տուն գլուխ 5—6 հոգիէ բաղկացեալ։ Ասոնցմէ 10—15 տուն, ամառը Ակնայ մօտ Տիլլի չային կողմերը կուգան։ Ջորեպան են. ցորեան (զոր գիւղացի մշակէն կը գնեն), փայտ, պանիր և այլն Ակն կը բերեն և կը վաճառեն։ Կրօնն՝ շիա են (Գըզլպաշ)։ Ունին՝ 'ի Գարապէլ կրօնապետ մը զոր տէտէ կը կոչեն և որ այժմեան ցեղապետնին (Պօյ-Պէկի) է։ Սա երբեմն կ'այցելէ և կամաւոր ընծայներ կը ստանայ։ Գոմրաշցիք իբրև 20 տարի յառաջ 50-70 տուն կային և Ակնայ Ապրանք և Նարվեր գիւղերու մօտ կը բնակէին, բայց գիւղացիքն բողոքելով, կառավարութիւնն ցրուեց զԳոմրաշցիս, որոց մէկ մասը Սեւաստի մօտ Գարապէլի մնդիի կողմը, մէկ մասն ալ Տիւրիկէի երկիրը գնացին. Մնացեալքն վերոյ գրեալքն են։

2. Ագուշաղցիք։ Տիւրիկէի հողերը, Մրջնկայի չայի մօտի այրերը, Տէրական, Տէժտէքեար և Լիվան գիւղերը կը բնակին. 60—70 տուն։ Ամառը Սարը-չիչէկի լերան Մէչիտ ըսուած տեղը կուգան։ Հովիւ և ջորեպան են։ Կրօնիւ՝ Սիւննի Մահմեդական։ Կառավարութիւնն՝ Տիւրիկէ։

3. Քարաժորցիք։ Տիւրիկէի Գարասու լերան դիմացը Պօյպէկի Հագգ-վէրտիի գեղը, Թօնտուր և Լիվանլը գիւղերը և Օրթա-գիւղ, և մաս մ'ալ Արաբկերու վարի Տէժտէն գիւղն կը բնակին, յորոց ոմանք երկրագործ են։ Բոլորն 70—80 տուն։ Ամառը Սարը-չիչէք Գարասու կուգան։ Կրօնն՝ Սիւննի։ Ապրուստն միւս

քըրդաց պէս է։ Կառավարութիւնն ըստ մեծի մասին Տիւրիկէի և Թացեալն Արաբկերի կը վերաբերի։

4. Աթմացիք։ 100—150 տուն. գիւղերնին Արաբկերի հողն է։ Ամառը 'ի Սարը-չիչէք Եամատաղը և Էրկիւ-սու կ'ելնեն, որ Արաբկերի սահմանն է։ Կրօնն՝ աղանդաւոր։ Ապրուստ՝ ջորեպան։

5. Սինանցիք։ 50—60 տուն. Մալաթիոյ հողն կը բնակին. բազմաթիւ մաքի և ուղտեր ունին։ Ամառը 'ի Սարը-չիչէկ Զիյարէթի կողմն կուգան, շատ պանիր կը բերեն որ լաւ է։ Այլ և այլ կողմ ուղտապանութիւն կ'ընեն։ Կրօնն՝ Սիւննի. կառավարութիւն՝ Մալաթիա։

6. Փէրչիքեանցիք։ 60—70 տուն։ Կապան-Մատէնի և մաս մ'ալ Քարբերդու կողմերը կը բնակին։ Ամառն Սարը-չիչէկի մօտ Սու-պաթան ըսուած տեղն կուգան։ Կրօնն՝ Սիւննի։ Ապրուստն՝ ջորեպան և հովիւ։ Կառավարութիւնն՝ Մատէն։

7. Ռաշօրցիք։ Իբր 30 տուն Մատէնի հողն կը բնակին։ Ամառը՝ Ակնայ իբր 3 ժամ, Մազմանի գլուխն կուգան։ Կրօնն՝ Սիւննի։ Ապրուստն՝ ջորեպան և հովիւ։ Կառավարութիւնն՝ Մատէն։

8. Տրիժանցիք։ Իբր 200 տուն Արաբկերի և Առղավանայ մէջ տեղը կը բնակին։ Ասոնց մէկ փոքր մասը միայն Սարը-չիչէկ Եամատաղը և Էրկիւ-սու կուգան։ Կրօնն՝ Սիւննի. ապրուստ՝ ջորեպան և այլն։ Կառավարութիւն՝ Արաբկեր։

9. Ներմիքեանցիք։ Յառաջ շատւոր էին։ Տրիժանցւոց հետ թշնամութեամբ մէկ մասն այսր և անդր ցրուեցան. այժըմ իբր 50 տուն. Առղավան կը բնակին. երկրագործ են։ Ամառը Սարը-չիչէք Էրկիւ-սու կուգան։ Կրօնն՝ Սիւննի. կառավարութիւն՝ Առղաւան։ Ասոնք են որ Ակնայ տանեաց շըրջապատին կողունձն (արտուճի կեղև) և ճաղերն կը բերեն։

10. Ըսպահի-ուշաղցիք։ 60—70 տուն, բնակութիւն՝ Առղավան։ Ամառն Սարը-չիչէք Էրկիւ-սու կուգան։ Ապրուստ՝ երկրագործութիւն, ջորեպանութիւն և հովուութիւն։ Կա-

նիրն՝ լաւ։ Կրօնն՝ Սիւննի. Կառավարութիւն՝ Սաղաւան։

11. Մալխանցիք՝ 50—60 տուն. բնակութիւն՝ Սաղաւան։ Ամառն 'ի Սարը-չիչէք Խանտիլլու կուգան. երկրագործութեամբ, ջորեպանութեամբ և հովուութեամբ կ'ապրին։ Կրօն՝ Սիւննի. Կառավարութիւն՝ Սաղաւան։

12. Շալ-ուշաղցիք՝ 20 տուն։ Արաբկերի հողն, Տէժտէ գիւղին դիմաց գիւղ մը ունին։ Ամառը գիւղերնուն մօտերը, որ Սարը-չիչէքի սահման է՝ վրաննին կը զարնեն։ Ապրուստ՝ երկրագործութիւն և մասն ինչ ջորեպանութիւն։

Ահա այս Քուրդերն որ իբր 1000 վրան կը հաշուուին, վերոյ յիշեալ քաղաքաց մօտ գիւղօրէից մէջ կը ձմերեն և գարունն, մայիսի սկզբէն, Սարը-չիչէքին սահմանակից լեռները կ'ելնեն և իրենց որոշեալ տեղերը վրան կը կանգնեն, որոյ «Օպա» կ'ըսեն *). ոչխարները կ'արածեն. պատրաստած պանիրն Ակնայ, Արաբկերի և Տիւրիկէի քաղաքները և գիւղերը կը բերեն իրենց ջորիներով, ու կը վաճառեն։ Ջորեպանները՝ Սեւաստէն, Գանկալէն, երբեմն Քարբերդէն, Սաղաւանէն և այլ տեղերէ ցորեան կը բերեն, կը վաճառեն։Կան և ոմանք որ վաճառականի բեռներ կը բերեն։ Ձմեռան ոչ ոք կը մնայ լեռներն։

Սարը-չիչէկի լեռներն Ակնայ, Արաբկերի և Տիւրիկէի մէջ տեղն կ'իյնայ և Ակնայ կը վերաբերի։ Ըստ ոմանց, Ակնցին այս լեռներէն կրնայ մեծապէս օգտիլ, եթէ ուզէ և պարագայք ներեն։ Սոյն լեռները դեղին և զանազան ծաղկունք կը գտնուին։ Օդն խիստ առողջարար և ջուրն անուշ և զով է, յորս լաւագոյնքն են Լոդ Բուղարի, Տէլիք Թաշի, Ագբունարի, Ձիչեարէթի, Պէշ-բունարի և Սու-պաթանի ջուրերն։

Քրդերը իրենց զդեստն և այլ պիտոյքն Ակնէն, Արաբկերէն, Մալաթիայէն, կամ ուր որ երթան՝ անկէ կը հոգան։ Ընդ-

*) Տեղեկութիւն ունեցող ուրիշ ազգային մը կ'ըսէ թէ Սարը-չիչէք եկողք Ագուշաղցիք և Սինանցիք են։ Փէրչիքեանցիք և Ռաշոր-ցիք Ակնայ մօտ Զալ ըսուած տեղը կուգան. իսկ միւս Էշրէթք Սարը-չիչէքէն անդին Տիւրիկէի և Արաբկերի կողմերը կուգան։

հանրապէս աներկիւղ, հուժկու և քաջառողջ մարդիկ են։

Ճատերը զինեալ են հին տեսակ (կայծքարով) հրացաններով, ատրճանակներով ու սուրերով, և բաւական քաջասիրտ են։ Տրիժանցի ու Աթմացի ցեղերուն մէջ կը գտնուին շատեր, որ պատեհ առթիւ, հայ թէ Թուրք ուղևորն անխտիր կը կողոպտեն, եթէ կառավարութենէն երկիւղ չունենան։ Սինանցիք, Մալխանցիք, Ըսպահի-ուշաղցիք և Ռաշորցիք անփաս են, իսկ մնացեալ Էշրէթներուն մէջ գող կամ աւազակ քիչ շատ կը գտնուին։ Թէ և լեռնաբնակ և ոչ կիրթ, բայց ընդհանրապէս հիւրասէր են, և մէջերնին բարեբարոյ անձինքըն պակաս չեն։

Իբրև ուրոյն ազգ, չունին ոչ կապ ու կեդրոն և ոչ ազգային վարչութիւն։ Իւրաքանչիւր ցեղն որ Աշիրէթ կամ Պօյ կը կոչուի, իրենց Պօյ-պէյին և աւանդական կանոններն ունին։ Լեզուն Քիրմանչօ լեզուն է՝ որ ծանօթ է, և կը տարբերի Տէրսիմի Քրդաց լեզուէն որ Զազայերէն է։ Քիրմանչօն Պարսկերէնի մօտ է կամ՝ աւելի ճիշտ է ըսել, անոր աղաւաղեալն է. զորօրինակ՝ իէք=մէկ. տու=երկու. նան=հաց. պու՛խէ=կեր. հէրէ=գնա՛. վա՛րէ=եկու. չի՞է=ի՞նչ է, և այլն։ Ունին իրենց քրդական երգերն ու ողբերն որք սովորաբար երկարահնչիւն են։ Քրդերն չունին ուրոյն գրականութիւն, այլ ոմանք Թուրքերէն կարդալ գրել սովորած են։ Անուանքն՝ սովորաբար, Իսլամական են. զորօրինակ Մըստօ (Մուսթաֆա). Սըլօ (Սիւլէյման) և այլն: Կայ նաև Մըռթօ, Կալօ, Հընտօ և այլն անուններ որոց նշանակութիւնն չգիտեմք։

Աղանդաւորները իրենց «Տէտէ»ն ունին որ երբեմն կ՚այցելէ։ Կ՚ըսեն թէ երբ Տէտէն գիւղն գայ, ժողովուրդը կը ներկայանայ և ծնկան վրայ քալելով, Տէտէին ուսը կը համբուրեն, և անոր շուրջը կը բոլորին որ բարոյական խրատներ կը խօսի անոնց։ Կ՚ըսեն թէ 'ի հնումն տեղ մի կամ գիւղ մի կայ եղեր, ուր Տէտէն այցելելով, որոշեալ օր մի, հաց ու գինի բերել կուտայ, հանդիսապէս հացն 'ի գինին կը թաթխէ, զոր

Լոգմա կ՚անուանէ, և ամէն մէկուն կուտայ որ կուտեն։ Կ՚ըսեն նաև թէ Քրդաց ոմանց մէջ կայ եղեր խոստովանութեան պէս արարողութիւն մ՚ևս զոր կը կատարէ Տէտէն։ Ցետոյ ամեն ոք իւր կամաւոր ընծայն կը մատուցանէ Տէտէին։ Անոր պաշտօնն ժառանգական է։ Այս Քիւրդք՝ գրեթէ ընդհանրապէս, ո՛չ ծոմ ունին, ո՛չ աղօթք։ Եթէ ժողովատեղի (ճամի, մզկիթ) ունենան, առ երեսս է. միայն, ամեն տարեգլխոյ Մուհարրէմին, 12 օր ծոմ կը պահեն, և 'ի լրման ծոմին, զոհ (գուրպան) կ՚ընեն. 12 տեսակ չորցուցած պտղովք ապուր մի կ՚եփեն. սորա «Աշուր այի» կ՚ըսեն։ Մուհարրէմի հանդէսներն 'ի Կ. Պօլիս Պարսիկք ևս կը կատարեն. զի սոնց մէկ մասն Սիւննի և մէկ մասն աղանդաւոր (շիա) են։ Իսկ սիւննի Քրդերն իրենց Իսլամական պարտաւորութիւնքն կը կատարեն։ Անգամ մի Թուրք դատաւոր մի, իբրև զուարճաբանութիւն, Քրդու մի հարցուց. «Սէն Իսլամ միսըն, Քուրդ միսըն». (Դու Մահմետականն ես թէ Քուրդ ես)։ Քուրդն որ՝ հաւանականաբար՝ այսպիսի հարցում մի արդէն լսած և պատասխանն սովրած ըլլալու էր, անշփոթ պատասխանեց. «Էլ Հէմտուլլահ (Էլհէմտիւլիլլահ) միւսլիման ըմ, Քիւրդլըղըմտա զիյատէ» (փառք Աստուծոյ, Իսլամ եմ, Քրդութիւնս ալ աւելի կամ առաւելութիւն մ՚է)։ Եթէ սոյգ է, հետաքրքրական է թէ, Քրդերն՝ գրեթէ ընդհանրապէս՝ քաղաքական լուրեր շուտով կը ստանան և կը հաղորդեն միմեանց։ Թէ ինչ կերպով, չգիտեմք։ Հետաքրքրական է նա և 'ի հեռուստ ձայն տալ և խօսելնին։ 500 քայլ և թերևս աւելի հեռուն գտնուող Քրդու մի ընկերն բարձրաձայն «Լօ՛ լօ՛, և այլն» կը կանչէ, և «կայնէ, կամ այս ինչ անձն կամ իրն ինչպէս եղաւ» և այլն կը հարցունէ, ընկերն ալ կը պատասխանէ և կը հասկնան։

Իրենց մէջ սովորութիւն է որ երբ մէկը այլացեղ Քըրդու մի հետ թշնամանայ, բոլոր ցեղն թշնամւոյ և ցեղակցացն հետ կը թշնամանան. իրարու ջորի, ոչխար և այլն կը գողնան և մինչև իսկ սպանութիւնք տեղի կ՚ունենան։ Ըսպա-

նեղոյն ցեղն ալ 'ի վրէժխնդրութիւն, հաւասար կամ աւելի թուով մարդիկ կը սպաննեն թշնամիէն։ Կ'ըսուի թէ Ազուշաղցիք և Քարաժորցիք, երբեմն աքաղաղի մը պատճառաւ թշնամանալով, վերջապէս Ազուշաղցւոց ցեղապետն կը զարնուի կը մեռնի, սոքա ալ միւս կողմէն մարդ կը սպաննեն։ Այս թշնամութիւնք երբեմն տարիներ կը տևէ և յետոյ, քըրդական սովորութեանց համեմատ, կը հաշտուին։ Երբեմն հակառակորդ ցեղն ուրիշ ցեղ մ'ալ դաշնակից կ'ունենայ. կը պատահի նաև որ միևնոյն ցեղին վերաբերող Քուրդք իրենց մէջ թշնամանան։ Կ'ըսեն թէ, 5—6 տարի յառաջ Գոմրաշցի հսկայ և քաջ Քրդու մի ազգականներէն միոյն աղջիկը՝ նոյն ցեղէն ուրիշ Քուրդ մի առևանգած ըլլալով, առևանգողաց գիւղին վրայ յարձակեցան, պատերազմեցան, և աղջկան հայրն զարնուեցաւ մեռաւ. միւս կողմէն կին մի վիրաւորեցաւ, թէ և ոչ մահացաւ։

Շատ Հայեր պատմած են, թէ հեռաբնակ և մերձակայ բոլոր Քրդերը համակրութիւն մի ունին առ Հայս։ Հայն կըրնայ ընտանեաց մէջ երթալ, և կանայք երևան կ'ելնեն։ Սոյն թոյլտուութիւն կամ վստահութիւն քրիստոնէից համար է միայն։

Բոլոր Քուրդք իրենց տղայքը կը թլփատեն, և իբրև կնքահայր կամ սան, Քիվրոյ—ի սովորութիւնն շատ յարգի է իրենց մէջ։ Կնքահայր Քիվրան երբեմն Հայ մը կ'ըլլայ, որ փոխանորդ մի կ'ընտրէ և երբեմն անձամբ կատարելու ալ թոյլտուութիւն կ'ըլլայ։ Քիվրան զթլփատելի տղան գոգն կառնու, և թլփատողն՝ ըստ օրինի՝ կը թլփատէ։ Քիվրային պարտաւորութիւնն է թլփատելոյն հանդերձեղէն ընծայներ տալ և ճակատն ոսկի կախել։ Թլփատելոյն հայրն կը փոխարինէ ձի, զորգ, կապերտ, կով, ոչխար և այլն տալով։ Քիվրան երբ ուրիշ անգամ այցելէ, ոչ միայն թլփատելոյն ընտանիքը այլև Օպային դրացիքն իսկ կը յարգեն. թլփատելոյն ամուսնութեան ժամանակին ալ նոյն Քիվրան է որ ընծայ կը

տանի և կը տանայ։ Քիվրա անունն այնչափ յարգի է որ երբ շուկային մէջ Քուրդ մի կանչել ուզեն Քիվրա, քիվրա կ՚ըսեն, իբրև սիրելի բարեկամ և այլն։

Հարսնախօսութիւնն է այսպէս։ Երիտասարդին կողմանէ քանի մ՚անձինք աղջկան հօրը կամ եթէ չունի՝ ազգականի մը տունն կամ վրանն կ՚երթան, կ՚առաջարկեն։ Տղուն կողմանէ տրուելիք պոշլըխ՝ ըստ կարողութեան 500 ղրշ.-էն (5 լիրա),—3000 ղրշ. կ՚որոշեն։ Երբ աղջիկն առնելու օրն գայ, որոշեալ պոշլըխին փոխարէն նոյն արժէքով դրամ կամ ջորի, գորգ, ոչխար և այլն տալով՝ աղջիկն փեսային տունն կը բերեն։ Աղջկան հայրն ալ օժիտ կուտայ, որ է ձեռք մ՚ը զգեստ և անկողին, կով մի, քանի ոչխար, գուլպա և այլ եայլ ընծաներ՝ զորս հարսանեաց հրաւիրելոց կը բաժնեն։ Օժիտին հետ կը դնեն աղջկան գործած գորգն կամ՝ եթէ աղքատ է գործած կապերտն։

Աղանդաւոր Քրդաց մէջ մեծ ամօթ կը համարին կնաթողութիւնն, որ օրինաւոր կը համարուի միայն կնոջն ամլութեան պատճառաւ. ՚ի հարկին կրնան մէկ երկու կին ևս առնուլ, առանց առջի կինն արձակելու։ Ամուսնութեան կրօնական արարողութիւնքն Սիւննի Քրդաց պէս, Իմամն կը կատարէ։

Քրդաց գերեզմաններն Թուրքաց գերեզմաններուն կը նմանին. միայն, երբ մեռնողն երիտասարդ է, գերեզմանին գլուխը ցից կը զարնեն և ցցին վրայ մազէ սև քուրձ մի կ՚անցունեն, ՚ի նշան մեծ սգոյ։

Ակնայ արևելեան կողմն, ՚ի Մեծ-Հայս, կան Շաղախցի և Թախտիլցի Քրդերն. Շաղախցիք, որ իբր 200 տուն, Զմըշկածագի հողն կը բնակին և ամառն Ակնէն 5 ժամ հեռի Խօստայի լերան բարձրերը Տէրսիմ-Օվաճըգի սահմանին մօտ կուգան։ Հովիւ և ջորեպան են։ Ակն և գիւղօրայքն եկած պանիրին կիսուն չափն Շաղախցիք կը բերեն, որ 4—500 թեան կը հանի։ Ասոնց իւղն ալ ընտիր է։ Կրօն՝ Սիւննի։

Իսկ Թախտիլցիք, իբր 30 տուն, ձմեռն կ'երթան Քէմահի, Չմշկածագի կողմերը, և ամառը՝ Ակնայ հիւսիս—արևելեան կողմը՝ 3—4 ժամ հեռու Աւազ ըսուած տեղն կուգան։ Ասոնք ալ հովիւ և չորեպան են։ Կրօն՝ աղանդաւոր Իսլամ։

Քրդաց զգեստն է, սովորաբար, մազէ Թաղիք (քէչէ) գլխարկ մի, վրան մի քանի եազմա փաթթած. մանուսայ կամ լեզակով ներկեալ պարեգօտ, կամ սև կամ ճերմակ բրդեայ շալվար, գոյնզգոյն դերձանէ հիւսած ձեռքի լայնութեամբ գօտի, սև կտաւէ կամ մանուսայէ բաճկոն. Մարաշու ապա կամ մուրզ ըսուած վերարկու (մաշլախ), կօշիկ կամ մուճակ և կամ տրեխ։ Իւրաքանչիւր ցեղի տարազն փոքր 'ի շատէ կը տարբերին 'ի միմեանց։

Կան նաև Չմշկածագի, Գանկալի և Գօչկիրիի Քրդերը, որ ըստ մեծի մասին աղանդաւոր են և սովորութիւնքն, քիչ տարբերութեամբ՝ վերոյիշեալ Քրդաց պէս են։ Գանկալի կողմերը ձիհան-պէկցիք կան որ բազմաթիւ են, և Շատիցիք՝ որ Գանկալի մօտ են և որոց համար կ'ըսուի, թէ իբր 50—60 տարի յառաջ, Ակնայ սահմանակից Գուրիչայէն վեր Կէրճա-նիսու կամ Քէմահի կողմերէն գաղթած ու բնակութիւն հաստատած են։ Իսկ Զարայի կառավարութեան ներքև, Գօչկիրիի Քրդերը աւելի բազմաթիւ են։ Կը կարծուի լինել իբր 50 գիւղ՝ 900 տուներէ բաղկացեալ։ Կրօնն՝ աղանդաւոր։ Սոքա իբր 40 տարի յառաջ ապստամբ կը համարուէին և ժողովրդեան շատ նեղութիւններ կու տային։ Զօրապետ Հասան փաշա մէկ երկու փաշտ զօրքով մէկ երկու գիւղ զարնելով և իրենց ցեղապետն Տիապին և երևելիքն ձերբակալելով Սևաստ զրկած և Գօչկի-րին նուաճած է։ Այժմ իրենց ցեղապետ կամ գլխաւորն է Ալիշան պէկ անուն երևելի Քուրդն։ Գօչկիրիի սահմանակից են և Չիթու Քրդերն (կարծեօք 20—30 գիւղ) որոց գըլ-խաւորն է Միւսեյիփ աղա անուն երևելի Քուրդն։ Գօչկիրցիք և Չիթցիք եւ երկրագործ և հովիւ են։ Կան և սոյն կողմերը Զարիքեանցի Քրդերն։

# ՏԷՐՍԻՄ

Թէպէտ մեր նպատակէն դուրս է այս մասն, սակայն երբ այլ և այլ Քրդաց վրայ, իբրև հայրենակից մի ժողովուրդ տեղեկութիւններ տուի, արժան դատեցի Տէրսիմի վրայ ալ՝ որ որ թէև բազմաց ծանօթ՝ համառօտ տեղեկութիւն մը տալ։

Տէրսիմ։ Քրդաբնակ այս երկիրն, (Չմշկածագ և Չարսանճագ ալ միասին) Ակնայ, Կամախի, Երզնկայի, Բալուայ և Խարբերդի գաւառաց մէջտեղն կ'իյնայ, որոյ շրջապատն իբր 12 օրուան ճանապարհ է։ Չմշկածագի կողմն է Խոզատ, Ակնայ կողմը՝ Օվաճըգ, Երզնկայի կողմը՝ Գուզիչան և միւս կողմերը՝ Կալան և Տէրսիմ, որոյ համար կ'ըսուի թէ աւելի ընդարձակ է։ Չմշկածագի և Ակնայ կողմերը Տուժիկ կամ Մունզուր լերանց գօտիովն անջատեալ է, որոնց բարձրաբերձ գագաթներն՝ դրեթէ տարւոյն կէսն ձիւնով ծածկուած են։

Իւրաքանչիւր մասն կամ կողմն 100—200 գիւղ ունի կ'ըսեն, 5—10 տուներէ բաղկացեալ։ *) Յօվաճըգ, Թօփուզլու և Կաւ-ուշաղիի էշրէթները, 'ի Կալան Պօզ աղայի և 'ի Գուզիչկան՝ հանրածանօթ Շահ-Հիւսէյինի էշրէթները գլխաւորներն են։ Երևելի է 'ի Կալան Սեյիտ Մահմուտ անուն Քուրդն։ 'Ի Խոզատ՝ Կանկօյի տղայ Իւսիւֆ աղայն, որ կառավարութեան ժողովոյ անդամ է, և Սեյիտ Իպրահիմն մեծ ազդեցութիւն ունին։ Բուն Տէրսիմի կողմն ալ շատ էշրէթներ կան, բայց ասոնցմէ տեղեկութիւն չունիմք։

Չէնքերն են հին տեսակէն կայծ-քարով հրացան, ատրճանակ և սուր։ Հին ժամանակներէ 'ի վեր, Օվաճըգցի Քըրդերէն ոմանք կամ շատեր՝ Չմշկածագի, Ակնայ և Կամախի կողմերը աւազակութիւն կ'ընէին. գարնանէ սկսեալ մինչև աշնան վերջերը Հայոց և Թուրքաց կարաւանները անխտիր

*) Խոզատու, Օվաճըգի, Կալանու և Գուզիչանի բնակիչք (բաց 'ի սակաւաթիւ Հայերէ), առ հասարակ Քուրդ են. իսկ Չարսանճագի (Բերդակ բերրի սայլն) և Չմշկածագի կողմերու բնակիչք՝ Հայ, Թուրք և Քուրդ են։

կը կողոպտէին և դիմադրողն կը սպաննէին։ Գիւղերէն սարեկան տուրք կ'առնուին, և ո՛ր գիւղ որ չի վճարէր կամ դիմադրէր՝ իւր կեանքն ու ստացուածքն 'ի վտանգի էին։ *) Ի հնումն բոլորովին ապստամբ եղած են, իսկ այժմ կուսակալութիւն մի կազմուած է, որոյ կեդրոնն է Խոզատ. միւս կողմերն մէկ կառավարիչ և փոխ-կառավարիչներ (գայմագամ) կը նստին, յորոց ոմանք՝ Քուրդ ազգաւ։ 40 տարիէի վեր երբեմն զօրք ղրկուած է Քրդաց վերայ, և հնազանդութիւն յայտնած են, բայց երբ զօրքն մեկնած է՝ դարձեալ սկսած են իւրեանց շահատակութիւնքն։

Տէրսիմի օդն՝ առողջարար, ջուրն՝ զով և բարեհամ, երկիրն՝ արգաւանդ, վառելու փայտն և արօտք՝ շատ առատ են։ Երկիրն բնակչաց համեմատութեամբ այնչափ ընդարձակ է, որ 10 տան յատկացեալ երկիր մը կրնայ 100 տուն ապրեցնել։ Օվածըգցիք ձմեռը գիւղերը կը բնակին և ամառը վրաններով լեռները կ'ելնեն։ Հողատէարք Քուրդ են և կան Թուրք մշակք, որ վարձու կը մշակեն։ Սոքա ևս աղանդաւոր են և բազմաթիւ։ Քրդաց հետ քրդերէն և իրենց մէջ Թուրքերէն կը խօսին։ Այս Թուրք ըսածներն՝ պարկեշտ, անմեղսա մարդիկ են։

Քրդաց լեզուն՝ զազայերէն է, կրօնն՝ Շիա-Իսլամ։ Կ'ըսեն թէ Ցնձորի (թերևս Զնձորի) կողմն, որ Զարսանճագի մօտն է, կան Սիւննի Թիւրքեր կամ Քիւրտեր։ Ունին տէտէ (կրօնապետ) զոր Սէյիտ կը կոչեն և կը յարգեն։ Սէյիտներն մեծ չնկիւռ (սազ) կը նուագեն և իրենց ըսելիքն Թուրքերէն կ'երգեն։ Թլփատութիւն ունին և քիրվայութիւնը Ակնայ մօտ Քրդաց պէս է։ Կնաթողութիւն՝ չկայ, և երկու կին ունեցողք շատ քիչ են։ Սէյիտն այս վերջնոց տունն չերթար, թէ «Դու ճամբէն դուրս ելած ես»։ Ալին կը դաւանեն և կ'ըսեն,

---

*) Քուրդք ի ճանապարհի կամ ի գիւղօրէս, թէ աւազակութեան դէպքերու մէջ և թէ այլ ժամանակ իգական սեռին չեն դպչիր, և պատւոյ բռնաբարութիւն մ'երբէք լսած չեմք։

թէ Իսա (Յիսուս) և Ալի նոյն են. ձեզի Իսա անուամբ երևե-
ցաւ, մեզի Ալի անուամբ։ Կալանու կողմերն աւելի ժայռուտ
և անառիկ տեղեր կան։ Աստ լերան մը գագաթն է «Տուժիկ
պապա» ըսուած ուխտատեղին, որ իբրև տեղի ապաւինի՝ բո-
լոր Տէրսիմցւոց նուիրական է։ Կան բազմաթիւ ուխտատե-
ղիք, ինչպէս են ջուր բղխած տեղեր, ջրեր և գինիի (ար-
տուճի), կամ մայրի որոշեալ ծառեր։

Տէրսիմի ամեն կողմանքն հայկական եկեղեցեաց աւերա-
կօք լի են, որոց հիմունք և որմունք դեռ կան։ Քրդերը այս
աւերակ սրբավայրաց վնաս չեն հասցուներ, և կը յարգեն
իսկ։ Լերդիկու կողմն է Հալուորի վանքն և սորա մերձ է
գիւղն հայ և քուրդ բնակչօք։ Վանքէն 2 ժամ կը տևէ Խա-
չելի և Դաշտակ գիւղերն, որոնց բնակիչք ևս հայ և քուրդ
են։ Խոզատի կողմն են Ջնպեխ, Սրբեհան, Սակատիկ, Փեյիկ,
Աղչունիք գիւղերը, ուր նոյնպէս հայ և քուրդ կը բնակեն։
Աղուանիս գիւղի բնակչաց համար, որ ամբողջովին քուրդ
են՝ կ'ըսուի, թէ հայէն դարձած են, բայց ազգային սովո-
րութիւնքն պահած են, և եթէ ստոյգ է՝ համակիր են իրենց
նախնեաց կրօնին։

## ԳԼ. Ժ.

### ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՔ ԱԿՆԱՅ

Որովհետև իմ նպատակն էր գրական հնութիւնք ժողո-
վել և 'ի լոյս ածել, և արդէն գիտնալով թէ քաղաքիս և
գիւղօրէից եկեղեցեաց մէջ «Սասանցի» անուամբ ձեռագիր,
մագաղաթեայ աւետարանք կան, 84-ի Փետր. և Մարտ ամ
սոց մէջ քաղաքիս և մօտակայ գիւղօրէից եկեղեցիսն այցե-
լեցի, ուր անդր քան զյուսայեալն բաւական հին մատեանք
և 'ի նոսին՝ յիշատակարանք գտայ։ Եթէ այս փոքր վիճակին
մէջ այսչափ հին մատեանք և յիշատակարանք կան, հաւա-

նախանաքար, Հայաստանի և Կիլիկիոյ վանորէից և եկեղեցեաց մէջ, տասնապատիկն, թերևս հարիւրապատիկն կարելի է գտնուիլ, որք եթէ 'ի մի հաւաքուին, վերջին դարուց ազգային վիճակին և պատմութեան վրայ կրնան մեծ լոյս սփռել և բանասիրաց գրչին առատ նիւթ մատակարարել։

Սասանցիի և կողքերն ոսկեզօծեալ այլ աւետարանք սովորաբար ոսկեթել թաշկինակներու (չէվրէ) մէջ փաթթուած խնամով կը պահուին. իսկ անզարդ աւետարանք, յայսմաւուրք և այլ զանազան մատեանք, աստ և անդ, մանաւանդ պահարաններու մէջ, փոշիներու ներքև ծածկուած են դէզադէզ։

Ձեռագիրներէն կամ որ նոյն է գրչագիրներէն, փոքր 'ի շատէ հնութիւն ունեցողներն և՝ իմ կարծեօք՝ կարևոր համարուածներն միայն գրեցի, իսկ նուազ կարևորներուն թուականն և այլն նշանակելով շատացայ։

---

Քաղաքիս վարի թաղն, ս. Գէորգ եկեղեցւոյ մէջ գտնուած ձեռագիր մատեանքն.

1. Աւետարան Սասանցի *) անուամբ,՝ երկաթագիր, մագաղաթեայ, մեծադիր, իբր 10 օխայ կամ 13 քիլոկրամ, կողքերն արծաթապատ, սկիզբն պատկերովք և ծանօթութեամբ, որ հին նոտր գրով գրուած է։ 12 թերթ չետոյ, մէկ երեսին վրայ չորս պատկեր կայ տղայոց, որոց առաջնոյն վրայ. «Վ.ասակ որդի Վիգենայ» **) գրուած է. դիմա-

---

*) Թէ ասոր և թէ գիւղօրէից Սասանցիներուն մեծ յարգ կ'ընծայուի, և՝ առ 'ի բժշկութիւն՝ հիւանդաց վրայ կը կարդան քահանայք։ Կ'ըսեն թէ Սասուն գաւառէն եկած ըլլալուն համար է, որ Սասանցի կ'ըսուի։

**) «Ի ժամանակս թագաւորութեան սորա (Պարսից արքային Մելիք. 1128) երևելի էր յաշխարհին Հայոց Վիգէն Հայ իշխան որդի ծորտուանելայ որդւոյ քաջին Թոռնկայ Մամիկոնէի։ Եւ էր Վիգէն այր հզօր և յաջողաձեռն, տիրէր ի վերայ երկրին Սասնոյ և կողմանց ինչ Վասպուրականի» ասէլն։ (Պատմ. Չամչ. հատոր 3. Գիրք Ե. Գլ. Ը. երես 47)։

ցինին վրայ՝ «Վասիլ որդի Զորտուանելին Թոռն *) Վեգենեայ». վարը, 3-րդ պատկերին վրայ՝ «Շահինշահ» և դիմացինին վրայ՝ «և Թոռնիկ եղբարք Վասլին որդիք Զորտուանելի» գրուած է։ Դիմացի երեսն ամբողջ մի պատկեր կայ մօրուսաւոր մարդոյ, որոյ վերև «Քրիստոս Աստուած աւգնեա վեգնեայ ծառայի քո» գրուած է. պատկերաց վրայի յիշեալ գրուածք վերջէն և համբակ գրչէ ելած կը կարծուի։ Ի վերջ չորեց աւետարանչաց, յիշատակարանը միջակ գրով «Փառք Եւայլն... կատարեցի զսուրբ աւետարանս 'ի հայրապետութեան տեառն Ներսեսի Հայոց Կաթողիկոսի և 'ի տէրութեանս Սանանոյ Վեգենայ մեծի պատուն ուլխիմոսի որդւոյ Զորտուանելի Թոռն Թոռնըկայ մեծի հզաւրի և քաջի որ յԱստուծոյ հաստատուն հիմնակառուցեալ ունի զաթոռ հայրենի տէրութեան իւրոյ և 'ի թուականութեանս հայոց 'ի ՈԺԸ (1169) հրամանաւ երանելի և Քրիստոսասէր Թագուհոյ մէքսթոյ ամուսնոյ վեգենայ որ է յազգէ Արծրունի և 'ի շառաւիղէ սրբոյն Վարդանայ դուստր մեծի իշխանին Մոկաց Հմայեկին». Յետոյ կը շարունակէ Վեգենայ և զաւակացն պատմութիւնը, և դստերն Կատային մահը և Ս. Փրկիչ անուն վանքի մը մէջ Թաղուիլն եւայլն, եւայլն։ Նաև երկտողի մը մէջ, «զբազմամեղ գրիչս **) և զեղբայրն իմ վախճանեալս», և այլն գրուած է։ Սոյն աւետարանին համար կը

*) Սրուանձ. «Թորոս աղբար» մասն Բ. երես 308—318 սոյն յիշատակարանն ամբողջ գրուած է. ուր ինչպէս յայտ է, Թոռնիկ Մամիկոնէի որդին է Զորտուանէլ և սորա որդին Վիգէն, Վիգէնի որդին Զորտուանէլ, և սորա որդիքն Վասիլ, Շահինշահ և Թոռնիկ։ Վիգէնի մանուկ որդին Վասակ և դուստրն Կատայ, ամուսնացուցեալ ընդ Շահինշահի որդւոյ Գրիգորի, եայլն. ի Դեքեաց գաւառ 'ի մեծ ամրոցն Սաղուկ։ Կատայն յետոյ մեռնելով թաղած են Ս. Փրկիչ անունով վանքի մը մէջ, և մայրն Մելիքսեթին սոյն աւետարանն ի յիշատակ դստերն գրել տուած և յիշեալ վանքին տուած է։

**) «Թորոս աղբօր» սոյն յիշատակարանին մէջ կըսէ. «ապա հրաման ետ (Մելիքսեթի) ստորագրել զսա, Արիստակիսի յոքնամեղ—անուն կրաւնաւորի—անիմաստ և փցուն գրչի։ Եւ գրեցաւ ս. Աւետարանս ի լերինս Տաւրոսի սահմանս Սասնոյ...ընդ հովանեաւ ս. Փրկչիս և Սրբոյ Աստուածածնին» և այլն։

սեն, թէ գետն ի վար (Եփրատէն) եկած է, բռնած են։

2. Աւետարան որ կոչի «Կարմիր աւետարան». կողքն կարմիր թաւշէ ըլլալուն համար. այժմ արծաթապատ է, բոլորագիր։ Սկիզբն կան այլ և այլ պատկերք, բայց լաւ նկարեալ չեն. ՚ի վերջն յիշատակարանն գրուած է այսպէս. «Փառք անեղին Աստուծոյ, ևայլն. ի հայկազեան թուականիս ՊԼԵ (1386)։ Կատարեցաւ աստուածախաւս գանձս տէրունեան. և բերանս Քրիստոսի և քարոզս Յիսուսի Տեառն մերոյ։ ի հայրապետութեան հայոց Տեառն Զաքարիայ և ՚ի թագաւորութեանն որ ոչ երևի բարեպաշտ, այլ վասն մեղաց մերոց բարձան բարեպաշտ թագաւորքն և Աստուածասէր իշխանքն քրիստոնէից և բազմացան ՚ի վերայ ազգիս Հայոց ազգն... որ հալածեն, և այլն, եթէ չէ Քրիստոս Աստուած։ Այլ ինքն Քրիստոս առնէ համբերութիւն հաւատացելոցս. ևայլն։ Արդ ցանկացող եղեալ սուրբ արքայութեան երկնից Խութլուշէն ետ գրել փափաքանաւք զաւետարանս յիշատակ իւրն և բարի ծնողաց իւրոց հաւրն խութլու բէկին և մաւրն էլ հաթունին. և կենակցին իւր սիրմային, և ծնողացն իւրոց հաւրն շատլուսին, և մաւրն Ջհանմելիքին. և որդայոց իւրոց Մարտիրոսին. և Առաքելին. և Կիրակոսին. և Հազարդեղին. և Խուց դեղին. և Խութկէն Եղիսաբեթին. և Հաթունշին. և Դովլաթին. և ամենայն արեան մերձաւորացն իւրոց կենդանեացն և ննջեցելոցն»։ Ի վերջն. «Արդ վերստին նորոգեցաւ սուրբ Աւետարանս ի վանս մատնավանից սուրբ Աստուածածին և այլն. կազմեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ Վարդան քահանայի Բալուեցո ՚ի թվին ՌՃԼԷ (1688) որք կարդայք տուք զողորմի» ևյլն։ *)

3. Ցայսմաւուրք մեծահատոր։ Ի վերջն, «փառք ամենա-

*) Յիշատակարանքս գրուելէ յետոյ ս. Գէորգ եկեղեցւոյ Թաղ. Խորհրդարանին մէջ որ Առաջնորդարան ևս է, բոլորագրով չարական մի տեսայ, ձեռագիր, փոքրադիր։ Ի վերջն «Փառք Ամենասուրբ... ևայլն, յիշեսջիք Յովհաննէս քահանայ զծաղկաւղն զմելտինցին և

սուրբ երրորդութեան մի Աստուածութեան. եւայլն. գրեցաւ և աւարտեցաւ սրբոց պատմութիւնս որ կոչի այսմաւուրք. Թուականի Հայոց ՌՂԵ. (1646) ի քաղաքն Ըստամպօլ ընդ հովանեաւ ս. Լուսաւորչին. որք հանդիպիք յայսմ տառիս յիշեցէք 'ի Քրիստոս. զխոճա տատուրն և կողակիցն իւր զշուշան և որդիքն իւր զխոճա զոհրապն և զխոճա մկրտիչն, լատիֆն և և զպետրոսն մուրատն և զամենայն արեան մերձաւորսն ամէն: որք եդին իւրեանց հոգւոյն յիշատակ 'ի յակին քաղաք ի Վան գեղի ժամն *): որք հանդիպիք սմա կարդալով կամ օրինակելով յիշեցէք ի Քրիստոս ապիկար գրիչս անտօն դպիրս, որք դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ Աստուծոյ մերմէ». եւայլն:

4. Աւետարան. «գրեցաւ ի Թվականիս հայոց ՌՂԸ. (1649) ի Թագաւորութեան տաճկաց սուլթան Մահմէտին. ի Կաթողիկոսութեան Փիլիպպոս ս. Կաթողիկոսին և ի հայրապետութեան Անեցի Տէր-Յովհաննէս Պարոնտիրին. յայսմ ամի կայ ԺԳ քահանայ որք են (անուանքն կը յիշէ). յայսմ ամի խօճա արզումանն եդ յիշատակ զսուրբ աւետարանս ի սուրբ Յովհան եկեղեցի. **) յիշատակ հօրն Ճիհանշահ և մօրն մահտեսի պաղտատին» եւայլն:

*) Տես գլ. Բ. «Վան-գեղ», մերձ Ագրակի, որ այժմ բոլորովին Թուրքաբնակ է:

**) Հաւանականաբար, քաղաքիս վարի Թաղի (շուկայի մօտ) ս. Յովհան եկեղեցին է, ՌՃԴ ին այրած է. տեղն այժմ շուկայ կամ տուն է:

այլն. Ամիր պէկ սարկաւագն որ զաւրինակս շնորհեաց մեզ: Գրեցաւ և ծաղկեցաւ և կազմեցաւ եւայլն. իլաւ և յընտիր աւրինակէ որ կոչի Խլկցի. ձեռամբ Սամուէլի. ի յեկեղեաց գաւառս ի մայրաքաղաքս ի յեզնկայ. ի Թվաբերութեանս Հայոց ՊՁԴ (1435): Յետոյ, տգեղ նօտր գրով մի «վերջին ստացող չարակոցիս Ստեփանոս Կաթողիկոս. յաւընջեցլ: եւայլն. հայրն իմոյ պր. խօճին և մօրն իմոյ պր. խօնչին» եւայլն: (Թուական չունի): 2 Թուղթ յետոյ. «ստացողք չարականացիս Հոլաթեցի զպետրոս Չէլէպի և զորդին Սանոսն եւայլն: Թուին ՌՃԻԷ. (1678) մէկ Թուղթ յետոյ նորագոյն մշատահարան մի կայ «Տէր-Գրիգորեան կամ Տէր Ստեփանեան Կիւրեղ աղայի». իբր 30 տարուան գրուած մ' է կարծեաք:

5. Աւետարան. «Գրեցաւ սուրբ մատեանս ձեռամբ յոգնամեղ և անպիտան. հուսկ յետոյ և անհրահանգ խանում դպրի, 'ի խնդրոյ բարեմիտ և Աստուածասէր տիկնոջն Նուր մելիքին, որ իմիտ առ զբանն տէրունական հրամանին որ ասէ. երթայք գործեցէք մի' զկորստական կերակուրն»։ Սկիզբն՝ «Քառք և պատիւ ևայլն». յետոյ. «Գրեցաւ աւարտեցաւ 'ի քարանձաւ դղեկս Ակն կոչեցեալ. ընդ հովանեաւ սրբոյն Գէորգայ զօրավարին և ի հայրապետութեան տեառն Յակովբայ հանգուցելոյ 'ի Քրիստոս. և յառաջնորդութեան մերոյ Նահանգի Ղազար Րաբունապետի. ի թուականութեան արամեան տոհմի ՌՃԼԱ (1682)»։ Յետոյ յիշատակութիւն քանի անձանց. «Ողորմեա ասացէք» ևայլն։ Յիշեալ ս. Գէորգ եկեղեցւոյ մէջ կան հինգ հատ մեծ և միջահատոր ձեռագիր աւետարանք և հինգ հատ ձեռագիր մեծահատոր յայսմաւուրք մեծագոյնն կարծեօք 15 օխա կամ 20 քիլոգրամ. 3—4 հատն միայն թուական ունի. միւսոց վերջին թղթերն ընկած է։ Տպեալ, մեծադիր յայսմաւուրքի մը սկիզբն գրուած էր. «Նահատակ Ալէքսանոս աղան ՌՄԺԸ (1769) օգոստ. ԺԸ օրն սուրբ Աստուածածնայ պահոց բշ. երեկոյ իքինտուին» ևայլն։ Գրքի մը սկիզբն գրուած է թէ Մարտ 17-ին քէօփրիւն այրեցին, որ Ակնայ առաջքի կամուրջն պիտի ըլլայ. Թուականն նայելով 114 կամ 134 տարուան դէպք մ' է։ Նաև ՌՄԺԵ (1766) ՌԲԾ և մէկ (1702) 2—3 փաշայի անուն կը յիշէ, միոյն լաւութիւնն և միւսին չարութիւնը կը գրէ. ասոնք կարծեօք ուզւոր կամ այցելու փաշաներ են։

6. Ս. Գէորգ եկեղեցւոյ մօտի թաղն Կէլկէլեանի քով ձեռագիր գիրք մի կայ, որոյ ցանկն է «վասն երրորդութեան, վասն թղթոյ իշխանին, վասն պահոց, վասն աղօթից ևայլն. ԺԹ. գլուխ»։ Գլուխ բ. գրուած է. «Թուղթ Պր. պաղտէն *) Թագաւորազն և քրիստոսասէր մեծի իշխանին զքրիստոսասկիր անձին զսուրբ և զարքունական վարդապետիս Վարդա-

*) Այժմ, Ակնայ մէջ ընտանիք մը կայ, որ Պաղտենք կ'ըսուի։

նայ և յետ Քրիստոսի յուսոյդ մերոյ, զպատուական և զողջունաբեր նամակս ընթերցայ եղբայր պաղտին, և յոյժ ուրախացայ. և այլն. որպէս թէ զնեջեցեալն մեր տեսաք կենդանի զհարազատուն մեր սուրբ քահանայն բարսեղ և զմեծ իշխանն ամպատ և զպանծալի նախնիքն մեր վարդանայ հաճոյ զեպիսկոպոսն մեր Բարսեղ». և այլն: Ի վերջն. «գրեցաւ գիրքս և այլն. ցանկացող եղէ ես նուաստ ծառայ Աստուծոյ սարգիս լռեցի և ետու գրել զսա ի վարժումն և 'ի կրթութիւն անձին իմոյ և այլն. արդ գրեցաւ սա իքաղաքս ազոխ ընդհովանեաւ սրբոյն Գրիգորի ձեռամբ անիմաստ և անարժան սուտ քահանայի անուամբ միայն կոչեցեալ «մկր» և այլն. ՉՁԸ (1339) դեկտ:» Նօտրագիր է:

Քաղաքիս վերին թաղն, Աստուածածնի եկեղեցւոյ մէջ, ձեռագիր մատեանք.

7. Աւետարան միջակ: Ի վերջն. «Ես նուաստ և անիմաստ Վարդան սուտ անուն և մեղաւոր աբեղա ստուեր կրաւնաւորաց և այլն. զի յղբացեալ և ապականեալ ձեռաւքս մերձեցայ ի սուրբ գիրս այս և վերստին նորոգեցի և կազմեցի ի թվին հայոց ՌԿԳ. (1614) ի Կարմիր Վանք *) ի յառոտս (?) սուրբ Կարապետու և Աստուածընկալ սուրբ Նշանին. և այլն»: Անուան յիշատակի տեղն եղծեալ և քոփն գըրուած էր. «և զկենակից իւր զտէր պապն և զամենայն արեան մերձաւորսն ամէն: «և դարձեալ յիշեցէք զմղտեսի միրիճանն և զկենակիցն իւր զմահտեսի մելիքն որ տուեց Բ խուռիչ. և վերստին նորոգեցաք Աստուած զինքն պահեսցէ ամէն: «Յիշատակ է սուրբ աւետարանս եազիճանցն Կիրակոսին, և կոզակցին և այլն: Նորոգեցաւ Աւետարանս թուին

---

*) Պատմութիւն Ջամչ-հատոր 3. վերջին ցանկ երես՝ 157 ինչպէս կը գրէ «Կարմիր վանք» բազումք են. 1. Քեսնոյ մօտ (Մարաշի սահմանը), 2. Կարնոյ գաւառն, 3. յԱրցախ. 4. 'ի Սիւնիս. և այլն.

ՌՃԻԷ (1678) ձեռամբ Ակնցի Խաչատուր երիցու եւայլն։

8. Մաշտոց. միջակ, բոլորագիր. ի վերջն. «Փառք և գոհութիւն բիւրեւեան հատ երկրպագութեամբ եւայլն. Արդ գրեցաւ մաշտոցս ձեռամբ բազմամեղ և անիմաստ գրչի, Պօղոս դպրի Թախաթցի. յիշեցէք եւայլն. ի Թուականութեանս Հայոց ՌԿԶ. (1617) դեկտեմբեր ամսոյն ԻԵ օրն ուրբաթ. ի վայելումն տիւրիկցի տէր Աստուածատրին. այլ և յիշեցէք եւայլն. զԹէմուրն, զմիսայէլն, զշիրվանն և զբենկցի Թամամն որ տուես ի հալալ վաստակոցն զսա գրել եւայլն»։ Նոտր գրով՝ «Թվին Հայոց ՌճՀԹ (1730) հայր մաշտոցս գերի անկեալ ի ձեռս այլազգեաց և հանդիպեալ ումեմն Քրիստոսաւորի և այլն... յումրիճանին որդի Պօղոսի և է ի քաղաքէն Ակնայ, ՚ի դուռն Ակնայ վերի եկեղեցուն որ կոչի սուրբ Աստուածածին եւայլն...»

9. Երգարան կամ գանձարան. բոլորագիր, հին. յիշատակարան չունի կամ Թուղթն ընկած է. միայն վերջին 3-րդ Թղթին գրուած է. «Վերջին նօրոգաւղ գանձատետրիս զանարժան մեղաւոր Կարապետ երէցս. յիշեցէք ի սուրբ յաղօթս ձեր ով եղանաւղ (?) սորա և Աստուած զձեզ յիշէ ամէն. ի Թվին ՌՀԱ (1622)։»

10. Ցայսմաւուրք, իբր 10 օխա. յիշատակ է Երեմիա Քանտարեանի *). ամենէ վերջն. «Արդ գրեցաւ ՚ի մեծահանդէս քաղաքս Կ. Պօլսի ի Թվին հայոց սեռի, քանեւրկու յօբելանի և տասնումէկ Թիւ աւելի (1662) ձեռամբ տկար և փծուն գրչի Խաչատուր երիցու եւայլն»

11. Աւետարան. միջակ կամ փոքրադիր, բոլորագիր. ՚ի վերջն. «Փառք համագոյ եւայլն. Արդ զետեղեալ կայացաւ աւարտումն սուրբ Աւետարանիս ի մայրաքաղաքն Կ. Պօլիս ձեռամբ գաղջ և ապաժուժ Խաչատուր երէցի. Ներթուականութեանս Հայոց ՌՃ. և ԺԷ. (1668) ի խնդրոյ սրբամիտ և հե-

*) Այժմ վերի թաղն «Քանտարճնիք» կանչ։

ղանս, ի սահակ անուն քահանայի Ակնցւոյ. ստացեալ յարդար արդեանց իւրոց. յիշատակ փւրն խաւրին և մուղալին եւայլն. որ ետուր գրել զսուրբ Աւետարանս և եդ յիշատակ ակի եկեղեցւոյս. զի որքան կենդանի իցէ, վայելեսցէ։ Եւ յետ փոխմանն իւրոյ յիշատակ 'ի սուրբ Գէորգ եկեղեցի. եւայլն։

12. Աւետարան. փոքր, 'ի վերջն թուականն է ՌՃ և ԻԴ. (1675) և «գրեալ ի ձեռն Խաչատուր քահանայի, յԱկն, յանուն սուրբ Աստուածածնի եկեղեցւոյ»։ Յովհաննէս անուն անձ մի ստացած և նուիրած է։ Յիշատակութեանց մէջ կայ այր մարդու «աղաստ» *) անուն մի, և կնոջ համար՝ զուլալ, կուլիխան։ 'Ի վերջն. «ղի սուրբ Աստուածածին եկեղեցիս յայսմ ամի եղև կազմեալ. թվին ՌՃԻԴ (1673) ամի, զի յայսմ ամի եղև ձիւնամեծ և եղեմնապատ որ գիր տարւոյն Ծ էր եղեալ և Եկաւորն տանուտէրեալ եւայլն։

13. Շարական. փոքր կամ միջակ, նոտր գրով. 'ի վերջն. «Այս շարական գրեցեալ և կազմեալ եղև 'ի մայրաքաղաքի Կոստանդնուպօլիս 'ի թվին Հայոց ՌՃԽԵ (1696) և տուաւ սա յիշատակ 'ի Նահանգին տիվրիկու ի գիւղն կասման. 'ի դուռն սուրբ Աստուածածնայ եկեղեցւոյն։ Արդ որ տեսանայք զսայ և զբօսնույք սովաւ յիշեցէք միով հայր մերիւ զհոգի կասմցլի ոսկերիչ մահտեսի Գասպարի և իւր որդւոյն մահտեսի տիրացու Խուտավերդուն եւայլն։

14. Յայսմաւուր. 'ի վերջն. «Արդ գրեցաւ սուրբ գիրքս որ կոչի յայսմաւուր. ձեռամբ մեղսամած. փծուն գրչի կարապետ քահանայի. թուականիս Հայոց ՌՃԾԳ (1704) ամեն. 'ի հայրապետութեան տեառն Նահապետ կաթողիկոսին եւայլն. յիշատակ ուսթա մարգարին, հօրն, մօրն, որդւոյն աղաճանին եւայլն. դստերացն գօզալին, կողակցուն ըռիանին, որդւոյն խլղաթին. կողակցուն զումաշին եւայլն. կողակցուն թանկին։ յիշատակ ի դուռն սրբոյ Աստուածածնի եկեղեցւոյ»։

*) Կան այժմ 'ի քաղաքիս «Ազտենք»։

15. *Ճարական. փոքր, նոտր գրով վերջին* 10-*րդ երեսն. «Փառք ամենասուրբ եւայլն. ՚ի հայրապետ. տեառն Եղիազարու և առաջնորդութեան նահանգիս Ղազարու եւայլն. Եւ կամեցողութեամբ Կարմրակայցի Սահակ երեցու. յիշատակ է Մահտեսի Մարտիրոսին եւայլն։» Թուական չունի։*

Ս. *Աստուածածնի եկեղեցւոյ մէջ կայ նաև փոքրադիր մի Աւետարան, մի Սաղմոս և մի Մաշտոց, որք յիշատակարան չունին։ Տպագրեալ Յայսմաւուրքի մի վերջերն գրուածին նայելով Ակնայ կեօլին ջուրն ցամքած է. Ե հեսէին մէկը մընացած է. Թուին Հայոց* ՌՃՂԲ (1743) *մարտի* Ե. *օրն շաբաթ գիշեր. եւայլն։*

16. *Աւետարան. վերի Թաղն* Օ. Գ. *Սէմէրճեանի քով. բոլորագիր։ ՚Ի վերջն* 4-*րդ երեսն. «Արդ գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ Մարգարայ մեղաւորի, ՚ի Թուականութեանս Հայոց* ՋԼՋ *՚ի յերկիր աղխբակայ, ՚ի գեաղս որ կոչի Էրընկանի. ընդհովանեաւ սուրբ Աստուածածնի տաճարիս, ՚ի յառաջնորդութեան սուրբ աթոռոյն առաքելոյն Բարդողիմէոսի, տէր յովհաննէս արքեպիսկոպոսի և ղազար քաջ և արի փիլիսոփայի. եւայլն. որ ասէք զԱստուածողորմին. ինձ մեղապարտ մարգարայ գծողիս և իմ ծնողացն. մանաւանդ և իմ վարպետացն զաքարիա վարդապետին. և Թադէոս ճգնաւորին, և Սուքիաս Մախտասի քաջ կրօնաւորին. և Վարդան կազմողին և այլոցն ամենայնի. եւայլն.» Յետոյ, Ըռէշամոն անուն ոմն Աւետարան մի գրել տալն և պարտատէրն տանելով ու ինքն ծերացած լինելուն, սոյն Աւետարանն ի փոխարէն տալն կը գրէ։ Հետաքրքրական կամ հին անուանք են. վասն սրանց՝ Խալիֆայ, Ըռէշամոն, Ռէղուլիջան, Մահսուտ։ Վասն կանանց, Խոնձ, Նշխուն, Սաղդաթ, Ջամալ։ Նաև «զաւակացն մըհամին և աննային եւայլն»։ Միւս երեսն. «Յիշեցէք..., զկողակիցն զոլլթան և զդուստրն զնուպարն և զեղբայրն ՚ի զամիր բէկն և...զուլիջան և զկողակիցն իւր զգուլան։ և զհօր եղբայրն*

իւր եարիջան *) և զկողակիցն իւր զբասմալըզ և զորդիսն իւր զբուանդն ևայլն Թուին ՌԾԵ (1606)։» Ցետոյ նոտր գրով. «Ցիշեցէք ևայլն. (վասն արանց) «ումիրջան, ղուլիջան, Թոռըն, ամիրխան» և վասն կանանց՝ «գուլնիկար, նուրի խան, Թաջում, նաէֆ»։ Ամենէն վերջն է այժմեան տիրոջ Պէհենց կամ Սէմէրճոնց Ղուկասու յիշատակարանն 1834 և յետոյ Գ. Սէմէրճեանի գրով տաճկաց 1274 ին։

17. Մաշտոց. Թղթեայ, վերին Թաղն Գալէնտէրեան Ցարութիւնի քով։ 'Ի վերջն. «փառք անսկզբնական անեղ ևայլն. որ ցանկացաւղ եղեալ երանելի և առաքինասէր քահանայն յովհաննէս աւագ երէց տիվրիկեցի. որ մականուն տարեխենց ասի. և համեստ և հեզահոգի երէցկինն իւր և ստացան զսուրբ գիրքս 'ի հալալ ընչից յիշատակ հոգոց իւրեանց ևայլն. և աղագար սարկաւագին, ևայլն.»։ Եւ մրդ գրեցաւ մաշթոցս ձեռամբ նուաստ և ներգևեալ ոգւոյ մեղապարտ Թադէոս երիցւոյ. 'ի քաղաքի (քերած է). ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի և սուրբ Լուսաւորչին։ 'Ի Թվականիս Հայոց ՋԿԶ (1517)։ յիշեցէք 'ի Քրիստոս զստացող գրոյս զվերոյ ասացեալ զտէր Յովհաննէս ևայլն. որ ետուն ի գին Մաշթոցիս Գ. Ճ. դրամ. և արարին իւրեանց հոգևոր յիշատակ։ և եդին 'ի ձեռն տէր առաքել եպիսկոպոսին յիշատակ ևայլն։ Աւագ երէցն հոգելի. տէր-Յովհաննէս Տիւրիկեցի. որդի ունէր խիստ ցանկալի.»։ Ի վերջն, տարբեր գրով «զստացող սուրբ գրոյս յիշեցէք 'ի սուրբ յաղաւթս ձեր զըսթանոսցի պունեաթն և զորդին զհալալայն և զդուստրն զզարդարն որ ստացան զսա ի հալալ ընչից իւրեանց, և ետուն 'ի ձեռս տէր պօղոսին։ ևայլն։

## ՑԱՊՈՒՋԵԽ 'Ի Ս. ՆՇԱՆ ԵԿԵՂԵՑԻՈՋ։

18. Աւետարան (մագաղաթեայ). միջակ, 'ի վերջն «ողորմեսցի Քրիստոս Աստուած պատուելի եպիսկոպոսին տէր Սի-

---

*) Վարի Թաղն Սարճանեանք կան։

մեծնի փոխեցելոյն առ Քրիստոս. ՚ի Թուին Հայոց ՉԽԷ (1298). և տառապեալ գրչիս յովհաննէս դպրի և հաւր իմոյ Կոստանդին քահանայի և բնազարմից մերոց. զի ստացաք զսուրբ մատեանս կրկին յիշատակ մեզ և ծնողաց մերոց. արդ աղաչեմք զհամայն պատահողք սորա յիշեսջիք ի սուրբ և ի մաքուր աղօթս ձեր, զի ընդ միոյն հարիւրապատիկ ձեզ պարգևեսցէ Քրիստոս։

19. Աւետարան փոքրադիր (մագաղաթեայ). ՚ի վերջն «Գրեցաւ տիեզերալոյս սուրբ Աւետարանս ՚ի Թուին ՉԿԷ (1318). ի մեծափառ և ՚ի հռչակաւոր անապատս դրազարկ։ ի հայրապետութեան տեառն կոստանդեայ կեսարացւոյ ՚ի թագաւորութեան աւշինի։ Ձեռամբ սիմէոնի սուտ անուն կրաւնաւորի ունելով իմ զաւծումն քահանայութեան ևայլն։»

20. Յիշատակարան. սխալ ի Թուին Հայոց 1100 էն. (1551) եկեղեցւոյ նուիրեալ գլխոտ, խաչ ևայլն, և նուիրատուաց անուանքն յիշած է։ «Աստուած ողորմի... ենց...անձին,...մի յիշատակ» բազմաթիւ անուանք կան գրուած որ այժմ չկան. ինչպէս նաև Անաստասենց, Կոստենց, Կոստաքին հոգոյն։ ՌՃԽ (1691) եկեղեցին նորոգած է Մ. ՚Մարգար Զօպանեան։ ՌՀԾԶ-ին (1706) գիւղացիք դարձեալ նորոգած են։ 30—40 թերթ շրջելէ յետոյ, կը գրէ. «Աստուած ողորմի Յակոբենց մահտեսի գրիգորին. հօրն մ. յովհաննէսին. մօրն մ. երանուհւոյն ևայլն. Սասանցի Աւետարան մի մագաղաթ արծաթապատ որ կայ իմէջ կողքերուն բազում սրբոց մասունք. կենաց փայտն սուրբ Նշան։ և Աստուածածնայ գլխուն մազն։ Սուրբ Գէորգայ մասն։ Պանդալիանին մասն։ Եւ Դ. առաքելոց մասն. սուրբ Հռիփսիմէի մասն. սոքա ամփոփեալ կայ իմէջ արծաթապատ կողքիս։ որք են։ Բարեխօս։ Ամենայն հաւատացելոց։ Որէ օծեալ տեառն սրբազան։ Վեհին մերոյ։ Գրիգոր Աստուածաբան հայրապետին. սրբոյն Սաղիմայ. պատրիարքին։ Եւ յետ։ յիշատակ։ Իսուրբ Նշան եկեղեցիս։ ասացէք Աստուած ողորմի։

21. Ցիշեալ Տասանցի Աւետարանն. (մագաղաթեայ) երկաթագիր. կողքերն արծաթապատ. այլ և այլ պատկերօք. իբր 12—15 օխայ։ Սկիզբն 10 պատկեր և Մատթէոսի աւետարանչի պատկերն։ Այս պատկերք բաւական գեղանկար են։ «Գիրք ծննդեանցն յոյժ գեղանկար։ Մէջ տեղն կայ պայծառակերպութեան, մատնութեան, բժշկութեան և այլն. շատ պատկերք։ 'Ի վերջն՝ «Եւ արդ գրեցաւ ծաղկեցաւ և յօրինեցաւ սուրբ աւետարանս ի թուին քրիստոսի ՌՉԼԹ. (1739) *) և 'ի թուին Հայոց ՌճՁԸ. ի հայրապետութեան սուրբ էջմիածնի տեառն ղազարու և այլն. ի յիշատակ Ապուչեխցի Ակոլենց մ. Ցովհաննէսի որդի խօճա Գրիգորն և այլն։ Հուսկ յետոյ յիշեսջիք իմաքուր մաղթանս ձեր և զմեր երկու եղբարքըս տէրաստացի անարժան և անպիտան զտիրացու բարսեղս և տիրացու Ցակոբս և զաշխատաւորս մեր սուրբ աւետարանիս հանդերձ ծնողովք մերովք և այլ ննջեցելովք և այլն, որ երկուքս իմիասին երեք տարին սակաւ ինչ պակաս աշխատեցաք սիրով 'ի վերայ սուրբ աւետարանիս։ Եւ արդ եղաւ յիշատակ սուրբ աւետարանս Ապուչեխու սուրբ Նշան եկեղեցւոյն միշտ և հանապազ անդ մնալոյ դիտաւորութեամբ և այլն. եթէ հիւանդաց տանին, գիշերը չիմնալու և այլն, նզովք. որ չիլինի թէ միւս աւետարանին պէս գողացի։» 'Ի վերջն տէրունական աղօթըն գրուած է ամբողջ՝ հայկական գրերը նմանեցնելով արաբական կուֆեան տարազին։

22. Աւետարան։ Վերջն գրուած յիշատակարանէն կը հասկցուի թէ. ՌԿԲ. (1613) գրեալ է, Զմշկածագու կարմիր վանքը Տ. Վարդանէ։

23. Աւետարան. մագաղաթեայ. «Արդ գրեցաւ սուրբ աւետարանս 'ի մայրաքաղաքն Կ. պօլիս ձեռամբ սուտ անուն ղա-

*) Թէպէտ թուականին նայելով 148 տարուան է, բայց գրին և թղթին նայելով աւելի հին է. գուցէ բուն թուականն և յիշատակարանն պատռուած և չետոյ նորոգուելով յիշատակայ՚ան գրուած ըլլայ։

զարին. ի Թուին ՌՁԲ (1633). ի յիշատակ Ապուչեխցի Սի-մոնին։

24. Աւետարան։ 'Ի վերջն. «Այս աւետարանիս պակասու-թիւնքն լմնցաւ. համաբարբառքն և խորանքն ձեռամբ սեբաստացի տիրացու բարսեղին և տիրացու Ցակոբին և արդեամբք տիրացու Ներսէսին. որք տեսանէք տուք զողորմի մեզ և ծնողաց մերոյ և դուք յիշեալ լիջիք աստուծոյ ամէն։ ՌՃՂ (1741)։

25. Աւետարան։ Թուականն է ՌՃԾէ (1708). ի յիշատակ Ետկար եղբարք և սարգիս ևայլն։

26. Աւետարան։ Ի վերջն «Աւարտեցաւ աւետարանս ևայլն. ի Կ. Պոլիս։ 'Ի Թուաբերութեան Հայոց ՌՃԿԲ (1713). ի հայրապետութեան սուրբ էջմիածնի տեառն տեառն աղէքսանդրի կաթուղիկոսի ևայլն.։ նուիրեալ Ապուչեխցի մ. պօղոսէ 'ի սուրբ նշան եկեղեցին։ Ի յիշատակ իւր»։

Կան երկու յայսմաւուրք 100—150 տարուան զորս չի գրեցի։ Աւագ-երեց տէր Ալեքսանն կ՚ըսէր թէ յեկեղեցւոյն այլ մատեանք ևս կան, բայց պատուելի դասատուին հետ նայած են, հին չի կայ։ Փափազեան Թորոս աղային քով մէկ ձեռագիր պատմութիւն կայ եղեր. 6—7 տարի յառաջ մէկու մի տուած է աւանդ. և նա այլ երկիր տարած է։ 200 տարիէ 'ի վեր գիւղին մէջ պատահած նշանաւոր դէպքերը գրուած է. 40 հաւկիթն 1 փր. կուտան եղեր։

---

## Ի ԿԱՄԱՐԱԿԱՊ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻՈՅ։

27. Աւետարան. Սասանցի, մագաղաթեայ, երկաթագիր։ Գիրք ծննդեան ևայլն. սկսելով շարունակած է. և Ղուկասու աւետարանչի պատկերի մի քովն գրուած է. «Ես Վահրամ կոմս որ ստացայ զսուրբ զաւետարանս զայս առ 'ի յիշատակ ինձ և ծնողաց իմոց. և համաւրէն ամենայն ազգի իմում որ են կենդանիք և մեռեալք. և խոստացայ տալ զսա ի վանս որ անուանեալ կոչի «Հռոմուլոսի» և սա փառաւոր մեծանուն և

սուրբ հարս որ յորջորջել կոչին անանէ և ազարէ որ 'ի ժամանակ մեր փայլին իբրև զարեգակն յերկրի մարմին ունելով և զանմարմնոցն բերելով զաւրինակ. և իմ ապաւինել յաղաւթս սոցա իբրև յաշտարակ ամուր. ունելով զսոսա ինձ յոյս կենաց և մահու որ և աւանդեցի և եւոու սոցա զսուրբ զաւետարանս զայս ղօր բազում ծախս և աշխատութիւն կրեցի իմերայ սորա. որ չունի ոք իշխանութիւն 'ի բանէն Աստուծոյ զսա ընդ հարկիւ արկանել. ոչ տուրս տալ և ոչ գրաւական դնել և ոչ վաճառել. այլ ազատ է ուր և էր սա առ 'ի յիշատակ Սենեքերիմենց սեռիս և եթէ ոք յանզգամաց յանդգնի և վաճառէ զսա մասն և բաժին զյուդայի մատնչին առցէ որ զՔրիստոս վաճառեաց ընդ երեսուն արծաթոյ»: Աւետարանիս սկիզբն, հաւանականաբար, պատկեր կամ այլ յիշատակութիւն կեցած լինելու է, բայց այժմ չի կայ, և մէկ թերթ միայն կայ, մէջ տեղերն ալ մերթ ընդ մէրթ թղթէ են. իսկ վերջն, իբր 20 թերթ թղթէ են: Ի վերջն գրուած է. «Փառք ամենազաւր ամենիմաստ եայլն: Արդ այսմ Աստուածեղէն և երկնապարգև գանձիս և լուսափայլ մարգարտիս եղև ցանկացող և յօժար սրտիւ փափաքող 'ի գիւղէն կամարկապէն Փաշայենց մահտեսի յակոբն որ ստացաւ զսուրբ աւետարանս ի հալալ արդեանց իւրոց և ետ յիշատակ նախնեաց և համայն կենդանեաց 'ի սոյն գիւղս Կամարկապ Նոր կերտեցեալ սուրբ Աստուածածնայ եկեղեցին 'ի թուականութեանս մերում ՌՄԺԵ-ին (1766) օգոս. ամսոյ ա-ինն»: Ցեառոյ, իւր ազգականները կը յիշէ. վասն առն, «Կիւլազն, մերաքն» և վասն կանանց, «Զուլալ, Արեգնազանդ, Նուրիկ»: Աւետարանի գրութեան թուականն անորոշ է:

28. Աւետարան: Միջակ, թղթեայ, բոլորագրով ձեռագիր: Ի վերջն. «Փառք փառաց թագաւորին և այլն. ես Նուաստ Գրիգորս անարժանս և անպիտանս յամենայնի: Տեսի զԱստուածախօս աւետարանս Քրիստոսի զի էր բժիշկ ամէն ցաւի:» Կը յիշէ ի ս. Երուսաղէմ գրուիլն 'ի յիշատակ իւր ծնողացն և նախնեացն: «'Ի թուին ՉԺԷ (1268) ի թագաւորութեան

Հայոց հեթմոյ ծերի, և 'ի կաթողիկոսութեանն տեառն Յակոբայ որ է գրած 'ի յայսմ ամի 'ի Նեղ և 'ի յանձուկ ժամանակի. զի յայսմ ամի ազատեցաւ 'ի ծառայութենէ. լեռն որդի Թագաւորի. և այլն». Ցետոյ սոյն մատենիս կազմող «առաքել հնազանդրենց» ոմն քանի մի տող կը գրէ. սորա Թուականն ևս «ՉԺԷ» է։ ՌԿԵ (1616) Թուականին Նորոգած է «սիմոն աբեղայ» անուն անձն որ կ'ըսէ. յիշեցէք և այլն. զոէր պետրոս և զոէր մարտիրոս»։ Ցետոյ բոլորագրով 10 Թղթէ բաղկացեալ ստանաւոր մի կայ, և 'ի վերջն. «սուրբ աւետարանս էր մահտեսի Բարունակի որդի յակոբ ամիրայ, յետ նորա որդւոյն մարտիրոս ամիրային և այլն»։ (Աստ կը գրէ փոքր մահտեսի բարունակին վախճանիլն և ժառանգորդաց «զաւետարանս» Կամարկապու ս. Աստուածածնայ եկեղեցւոյն նուիրելնին 'ի յիշատակ անջնջելի). յամի տեառն 1802 և հայոց (ՌՄԾԱ)։

29. Աւետարան։ Միջակ, բոլորագիր, սկիզբն 15—20 պատկերովք. 'ի վերջն՝ «Փառք անսկզբանն և այլն. եդին յիշատակ 'ի գիւղն Կամրկապ և 'ի դուռն սուրբ Խաչաթոռ եկեղեցւոյն. Թուին ՌՃԺԹ (1670) մարտի ԺԲ օրն Գ շաբթի. ձեռամբ ոգնամեղ և անիմաստ գծողս զտիրատուր դպիրս և այլն»։ Յիշատակութեանց մէջ «զմահտեսի Կուլազն, Մուրատն, Թամն, Քընարն, Փաշն, միուս Թանին»։

30. Աւետարան։ Միջակ, բոլորագիր. «Փառք ամենազօր ամենիմաստ և այլն.» Ցետ յիշատակութեանց «Գծողիս մարգարտի» յետոյ կը յարէ. «'ի Թուականիս Հայոց ՌՃ և ԻԵ, (1676) ի հայրապետութեան Հայոց սուրբ աթոռոյն էջմիածնի Յակոբայ Ջուղայեցւոյ և աթոռակալութեան մերոյս նահանգի սուրբ Կարապետին տեառն առաքեալ րաբունապետին և 'ի Թագաւորութեան պարսից շահ սլեմանին։ Արդ գրեցաւ սուրբ աւետարանս 'ի յերկիրս երնջակ *) 'ի քաղաքս

*) Պատմ. Զամչ. հատոր 3. ցանկ, «գաւառ 'ի Սիւնիս և այլն»։ Անդ՝ «Շոռոթաւան, ի գողթն գաւառ» գրուած է, բայց 'ի յիշատակարանիս «Իշօռօթ երկիրն որ է Սպահան» ևս գրուած է. արդե՞օք անդ ևս կայ համանուն մի աւան, կամ վերջին գրողն սխալ գրել է. դյանի չէ։

շոռօթ կաչեցեալ սուրբ Աստուածածին և սուրբ Լուսաւորչին 'ի մէջ համախմբումն սուրբ կուսաստանին, եւայլն։ Հետաքր-քրական են վասն կանանց ողիմաթին, սանդուխտին, թեկղոյն, սոփիայլին, եղումին, կիկլիին, ագիգին, և զգուլխտանն, գշուշանն, զգուհարինէն, եղինարն։ Նոր յիշատակարանէն մի յետոյ, «բայց վասն ծովացեալ մեղաց մերոց, սուրբք և սրբութիւնք են արհամարհին և անզօր երևին. և որպէս սուրբ աւետարանքս այս. զի վասն բազում անօրէնութեան իմում մատնեալ էր 'ի գերութիւն, 'ի շոռօթ երկիրն որ է Սպահան։ որ 'ի ձեռանէ 'ի ձեռ. եկելով եկեալ հասեալ ի Նահանգի մերում Ակնայ՝ որ Կամարակապ վերաձայնի. 'ի Թուականի Հայոց ՌՄԹ-ին (1760)։ ամսեանն փետր. մէկին 'ի Հայրապետութեան սուրբ էջմիածնայ տեառն Յակոբ կաթողիկոսի, և 'ի Նահանգի մերում վերատեսուչ մարտիրոս վարդապետի, որ տիրէր ի վերայ սուրբ փրկչի վանից եւայլն։

31. Աւետարան։ Փոքր, բոլորագիր, յիշատակարանն՝ Փառք համագոյ եւայլն, գրեցաւ աւետարանս 'ի քաղաքն յերուսաղէմ 'ի դուռն սուրբ Յակոբայ 'ի Թուականին Հայոց ՌՃԻԸ (1679)։ Արդ գրեցաւ...ձեռամբ Նորընծայ տէր ղազարի եւայլն. յիշեցէք զմահտեսի միրաիչն և ծնողացն ջահլին, և կենակցին, եւայլն. հետաքրքրական է ջահլի անունն։ 'Ի վերջն, Կամարկապցի Մովսիսեանց յիշատակարան մի կայ, տաճկաց 1180-ին գրուած. Թուին հայոց ՌՄԺԶ (1767) Յունվարի 1-ին։

32. Յայսմաւուր։ Մագաղաթեայ, մեծադիր ($8^{1}/_{2}$ օխայ) փառք անսկիզբն եւայլն։ Յետոյ կը յիշէ Կամրկապու եկեղեցւոյն նուիրելն եւայլն։ Վարպետ ստեփաննոսին և ծնողացն մահտեսի հազարին և մանաշին և կողակցուն խանզատին և եղբօրն պեհրօզին, մարտիրոսին, մալիւմին, յովհաննեսին և մեծ պապուն վասիլին եւայլն։ Գրեալ 'ի Կ. Պօլիս ՌՃԼԳ (1684). Թագաւորութեան սուլթան մահմէտի և ի հայրապետութեան հայոց որ 'ի սուրբ էջմիածին տեառն տէր (այս անուն) կաթողիկոսի։

33. Աւետարան։ Փոքր կամ միջակ դիրքով, մագաղաթեայ, (տպագրեալ յօյժ լաւ պատկերներով)։ 'Ի վերջն, ձեռագիր յիշատակարանն է «'ի Թուին հայոց ՌՃՂԴ (1745). 'ի հայրապետութեան տեառն Ղազարու ամենից հայոց կաթուղիկոսի եւայլն։ Յիշեսջիք զգծագրողքս և զծաղկողքս սորին զերեք եղբարքս սեբաստեան եւայլն. զԳաբրիելս, զսարգիսս, և զմիքայելս»։ Յետոյ կը յիշէ հացագործ վարպետ Կամարկապի Զիչէկեան Յուսիկն, որ նուիրած է գիւղին եկեղեցւոյն 'ի յիշատակ ծնողացն եւայլն։

34. Աւետարան։ փոքր, բոլորագիր· «Գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ նուաստ գրչի մեղապարտի ունայնագործ մելանաւորի։ 'Ի թվաբերութեանս ազգանագեաս և աբեթական տոմարի ՌՃԻԱ (1672). և ըստ նորում շրջանի ԼԴ. և 'ի գալստենէ կենարարին ՌԶՀԲ։ 'Ի ստոյգ, եւ առաւել համաբայիցն զի գաղափար սորին էր 'ի դրանէ սուրբ Աստուածածնի և սուրբ ստեփաննոսի 'ի սուրբ յանապատ որ կոչի շենհերոյ *) 'ի յայսմ ժամանակի 'ի հայրապետութեան հայոց տեառն յակոբայ։ եւ առաջնորդութեան Յովհաննէս քաջ րաբունապետի եւայլն»։ Ապա նօտր գրով՝ «յիշատակ է պայենց տէր Մելքիսեդին եւայլն, 'ի դուռն սուրբ Աստուածածնայ սուրբ Նիկողայոսի խաչին եւայլն. Թվին ՌՄԺԱ-ին (1762) հոկտ. ԻԱ-ին»։

35. Աւետարան։ փոքր, վերջին թուղթն ընկած է. տարբեր գրով մի լրացուցած են. յիշատակարան և թուական չունի, բոլորագիր. միայն 'ի վերջն, «Յիշատակ է սուրբ աւետարանս տէր կարապետին տիրացու մատթէոսին. եւայլն. Թվին ՌՄԻԶ» (1777)։

36. Ճառական։ փոքր, թուականն 'ի սկզբան։ «Յիշատակ է յայս շարականս մահտեսի Ալիքսանենց աղասիկ աղային Աստուած բարի աւյլում տացէ ամէն թվին 1241-ին։ (1792) Ճարականին սկզբներն սուրբ Սարգսայ շարականէն յետոյ «շա—

*) Պատմ. Զամչ. 3. հատ. վերջին ցանկն «Շենհեր աւան և գաւառ փոքր խախական գաւառի. առ սահմանօք տաթևու, եւայլն»

րական համամայ» խորագրով հինգ տուն շարական կայ։

37. Աւետարան։ միջակ, մագաղաթեայ, երկաթագիր. սկիզբն ունի յիշատակարան մի տգեղ բոլորագրով, ուր կը գրէ Պօղոս վարդապետի մի սոյն աւետարանն իգնատիոս գրագրէ մը գնելն ևայլն։ 'Ի վերջն, լաւ բոլորագրով յիշատակարան մ'ունի. որով սոյն սաստանցի աւետարանն կամարկապու եկեղեցւոյն նուիրելն կը գրէ. «տէր մինասենց ևայլն. մահտեսի Ալիքսանոսի որդի մահտեսի Պօղոս բարեպաշտօն ամիրայն, 'ի ծախու առեալ...յուսմեմնէ միաբանից 'ի վանօրէից հայաստանեայց, և ընծայեալ է զայն յեղբօրն հարազատի իւրում իշխանապետ և մեծահաւատ պետրոս ամիրային ևայլն»։ Աւետարանս թուական չունի։

38. Աւետարան։ Միջակ, բոլորագիր, սկիզբն 15—20 պատկերօք. յիշատակարան և թուական չունի։

1. Հրովարտակ։ Օսմանեան կայսերական թուղրային տեղը եռանկիւնաձև ոսկեզօծեալ նկարիւք։ Տէլիք-թաշ, Խասսա ևայլն, լերանց արքունի պողոտաներու և կամուրջին (հաւանաբար Ակնայ) նորոգման ծախուց՝ քաղաքին և Ապուչեխ, Կամարակապ, Կարուշլայ, Վանք ևայլն. գիւղօրէից բաշխման վերաբերեալ է։ Թուականն է, տաճկաց 1171 ճէմազի-իւլ-էվվէլի 29։

1. Պայմանագիր Հայոց։ Իբր կէս մեթր երկայնութեամբ։ Գիւղն պարտքի ներքև ընկած է եղեր, ազատած են և ուխտած են այլևս պարտք չընեն. այլ եթէ 100 ղրուշ ծախք պատահի, նոյն օրն բաշխուի և վճարուի։ Պայմանն յարգողաց օրհնութիւնք և չի լողաց անէծք գրուած է։ Սկիզբն. «Անուամբ հօր և որդւոյ և հոգւոյն սրբոյ, յաւիտեանս յաւիտենից ամէն։ Զօրութիւն պայմանագրոյս այս է. զի մեք 'ի Կամարակապու օրհնեալ գիւղիս թէ մեղապարտ քահանայքս և թէ բոլոր միաբան մեծ և փոքր եղբարքս, գումարեցանք իմի տեղ և միաբանութեամբ զայս ուխտ և դաշինս եդաք. ևայլն»։ Թուին Հայոց (գրաւոր) 1234 (1785) ՑԼՍ Իէ։

1. Թուղթ իբր 3/4 մեթր երկայնութեամբ և իբր կէս մեթր լայնութեամբ. ՚ի Կ. Պօլիս գտնուող Կամարկապցիներէն կնքեալ և ուղարկեալ. Ծննդեան, Հարսանեաց, օժիտի և այլն. շռայլ ծախուց չափաւորութեան վերաբերեալ. Թուականն է ՌՄԼ. (1781) Յունվար ա-ին»: Յետկոյսն՝ «Հաստցէ ՚ի ձեռն մերոյ դե-տի և երիցս երանեալ հօրն մերոյ տեառն Միքայէլ աստուածա-բան վարդապետին. և այլն. եկեղեցւոյն ատեանն ընթեռնուլ տայցէ»:

---

## Ի ԿԱՐՈՒՇԼԱՑ ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԱՑ ԵԿԵՂԵՑՒՈՅ:

39. Աւետարան: Մեծադիր, իբր 6 օխայ, երկաթագիր, մագաղաթեայ. սաստանցի անուանեալ. կողքն սև թաւիշով, կի-սովին արծաթապատ: Մէջ տեղէն ուրեք թերթ պակաս, որոյ տեղն թուղթ անցուցած, և լրացուցած են բոլորագրով: Յի-շատակարանն է. «Շնորհիւն Աստուծոյ, ես Ջունդ և ամուսին իմ շահնարս մեղուցեալ ծառայք Աստուծոյ. յուսալով զողոր-մութիւն բարերարին աստուծոյ, ստացաք զԱստուածախօսն մատեանս ՚ի մեր արդար վաստակոց և տուաք ՚իմեր գերեզմա-նատուն սուրբ ուխտն իվանքն. ՚ի ձեռն պատուական քահանայից և հաւր գրիգորոյ որոց անուանքն ՚ի դպրութիւն կենաց: Իսկ ՚ի յԱստուածասաստ ժամանակի որ եկն թաթարս և տապա-լեալ զամենայն աշխարհս զոր ոչ կարեմք զանբաւ և զանթիւ զաւերումն ասել. և այս ՚ի մեղաց մերոց. այլ ոչ գիտեմք զկա-տարած խաղաղութեան ինքն միայն գիտէ և այլն. Արդ մեծ հաւատով և յուսով անկանիմք առաջի ամենեցուն յիշեսջիք ՚ի սուրբ յաղաւթս ձեր զստացողք սուրբ աւետարանիս զՋունդիկ և զամուսն իւր զշահնարն և այլն»: ՚Ի վերջն. «Փառք ամենա-սուրբ երրորդութեան և այլն. դարձեալ յիշատակ է սուրբ աւե-տարանս Ակնցի եազբճոցն Կիրակոսին և պօղօսին և այլն: Դար-ձեալ յիշեսջիք զմահտեսի Պօղոս և կողակիցն իւր զմահտեսի աննան. որ ՚ի հալալ արդեանցն իւրեանց ազատեցին գնեցին

զսուրբ աւետարանս և ազատեցին 'ի ձեռաց անօրինաց և այլազգաց, որ պատառեալ և փեռեկեալ էին զսուրբ աւետարանս որպէս որ տեսանէքդ։ Արդ նորոգեցաւ վերջի նորոգումս և կազմեցաւ սուրբ աւետարանս։ Ձեռամբ անարժան եւայլն. Խաչատուր երիցու Ակնցու որ զանունս ունիմ և զգործս ոչ կատարեմ։ Եղև նորոգեալ ի Թվականիս Հայոց ՌՃԻԷ (1678) ի մայիս ամսոյ ԻԸ։ Որք հանդիպիք սմա կարդալով կամ օրինակելով, յիշեսջիք զԽաչատուր երէցս և զծնողքն իմ զԱստուածատուրն և Խանզատան եւայլն»։

40. Աւետարան։ Փոքր, բոլորագիր։ Յիշատակարանն՝ «Փառք ամենասուրբ եւայլն. գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ տէր Նիկողոսին 'ի Թուին ՌՀԴ (1625). 'ի հայրապետութեան տեառն տէր Մինաս կաթողիկոսին եւայլն. 'ի քաղաքն Հալապ եւայլն. ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի և սուրբ քառասնիցն եւայլն»։ Վերջն, «դարձեալ յիշեցէք մաքրափայլ աղօթս ձեր զվերջին ստացող սուրբ աւետարանիս զխոճայ յակոբն եւայլն. և եդ յիշատակ 'ի դրունս սուրբ ստեփաննոսի 'ի Թվին ՌՂԸ (1649) ի հայրապետութեան տեառն տէր Ներսիսի սեբաստացւոյ եւայլն»։

41. Աւետարան։ Փոքր, բոլորագիր. 'ի վերջն՝ «Փառք ամենասուրբ երրորդութեան եւայլն։ Արդ գրեցաւ սուրբ աւետարանս 'ի քաղաքն Ստամպօլ որ է կոստանդինապօլիս բիւզանդէ. 'ի դուռն սրբոյն Սարգսի զօրաւարին և որդւոյ նորա Մարտիրոսին 'ի Թվականիս Հայոց ՌՃԳ (1654) ձեռամբ սուտ անուն Յովանէս դպրի զոր և յիշել զիս առ տէր մաղթեմ։ Այլ և յիշեսջիք զմահտեսի Ղազարն և զիւր եղբայրն զՓիլիպպոսն եւայլն. որ եդեալ են յիշատակ ակնայ քաղաքն 'ի գիւղըն Կարուշլա, ի դուռն սրբոց անարծաթ բժշկացն կոզմայի և դամիանոսի։ վերստին նորոգեցաւ ՌՃԿԸ (1719) օգոստ. ԻԴ»։

42. Ճաշու գիրք։ Մեծադիր, իբր 8 օխա. լաւ բոլորագրով. վերջերն գրուածին նայելով, փափաքելով ստացած է Մուրատ անուն անձ մի, և մէկ սիւնակ յետոյ, «Այլ և գրե-

ցաւ սա ագուլիս 'ի դուռն սրբոյ քրիստափորի, ևայլն. 'ի հայրապետութեան տեառն Յակոբայ, իշխանութեան պարսից փոքըր Շահաբասին ևայլն։ յետոյ ընդնոսին և զիս անյիշելի գըրիչս անդրէաս երէց երկրէն սիւնեաց. ևայլն. թվին հայոց հազար հարիւր վեց (1657).

43. Յայսմաւուրք Մեծագիր, (իբր 10 օխայ) բոլորագիր։ 'Ի վերջն՝ «Արդ գրեցաւ 'ի մեծահանդէս քաղաքս Կ. Պօլսի 'ի թվականիս հայոց ՌՃԺԸ (1669) 'ի թագաւորութեան ևայլն. սուլթան Մահմուտայ, 'ի հայրապետութեան էջմիածնի տէր Յակոբ կաթողիկոսի ձեռամբ ոկար և փծուն գրչիս սեբաստացի խաչատուր երեցու. 'ի խնդրոյ Աստուածասէր տիրացու պետրոսին յիշատակ հոգւոյ և ծնողացն ևայլն»։

44. Աւետարան. փոքր, բոլորագիր, 'ի վերջն՝ «Փառք ամենասուրբ երրորդութեան ևայլն։ Արդ շնորհիւ տեառն ըսկսեալ և ողորմութեամբ նորին յանկ ելեալ աւարտեցաւ շնորհաբաշխ մատեանս Աստուածաբան և կենսաբեր սուրբ աւետարանս ձեռամբ Յակոբ քահանային. թվին ՌՃԼԲ (1683). 'ի քաղաքն ստամբօլ։ Արդ ցանկացեալ եղև. ևայլն՝ քրիստոսասէր և մեծազգի այրս այս մահտեսի տիրացու պետրոսն. որ ստացաւ զսա 'ի հալալ արդեանց իւրոց և ետ յիշատակ հոգւոյ իւրոյ ևայլն. 'ի գիւղն որ կոչի Կարուշլայ, 'ի դուռն սրբոց անարծաթ բժշկացն Կոզմայի և Դամիանոսի»։ Այլ յիշատակութեանց մէջ. «կողակցուն մահտեսի մաւրվաթին և միւս մեծ պապուն յումրիճանին ևայլն»։ Կայ յիշատակարան մ՚ևս տէր Կարապետ երիցու 'ի թուին ՌՄԼ (1781)։

---

### Ի ՆԱՐՎԵՐ.

45. Աւետարան յեկեղեցւոջն. 'ի հայրապետութեան կոստանդի կաթողիկոսի և 'ի թագաւորութեանն Հեթմայ ևայլն. և ՉԹ (1260) հայոց թուականին։—Ի Կիլիկիա, Կոկիսոնի և Կապանի մէջ գրուած է։

46 «Շնորհիւ տեառն սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի զայսմաւուրքս զայս ի քաղաքիս որ կոչի Կոստանդնուպաւլիս ի դրունս սրբոյն սարգսի զաւրավարին և որդւոցն նորա մարտիրոսին. ձեռամբ մեղաւոր և անարժան սարգսիս, ի մեծ թուականիս Հայոց ՌՂԹ (1640) ի հայրապետութեան տեառն Էջմիածնայ Փիլիպպոս ամենայն Հայոց կաթողիկոսի։ և մերոյս առաջնորդութեան Կոստանդնուպաւլիսի, տէր դաւիթ քաջ րաբունապետի. և թագաւորութեանն տաճկաց սուլթան մուրատ խոնդքորն բաբելոն գնաց առաւ եկաւ տաւր եգաւ. և սուլթան իպրահիմն ի թաղթն անցաւ. ի դառն և ի նեղ ժամանակիս, յորում նեղիմք և հալածիմք ի յանաւրինաց. և ի սուտ եղբարց։...դարձեալ...մահտեսի ամբակումին և հանգուցեալ եղբարցն աստուածատուրն. պակլարն. որք են ոսքա ի յերկրէն նաւրերոյ. որ ետուն գրել զայսմաւուրքս յիշատակ ի դուռն սուրբ Աստուածածին։...դարձեալ յիշեցէք աղաւթս ձեր զԿամխա յերկրէն ի գեղջն ապուշտայ զտէր մարտիրոս քահանայն, որ բազում աշխատանք ունի ի վասն այսմաւուրքիս և վերակացուն նա էր...Այսմ տարիս ստացողն հանդիպեալ յերուսաղէմ ի թվականիս ՌՂԳ (1634) ի Հայոց ազգիս և Յունաց մէջն բազում աղմուկ և մրդովուկ և խռովութիւն եղաւ. վասն ծռազատկին ևայլնս։ Յետոյ մանրամաս կը գրէ. համառօտութիւնն է, թէ նախ Դամասկոսի փաշայէն յետոյ Հալէպի մեծ փաշայէն հրամաններ եկած է. քրիստոնեայ ազգք ժողով ընելով հաշուած են թէ Ապրիլ 13-ին է զատիկը. և օճ-ճիլ ու կէօճէլի եղած է. թէ Յոյնք, Ապրիլ 6-ին, սուրբ Յարութիւն գնացած են ու լոյս ելած չէ, և Հայք՝ խպտեաց, ասորւոց և Հապէշաց հետ Ապրիլ 13-ին ս. Յարութիւն գնացած են ու լոյսն ծագած է. թէ յետոյ Յոյնք Պոլիս դիմած և 200 քեռ ծախք ըրած են և Հայք օգոս. 10-ին Պոլիս գնացած և անօգնական մնացած են. թէ՝ նենգութեամբ Յունաց

Արաբկերի երկրէն Տէր Մինաս քահանայն և Սեբաստիոյ երկրէն Սէֆէր անուն հայ մի գլխատուած են. ասոնց մարմնոյն վրայ լոյս ծագած է. Յոյն մի զասոնք տեսնելով Լուսաւորչայ օրէնքին հաւատացած և Յունաց մատնութեամբ, կշտէն ցիցն ելած է ևայլն։ Յետոյ կը գրէ. «Յայսմ ամի էր Կ. Պօլիս պատրիարք Կեսարացի Գրիգոր վարդապետն անչափ փիլիսոփայն. և 'ի սուրբ յԵրուսաղէմ կուսակրաւն լուսարարն Մարկոս, ևայլն»։ Նաւրեբու քահանայն Երզնկացի տէր պետրոսն յայմաւուրքին լրանալն լսելով Կ. Պօլիս գնալն և քանի մ'ամիս աշխատութիւնն կրելէ յետոյ, կ'ըսէ. «Գեղի իշխանք մեհրանենց որդիք. և Միսաք, Կարապետին որդիքն մելքոն»։

---

Ի ԲԻՆԿԱՑ.

Ըստ ծանուցման Տէր Յակոբ քահանայի, գիւղին ս. Հրեշտակապետ եկեղեցւոյ մէջ մի քանի մագաղաթեայ Աւետարան և մաշտոց կայ, բայց միայն աւետարանի մի յիշատակարանն կը գրէ, զոր դոյզն ինչ յապաւմամբ՝ օրինակեցի, որ է։

47. «Փառք ևայլն.

Գրեցաւ ս. Աւետարանս հրամանաւ տիեզերալոյս մեծ րաբունապետին Օհաննու որոտնեցւոյ 'ի յԱստուածապահ գաւառս եկեղեաց յանապատիս լուսաւորչի ընդ հովանեաւ սուրբ Կարապետիս որ շինեալ է նոյն ինքն հօրն մերոյ սրբոյն Գրիգորի, որ 'ի սմին լեալ ձեռնադրութիւն Ոստակէսի։ Թուականութեանս Հայոց պ. որդի ե (ի՞). երրորդի, երկրորդի (1373), «ձեռամբ յոգնեղկելի և բազմամեղ գրչի Գրիգորի սպասաւորի նմին և բանի։ Միակ ըստ նախնեացն խութլուշ»=ի յընտիր օրինակէ ստուգեալ։

Արդ աղաչեմ զձեզ ևայլն. յիշատակել առաջի Քրիստոսի զքաջ ախոյեանն և զարի նահատակն զՅովհաննէս րաբունին զվարժապետն իմ հանդերձ ևայլն ևայլն. և զիս զմեղաւոր

աշխատողս և զծնողսն իմ ևայլն. և ասէ. Քրիստոս որդի, մեզ և այլ աշխատողաց ՚ի սմա որք ՚ի ծաղկել և կազմել. և որք ՚ի Ղուկաս գլխոյն գրեալ եղև մինչև ՃԿԵ համարն. զոր և ամենեցուն ձեզ և մեզ ողորմեսցի Քրիստոս։ Դարձեալ աղաչեմ ՚ի տէր զբարի և զհաւատարիմ զհեզահոգի և զքաղցրաբարբ սարկաւագն Նիկոլ որ ցանկացող եղև այսմ Աստուածային զանձուս եռափափաք տենչմամբ զցայգ և զցերեկ և վաճառեաց զինչս իւր և գնեաց զայս պատուական մարգարիտ. և եթող յիշատակ ևայլն. հօրն Թուխ մանուկայ և մօրն իւր Մենային, եղբարց իւրոց Վասակին և Մրուանայ և քերցն իւր Սառային և Միրմային։ զոր տէր Աստուած վայելել տացէ ևայլն։ Ո՛վ եղբայր. զյիշատակարանս յետոյ գրեցի յԵրուսաղէմ Ս. քաղաքս և կարի արտօրանօք ի մեծի հինգշաբթուջ աւուրս, վասն սուղութեան ՚ի տեղիս տեղիս ՚ի խաչ նշան եմ արարել ՚ի վերայ անց բանի՝ որ յայլ աւետարանս լինի յայն տեղն գիր աւելորդ։ Եկամ թէ այս գիրս յայս տեղս պիտոյէ։ Զմագաղաթս նոյն ինքն մեծ վարդապետըն իւր ձեռօքն գործեաց և մեզ ուսոյց զսոյն արուեստս։

---

Հայ-Հոռոմ գիւղօրէից մէջ եղած ձեռագիր մատեանք։

48. Ի Տրզու։ Աւետարան մի կայ որոյ համար կ՚ըսուէր, թէ գիւղին Ցոյն քահանայն 83-ին, հեռագրական պաշտօնէի մ՚ը Կայսար էֆ-ի, 4 լիրայի վաճառած և յետոյ գիւղացւոց յուզման վրայ, «Աւետարանն մեր տունն էր, մեզի գիտէի» կ՚ըսէ և կ՚երթայ Քար-բերդ և Աւետարանն կը բերէ։ Յիշատակարանի թուղթ ինչպէս և թուական չի կայ։ Առաջքի կողքին վրայ «Թիվին Քրիստոնեանքից ՌՃԿԳ (1714) փետրվարին, մառտին ապրիլին բազում շարժ եղև իմ մեղացն էր» գրուած է. Թղթեայ, բոլորագիր և գիրքն փոքր էր. ուստի չեմ կարծեր թէ՝ ինչպէս կը պնդեն ոմանք՝ 600 կամ 700

տարուան ըլլայ, զի Անիայ և գիւղօրէից փոքրադիր և՝ համեմատաբար նոր աւետարաններուն մեծ մասին գրերը և մեծութիւն սորա կը նմանին։

---

## ՚Ի ՎԱՆՔ ԳԻՒՂ. Ի Ս. ԳԷՈՐԳ ԵԿԵՂԵՑԻՈՋ.

49. Յայսմաւուր կամ վարք սրբոց։ Ամեն օր կը կարդացուի։ ՚Ի վերջն թուղթ 3-րդ. «Փառք ամենազաւր. և այլն. հաւր բարերարի և այլն»։ Հետևեալ երեսն. «Արդ որ ճաշակէք յամենառատ սեղանոյն և այլն յիշեսջիք ՚ի մաքրափայլ յաղաւթս ձեր և այլն. բարի քրիստոնէին և բարեմիտ մ. Սավային և ծնողացըն և այլն. կողակցուն մահտեսի ձիհանին և որդւոցն Սիմաւոնին շորհաթին և թոռանցն մեծ պապուն և մեծ մամուն և այլն»։ Յետոյ, «Եւ արդ ես անարժան հող և մոխիր, Թափառնիկս և ունայնս ՚ի գործս բարեաց, իգնատիոս սուտ անուն երէց որ անուամբ միայն եմ քահանայ և այլն. շնորհիւ տեառն սկսայ, մեծ թուականիս ՌՃԾ (1701) յունվարի առաջին աւրն։ Եւ ողորմութեամբն աստուծոյ կատարեցի զսրբոց բանակըս ՌՃԾԱ (1702) յամսեանն մայիսի ԻԸ»։ Յաջորդ երեսն, երեք յայսմաւուրքէ ժողովելով սոյնն կազմելն գրելէն յետոյ, կ՚ըսէ. «՚Ի գիւղս Ապուչեխ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածին և սուրբ Նշանին և բազմաչարչար նահատակին սրբոյն Գէորգայ. և այլն։ Գրեցաւ (՚ի ժամանակս) Սուլթան մուստաֆայ խնդքորին»։ Յետոյ՝ «Փառք եզակի տէրութեանն և սեռ հիսեակ անձնաւորութեանն հօր և որդւոյ և հոգւոյն սրբոյ յաւիտեանս։ Եղև աւարտումն սուրբ գրոցս ՚ի թուին հոռմոց (՞) ՌՃԾԱ (1702) ամսեանն մայիսի Լ. և այլն. և ես ՚ի դուռն սըրբոյն սարգիսի զաւրավարին և որդւոցն նորա մարտիրոսին որ գործումն զանուընն ելից։ Սոյն յայսմաւուր իբր 10 օխայ կամ 13 քիլոկրամ՝ կուգայ։

50. Սկիզբն գրուած. «Մեծ օրօլօկիոնս թարգմանեալ ՚ի

Կելինից հայոց բարբառ. որ պարունակէ զամենայն տիւագիշերային կարգաւորութիւն և զաղաչողական զանօնս Աստուածածնի, և զտունս և զԴրօբարիայքս և զԳօնտաքիօնքս սրբոց բոլոր տարւոյն. հանդերձ հաղորդութեամբն. և այլոց հարկաւորաց: Եւ Զատկաց Յաւիտենականաց: Այսպէս Թարգմանութեանս հետևեալ Ճամճի որդի տիրացու Յակոբն: Յամի տեառըն «1741 իաննու արիյոսի «1» »:

51. Աւետարան: 'Ի ս. Զաւկի, «Իսկզբանէ էր բանն եւայլն» աւետարանէն սկսեալ, աւուր պատշաճի շարունակելի. գիրն նախընթացէն լաւագոյն և ծաղկանկար: 'Ի վերջն, «'Ի թուականիս ամենափրկչին 1787 Օգոս. ԺԲ եւայլն»: Քանի մը տող վերևն՝ «Հուսկ ետոյ յիշեցէք եւայլն. Տէր Յովհաննէս որ եմ որդի տէր Յարութիւն քահանայի 'ի գիւղն Կամրակապէն եւայլն»: Եւ յաւարտն՝ «յիշել զբարին զվերոգրեալ հաճի պապա յոհանն հանդերձ ծնողիւքն որ ըստ կարի իւրում յոյժ աշխատեցաւ 'ի թարգմանել հոռմերէնն 'ի հայ բարբառս. քննելով զուղիղն և ճշմարիտն եւայլն»:

Ըստ ոմանց, 20 կամ աւելի ձեռագիր աւետարանք եւայլն. կան յեկեղեցւոջն, բայց մի քանիին թուական չկրելուն կամ 50—60 տարուան գրուած լինելուն չգրեցի: Նաև տախտակի վրայ, 20-էն աւելի, փոքրադիր, յունական պատկերներ կան. յորոց մին 1785 և միւսն 1713 թուականներով են. արծաթապատ, շրջանակն ոսկեզօծ: Սորա «Արծաթէ այ Եօրկի» կ'ըսեն եղեր:

'Ի ՁՈՐԱԿ

52. Սոյն գիւղի եկեղեցւոյն (դրան) վրայ. «սուրբ եկեղեցիս սրբոյն Նիկոլայոս Թվին 1794-ին» գրուած է եղեր: Եկեղեցւոյ մէջ յայսմաւուր մի, Վանք գիւղին գտնուածին պէս

*և միւնոյն անձին գրածն է. Թուականն է ի մեծ Թուին Հայոց.* **ՌՃԾԳ** (1704) *ի մարտ ամսոյ։ Կայ և ուրիշ գիրք մի «Փարոզը 'ի սուրբ և 'ի մեծ քառասնորդականն յամի ներմարմնութեան փրկչին* 1778 *'ի կղզին Բաթմոսի։*

*Զորակի տեղեկութիւնքն Ակնայ Վանեցի տօքթ. Եանի էֆ. ի որդիէն՝ պ. Ղազարիէն ստացուած է։*



## ՎԵՐՋ Ա. ՄԱՍԻՆ.

# ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

## ԳԼ. Ա.

## ԱԶԳԱՅԻՆ ՍՈՎՈՐՈՒԹԻՒՆՔ

### ԿԱՂԱՆԴ

Դեկտեմբերի 31-ին ամեն թաղէ աղքատիկ տղայք խումբակներ կազմելով, ցերեկէն սկսեալ Հայոց թաղերը կը շրջին տոպրակներով և երբ դռնահարն զարնելով դուռը կը բացուի՝ ’ի մի բերան կը սկսին երգել «Ասոր (այսօր) կանխ է. առտուն կաղանդ է. ձեր մեռելացը հոգուն տուէք ուր (որ) գայ։ Տանտիկին, տանտիկին, ելի՛ր, գնա՛ մառանը ’ի վար, կարճ քանէ, երկան կտրէ, կամըցուկ ուր մատ’դ չի կըցես (կտրես). ծոմ ուր չի տաս, հաւերուն ատտօգը չորնայ»։ Տանուտէարք, ըստ կարողութեան, ամէն տղու մէյմէկ պաստառ շարոց կամ ջլիթ կամ այլ մրգեղէն կուտան և ամանք դրամ. (5-ական փարայ)։ Խումբն միւս տունն կ’երթայ. նորէն կ’երգեն, նորէն կաղանդչէք կը ստանան. մինչև երեկոյ կը շարունակեն։ Սովորաբար հարուստ կամ միջնակարգ անձինքն են որ կաղանդչէք կուտան. և ատոնց մէջ դուռը չի բացող կամ ձեռնունայն ճամբողներ ալ պակաս չեն։ Կաղանդ կանչելու սովորութիւնն հընոյն բաղդատմամբ նուազած է։ Երեկոյին կամ գիշերը տան տիկինն զանազան մրգեղինով և շաքարներով կաղանդի սեղան մի կը զարդարէ. ընտանիքն ուրախ զուարթ կուտեն, կը խօսակցին, կը զուարճանան. թէ՛ իբրև տարեգլուխ և թէ սաւանդութեան կամ համոզման համար, թէ այն իրիկունը ըն-

տանիքն կամ ամեն մարդ ինչպէս որ վարուին, սիրալիր սեսակցին կամ կռուին, և կաղանդի օրն ալ աշխատասէր լինին թէ ծոյլ՝ բոլոր տարին այնպէս կ՚երթայ։ Յունվար 1-ին, կաղանդի առաւօտուն, կանայք կանուխ ելնելով սափորով ջուր կ՚առնուն աղբիւրէն. զի կ՚ըսուի թէ կաղանդի առաւօտուն աղբիւրէն ոսկի կը վազէ եղեր։ Յետոյ ընտանիքն եկեղեցի կ՚երթան. և վերադարձին ընտանեաց մեծն կը նստի և կրտսեր եղբարք, որդիք, հարսունք ևայլն նորա ձեռքն կը համբուրեն, որ «Այրիս, բարի տարի գայ վրադ ևայլն.» պատշաճ բարեմաղթութեամբ կ՚օրհնէ զնոսա։ Երբ ընտանեաց մեծին ձեռք-պագն լրանայ՝ կրտսերք իրենց հասակին համեմատ միմեանց ձեռքն կը համբուրեն և կը շնորհաւորեն։ Մեծերն իրենց կաղանդի նուէրն կուտան կրտսերաց։ Ճաշէն վերջը հայրն ամուսնացած աղջկան, կամ եղբայրն իւր քրոջն՝ կաղանդի նուէր կը տանին կամ կ՚ուղարկեն, սովորաբար, 10-նոց, 20-նոց կամ աւելի գնոց ոսկիներ. և երբեմն զարդուց և զգեստուց վերաբերեալ իրեր։ Երբեմն փեսային, թոռանց և տան միջի այլ ընտանեացն ևս ընծայներ կը ղրկուին։ Ազգականք և բարեկամք միմեանց կ՚այցելեն. և կանայք, եթէ արգելուած չէ, այլ և այլ մրգեղինօք և ընծայիւք ամուսնացեալ աղջկան տունն կ՚երթան ՚ի շնորհաւորութիւն։ Պէտք է գիտնալ, թէ այս ամեն նուիրատուութիւնք ունեւորին համար են և և կարողութեան համեմատ կը կատարուին։

## ՏԱՂԱՒԱՐՔ և ՏՕՆԻ ՕՐԵՐ.

Ս. Ծննդեան տօնին օրն եկեղեցական արարողութիւնք գիշերն սկսեալ՝ սովորաբար արշալուսին կ՚աւարտին. իսկ Զատկին՝ արևով։ Ամեն ոք տուն կը վերադառնայ. կաղանդի սովորութեան համեմատ ձեռք-պագի արարողութիւնք և բարեմաղթութիւնք կը կատարուին։ Ճաշէն յետոյ այցելութիւնք կը սկսին։ Ամեն ոք պարտի իւր ազգականաց և բարեկամացն

այցելել։ Այցելուք կը մեծարին սովորաբար սուրճով և երբեմն օղիով և գինեաւ։ Կանայք ալ պարտին ամուսնացուցած աղջկանցն պարոն-տատին և կեսուրոջն ձեռք պագնելու երթալ։ Շատերն այս տաղաւորաց բարեմաղթութիւնքն ալ կաղանդի պէս «Բարի տարի գայ վրանիդ» և այլն կ'ըսեն։

Փոխադարձ այցելութիւնք Մննդեան և Զատկին ընդհանուր են. իսկ Վարդավառի, Աստուածածնի և Խաչի տաղաւարներուն՝ մերձաւորք միայն կ'այցելեն։

**Տեառն ընդ առաջ**։ 25—30 տարի յառաջ նախատօնակի երեկոյին, տարւոյն մէջ ամուսնացեալ փեսայք եկեղեցի կ'երթային, դասն ելնելով դպրի շապիկ կը հագնէին, բայց չէին երգեր։ Փեսային մայրն և այլն եկեղեցւոյ մէջ մոմ կը բաշխէին. երբեմն ալ շաքար, արմաւ և նուշ։ Եկեղեցիէն վերադարձին, յետ ընթրեաց փեսային տան ընտանիքն ցախերով խարոյկ մի կը վառէին. փեսայն կը շրջեցունէին խարոյկի շուրջն և այլք կը պարէին, գինի կ'ըմպէին և բարեմաղթութիւնք կը կատարէին։ Ոմանք կ'սէին «Տերնտաս, տէրն 'ի դիմաց, մեր տէրն ուսկի՞ դան գնաց»։ Տեառն ընդ առաջի հանդէսն 'ի Կարուշլա, 'ի Կումարակապ և յԱպուչեխ աւելի շքեղութեամբ կը կատարուէր. բայց այժմ թէ 'ի քաղաքիս և թէ յիշեալ գիւղօրէան այս սովորութիւն դադարեալ է։

**Բուն Բարեկենդան**։ Հին ատեններն ամեն բարեկենդանի փոքր ի շատէ ուրախութիւն կ'ընէին. սակայն մեծ բարեկենդանին, մանաւանդ վերջին շաբաթուն և վերջին օրերը զանազան խաղեր և ուրախութիւններ կ'ըլլային։ Տղայք աստ և անդ տանեաց վրայ կամ ընդարձակ փողոցներու մէջ վէգ կը խաղային. անդին խումբ մի պատանիք և երիտասարդք մարմնամարզական խաղեր կը խաղային. այլք նուագարանով կ'երգէին կամ կը պարէին։ Ի կանանց և յօրիորդաց շատեր ալ թմբուկով (տէֆ) երգեր կ'երգէին, կը պարէին կամ «Մարդ պահուկին» և այլ դիւրին խաղեր կը խաղային։ Դրացիք երբեմն խմբովին միմեանց տուները կ'այցելէին կարգաւ, և առա-

տօրէն օղի կամ գինի կ՚ըմպէին կը զուարճանային։ Ազգականք և բարեկամք ալ առանձին կամ խմբովին այցելութեամբ կերուխում կ՚ընէին։ Վերջապէս, ուր երթայիր՝ ամեն թաղ, ամեն տեղ խաղ պար և ցնծութիւն կը տիրէր. Այժմ ասոնց կէսն ալ մնացած չէ. զի նախ որ ժողովուրդը աղքատութիւնն ու խաղերը վնասակար կամ անպատշաճ կը համարի. երկրորդ և մանաւանդ՝ ժամանակի անձկութեան պատճառաւ ամեն մարդ իւր հացն ու ապրուստն կը մտածէ։

Մեծ պահոց Բշ. օր ս. Կոզմոս գնալու։ Քաղաքէս և մերձակայ գիւղերէն հարիւրաւոր անձինք, մանաւանդ անոնք որ պանդխտութենէ վերադարձած կամ անգործ են՝ առաւօտուն կը դիմեն ի ս. Կոզմոս և եկեղեցւոյն շուրջը, տանիքներն, քովի ընդարձակ գետիններն ու այգիներն խումբ խումբ կը նստին. ոմանք թուղթ կը խաղան. ոմանք ձիարշաւի կ՚ելնեն. ոմանք նորատեսակ նուագարան և ոմանք ջութակ, թմբուկ նուագելով կ՚երգեն, կը խաղան, կը պարեն և կը զուարճանան։ Ասոնց համար ուտելեաց պաշարն եկած է, բայց բարեկենդանն դեռ չէ լրացած։ Խրախճանութիւնք մինչև երեկոյ տևելով՝ կը սկըսին հետզհետէ ցրուել իւրաքանչիւրն իւր տունն, ուր տխրութիւնն տիրած է արդէն։ Այս օրուան սովորութիւնն դեռ կը շարունակէ։ Նոր կիւրակէին օրն ալ 'ի ս. Կոզմոս կը ժողովին, բայց այցելուք մեծ պահոց բշ. էն նուազ են։

Զատիկ։ Ինչպէս ս. Ծննդեանն՝ նմանապէս և Զատկին սովորական այցելութիւնք կը կատարին։ Իւղով բագուկներ կ՚եփուին, և տղայոց համար հաւկիթներ ի կարմիր կը ներկեն։ Տուներն կը մաքրուին և հանդերձներն կը նորոգեն։ Հին ատենները կանայք ժողովուելով, «եալալի եալալի, մեր տէրն յարոյց ելեր է. եալալի, եալալի, հաւը կարմիր ածեր է» և այլն երգը կ՚երգէին ու կը պարէին. (տես մասն Գ.)։ Բայց այս սովորութիւնն ալ այժմ դադարեալ է։ Տաղաւորաց, մանաւանդ Զատկի և ս. Աստուածածնայ վերափոխման տօնին՝ բշ. օրերը որ մեռելոց յիշատակի օրեր են՝ շատերը գերեզմանատուն եր-

թաղում իրենց ծնողաց և այլն. գերեզմանները քահանային օրհնել կուտան:

Ս. Համբարձում: 20—30 տարի յառաջ, Համբարձման եղ. օրը վիճակ բացող ոմանք զատ զատ կը շրջէին թաղերը գրքոյկն ի ձեռին, և ուզողին, բաղդին գիտակ լինելու փափաքողին՝ գրքին վիճակի երեսն կը ներկայացունէին, որ աչքը գոցելով ցուցամատն վիճակին Ա. Բ. Գ. և այլն գրերուն մէկին վրայ կը դնէր, և աչքը կը բանայր մատն ո՛ր գրին որ հանդիպէր՝ վիճականին նոյն գրին մեկնութեան երեսն կը կարդայր որ կամ յաջողութիւն, հարստութիւն, նպատակի հասնիլ, բաղձանաց լրումն և այլն. կը խոստանար, և կամ ընդ հակառակն: Յաճախորդն որ սովորաբար կին մը կամ տղայ մ'էր, ըստ վիճակին կ'ուրախանայր կամ կը տրտմէր: Վիճականին վարձքն էր մէն մի անձին համար 5—10 փարա: Այժմ այս ծիծաղելի խաբէութիւնն դադրած է:

Ս. Եղիա: Ակնայ կօշկակարք կը կարծեն, թէ իրենց արհեստի նախահնարն (փիրն) ս. Եղիայն է. ուստի ՚ի պատիւ նորա՝ տօնին շբթ. առաւօտուն 1—2 ոչխար մատաղ կ'ընեն գըլխաւոր արհեստակցի մը տանը մէջ: Մատաղն քահանայն կ օրհնէ, կուտեն և աղքատաց ևս կը բաշխեն: Ծախքն հանգանակութեամբ կը վճարեն: Եղիական պահոց թրթուրի պահք ալ կ'ըսուի, կարելի է որ ծառոց թրթուրներուն ժամանակ պատահելուն կամ թրթուրներուն ջնջման համար սահմանեալ մի կարծելով:

Վարդավառ: Այս տաղաւարիս սովորութիւն մի կայ որ իրարու վրայ ջուր կը նետեն կը թրջեն, «վարդավառ» կ'ընեն, սովորաբար ձեռքով կամ աղբիւրէն մէկ երկու գաւաթ ջուր նետելով: Տղայք ոմանք ծառի ճիւղերէ թզաչափ գրեխներ կը շինէին որոց «ջրխմիչ» կ'ըսեն և անով անցորդին կամ իրարու վրայ ջուր կը նետէին: (Ոմանք գրեխի պէս ծակ փայտի մը մէջ կուտի և այլն. կտորներ դնելով և հրիչ փայտով մը մղելով կը պայթեցունէին, ատոր ալ գօբպիճ կ'ըսէին): Այժմ ատոնք ալ

դադրելու վրայ են։ Ս. Աստուածածնի վերափոխման տօնին կամ նոյն միջոցին «խորվու» կ՚ըսեն. զոր. «խորվուէն յետոյ», կամ «խորվուի սալոր» ևայլն։ Վարագայ ս. խաչի տօնին «Գորգ» կ՚ըսուի. զոր. «Գորգին պիտի ամուսնացունեն» կամ «Գորգին եկաւ» ևայլն։ Խորվու կամ Գորգ ինչ նշանակութիւն ունին՝ չգիտեմ։

---

## ԳԼ. Բ.

## ԸՆՏԱՆԵԿԱՆ ՍՈՎՈՐՈՒԹԻՒՆՔ

---

### ԾՆՈՒՆԴ

Երբ մայրն կ՚ազատի յերկանց՝ մանկաբարձն, զոր «դայեկ» կ՚անուանեն, նախապէս կ՚աւետէ ընտանեացն և յետոյ երկու կողմանց ազգականացն աւետաբեր (միւժտէճի) կուղարկեն։ Աւետեաց ընծայն է սովորաբար 1—5 ղր. դրամ կամ եաղմա։ Մըկրտութիւնն 2—5 օր յետոյ կը կատարուի յեկեղեցւոջ։ Եթէ երեխայն առողջ վիճակի մէջ չըլլայ, կը փութան ծնած ժամանակ իսկ մկրտել։ Ոմանք մկրտութեան օրն հանդէս կը կատարեն, զոր կըթտուք կ՚անուանեն։ Սոյն հանդէսն սովորաբար հարուստք կը կատարեն և այն ալ անդրանկին համար միայն։ Յետ մկրտութեան և աւարտման եկեղեցւոյ, քահանայք և այլ հրաւիրեալք՝ մկրտեալին հետ կամ յետոյ տունն կ՚երթան. քահանայք շարական և աղօթք կ՚ըսեն, բարեմաղթութիւնք կը կատարեն, հացկերոյթ կ՚ըլլայ, և ոմանք նուագածու ալ կը բերեն։ Զմոռնամք գրել, թէ երբ մանուկն ՚ի մկրտութիւն կը տանին, նորածինն եթէ արու է՝ մայրն գիրք մը կ՚առնու ձեռքըն և կը թղթատէ. այս համոզմամբ կամ նպատակաւ թէ տղայն կարդացող ըլլայ. իսկ եթէ աղջիկ է, ասեղ մի և թել մի կ՚առնու և զարկ-քաշ կ՚ընէ, որպէս զի աղջիկն լաւ կարել

գիտցող ըլլայ։ Մկրտութենէն երեք օր յետոյ, զերեխան կը լուանան կոնքի մը մէջ տաք ջրով։ Երբ լոգանքը լրանալու վրայ է, և դեռ երեխայն կոնքին մէջ պառկած կ'աղաղակէ՝ մանկաբարձն ձեռքն երեխային ճակատն տանելով կը շփէ և կ'ըսէ «լայն ճակատ ըլլնիս». յետոյ յօնքն կը շփէ և կ'ըսէ «Կամարով յունքուն ըլլնիս». աչքն տանելով կ'ըսէ «խոշոր աչուն ըլլնիս, երկայն Թարթինչուն ըլլնիս». քթին ծայրը սեղմելով կ'ըսէ «պզտոտիկ քնթիկ ըլլնիս». բերանն տանելով «պըզտոտիկ բերնակ ըլլնիս. խապարթուոց չիլլիս»։ Յետոյ երիցս երեխային գլուխը ջրէն վեր առնելով և ջուրը դնելով կ'ըսէ «երկայն շըլլի ըլնիս»։ Այս վերջին գործողութեան «երկան պըզիկ» կ'ըսուի. Թերեւս «երկայն վզիկ» էն աղաւաղեալ։ Այս երեխան ջուրէն հանելով առաջին անգամ շապիկ և պարեգօտ կը հագցունեն, և իբրև նուէրք՝ բամպակէ, կապուտակ ծրարնոցի (պողչա) լաթի մը մէջ կը փաթթեն բաւական սեղմեալ և կը հանգուցեն։ Այս լուացմանէն յետոյ, որ «մեռոն ջրէն հանել» կ'ըսուի՝ եթէ արղայ է նորածինն՝ գետինն գիրք մի, կաղամար մի և գրիչ, նաև կտոր մի հաց և բամբակ կը տարածեն, և զերեխայն, որ խանձարուրօք է՝ վրան կը թաւալեն երիցս՝ բարեմաղթութիւնք ընելով. իսկ եթէ աղջիկ է, բաց 'ի հացէ և բամպակէ, կը տարածեն նաև ոսկեղէն և մարգարտեղէն զարդեր և վրան կը թաւալեն։

Հին ատեններն, մկրտութեան օրէն սկսեալ 40 օր, օրն անգամ մի կը լոգցունէին զերեխայն և ջուրին մէջ մկրատ մի կը ձգէին. այժմ լոգցնելն երբեմնակի է, բայց մկրատն որ «նուէրք» է, կը շարունակի։ Նաև տղացկանն՝ 40 օր մկրատ մը կը դնէր 'ի գօտին. այս ալ «նուէրք» մ' է։ Հին ատենները, երբ մանուկն առաջին անգամ ակռայ հանէր՝ մայրն առաջին տեսնողին 7 կուտ մարգարիտ ընծայ կուտայ եղեր։ Նաև դեռ 25—30 տարի յառաջ սովորութիւն կար, որ մանուկն երբ տարեկան մ' ըլլար, ծնողքն կը հրաւիրէին գդրացիս, մանուկն մէջտեղ մի նստեցունելով շուրջը կը ժողովուէին, խաղ

կը կանչէին, ուրախութիւն կ՚ընէին և վրան նորախաշ, կակուղ ձաւար (պուլղուր) կը ցանէին, որոց հետ շաքար և մանըր դրամներ ևս կը խառնէին։ Այս սովորութիւնն ալ այժմ դադարեալ է։

---

## ՀԱՐՍՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Հին ատեններն, երբ պատանին 18—20 տարեկան ըլլար (իսկ այժմ երբ 20—22 տարեկան լինի՝) ծնողքն կամ երէց եղբայրն կ՚ըսկսին նորա ամուսնութեան վրայ խորհիլ։ Ընտրելեաց մէջ նախապատիւ են այն օրիորդք, որոց ծնողքն իրենց համապատիւ են։ 'Ի մէջ այլոց, նկատողութեան կ՚առնուին աղջկան հօր և մօր ազգատոհմն՝ 'ի մասին անոնց բարուց և վարուց ազնուութեան. «կաթը բարով է» կամ «կաթն աւեր է» բացատրութեամբ. կ՚ուզեն որ աղջիկն գեղեցիկ, առողջ և կրթեալ ըլլայ և ծնողքն՝ ճոխ օժիտ տալու և, խնամութեան սովորութեանց համեմատ, ուտելիք և ըմպելիք ընծայներ ղրկելու և մեծարելու կարողութիւն ունենան։ Եւ որովհետև այս ամեն յաջողակ պայմանօք օժտեալ աղջիկ մի դժուարաւ կը գտնուի՝ ուստի նախ լաւագոյնն կ՚ընտրեն և անուղղակի իրենց որդւոյն կ՚իմացունեն, որ սովորաբար անոնց ընտրութեան կը հաւանի։ Յետոյ ազգականի մը միջոցաւ աղջկան հօր կ՚առաջարկեն. եթէ աղջկան ծնողք չհաւանին՝ նուազ յարմարագոյնն կ՚ընտրեն մինչև որ յաջողին։ Աղջկան կողմն ալ՝ 'ի մասին փեսային արժանեաց և անոր ընտանեաց նիւթական և բարոյական վիճակին՝ միւս կողման պէս կը խորհի։ Երբ հաճին՝ իրենց հաւանութիւնն անուղղակի կիմացունեն աղջկան, որ սովորաբար չկրնար մերժել անոնց կամքն, զի խեղճ օրիորդն անփորձ և անկարող է ինքնին որոշել և չուզեր անհնազանդ գտնուիլ։ Պէտք է գիտնալ թէ, թէպէտ 'ի հնումն թէ տղուն և թէ աղջկան կատարեալ հաւանութիւնն առնալու մասին այնչափ կարևորութիւն չէր տրուէր, և ոմանք յօրորո-

ցէ անուր (պեշիք քէսմէ) կը նշանէին՝ տակայն կրթութիւնն ու աղէտալի դէպքերն զգացուցին ծնողաց, թէ ընտրութեան իրաւունքն՝ ըստ մեծի մասին, ապագայ ամոլց կը վերաբերի։ Երբ երկու կողման ծնողք և ընտանիքն համաձայնին՝ միջնորդ ազգականն կամ այլ ոք պաշտօնապէս կ՚երթայ աղջկան տունն, կ՚առաջարկէ, և նոքա իրենց մէջ արդէն խօսուած ըլլալով կը հաւանին և խօսք կուտան։ Զմոռանամք ըսել, թէ գտնուած են շատ երիտասարդներ ալ, որ ինքնին աղջիկ մի տեսած և նշանուած են, և ծնողք յետոյ յակամայս հաւանութիւն տուած են։ Երբեմն ալ պատահած է, որ նշանելէն մէկ կամ քանի օր և կամ աւելի յետոյ, փեսային կողմն՝ աղջկան կամ ծնողաց և ընտանեացն նկատմամբ, կամ աղջկան կողմն՝ փեսային կամ ընտանեացն վերաբերեալ աննպաստ, նոր ծանօթութիւն մի ստանալով և կամ այլ պատճառաւ, նշանտուքն ետ կ՚ընեն, կը խզեն յարաբերութիւնքն։ Այս պարագային մէջ, եթէ խզումն երիտասարդին կողմանէ է՝ սովորաբար տրուած ոսկի և այլ նուէրներէն կը հրաժարին. իսկ եթէ աղջկան կողմանէ է՝ ոսկի և այլն ետ կը ղրկուին։ Հարսնախօսութեան և խզման ձևերն թէ և բազմազան են, բայց մեք սովորականներն միայն գրեցինք։ Այժմ գանք ձևակերպութեանցն։ Ի հնումն նախ «նշանոյ» (փեհ) 20-նոց ոսկի մը կը տրուէր. յետոյ փեսային, քոյրն և ազգականաց մէջէն նորատի հարսունքն կը ժողովուէին ու «նշանտուք» կ՚երթային։ Երիտասարդն կամ պատանին եթէ արդէն գաղտագողի տեսած չէ զօրիորդն և օրիորդն զփեսայն՝ առաջին անգամ կը տեսնեն զիրեար։ Փեսայացուին և միւսոց կողմանէ ըստ կարողութեան ոսկի նուէրներ կը տրուին. փեսայն վայրկենապէս կ՚առանձնացունեն ընդ խօսեցելոյն, որոյ աչերն միշտ ՚ի խոնարհ լռիկ մնջիկ կը կենայ։ Փեսայն մերթ ընդ մերթ գաղտնապէս տեսութեան կ՚երթայ։ Ընտանիքն և ազգականք ժամանակ մի յետոյ, աղջիկտես (կէօրէ) կ՚երթային, ոսկի կուտային. աղջկան կողմն ալ՝ փոխադարձաբար փեսայ-տես (օղլան-կէօրէ) կ՚երթային և ընծաներ կուտային։

Կէօրէին օրն ուտելիք և, բաց 'ի սուրճէ, ըմպելիքն արգիլուելուն համար՝ սկսան Նշանտուքն բազմութեամբ երթալ. և երբ Նշանտուքին համար ալ արգիլուեցաւ՝ այժմ սկսան «նշան»ին հետ շատուոր երթալ։ Նշանտուքն կէօրէին տեղն անցաւ և սակաւք միայն թէ Նշանտուք և թէ կէօրէ կ'երթան։ Այս սովորութիւնք զանազան փոփոխութիւններ կրած են. զի ազգին կողմանէ թէ այս և թէ հարսանեաց, ծննդեան, մահուան, և այլ առթիւ տեղի ունեցած շռայլ ծախուց չափաւորութեան համար երկար տարիներէ 'ի վեր մերթ ընդ մերթ կանոնագրեր կը գրուին. 1—2 տարի ըստ այնմ կը վարուին, յետոյ տակաւ զանցառուք կը շատնան. Նորէն կանոններն կը բարեփոխուին և այսպէս կը շարունակի։ Տուփ (գութու) ղրկելու սովորութիւն մ'ալ կայ, զոր սովորաբար հարուստք կը կատարեն և է այսպէս։ Արծաթեայ տուփ մը մէջ ոսկիներ, արծաթ դըրամներ ևայլն. լեցունելով քանի մը դեռատի աղջկանց հետ կը ղրկեն հարսնացուին։ Փոքրիկ այցելուք երկու երեք օր կը մնան անդ և կը յարգուին։

Այժմ հարսնախօսութեան պաշտօնական սովորութիւնն այսպէս է. երբ խօսեցեալք տեսած են զիրար, փոխադարձ այցելութիւնք կատարուած և հարսանիքն մերձ է՝ երկու կողման ազգականներէն մէյմէկ փոխանորդ տանէրէցին հետ խօսեցելոց համաձայնութեան բերանացի յայտարարութիւնքն լսելէ յետոյ, յԱռաջնորդարան կ'երթան. անդ սոյն ամուսնութեան ծիւղահամարի և եկեղեցական այլ կանոնաց համեմատ լինելն քննուելէ յետոյ՝ կ'արձանագրուի և քահանայք ու փոխանորդք կը ստորագրեն։ Յետոյ Նշանի խաչն կ'օրհնուի, *) փեսային կողմանէ աղջկան կը ղրկուի և պսակի հրամանագիրն կը տրուի։ Հին ատենները Նշանի ոսկին Թուրքական 20-նոց (ղազի) ոսկի մ'էր. բայց քանի տարիէ 'ի վեր, Տնտեսական խորհրդոյ ձե-

*) Ի հնումն և այսօր իսկ շատերն Նշանն օրհնելուն «Հայր մեղայն (հայր մեր) ըսեր են» կամ «խօսք-կապը օրհնել են» կամ տի օրհնեն» կ'ըսեն։

ռամբ արծաթեայ փոքրիկ խաչեր պատրաստուած է. մէյմէկ հատ կը տրուի և ըստ կարողութեան 5—10 ղրշ. կ'առնուի։ Պէտք է ըսել եւ գիտնալ, թէ մինչդեռ կան քաղաքներ, ուր աղջկան կողմն յարգի է՝ Ակնայ մէջ նախապատուութիւնն փեսային կողմն է։ Աղջկան մայրն, քոյրն եւայլք պարտաւորութիւն կը համարին փեսային մօրն և ազգականացն ձեռքը համբուրել, յարգել և պատուել, անոնց մեղադրանաց և երբեմն յանդիմանական խօսքերուն համբերել։ Այս ամենն 'ի սէր աղջկանն է, զի եթէ չընեն կեսուրն աւելի ծանր յանդիմանութիւններ կ'ուղղէ հարսին, որ անհանգիստ կ'ըլլայ։ Թէև հնոյն բաղդատմամբ՝ աղջկան մօր եւայլոց խոնարհ դիրքն բաւական բարձրացած է այժմ, բայց կատարեալ հաւասարութեան համար դեռ ժամանակ պէտք է։

Ձեռք պագնելու ձևն ալ նկարագրեմք։ Համբուրողն իւր աջ ձեռաց մատունքն 'ի ներքս սակաւ մի ծռելով համբուրելի ձեռքն իւր ձեռաց կամ լաւ ևս է ըսել իւր մատանց վրայ առնելով՝ նախ բերանին դէմ կը տանի. յետոյ ճակատն և յետոյ դարձեալ բերանն բերելով՝ կը թողու։ Կանայք հաւասարի մը ձեռքն պագնելու համար երբեմն առանց ձեռքն առնելու ձեռք պագի յիշեալ ձևն կը կատարեն (մատներն ծռած) ան. Թէմէննայի պէս։ Ձեռք պագնելու սովորութիւնն, մանաւանդ նշանուած աղջկանց և նոր հարսներու համար, տաղտկալի է։ Նշան, նշանտուք և այլ հանդիսաւոր այցելութեանց ժամանակ, երբ հանդիսականաց սուրճն կը տրուի՝ հարսնացուն ներս կը բերեն. խեղճ օրիորդն արդէն քրտնած, գլխուն վրայ [illegible] ըռուած ծանրագնի վարդագոյն շղարշն ձգուած և քօղն հարս մի կեցած՝ կ'սկսի 'ի ներքս 'ի սենեակն գալ. բայց այնչափ ծանր որ 5—10 վայրկեան կը տևէ։ Հարսնացուն երբ վերջապէս սենեկին վերի կողմն հասնի՝ կանգ կ'առնու նախ պարոն-տատին (փեսին հօրը) առջև. կ'սկսի ուղիղ դիրքով ծանր ծանր իջնել և մէկ ծունկն 'ի գետին դնելով՝ ձեռքն վերոյ գրեալ կերպիւ կը համբուրէ, դարձեալ կամաց կամաց կ'ել-

եւայլն տաճ. 4—5 տուն երգն և այլ երգեր կ'երգեն։ Կիր.
երկու կողման բարեկամք և դրացիք շնորհաւորման կ'երթան։
Փեսայացուին ածիլումն (թրաշն) հանդիսաւոր կերպիւ կը կա-
տարուի և ապա «Թագւոր հագցունելու» հանդէսն կ'սկսի։ Աղ-
ջկան կողմն ալ կանխաւ հրաւիրուած՝ քանի մը երիտասարդք
և տղայք ներկայ կը գտնուին։ Քահանայն և դպիրք սովորա-
կան շարականներն կ'երգեն. հալաւը (փեսին զգեստները) կ'օրհ-
նեն և փեսայն շապիկովն, վրան մուշտակ մը հագած՝ կուգայ
կը կանգնի. քահանայն համառօտ քարոզ մի կուտայ և հանդի-
սականներն 'ի նպաստ Թաղին վարժարանին կամաւոր նուէր-
ներ կը գրուին, գումարն 50—150 դհ։ Երբ զգեստն կ'սկսին
հագցունել՝ քովը երկու հոգի կանգնած՝ պարեգօտն կամ Թիկ-
նոցն փեսին շուրջը երեք անգամ կը դարձունեն և բարձր ձայ-
նով «Աստուած շնորհաւոր անէ, Աստուած շնորհաւոր անէ, շնոր-
հաւորն Աստուած անէ» կ'ըսեն, յետոյ, իբր նուէրք, օձիքին
վրան կոխել կուտան և կը հագցունեն։ Երկրորդ և երրորդ օրհ-
նութեամբ, գօտին, բաճկոնն և այլն շրջածութեամբ կը հագ-
ցունեն։ Երբ լրանայ՝ փեսին հայրն կ'ելնէ և որդւոյն ճակա-
տը համբուրելով՝ գտակը (ֆէս) գլուխը կը դնէ. հարուստ ծը-
նողք մատանի, ժամացոյց կամ այլ ընծայ կուտան և գրպանն
դրամ կը լեցունեն և հանդէսն կը վերջանայ պատշաճ բարե-
մաղթութեամբք։ Հին ատենները, երբ սովորաբար պարեգօտ
(էնթարի) և վերարկու (ճիւպպէ) կը հագնէին՝ փեսային ձեռ-
քին վրայ, ծալլած, արծաթ կամ ոսկեթել սպիտակ թաշկինակ
մը (չէվրէ) կը ձգէին, զոր կուրծքին և բերնին կը դնէր, և
ուրիշ ոսկեթել (սրմալը) թաշկինակ մ'ալ, կէս ծալլած, եռան-
կիւնաձև, երկու ծայրերն թիկունքն երկու ուսերուն վրայ կը
շուլլէին ասեղով, այնպէս որ եռանկեան մէկ ծայրն դէպ 'ի
մէջքն կը կախուէր։ Թուր մի, որոյ երախանակն խաչաձև է
և սովորաբար արծաթապատ, վրան պարզ չէվրէ մի կապուած՝
պատկի ժամանակ պատեանէն հանուելով՝ փոխանակ խաչի՝ խա-
չաձև կը դրուի ամուսնացելոց գլխուն վերայ. այս Թուր պա-

տունին մէջ երեք օր կը մնայր փեսին կամ կնքահօր ձեռքը. զգուշութիւն կ՚ընէին, որ թուրը կամ մուճակը չի գողնան. զի եթէ գողացուէր՝ կը պարտաւորէին ընծայ տալ և վերստանալ։ Թագաւոր հագցունելու հանդէսէն մէկ երկու ժամ վերջը փեսին կողմանէ 10—15 արք և նոյն չափ ալ կանայք և աղջկունք աղջկան կողմը խնամի կ՚երթան. հարսին համար ձեռք մը ծանրագին զգեստ կը տանին (հալաւ), զոր քահանայն կ՚օրհնէ։ Քանի տարի յառաջ խնամիներն կերակուր կ՚ուտէին, բայց այժմ սուրճով միայն կը մեծարին։ Կանայք հարսնացուին յիշեալ զգեստն հագցունելով՝ սենեակն կը բերեն. խնամիներն երկու կողմանց ծնողաց և ազգականաց գովասանական տաճկերէն երգեր կ՚երգեն, որոց չէք կ՚լսեն. և երգոց կարգին, «Ա՜յ իմ հարսի դատրիկ» և այլն. «Եկուր աղուոր աղջիկ, հարս եղար մեզի» և այլն երգերն կ՚երգեն. երեկոյին կը մեկնին. նոյն գիշերն ալ հարսնացուին ձեռքը հինա կը դնեն դարձեալ նուագարանով. «Աս հինաս այնպէս հինա չէ, ղրկողն ալ ինչ աղուոր մանչ է» և այլն կ՚երգեն. աղջկան վրայ մանր դրամ կը ցանեն։ Սովորաբար աղջկան հարսանեաց միջի աղջկանց ձեռներն և փեսին ճկոյթն ալ կը հինայեն։ Գիշերը որոշեալ ժամուն փեսին կողմանէ մէկերկու հոգի, երբեմն ալ աւելի անձինք ձի մը կը բերեն հարսին կողմը. և մէկ երկու ժամ խաղալ խնդալէն յետոյ հարսը, որոյ երեսն քողով մը ծածկուած է՝ ձիով եկեղեցի կը տանին։ Եղբայրն կամ մէկ երկու ազգականք հարսին քովէն կ՚երթան, որոց «հարսն-աղբար» կ՚ըսեն։ Որոշեալ ժամուն հարսն ու փեսայն յեկեղեցւոջ ներկայ գտնուելով պսակի արարողութիւնն կը կատարուի։ Յետ պսակի փեսին տունն կը վերադառնան. ի ճանապարհին շատերը նախ «Առաւօտ լուսոյ» շարականն և ապա այլ և այլ տաղ. երգեր կ՚երգեն։ Երբ տանն առջևը հասնին՝ արշալոյս է արդէն կամ լուսանալու մօտ. կանայք և նուագածուք կ՚սկսին «Բարի եկիր դուն բարկ արև,» և այլ. «Բարի լոյս, աղուոր, բարի լոյս» երգերն երգել. և պահ մը ետքը փեսային հայրն նախ

որդւոյն ճակատն համբուրելով՝ ձիէն վար կ՚առնու, յետոյ հարսն վար կ՚առնու և վրան մանր դրամ կը ցանեն, զոր տղայք կը ժողովեն։ Հարսն տունէն ներս բերած ժամանակնին կեսրոջն թևին ներքևէն կ՚անցունեն, որպէս զի հնազանդ մնայ։ Երբ հարսն սենեակ մը կը բերեն և կօշիկն (ճիզմէ կամ փոթինն) կը քաշեն՝ տագրն կամ ազգականներէն այլ տղայ մի կօշիկովը երեք անգամ հարսին մէջքին կը զարնէ, և կ՚ըսեն հարսին. «Ասկէ ինն ամուսան տղայ մի բերես»։ Հարսն-եղբարք պահ մը նստելով կը վերադառնան. իսկ փեսին կողմը պահ մը երգելէ և խաղալէ յետոյ՝ հարսն, մարանց կողմէ հետն դրուած կնոջ մը հետ, որ «հարսն-քոյր» կ՚ըսուի՝ որոշեալ սենեակ մի կը տանին, ուր կը հանգչին։ Յերեկն աղջկան կողմէն 10—15 այր և տղայ (աղջկան հայրն, եղբայրն, ազգականք ևայլն) և յետոյ նոյնչափ և աւելի կին (մայրն, քոյրն ևայլն) խնամի կերթան, իրենց առջև ունենալով հարսին համար պատրաստեալ 2—5 ձեռք զգեստուց և զարդուց վերաբերեալ օժիտի սնտուկն, զոր կը կրէ բեռնակիր մի. խնամիներն սուրճով միայն կը մեծարին. 3—4 ժամ կը կենան, կը խաղան, կը պարեն և կը զուարճանան. հարսին սենեակն կ՚երթան, ուր սովորաբար փեսայն ևս ներկայ կը գտնուի. ապա նախ արք և 1—2 ժամ յետոյ կանայք կը մեկնին։ Աղջկան կողմի հարսնևորք իրենց տուներն կը մեկնին, զի այն կողմի հարսանիքը լրացած է, բայց փեսին կողմը կը շարունակէ։ Ոմանք դշ. առաւօտ աղջկան կողմըն և այլ բարեկամներ 'ի ճաշ կը հրաւիրեն. կերակուրն ըստ սովորութեան ոչխարի ոտք (փաչա) ևայլն է. «փաչայի առտու» կ՚ըսեն։ Նոյն օրը ոմանք զփեսայն դրացի ազգականի կամ բարեկամի տուներն կը շրջեցունեն, որում ընծայներ կը տրուին։ Հարսնևորաց մեծ մասն կը մեկնին։ Դշ. առաւօտ, պսակի վերջին օրհնութիւնն կը կատարուի, որոյ «պսակը վար առնել» կ՚ըսուի. այժմ սոյն վերջին օրհնութիւնն կամ խրատն պսակի օրն կը կատարեն։ Կնքահօրն և հարսն-քրոջ ընծայներն կը տրուին և կը մեկնեն։ Հարսանիքն լրացած է, և հրաւիրեալք,

բացի մէկ քանի արենակցաց՝ մեկնած են։ Ի հնումն նոյն երեկոյին փեսային քեռայրն կամ մտերիմ ազգականներէն ամուսնացեալ մէկն՝ առագաստի և ամուսնութեան վերաբերեալ խրատներ կըտար փեսային։ Հարսին ալ պսակի գիշերն մինչ մօր տունն է՝ պէտք եղած խրատը կըտան։ Գիշերն հարսն առագաստի սենեակն կը տանին որ կը կենայ միայնակ, յոտին կանգնեալ։ Սեղան մի կայ պատրաստեալ, ուր կայ գաւաթ մի գինի, շաքար և այլ մրգեղէն։ Փեսայն սենեակն կը մտնէ և դուռն փակելով սեղանին քով կը նստին. նախ փեսայն և ապա հարսն սակաւ ինչ գինի կ՚ըմպեն, շաքար կամ մրգեղէն կուտեն։ Հարսն այս պահուն միայն կը սկսի խօսիլ. կամ աւելի ճիշդն՝ փեսին հարցմանցն մեղմիւ պատասխանել, զի ցայն վայր անխօս էր ընդ խօսեցելոյն։ Սակաւ մի յետոյ սիրոյ աշխարհն են. փեսայն կ՚ստանայ կարմրաներկ շղարշն, որ պարծանքն է կուսին և զոր գաղտնապէս կ՚աւետեն մօրն։ Առաջին կիւրակէին՝ աղջկան հայրն, եղբարքըն և ազգականք կ՚այցելեն։ Նոր հարսն կուգայ ձեռք կը պագնէ. թէ մարոնց և թէ կեսրոնց կողմի արք 10—20 ղրշնոց կամ աւելի արժէքով մէյմէկ ոսկի նուէր կըտան։ Այս օրուան արարողութեան «երեւան հանել» կ՚ըսուի։ Յաջորդ կիւրակէին հարսին մարոնք կը ձէնեն (կը հրաւիրեն). միւս օրն ալ փեսին ծնողք և ազգականք կը հրաւիրուին յընթրիս, որոյ «փեսայ-պատիւ» կ՚ըսուի. նոյն երեկոյին կը մեկնեն։ Հարսն ու փեսայն շաբաթ մի կը մնան և տուն կը վերադառնան. 1—2 շաբաթ յետոյ երկու կողմի ազգականք կը ձէնեն և ամիսն անգամ մի մարոնք կը ձէնեն։ Մէկ երկու տարի անցնելէ յետոյ՝ հետզհետէ ձէնելը կ՚ուշացունեն։

Զմոռնամք յիշել, թէ հարսնացու օրիորդն իր խօսեցելոյն, նորա ազգականաց ու ընտանեաց հետ չ՚խօսիր. այլ հարցմանց՝ գլխով նշանացի կը պատասխանէ. ամուսնանալէն յետոյ կը խօսեցունեն։ Հին ատենները հարսն տարիներով անխօս կը կենար պարոնտատին, կեսրոջն և այլոց հետ. կին մը կար 15—20 տարուան ամուսնացեալ, դեռ խօսած չէր տագերոջն հետ, թէև

տագրն քանիցս հրաման տուած էր խօսելու։ Խօսեցնողն՝ հարսին նուէր մը կուտար։ Այժմ «անխօս»ի սովորութիւնն շատ թեթեւցած է. այնպէս որ ոմանք հարսանեաց շաբթուն իսկ կը խօսեցունեն։

Ակնայ Հայոց հարսանեաց սովորութիւնքն, զորս նկարագրեցի՝ համառօտութիւնն է. զի տակաւին կան շատ մի արարողութիւնք եւ զորս չ'գրեցի. զոր. երբ փեսայն, զոր «թագւոր» կամ «թագաւոր» կը կոչեն, օղի կամ գինի ըմպէ և դիմամբ ծանր ըմպելուն համար սովորականէն աւելի կը տեւէ՝ հանդիսականք սեղանի պանակ, պատառաքաղ եւայլն սեղանը ծեծելով և ոմանք դռները, պատուհանները ձեռքով զարնելով շռինդ մը կը հանեն. նորերը կը ծափահարեն։ Փեսայն երբ սենեակ մի զար նստելու՝ բարձ մի կը շրջէին, որոյ վերայ կը նստէր, սովորաբար կնքահայրն ալ միասին, որ շատ պատիւ ունէր և այժմ ոչ սակաւ։ Հարսանեաց երկրորդ օրը «գէլին, գէլին գէլ խօրօզ Նազ-Նազըմ,» եւայլն խաղը խաղալով այս առթիւ զփեսայն հարսին սենեակն կը ղրկէին։ Նաև հարսն-քորն, իբրև թէ խաբելով՝ հարսին սենեկէն դուրս կը հանէին և հարսըն ուրիշ սենեակ մի կը տանէին, որոյ «հարսն գողնալ» կ'ըսէին, և, իբրև փրկանք՝ մարոնց կողմէն մրգեղէն և այլ ուտելիք կուղարկուէր։ Հարսն ու թագաւորը կը խաղցունէին կամ պարի մէջ կ'առնուին, և այս առթիւ ճակատնին ոսկի կը փակցունէին 'ի նուէր։ Այս սովորութիւն դեռ կայ։

Հարսանեկան հանդիսի նկարագրութիւնն չաւարտած՝ կարեւոր կը համարիմ գրել, թէ այս սովորութիւնք տակաւ կը բարեփոխին, և ձեռասակարգն կը դադրին, ինչպէս որ երկու կողմանց խնամիներու կերակուր ուտելն, հարսն-առու գնացողներուն, հարսն աղբարներուն և թագաւոր հագցունել գնացողներուն օղի և գինի ըմպելն, որոցմէ շռայլ ծախքեր և անտեղութիւնք յառաջ կուգային՝ ազգային ժողովներէ պատրաստեալ կանոնագրով՝ 'ի մէջ այլոց՝ արգելեալ են։

## ՊԱՆԴԽՏՈՒԹԻՒՆ ԵՒ ՎԵՐԱԴԱՐՁ։

Հին ժամանակներէ 'ի վեր Ակնեցի ինչպէս և Ապուչեխցի, Կամարկացի և այլ գիւղօրէից Հայք, քիչ տարբերութեամբ Թուրքք ևս սովորած են պանդխտութեան։ Եթէ կան գաւառներ, ուսկէց սակաւք կը պանդխտին՝ ընդ հակառակն մեզմէ քիչեր կան որ 'ի Պօլիս կամ այլուր պանդխտած չեն։ Ո՛չ միայն չափահասք, այլ շատ տղայք դեռ 10—12 տարեկան և մարց խնամոց կարօտ՝ Պօլիս գնացած կամ տարուած են։ Ծողենաւն դեռ չ՚հնարուած՝ ցամաքի ճամբով կ՚երթան եղեր։ Ցետոյ Սամսունէն 18 օրն և այժմ Կիրասունէն 11—12 օրն 'ի Պօլիս կը հասնին։ Պետական թղթատարութիւնն դեռ չ՚սկսած՝ Հայ թղթատարք (սայը) Ակնէն նամակ ժողովելով հետիոտս կը տանին 'ի Կ. Պօլիս և պատասխան կամ այլ նամակներ ստանալով կը բերեն, և ըստ կարողութեան ու կարևորութեան վարձք կը ստանան եղեր։ Քաղաքէս կամ գիւղերէն 5—10 երբեմն 20—30 անձինք օր առաջ տեսակցելով թուրք ջորեպանին հետ՝ ջորւոյն վարձքն և ճամբայ ելնելիք օրն կ՚որոշեն։ Ճանապարհորդն իւր ազգականացն ու բարեկամաց «մնաք բարով» կ՚երթայ։ Մեկնելու օրն ազգականներէն ոմանք եազմա, ոմանք գուլպայ և ոմանք այլ և այլ ուտելիք ընծայ կը բերեն և բարեմաղթութիւնք կը կատարուին։ Երբ մեկնելու ժամն հասնի՝ կանայք զատ սենեկի մը մէջ կը ժողովուին և ճանապարհորդն մօրն և այլոց ձեռքն կը համբուրէ, որք փոխադարձաբար աչերն ու ճակատն կը համբուրեն լալագին և կ՚օրհնեն։ Սենեկի մը մէջ առանձինն վերջին մնաք բարեւն կ՚ըսէ ամուսնոյն և արտասուալի աչօք կը բաժնուին։ Եթէ ուղևորն կինն մ՚՚է՝ մայրն, քոյրն և այլ արենակիցք ողբ կ՚ըսեն և կը փարին ուղևորին, որ ոչ նուազ կ՚արտասուէ։ Վերջապէս, շատ դժուարութեամբ կը բաժնուին իրարմէ. վասն զի ընտանեօք

գաղթողք սովորաբար չեն վերադառնար այլ ևս. մայրն, դուստըրն և այլն իրարմէ կարօտ կը մեռնին։ Ճանապարհորդն տունէն դուրս ելնելով, եթէ կին մ'է՝ պատրաստեալ ձին կամ ջորին կը հեծնէ. իսկ եթէ այր՝ ճամբորդներու հետ կ'երթայ պահ մը, որք տակաւ բաժնուելով՝ ինքն ալ ձին կը հեծնէ, և 1—2 ժամ յետոյ ձիաւոր ճամբորդներէն ալ կը բաժնուի, և մէկուն հետ կտոր մը պաքսամատ կամ քանի մը խնձոր կամ շաքար կը ղրկէ ամուսնոյն ու ընտանեացն։ Արդէն ընտանեացն, ազգականաց, քահանայից և աղքատաց նուէրներ տուած է։ Ուղևորն իւր սիրելիներէն բաժնուած՝ լացած, խոնջած ու միայնակ մնացած՝ կը խառնուի ուղեկցացն։ Թողումք զայն որ չիջևանէ իջևան երթայ իւր նպատակին։ Ճամբորդներն տուն գալով՝ հետզհետէ կը մեկնին և միայն մերձաւորք կը մնան, որք երեկոյին եկեղեցի կ'երթան «բարի ճանապարհ» հայցելու։ Կան ոմանք, որ ճանապարհորդին նաւ նստելու օրն հաշիւ ընելով՝ 'ի Զորակ գիւղ Հայ-հոռոմոց ս. Նիկողայոս եկեղեցին կ'երթան, զոր պաշտպան կը համարին նաւորդաց։ Ճանապարհորդէն մէկ կամ աւելի նամակ կուգայ թէ «սէլ-ամէթ» (ողջամբ) այս ինչ քաղաք կամ գիւղն հասանք». և երբ Պօլիս հասնի՝ «վար իջնելուս» նամակն կ'ուղարկէ։ Սկսած է պանդխտութիւնն. այնուհետև մերթ ընդ մերթ կը թղթակցին. ընտանիքն իրենց կացութիւնն, պէտքերն ու պէտքերն կը գրեն, և պանդուխտն ղրկած կամ ղըրկելիք դրամն, յաջողութիւնն կամ ձախորդութիւնն կը գրէ։ Տնեցիքէն կը խնդրէ «օրհնող դուռնէ ըլլիք, հարսին և տղոցն վրայէն նուզարնիդ պակաս չընէք»։ Ամուսնոյն կը պատուիրէ՝ «Մեծերուդ հնազանդ ըլլիս, տղոցն մօրշէն եղիր (հսկէ, խնամէ). դուն քեզ գիտնաս (պատուոյն պաշտպանութիւնն ակնարկելով). ժամէ աղօթքէ ետ չկենաս. Աստուծով շատը գնաց, քիչը մնաց.» ևայլն։ Այսպէս տարիներ կ'անցնին. 3, 5, 10 և երբեմն 20 կամ աւելի տարիներ։ Երբեմն կը պատահի, որ այրն երբ կը

մեկնի՝ կինն յղի է, կը ծնի. զաւակն կը մեծանայ. եթէ աղջիկ է՝ 14—15 տարւոյն մէջ կ՚ամուսնացունեն և դեռ հայրն ու զաւակն իրար չեն տեսեր։ Վերջապէս պանդխտին ծնողքն, ամուսինն և զաւակունքն նամակներ գրելով կ՚աղերսեն, կը թախանձեն հայրենիք գալ։ Հայրն կամ մայրն կը գրէ. «Իմ սիրելի աչացս լուս որդի, ծերացեր եմ. մէյ մի սիլայ (հայրենիք) եկուր. մարմնաւոր աչօք մէյ մ՚ալ տեսնիմ. կարօտութիւնս առնեմ» ևայլն. կինն կը գրէ. «Աս խուրպէթութիւնը ու կարօտութիւնը ալ ո՞րչափ պիտի տևէ. ես չես մեղքընարնը՝ տատա ու մարդ, Մազլում (անմեղ) չօճուխներդ (զաւակներդ) մեղքցիր» ևայլն։ Երբեմն ալ տաճկ. կամ հայերէն սիրային երգեր և անուններ գրելով իւր կարօտութիւնն կը յայտնէ։ Այսպէս սովորաբար 5—7 տարի անցնելէն յետոյ՝ պանդուխտն եթէ կորուսած չէ ինքզինքն, եթէ ստակ շահած աւելցուցած է՝ հայրենիք գալու դիտաւորութիւնն կը գրէ, յետոյ ալ այս ինչ օր նաւ նըստելն։ Պանդխտին ազգականք ալ իրենց ընտանեաց նամակաւն զայս լուր կ՚աւետեն։ Ասդին ազգականք խնդակցութիւններին կը յայտնեն. ընտանիքն եկեղեցի կամ ս. Նիկողայոս կ՚երթան։ Օր մ՚ալ կը նայիս որ Չորեպան մի կամ այլ մէկը, որ աւետաբեր է՝ Ենիչէրէ մը կը բերէ ճամբորդէն, որ մօտ գիւղ մը եկեր է։ Ի՛նչ ուրախութիւն. ղարիպը եկեր մօտեցեր է. սրտերը կը տրոփեն։ Ազգականաց Քուճուէճի կ՚երթայ. իրիկունէ կը պատրաստուին։ Հետևեալ առաւօտուն ոմանք հեծեալ և ոմանք հետիոտս մէկ երկու ժամու տեղ ընդ առաջ կ՚երթան. հետերնին օղի, կերակուր և պտուղ տանելով։ Ուղևորն կուգայ. կ՚ողջագուրեն. օղին կը խմեն, «բարի եկիր, աչքերնիս լոյս, տառօսը ամեն խարիպի ըլլայ» ևայլն ըսելով՝ կերակուր կուտեն և ճամբայ կ՚ելնեն. երբ տանն դուռն կը հասնի՝ հեծած ձիուն ճակատը, իբր ՚ի նշան գոհունակութեան՝ հաւկիթ մը կը զարնեն, կը կոտրեն. ի՞նչ գիտէ խեղճ կենդանին թէ այս արարողութիւնն «կեցցէ քաջ երիվարն որ ղուղևորն անվնաս բերաւ» ըսել է։ Ճամբորդն տունն կը մտնէ, հօրն ու մօրն ձեռ-

քըն կը համբուրէ, զոր կ'ողջագուրեն ծնողքն արտասուալիր։ Ազգականք ու բարեկամք տակաւ կը խռնին, կը համբուրեն զիրեար։ Ճամբորդն քանի մը վայրկեան ամուսնոյն քով կ'երթայ, որ առանձնացեալ է. երջանիկ վայրկեան։ Յետոյ սննակըն կը վերադառնայ, որոյ ծնողացն «աչքդ լոյս» ևայլն, որը ճամբորդին «բարի եկիր, ինշալլահ (Աստուծով) օլսուն էօ,» ևայլն կ'ըսէ։ Շատեր կան, որ մեկնած ժամանակին տղայքն մեծցեր մէյմէկ պատանի կամ երիտասարդ, և օրիորդքն հարս եղած են. ասոնք հետզհետէ ճամբորդին կը ներկայացուին, որ յանժամ կը զգայ իւր երկարատև պանդխտութիւնն։ Ճամբորդին ընտանեաց ու ազգականաց ամենուն սիրոյն ալ ուրախութեամբ լցուած է. բաժանուած օրուան տրտմութեան փոխարէնն է, որ կը վայելէ բաղդաւոր պանդուխտն։ Բաղդաւոր կ'ըսեմ, զի սովորաբար շատուոր են գնացողք, և քիչուորեն վերադարձողք։ Ո՞ւր են պակասածները. ոմանք անդ ամուսնացած, հաստատուած են. ոմանք դեռ պանդոկին անկիւններըն կը մնան, և ոմանք՝ աւաղ, իրենց մահկանացուն կնքած են. հեռաւոր տեղեր հեռաւոր հողերու ներքև կը հանգչին։ Աչքի լուսի գալողներն 3—4 օրուան մէջ կուգան։ Բեռն կը բացուի. ազգականաց շաքար, զգեստեղէն ևայլն ընծայներ կը տրուին և պանդուխտն իւր նեղութեան աւուրց փոխարէն հանգիստ օրեր կը վայելէ։ Եթէ կրցած է եկամուտը ապրելու չափ գումար մի շահիլ՝ կը մնայ աստ. իսկ եթէ ոչ՝ 6 ամիսէն, տարիէն, կամ մի քանի տարիէն դարձեալ կը մեկնի։ Անիծեալ պանդխտութիւն, որ հայրենեաց ժողովրդային աճումը կը կասեցունէ, որ բազմաթիւ արանց և երբեմն կանանց բարոյական անկման պատճառ կը լինի։

## ՀԻՒԱՆԴՈՒԹԻՒՆՔ ԵՒ ՄԱՀ։

Թէև կան այժմ մի քանի հիւանդութիւնք որք նոր կը համարուին՝ սակայն չգիտեմ թէ բնական պատճառներէ կամ ժողովրդեան կենցաղէն յառաջ եկած և իրօք նոր են, թէ արդէն կեցած ախտի մը տեսակին կը վերաբերին, որ մասնաւոր փոփոխութեամբ ու նոր երևոյթով մը երևան եկած են։ Ասոնց քննութիւնը բժշկաց թողլով, սկսիմք ի հնումն պատահած հիւանդութիւններէն հանրածանօթ եղածներն գրել։

| | |
|---|---|
| Հար | Հարբուխ. տճ. նէզլաղիլ։ |
| Դող | Ջերմ. տճ. ըսըթմա։ |
| Վարցաւք | Տենդ. այն հիւանդութիւնք որով հիւանդն անկողնոյ կը ծառայէ. տկար, նիհար և անախորժակ |
| Հիւմմա (տճ.) | Տենդ իւր տեսակներովն։ |
| Բարակ ցաւ | Թոքախտ կամ ծիւրական ախտ. տճ. վէրէմ։ Նաև ջրգողութիւն. տճ. իսթիսգա։ |
| Մայասըլ (տճ.) | Թանչ։ |
| Խըլըրդուկ | Տճ. սըրաճա։ |
| Իջուածք | Կաթուած. տճ. եէնմէ. տամլա։ |
| Դեղնութիւն | Տճ. սարըլըգ։ |
| Քոս | Բոր. տճ. ույուզ։ |
| Մրջիւննոցք | Մորթի թեփոտիլն։ |
| Էռ ցաւ (աչքի) | Տեսակ մը աչքի ցաւ որ կ'եռայ, կը կսկծէ։ |
| Գալ-ծաղիկ | Հիւանդութիւն մը, որ մորթին վրայ խոշոր տապաստներ դուրս կուտայ. կարմրախտ կամ կարմրախտի պէս հիւանդութիւն մ'է։ |

| | |
|---|---|
| Մարազ (տճ.) | Լուսնոտ։ |
| Ստամոքսի կամ սրտի ցաւ. սիրտ թօթվել. վախ. | Սրտի կամ ստամոքսի հիւանդութիւնք։ |
| Մանկանց հիւանդութիւնք | բաց 'ի ծաղկէն և հարսանիթէն (կարմրուկ) որ ծանօթ են։ |
| Խորշուք | Մանկան երեսներն ու գլուխն դուրս տուած բիծեր մորթին վրայ։ |
| Ջրծաղիկ | Ծաղկի հիւանդութեան պէս է. անվնաս է։ |
| Ցաթկըռտուք | Ջրծաղիկի պէս է որ կը տեղափոխի։ |
| Բերնակ | Մանկան բերնին բշտիկը։ |

Համաճարակ հիւանդութիւններէն կը յիշեմք Ժանտախտն (տճ. խումրուճագ) որ այժմ դադարեալ է։ Հնտախտն (քօլերա). 39—40 տարի առաջ ամառն անգամ· մի այցելեց և ամսոյ մի չափ տևելով բազմաթիւ զոհեր տարաւ. ըստ ոմանց՝ բոլոր բընակիչներէ 5—600 հոգի։ Քօլերայէ բռնուողներէն շատերն ծարաւէ կը պապակէին. ըստ պատուիրանաց բժշկին ջուր չէին տար և հիւանդն ծարաւէն տանջուելով կը մեռնէր. գաղտնապէս ջուր խմող հիւանդներէն ոմանք և թերևս շատերն ազատեցան։ Ծաղկի հիւանդութեան և հարսանիթի համար Հայոց տուար մեծամասնութիւնը կը կարծէ, թէ յԱստուծոյ Ադամին տրուած «փուշ և տատասկ բուսուսցէ քեզ երկիր» անէծքն կամ պատիժն է, որ կը գործադրի նորա սերնդոց վրայ։ Թէև ոմանք պատուաստել կըտան՝ բայց ամենամեծ մասը կամ մեղք համարելով և կամ պատուաստէն ոմանց վնասուիլն տեսնելով զանց կըառնուն։ Ծաղիկն 7 տարին անգամ մի կուգար, բայց այժմ 2—3 տարին կուգայ և բազմաթիւ մանկանց կեանքը կը զրաւէ։ Կը գտնուին ոմանք որ երեսնին ծաղկաւեր եղած է, ոմանց ալ աչքն վնասուած կամ կուրացած է։

Գալով վերոյ գրեալ հիւանդութեանց դարմանին՝ հարն ինքնին կը բժշկուի։ Ջերմին համար, բաց 'ի բժշկական դեղերէ, շատերն ս. Կոզմոս ուխտի կ'երթային. ոմանք ալ «դող կապող» ին կարդալ տալով, դողցունողին թել դերձան մը կապել կըտային։ Վարցաւքին համար ոմանք բժիշկ կը բերէին և ոմանք պառաւական դեղերով, այլ և այլ ծաղիկներու և պտղոց ջուր խմելով կամ առանց դեղի՝ քրտնելով կը բժշկուէին. ոմանք ալ հոյոյէ *) (պագըճը) նայել կուտային։ Երկարատև ջերմի և ծիւրական ախտի 'ի դարման, ոմանք 7 կուտ սև չամիչի մէջ 7 հատ ոջիլ (մարդոյ) կը դնեն և առանց հիւանդին նշմարել տալու՝ կը կերցունեն։ Ծիւրական ախտի 'ի դարման, 1. ճերմակ շան-փին (շան աղբ) ծեծելով կը փոշիացնեն, շըշարշէն (տիւլպէնտ) կ'անցունեն. չեչ մեղրով դեղահատի խմոր (մաճուն) կը շինեն և ախտացելոյն կը կերցունեն. 2. շուն մի կ'սպանեն. գլուխը կտրելով փուաը կուտան, լաւ մի կը խորովեն. կը ճերմկի ոսկորը՝ զոր կը ծեծեն և շըշարշէն կ'անցունեն. յետոյ չեչ մեղրով կամ զտեալ մածնով (սիւզմէ) ախտացելոյն կը կերցունեն. կ'ըսեն թէ այս վերջինն փորձեալ և օգտակար է։ Ծիւրական ախտացելոց համար իշուկաթն, և աղջիկ ծնող կանանց կաթն (40 օր) օգտակար է։ Ջրգողութեամբ ախտացեալն բժիշկն կը դարմանէր՝ որ սովորաբար չէր յաջողէր. իսկ թանչի համար՝ բաց 'ի բժշկականէ, պառաւական զանազան դեղեր կ'ընէին։ Իջուածքին, ինչպէս նաև տենդերէն 1—2 տեսակին համար՝ արիւն կ'առնուին նշտրակով, երբեմն տզրուկ կը փակցունէին։ Խլրդուկ, քոս և խորշունք իրենց պառաւական դեղերն ու ուխտատեղիքն ունէին։ Դեղնութեան համար ոմանք բժշկաց դարմանին կը դիմէին և ոմանք դեղնութեան դարման գիտցող ընտանիքի մը [illegible] ջուր՝ չիյտեմ ինչ կերպով պատրաստելով՝ քիթն 'ի վեր քաշել կուտային, զգուշացունելով որ սոյն վնասակար ջուրը ստամոքսը չերթայ։

---

*) Գուշակող։

Ցիշեալ հիւանդութիւններէն 'ի զատ կային և կան սըր-տի, փորու խոստուկ որոց դարմանն էր 'ի Տրդու Խանրկոուր ուխտի երթալ։ Գլխոյ և աչքի ցաւոց համար կը շփէին, ուխտ կ'երթային և կամ պառաւական դեղեր կ'ընէին։ Մանկանց խորշուքի համար «խորշուքի եղկեցիոն ուխտի կ'երթային. և զանազան ախտացեալք՝ մասնաւորապէս լուսնոտք՝ ամանք հայոցի կամ վհուկի կը դիմէին և շատերը Արակայ կ'երթային և ցայսօր կերթան, և հաւատով կը բժշկուին։ Մասն— շունչ, մըլյատամ (մկնատամ) և հուրփուք եարայի համար ալ կամ վիճարքուժին և կամ մասնագէտ կինանց կամ արանց դարմանին կը դիմէին, որք սպեղանեօք կը բուժէին։ Զմոռնամք յիշել, թէ բաց յայն ուխտատեղիներէն, ուր զանազան խնդրուածոց համար կ'երթան, ինչպէս են 'ի քաղաքիս Արեգի թաղն ս. Լուսաւորիչ, կարիճէ պահպանուելու, յԱպուչեխ ս. Մինաս՝ կորուստի գտնուելու, 'ի Զորակ ս. Նիկողայոս՝ նաւորդաց համար ևայլն.—կան նաև զանազան հիւանդութեանց համար հետևեալ ուխտատեղիքն, ուր կը դիմեն և ոմանք հաւատով կը բժշկուին։

Ի քաղաքիս, ս. Թալալոս (Թալալիա՝) վէրք բժշկելու.

Ցայնկոյս Եփրատայ, լուսաղբիւր՝ աչաց ցաւի.

» » և 'ի Կամարակապ խորշուքի եղկեցի՝ խորշուքի.

» » եղկեցկակ (եկեղեցւակ) խժուկի, հազի.

'Ի Զարազ, Մարընտուրիկ՝ պարանոցի ուռեցքի (խռտիկ).

Վզային անդին. վզայի եղկեցի՝ խուլի.

'Ի Կարուշյայ, ս. Կոզմոս՝ ջերմի ևայլն.

'Ի Կարուշլա, Մոքոս Թագաւոր՝ ականջի խօթութեան.

'Ի Տրդու, Խանըրկոուր՝ փորու ցաւի.

'Ի քաղաքիս ս. Գ. եկեղեցւոյ գաւիթն Պօղոս եպիսկոպոսի և Ղազար քահանայի, և 'ի Կամարակապ Ամբակում քահանայի գերեզմանաց վրայ հիւանդոտ տղայքն կամ չափահասանձինք կը լոգցունէին և ոմանք կը բժշկուէին։

Հետաքրքրական է պորտ իջնալու և սիրտ թօթվելու հիւանդութիւնքն և անոնց դարմաններն։ Երբ մէկը ցատկելով կամ ծանր բան մը վեր առնելով պորտը ցաւիլ սկսի՝ պորտը ընկած է կ'ըսեն. և երբ դիպուածէ մը վախնայ կամ գոյժ մը լսէ և սիրտը թօթվել սկսի՝ սիրտը ինկած է կ'ըսեն։ Այս կըրկին պարագայից մէջ, մանաւանդ երբ սիրտը թօթված է կը սկսի օր ըստ օրէ ախորժակը կորսուիլ, ուժն սպառիլ և գլխու ցաւով տառապիլ։ Պորտուն վեր առնելու դարմանն՝ վախցողի դարմանին պէս՝ փորը շփելով և պորտը ոլորելով կ'ըլլայ, որոյ նկարագրութիւնն հետեւեալն է. Սեղաղ ունեցող (այսպիսի հիւանդութեանց համար շնորհ ունեցող) կին մը կուգայ, զախտացեալն կը պառկեցունէ կռնակին վրայ. գլուխն ներքև կակուղ բարձ մի կըդնէ, որ փորը կակուղ մնայ. ոտքերն ծունկերէն կը ծռէ։ Կ'սկսի մէկ ձեռքով նախ սիրտն բռնել. քանի մը վայրկեան յետոյ թող կուտայ, նորէն կը բռնէ և թող կուտայ։ Յետոյ կողերուն ներքեւն ալ կըբռնէ. յետոյ փորը չորս կողմէն կը շփէ, կ'ամփոփէ դէպ 'ի պորտն և յետոյ բթամատովն և ցուցամատովն քիչ մը կ'ոլորէ պորտն և այնպէս կը մնայ քանի մը վայրկեան. թող կուտայ և դարձեալ կ'ոլորէ. (այս գործողութիւն մասնաւորապէս «պորտը վերառնելու» համար է։) Յետոյ երկու ձեռքով ազդրաց օղակի ոսկորին վրայի կողմի երակները կը բռնէ, զոր թոյլ տուած ժամանակ, հիւանդն այնպէս կ'զգայ թէ եռացեալ ջուր մի ոտքերէն 'ի վար կ'իջնէ։ Յետոյ ծնգաց ետեւի կողմէն դէպ 'ի վար յոտս կը շփէ։ Սոյն արարողութիւն իբր կէս ժամ կը տեւէ և սովորաբար 3 օր առաւօտուն կը կրկնուի։ Եթէ հիւանդութիւնն հնացեալ է՝ վերի գործողութենէն զատ, ուսերն և թեւերն ալ կը շփէ։ Շփելու ժամանակ շփողն աղօթք ալ կ'ըսէ։ Տեսնուած են շատ անձինք, որ շփելով ապաքինած են։

Կանանց յղացման և ծննդաբերութեանց համար ալ շատ տեսակ դեղեր ու դարմաններ կ'ընեն, բայց դարմանող կանայք գիտեն։ Սոյն տողերն գրած օրերս (1887 Հոկ.) հետեւեալն ըլ-

ռեցի։ 'Ի քաղաքիս երէց-կին մի յերազի կը տեսնէ մէկն (սուրբ մի), որ կանանց արիւնահոսութեան 'ի դարման՝ կը պատուիրէ 8—10 կամ 15 օր առաւօտուն չեփած հաւկիթ ուտել կամ խմել և կճեպն վազուկ ջուր մի նետել։ Երէց-կինն ատոր օգուտն կը տեսնէ. ժամանակ յետոյ այլ կին մի այդ ախտէն բռնուած՝ երէց կնոջ խրատով հում հաւկիթ ուտելով կը բժշկուի. այլ կին մ'ալ ախտացեալ՝ այս օրերս երկրորդէն լսելով, նոյն կերպ բժշկուելն խօսեցաւ. յաւելլով, թէ հաւկիթն ուտելով հոսումն դադրած էր, բայց ո՛չ կատարեալ. և երբ կճեպն վազուկ ջուր մի նետել տուած է, կատարելապէս առողջացած է։ 'Ի հնումն կային, և թերևս կան այժմ, բժշկական ձեռագիր գրքեր՝ զորս հէքիմարան կը կոչէին, և կան տակաւին զանազան ծաղկունք, պտուղք, տերևք, խոտք, արմատք և ջուրք, զորս ժողովուրդն նոյնութեամբ կամ բաղադրելով այս ինչ կամ այն ինչ հիւանդութեանց 'ի դարման կը գործածեն, բայց բնաւին անտեղեակ գոլով բժշկական գիտութեան և իմ նպատակէն դուրս լինելուն, զանց առնի։

Այժմ սկսիմք հիւանդաց և բժշկաց վրայ խօսիլ։ Երբ մէկը հիւանդանայ, ազգականք և բարեկամք 'ի տես կուգան և կանայք սովորաբար խաղող, խնձոր, տանձ և այլն ընծայ կը բերեն. երբեմն դաղտնապէս կը կերցունեն այն կերակուրներն կամ պտուղներն, զորս բժիշկն արգելած է, սա խօսքերով թէ «կեր ուր աչուիդ բացուի. մի' վախեր. չուտելով առենկ ի՞նչ տիլլիս. այս ինչ հիւանդին ալ բժիշկն արգելած էր, մտիկ չարաւ. կերաւ, խմեց, աղէկցաւ» կըսեն. բաւական կը ձանձրացունեն և կը մեկնին։ Յիրաւի շատեր կան, որ հակառակ բժշկին պատուէրին՝ ջուր խմելով, մածուն, թան կամ այլ յոյժ սիրած ու սովրած կերակուր մի ուտելով՝ առողջացած են։

Երբ հիւանդն չապաքինիր, որ ըստ օրէ աւելի կը նիհարանայ, կ'սկսին վտանգաւոր համարիլ, «աչուին կորեր է»,

կամ «երեսը սկրթուեր է» կ՚ըսեն. կը կոչեն քահանայն, որ հաղորդութիւն կուտայ. աւետարան, մանաւանդ Սասանցի կը կարդայ: Հիւանդն, որ մեռնելու օրը աչքերը խոժոռ ու խոլոր դարձունէ, «երևեցան» կ՚ըսեն. այսինքն հրեշտակներն կամ հոգին առնողն երևցան, և հիւանդն սարսափեցաւ: Երբեմն հիւանդին մեռած օրն կամ քանի օր յառաջ կ՚ըսեն «խնկեցին», այսինքն հիւանդին սենեկէն խնկի հոտ եկաւ. կը կարծեն թէ աներևութէն խունկ կը ծխեն: Այն հիւանդն, որոյ հոգեվարքն կ՚երկարի, «աշխարհքէն ուրղուան չէ առեր», կամ «այս ինչին հետ խռով է, պէտք է մեղայ տայ» կ՚ըսեն. կը բերեն այն անձը, կը ներէ հոգեվարքին: Երբ հոգեվարքն ուշակորոյս կը լինի, անկողինն յարևելս կը դարձունեն և հոգի փչելու միջոցին՝ ՚ի դիւրութիւն, գլխուն բարձը կը քաշեն մեղմիւ, որով գլուխը կը ցածնայ և կ՚աւանդէ զհոգին: Եթէ տակաւին աչքը չի խփեր՝ ձեռքով կը խփեն, եթէ դարձեալ չի գոցէ՝ քիչ մը հող կը լեցունեն աչքին մէջ, և կը գոցէ. կարծեօք ասոր համար է որ կ՚ըսեն, թէ «մարդուս աչքը կշտում չունի, միայն քիչ մը հողը կու կշտացունէ»: Արդէն հոգևարքի միջոցին, սովորաբար, զարենակիցսն սենեկէն դուրս հանած են. Նախ մեռելոյն աջ թևն կը մերկացնեն, դուրս կը հանեն, գլխոյն վերև ճրագ մը կը դնեն և խնկատուք մը, որ կը ծըխայ: Ընտանեացն գուժուած է. ճիչ, աղաղակ կը բառնան, կ՚ողբան և կը կոծեն: Երբ մեռեալն տակաւին երիտասարդ է կամ յոյժ սիրեցեալ, ոմանց մայրն, քոյրն և ամուսինն գլխոյ մազերնին սակաւ մի կը փետրեն: Եթէ առաւօտ կամ ցերեկ է, մեռեալ լոգցնողն կը բերեն որ կը լոգցնէ, յետոյ կը պատնեն և կը պատրաստեն ՚ի թաղումն, իսկ եթէ երեկոյ է, այս գործողութիւնքն գիշերը կը կատարեն, թաղումը հետևեալ օրուան թողլով: Պատանքի սովորութիւնն է այսպէս. մեռելոյն քթին և ականջին ծակերը քիչ մը բամբակ կը խծկեն. ոտից երկու բթամատներն իրար կը կապեն. դերձանէ կապ մի ետևի կողմէն առաջքը բերելով՝ խաչաձև կը կապեն. ձեռ-

ներն սրտին վրայ կը բերեն, իրարու վրայ կը դնեն. երկու ձեռաց մատանց մէջ բամբակ և եկեղեցւոյ մէջ վաճառուած մոմերէն երկու մոմ՝ կը դնեն, և բերնին վրայ նշխար մի (օրհնեալ բաղարջ հաց) կը դնեն։ Յետոյ կտաւէ պատանքով կը պատեն: Բաց 'ի տան երեցէն, ննջեցելոյն հարստութեան և պատուոյն համեմատ, սովորաբար այլ քահանայք և առաջնորդն ևս կը հրաւիրեն, որք կուգան. ննջեցեալն սննակըն կը բերեն, վրան ծածկոց, ցփսի մը կը ձգեն. կրօնական կարգն կը կատարուի. ապա դագաղին մէջ կը դնեն. ոմանք այժմ տախտակէ արկղի մը մէջ կը դնեն և կը մեկնին յեկեղեցի, ուր ևս կրօնական պաշտօն կը կատարուի. յետոյ 'ի գերեզմանատուն կը տանեն, ուր ընթերցուածք կը լրանան և ննջեցեալն 'ի գերեզման կ'իջեցունեն. քահանայն և ոմանք ևս մէյմէկ ափ հող կը լեցունեն և գերեզման փորողն և դագաղակիրք կը սկսեն թիով ու բրչով հողն վրան լեցունել արագապէս: Մի քանի վայրկեան բաւական է փոսը լեցունել. աւելցած հողն գերեզմանին երկայնութեամբ և դիրքով որ յարևելս է՝ իւր վրայ կ'ամփոփեն և վրան քարեր կը շարեն. քահանայն վերջին աղօթքն կ'ընթեռնու, և քիչ մ'անդին, քահանայն և արենակիցք կը շարուին. յուղարկաւորք աւետարանն համբուրելով և մխիթարութիւն մաղթելով կը մեկնին. ծախքերը կը վճարուին և տուն կը դառնան։ Զմոռնամք ըսել, թէ առաջնորդն կամ երբեմն քահանայ մի երբ ննջեցեալն եկեղեցի կը տանին և աղօթքն կը կատարուին, ըստ պատշաճի, դամբանական մը կը խօսին։ Եկեղեցեաց մէջ ծանուցումն կ'ըլլայ, թաղման օրէն սկսեալ 3 օրուան մէջ, ազգական, բարեկամ և դրացի բոլորն մխիթարութեան կուգան։ Արք և կանայք զատ զատ սենեակ կը նստին. հանգուցելոյն մայրն, քոյրն, կինն կամ դուստրն սենեակին մէկ կողմը կարգաւ կը նստին և ողբեր կ'ըսեն ըստ պատշաճի. մխիթարութեան եկող կանայք ալ անոնց առաջքը կը նստին. մայրն, կինն ևայլն 2—3 տուն ողբ «լաց» կ'ըսեն, ուղղեալ

առ այցելուն, որք կը պատասխանեն ողբով։ Սգազգեաց մայրըն կամ կինն հազիւ թէ շունչ առած է, ահա նորեկ կին մը․ անոր ալ ողբ պիտի ըսէ։ Մինչև երեկոյ կ'ողբայ, կ'արտասուէ, ձայնը կը կտրի, կը նուաղի․ բայց պարտի շարունակել, զի նուագ ողբացողն՝ իբրև նուազ հոգացող կը մեղադրուի։ Գիշերները ողբ չեն ըսեր, զի մեղք կը համարին։ Թէ արանց և թէ կանանց կողմը սովորական բարեմաղթութիւնքն են՝ «Սուրբ հոգւով մխիթարիք․ Աստուած հրամանոցդ տայ կենդանութիւն․ Տէրը լուսաւորէ հոգին ևայլն»։ Կ'ըսուի նաև՝ «Ինչ ընենք, Աստուծոյ կամքն է․ այս ինչը նայէ մէկ տղայ մի ունէր, մեռաւ․ մտմտալը օգուտ չունի․ անձիդ վնաս ունի։ Մեռնողին հոգուն ալ դժար է․ Աստուած կու բարկացնինք․ իրաւ «կրակը ինկած տեղը կ'երէ» կ'ըսեն, բայց համբերութիւն անելու է․ Աստուծոյ փառք տալու է․ ալ մեռնողին մէկ մազը տեղը չի գար»․ և այլ, ըստ հասակի և ըստ պարագայից մխիթարական խօսքեր։ Եօթնեակն լրանալուն՝ տաղաւարաց բշ․ օրերն, և տօներու հաշուով տարին լրանալուն արենակիցք կը ժողովին ողբ կ'ըսեն։ Դեռ 8—9 տարի յառաջ, ննջեցելոյն զգեստէն ձեռք մը զգեստ տան երէցին կու տային, որոյ «կողոպուտ» կ'ըսէին․ բայց Գեր․ Սրուանձտեանի օրով դրուած կանոնաց համեմատ կողոպուտն արգելեալ է, և ըստ կարողութեան դրամ կը տրուի։ Կարողութեան տէրերը «Հոգւոյ հաց» կուտային աղքատաց, և տապանաքար շինել տալով գերեզմանին վրայ կը դնէին․ բայց սոյն բարեպաշտական սովորութիւնք ևս նուազած են։ Հանգուցելոյն ընտանիքն սուգ կը մտնեն․ կը հրաժարին զարդարանքէ, խաղալէ, երգելէ և զբօսանքէ․ խնջոյքի, հարսանեկան և այլ հանդէսներուն չեն երթար․ ողբացելոյն կարևորութեան համեմատ վեց ամիս, տարի մը կամ շատ տարիներ սուգ կը պահուի։ Երբ սովորաբար տարին լրանալուն սուգն բաւական համարուի, ազգականներէն մին կը հրաւիրէ սգաւոր ընտանիքն, որ կ'երթան․ և այն օրէն սկսեալ սգէ ելած կը համարուին․ սա-

կայն 'ի կանանց շատերն, որ իրենց ամուսինն *) կամ միամօր զաւակն կորուսած են՝ անմխիթար սգոյ և տրտմութեան, մէջ կը մնան ընդ երկար կամ ցվախճան կենաց իւրեանց։

## ԳԼ. Գ.

### ԱՌՏՆԻՆ ԿԵԱՆՔ

--

Ընտանիք։ Առաջին մասին Դ. գլխոյն մէջ համառօտակի նկարագրած ըլլալով Ակնայ տուներն, այժմ սկսիմք անուանց, կերակրոց և առանին վարչութեան վրայ խօսիլ։

Ինչպէս սովորութիւնք կը փոխուին, նոյնպէս և անուանք փոխուած են և կը փոխուին։ Արանց հին անուանց մէջ հետաքրքրական են Եմիրզէ, Ֆառխուզատ (թերևս՝ Ֆախրիզատ), Միրիճան, Ըռաստ կամ Ռաստ, Թխման, Մախսուտ կամ Մագսուտ, Պարոն, Սիրական, Նորիկ ևայլն, որք զարդիս ևս գործածական են, յայտնի չէ թէ ո՞ր ժամանակէ 'ի վեր սկսուած են գործածուիլ։ Հին ժամանակներէ 'ի վեր, կան նաև Շահեն, Մալխում, Պալիկ, Մուրատ, Ֆէրհատ և Շիրին անուանքն որք բաց 'ի Շիրինէն, թէ Հայոց և թէ Տաճկաց մէջ գործածական են, թէ և ոչ յաճախ։ Այժմ մեծամասնութեան անուանքն են. Յարութիւն, Գրիգոր, Յակոբ, Ստեփան, Պօղոս, Գէորգ, Յովհաննէս, Կարապետ, Սարգիս, Մարտիրոս ևայլն, սակայն 5—10 տարիէ 'ի վեր, շատերը սկսած են Արմենակ,

---

*) Երբ ամուսնոյն մահուամբն այրի մնացող այրն կամ կինն դեռ երիտասարդ են, դարձեալ կ'ամուսնանան. այրի ընդ այրւոյ կամ ընդ կուսի։ Երբեմն երրորդ ամուսնութիւնք ևս տեղի կ'ունենան, և 'ի հնումն չորրորդին համար ալ թոյլ կը տրուէր։ Կը գտնուին հարսունք, որ երբ տուն, ապրուստ և 1—2 զաւակ ունին՝ չեն ամուսնանար այլ ևս, բայց արք այս կէտին մէջ ևս իբրև առանձնաշնորհեալ և անմեղադրելի (սակաւաթիւ բացառութեամբ), կ'ամուսնանան։

Արամ, Վահան, Միհրան, Խորէն, Սմբատ, Աշոտ, Լեւոն եւայլն հայկական անուններով մկրտել։ Գալով կանանց անուններուն, յաճախ գործածական են Մարիամ կամ Մարիցայ, Սրբուհի, Թագուհի, Իսկուհի և այլն, նաև Էլմաս, Եախութ, Զիւմրիւթ, Խաթէմ, Նազլը կամ Նազենի, Սուլթան, Թէնսուֆ, Կիւլիւմ, Անպէր, Տուտու, Ազիզ, Սլումա եւայլն. իսկ հին անուններէն կան Զուլալ, Ծուհար, Տովլաթ, Խոյրաթ, Մէլէկ, Փէնպէ եւայլն, որք տակաւ կը դադրին։ Քանի տարիէ 'ի վեր, փոխանակ հին կամ նոր օտար անուանց կը դրուին քրիստոնէական կամ հայկական անուանք, որք են՝ Հայկանոյշ, Ագապի, Արմենուհի, Սոփիա, Ազնիւ եւայլն։

Կերակուր։ Կերակուրք հին ատեններէ 'ի վեր, բաց 'ի մասնաւոր բարեփոխումներէ, գրեթէ նոյնն են։ Ասոնց մեծ մասին՝ 20—30 տեսակին անուանք թուրքերէն են. զոր. քէպապ, խըզարթմա կամ պիւրեան, մանճա կամ պաստը, չորպա, տոլմա, հէլվա, հէսուտէ, եաղլը, քէշկէկ եւայլն. իսկ այն կերակուրք, որոց անուանքն հայերէն են, հետեւեալքն են.

| | |
|---|---|
| Ճիլլիկոն կամ Ջիլլիկոն... | կովու ոտքերն ու սրունքն խաշած, վըրան կարմիր տաքդեղով ու խստորով (տճ. փաչա). |
| Խաւիծ | խորխսխով և իւղով եփուած, նօսր։ |
| Ձուազեղ | իւղով, հաւկթով եփուած և վրան մեղր լեցուցած։ |
| Եղ ու մեղր | ձուազեղի պէս, իւղով և մեղրով եփած։ |
| Կաթն—ապուր | եփած կաթն՝ մէջն հաց փշրած։ |
| Մալեզ—ապուր | կորկոտէ և խորխսխէ շինուած ապուր մի։ |
| Սրմուք | երկանաքարով խառին ցորենն աղալով անոր մանրուքն պարզ կամ իւղով եփուած (դդալով կ'ուտուի)։ |
| Ծնիկ | սրմուքին պէս աւելի մանրն, թեփի պէս, այս ալ դդալով։ |
| Խոշոր փիլաւ | կորկոտէ և իւղով կամ մսով (խաւուր- |

| | |
|---|---|
| | մա) եփուած. այս ևս դդալով։ |
| **Նուրվայ** | հաւկթով, իւղով, պանիրով և կանաչ սոխով եփուած։ |
| **Զըլպուր** | ձաւարով, լոլիկով, հաւկթով, պանիրով և թառայով։ |
| **Քալաճոշ** | (ոմանք «գալաճաշ» կ'ստուգաբանեն) թան կամ չոր թան, սոխրած, ընկոյզ և անուխէ պատրաստեալ։ |
| **Տապկած՝ սպաննախ, դդում, պատեհղ ևն.** | այս ամենն իւղով և հաւկթով կը տապկուի (տճ. ...թավասը)։ |
| **Թառխնխաշ** | Նոզգամով և դդումով, թանէ թառխանայով, իւղով և սոխրածով պատրաստեալ։ |
| **Թան, չորթան, սամթով-ապուր.** | թանով և այլն ապուր։ |
| **Թթու-ապուր** | կորկոտով, լուբիճով և քացախով եփուած ապուր։ |
| **Անուշ ապուր** | Խաղողի թառխանայով եփուած ապուր։ |
| **Սըփըռտուկ** | բրինձով և երվիշտայով եփուած փիլաւ։ |
| **Թարխանա** | կորկոտով և թան կամ շիրայով եփուած և կոշտ կոշտ չորցուցած։ Եթէ քացխուն խմորով է, «Ջրէ Թարխանա» կ'ըսուի։ |
| **Ընկոյզով հաց** | Թոնիրի կամ փռան կակուղ հացն մանրած ընկոյզն կը թաթախեն, կը տաքցունեն և վրան մեղրը կ'անցունեն։ |
| **Հացով-հաւկիթ** | կակուղ հացն հաւկիթը թաթխելով իւղի մէջ կ'եփեն, վրան մեղրը կանցունեն. (տճ. էթմէք կամ եասսը գատայիֆի պէս)։ |
| **Լանգակ** | բրինձը կ'եփեն, ալիւր ալ խառնելով դարձեալ կ'եփեն, պարպելով վրան |

ծեծած ընկոյզ և ռուփ կ'անցունեն. (սովորաբար Ապուչեխ, Կամարակապ կ'եփեն)։

Պորանի — դդումն՝ ոսպի չափ մանր կտրատած, խաշած և մարած մածնի մէջ լեցուցած և հետն անուխ խառնած։

Լոշաս, նօհուտ, բակլա — ծանօթ ընդեղէնքն, ('ի կերակուր պահոց)։

Կան ասոնցմէ 'ի զատ ձուկն՝ խորոված կամ հակթով տապկած, նաև ուտուաց (ուտիք) ու պահոց մանրումունր կերակուրք և ուտելիք՝ բողկ, սամիթ, րէշէլ ևայլն, զորս չգրեցի։ Այս կերակրոց համեղութեան և մաքրութեան՝ Հայք բաւական հոգ կը տանին։

Զգեստ։ Կը յիշեմ տակաւին հին զգեստներէն սև գօլբագը (փոքր կաթսայի ձևով), չուշլըը (տեսակ մի շալվար չուխայէ), գօտի, ճիւպպէ և մէսթ-փապուճն։ Իսկ կանանց զգեստըն էր՝ Թաղնայ, խասապա, պարեգօտ (էնթարի) մէջքն կամար (քէմէր) կամ պարսկական ցփսի (շալ-գօտի), զանազան տեսակ մուշտակաւոր վերարկու, ղէօրէնճիւկէ, քէթանէ, և 'ի կարմիր ներկեալ՝ կտաւէ շապիկն և ոտից-թէրլիկն։ Գալբաղ, չաշըըը, Թաղնա, խասապա և կարմիր շապիկն 40—50 տարիէ 'ի վեր տակաւ դադրելով, բաւական տարիներէ 'ի վեր, չեմք տեսներ այլևս։

Այժմ արանց 50% զգեստն է Թուրքական ֆէսն (գլխարկ). Բերիոյ և այլ տեղեաց մետաքսեայ (չիթարի) կամ Բերիոյ, Անթապի և ըստ մեծի մասին Ակնայ-գործ մանուսայ պարեգօտ (էնթարի) և բաճկոնակ. չուխայէ՝ սովորաբար ռոգօյէ ձևով վերարկու, պարսկական բրդեղէն, և այլ տեղեաց կամ Ակնայ գործ գօտի, բարակ կտաւէ շապիկ. Ակնայ կարուած մուճակ, որոյ կաշին Զիլէէն և սեկն Քարբերդէն, Արաբկերէն, Սևաստէն և այլ քաղաքներէ կուգայ. մեշինն կամ Ակնէն է կամ դուրսէն կուգայ։ Կան նաև շատերն որ լեղակով ներկեալ կտաւէ շալվար

կը հագնին, իսկ հարուստքն և սովորաբար Կ. Պօլիս և այլ երևելի քաղաքներ գնացող եկողք եւրոպական զգեստն՝ ջէքէթ, փանթալօն, ֆօթին, գալօշ և այլն կը հագնին։

Գալով կանանց՝ ծերերէն լսած եմ, թէ ՚ի հնումն Զօպան-եաղալը» (հովուական օձիքով) ըսուած տեսակ մը մուշտակ կը հագնին եղեր, որոյ ներսի կողմն արդէն մուշտակապատ լինելով՝ դուրսի կողմն ևս, բաց ՚ի առաջքի և թիկանց կողմի մէկ երկու տեղերէ, ուր կերպասն կը տեսնուի՝ բոլորն մուշտակապատ է եղեր։ Իսկ գլխոյ վերոյ յիշեալ Թաղեան ու խասապան վերնալէն յետոյ՝ սկսած է Թաղիք (քէչէ) գլուխներն, որ այսպէս են. կնոջ գլխուն մեծութեամբ, եզերքն ուղղաձիգ, գագաթն կլոր քէչէ մի, մէջն աստառով պատած, վրան Ֆէս մ՚ անցուցած, գտակին կիսագունտէն սկսեալ յառաջակողմն և մետաքսեայ ծոպ մը (փիւսկիւլ) տարածեալ մերձ ՚ի շրթունըս գդակին՝ ուր «ճակատ» անունով ոսկեայ 5, 10, 20 ղուրուշնոց շարք մը կայ կարուած՝ որ կիսովն կ՚երևայ. գտակին վրայ ստորին կողմն 3—4 մատնաչափ լայնութեամբ ծաղկենկար շղարշ մի (եազմա) կոկիկ կապուած։ Այլ եազմա մի, կէսէն եռանկիւնաձև ծալլած, լայն կողմէն գագաթին յետին կիսագունդէն դէպ ՚ի վար կապած, որոյ երկու ծայրերն ծնօտին ներքևէն միւս կողմն անցնելով, ՚ի գագաթն ասեղով փակցուցած է։ Այս եազման՝ իբր օժանդակ՝ ունի իւր ներքևն նուրբ, ճերմակ կտաւ մի, որոյ «ներքնակ» կ՚ըսեն։ Սոյն ձևով գդակք օր ըստ օրէ կը պակսին։ 20—30 տարիէ ՚ի վեր նորասովոր գդակներն սկսած է որ Ֆէս են, և առաջքի ծոպն, ճակատն և եազման ունին, բայց դէպ ՚ի վար կապած եազման չունին, և՝ զոգցես փոխան սրա՝ գագաթին մէջ յետնոյն կէս կանգուն երկայնութեամբ ծոպ մի կը կախեն, որ 40—50 դրամ՝ կը կշռէ և մինչ ուսերն կը հասնի։ Քանի տարիէ ՚ի վեր ոմանք սկսած են տակաւ թողուլ այս գդակներն ալ, որ ծանրութեան կողմանէ հիներէն մեծ տարբերութիւն մը չունին, և սկսած են միայն մետաքսեայ նոր կամ եազմա մի կապել։ Արդէն տան մէջ շատերն միայն եազմա մի կը կապեն։

Կանանց նախկին պարեգօտին տեղ՝ քանի տարիէ 'ի վեր սկսած է շրջազգեստն (ֆիստան) հանրանալ, և կ'երևի թէ 'ի մօտոյ պարեգօտն բոլորովին պիտի դադրի։ Շրջազգեստք՝ սովորաբար՝ գոյնզգոյն մետաքսեայ և բրդեղէն կերպասներէ և Ակնայ գործ մանուսաներէ կը կարուին. առոր վրայ ալ գօտի կը կապեն՝ որ ըստ մեծի մասին պարսկական շալեր են։ Շրջազգեստին վրայ ըստ եղանակի նոքէ, Ըէյոռն, խոխոմ, ըէբթիւ, սոմըը, ըէվլէ *) և զանազան մուշտակներ կը հագնին, որոց երեսներն են եւրոպական բրդեղէն գոյնզգոյն կերպասք՝ չուխա, գազմիր և այլն։

Զըմոռնամք ըսել, թէ 'ի հնումն կանայք փողոցի մէջ հագնելու համար չուխայէ լայն վերարկու (պինիշ) կը հագնէին, որ հետզհետէ կը դադրի և հանրածանօթ ֆէրաճէին տեղի կուտայ. իսկ գլխոյն վրայի շղարշէ քօղն (եաշմագ) կամ առոր տեղ աստւեայ զանազան գոյներով եւրոպական պըրչէմ և այլն կը շարունակէ։ Գիտէ ամեն ոք, թէ ֆէրաճէներն ալ չուխայէ, ատլասէ և այլ զանազան կերպասէ կը կարուին։ Այժմ կան մի քանի կանայք, որ սկսած են Տիգրանակերտի և այլ տեղեաց մետաքսեայ գոյնզգոյն վերարկուներն (չարսաֆ) գործածել. անով կը փաթթուին և մինչև իսկ ոմանք՝ այլազգաց սովորութեան համեմատ՝ սև քօղով մի երեսնին կը ծածկեն։ Այս վերջինք աննշան թիւ մը կը կազմեն։ Այժմ ծածկուելու մասին հին խստութիւնն չըկայ, և կը գտնուին տարիքնին առած կանայք, որոց համար ամօթ չըհամարուիր՝ երբ առանց ֆէրաճէի եկեղեցի երթան կամ բարեկամաց այցելեն։

## ԱՌՏՆԻՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

Ցարդ բաւական խօսած ըլլալով ընտանեկան սովորութեանց և այլ և այլ նիւթոց վրայ՝ դանք և այժմ առտնին [illegible]ղմանց վրայ խօսիլ համառօտակի։ Հայրն կամ որդիքն կը

*) Մորթենու տեսակք.

գնեն շուկայէն ցորեան, աղ, իւղ, պանիր, փայտ, ածուխ, միս, խաղող և այլ բոլոր ուտելիքն, որք 50—60 և ըստ ամանց 100 տեսակ են և որոց «զահրա լեցնել» կ՚ըսեն։ Արք ոչ միայն ուտելիքներն կը հոգան, այլ և ընտանեաց հանդերձէղէններն և կահկարասեաց ու տան նորոգութեան պէտքերն։ Վերջապէս, հայրն և որդիքն նախ պիտի գործեն, աշխատին, և ապա վերոյգրեալ պիտոյքն գնելու ձանձրոյթն ու աշխատութիւնն ալ պիտի կրեն։ Ընթերցողն թող չըզարմանայ, թէ երբ դրամը պատրաստ է՝ գնելն ի՞նչ դժուարութիւն ունի. այո, ի Կ. Պոլիս և այլ շատ քաղաքներու մէջ ուզողը կրնայ մէկ օրուան մէջ 50 տեսակ ուտելիք, ըմպելիք և այլ պիտոյք գնել. բայց աստ այնպէս չէ. ամեն բան քիչ բացառութեամբ՝ դուրսէն կուգայ և իւր ժամանակն ունի։ Ցորեանըն, պանիրն, իւղն, խաղողն և այլ շատ մի ուտելիքներն՝ յառատութեան դիւրաւ կը գնուին, բայց երբ եկածն սակաւ և գնողքն շատ են՝ նպարավաճառք և այլք կ՚սկսին քաշել քաշկռտել և կռուիլ. այս պարագայիս մէջ սովորաբար իրաւունքն զօրաւորագունին է։ Գարնանէ սկսեալ մինչ աշնան վերջերը շուկայ կը լեցունեն, և Ցխնակին Թանիրները կը գնեն ու կը դաղարին. զի արդէն ձմեռ է և ժամանակն է հրաւէրքի երթալ և հրաւիրել։ Իսկ անոնք, որ չեն կրցած գընել՝ ստիպեալ են նպարավաճառէն աւելի սուղ գնել։ Երբ ցորեան և այլն գնուի՝ տունէն ներս այրն գործ չունի այլ ևս. բոլոր հոգն տան տիկնոջն ու հարսներունն է, որք սովորաբար վեց ամսէ վեց ամիս Թանիրը կամ փուռը հաց եփել կուտան, կըչճանը կը շամփրեն, և օրական մէյմէկ երկուական կը քաղեն ու Թրջելով կուտեն։ Աղքատք ամեն օր փըռնէն կուտեն։ Կերակուր եփելն ամենօրեայ է։ Ակնայ կանայք ոչ միայն կերակուր եփելու զբաղումն ունին, այլ և ցորենն կը մաղեն, կը ծուեն, իւղն կը հալեն, պանիրն, բողիկն, խաղողի տերևն հողէ փոքր կարասներն (քիւփ) կը կոխեն. մսացու կ՚ընեն, այսինքն միսն պատառ պատառ կը կտրտեն, կըս-

կըծցնելով կ'եփեն (խաւուրմա կ'ընեն), ոչխարին ոտքերը կը չորցնեն, ճրագուն կը հալեն, փուտ միսն կէօտէն կը լեցունեն, ձմրան խաղողը, տանձը, խնձորը կը կախեն, բանջար, սախտիկ ևայլն կ'խառնկցնեն, Թառխանա կը խաշեն, օղի կը հանեն, գինի կը լեցունեն և մոմ կը Թափեն։ Նաև շապիկ, սաւան ևայլն կը լուանան, ընտանիքն կը լոգցնեն, շապիկ և այլ դիւրակար հանդերձներն կը կարեն և կը կարկատեն, անկողնոյ և բարձերու բրդերն ձաղկել կուտան, կը լուանան ու կը մաքրեն, գորգերն ու կապերտներն կը Թոթվեն, սենեակներն, սանդուղներն ու բակերն կ'աւելեն, կը սրբեն ու հողով, ջրով և աւելով կը շփեն, և մանկունքն կը դիեցունեն ու կը սնուցանեն։ Ընտանիքն առաւօտուն կանուխ անկողնէն կ'ելնեն. այր և կին, ամեն մարդ իւր պաշտօնին կը հետևի. արհեստաւորներէն ոմանք եկեղեցի հանդիպելով և ոմանք ուղղակի իրենց գործին կ'երԹան։ Սովորաբար յետ աւարտման եկեղեցւոյ կը ճաշեն, և երեկոյին 'ի ժամ 11—12ին (եւրոպական 5—6 ժամին) կ'ընԹրեն. ծանր աշխատուԹիւն ունեցողք առաւօտուն նախաճաշ մ'ալ կ'ընեն։

Հին ատեններէ 'ի վեր աղքատիկ գաւուց կանանց մէկ մասն բամպակ մանելու արհեստն կամ զբաղումն ունին. այն է՝ 1 օխայ բամպակ գնել և մանել, կաժ կաժ փաԹԹել, և մանածն բամպակ փոխողին տանելով բամպակի փոխանակել 1-ին $1^1/_2$, $1^3/_4$ և 2, մանածի լաւուԹեան, բարակուԹեան և բամպակի գնոյն համեմատուԹեամբ։ Բամպակը տուն կը տանին կու հըլլին (զատել), կ'եղնին (աղեղնել), նորէն կը մանեն, նորէն կը փոխեն և կը շարունակեն. այսպէս մանածը կ'աւելնայ, կտաւ գործել կուտան, տան պիտոյից և շապիկի կը գործածեն կամ մանածը կը ծախեն։ Հայ և Թուրք բազմաԹիւ կանայք կը մանեն, որն 'ի բուն կ'աշխատին և իրենց շահածն է օրական չոր հացի գին մը։ Մանող կինն յարգի է եղեր. ինչպէս կ'ըսէ առածն «Մանէ, մանէ ման խաԹուն. մանը կ'անէ քեզ խաԹուն». և Թէ «Այն կնիկը ուր օր ճնճ-

ղիկ մի մնած չի մներ՝ կնիկ չէ»։ Հին տեններն հաշխուըրած են եղեր, որ մանողի մը օրականն ընգոյզի մը կուգայ… Այսպէս, ժողովրդեան ստուար մեծամասնութիւնն՝ գործաւոր թէ արհեստաւոր, սեղանաւոր կամ վաճառական՝ բոլորն ալ կ'աշխատին. կ'ուզեն վաստակիլ ու վատոկել, բայց սակաւք են որ կը շահին ու կը յառաջդիմեն։ Ակնայ Հայն խնայող է. եթէ չունի Կ. Պոլիս կամ այլ քաղաքի մէջ սկսուած գործ մը և ատ կրնայ ապրիլ՝ չուզեր բաժնուիլ իւր հայրենիքէն, ուր ընտանեաց մէջ սէր կայ, գորով կայ, տան և կերակրոց մէջ մաքրութիւն կայ, և ազգականաց մէջ ցաւակցութիւն ու օգնութիւն կայ։

---

## ԳԼ. Դ.

### ՀԱՆՐԱՑԻՆ ԲԱՐՈՅԱԿԱՆՆ

Թէպէտ մինչև ցարդ գրուած վիճակագրութիւններէն և սովորութիւններէն կրնայ հասկցուիլ Ակնայ Հայոց բարոյականն՝ բայց իբրև կարևոր խնդիր՝ հարկ համարեցայ քանի մը տեղեկութիւնք ևս տալ։

Ինչպէս սովորութիւններն, նոյնպէս և բարոյականն ժողովրդեան նիւթական և քաղաքական վիճակին, մտաւորական կրթութեան և կրօնական համոզմանց համեմատ, կարճ կամ երկար ժամանակի մը մէջ կը փոխուի, կը լաւանայ կամ կը վատթարանայ։ Ի՞նչպէս և ի՞նչ աստիճանի էր մեր պապերուն բարոյականն. և, համեմատաբար, 'ի լաւն կը դիմենք թէ 'ի յոռին։ Առ այս, մասն Ա. Գլ. Ե. յիշուած ուսումն. խորհրդոյ կողմանէ պատրաստեալ տեղեկագրոյն մէջ, «Բարոյականն առաւել 'ի լաւ անդր կը միտի» խօսքն 'ի մէջ կը բերեմք։ Ճշմարիտ է այդ թէ ոչ։ Ըստ իս, արդարև, մեր պապերու օրով եղած մոլութիւններէն մի քանին տկարացած կամ օր ըստ օրէ տկարանալու վրայ են. բայց ժամանակին բեր-

մամբ այլ մոլութիւնք յառաջ եկած են. զոր., եթէ մեր պապերը աւելի գինեմոլութիւն և սնապաշտութիւններ ունէին և նոր սերունդն ալ համեմատաբար բարեկիրթ և զերծ են այս մոլութիւններէն՝ ընդհակառակն, նորերն ալ նուազ անկեղծ, նուազ բարեմիտ և նուազ սակաւապէտ են քան զնախնիս: Եթէ հիները ընտանեկան յարաբերութեանց մէջ իբրև բռնաւոր կը մեղադրուին՝ նորերն ալ տակաւ մոռանալով իրենց պարտաւորութիւնն առ ծնողսն և առ ծերունիս՝ նուազ ակնածանօք և նուազ յարգանօք կը վարուին: Եթէ հիները կը մեղադրուին կրթական գործին աւելի հոգ չը տանելուն համար՝ նորերն աւելի ևս մեղադրելի են, որ ուսման կարևորութիւնը ընդունելով հանդերձ՝ չեն աշխատիր այս կենսական խնդրոյն համար. մինչդեռ հիները ոչ այնչափ պէտք կ'զգային և ոչ ժամանակն կը մղէր առ այն: Եթէ հիները սակաւ ինչ կրօնամոլ կը համարուէին՝ նորերն թողլով բարեպաշտութիւնն՝ գոգցես ոչ ինչ դրած են անոր տեղ: Իսկ այժմ, ծերերն՝ աւելի բարեպաշտ՝ կը յաճախեն յեկեղեցի, կը յիշեն, կը գովեն անցեալ ժամանակներն, բայց անկարող կը գտնուին հին գաղափարաց համեմատ գործել: Երիտասարդութիւնն՝ 5—10 տարիէ 'ի վեր տակաւ կը դադրի գործելէ. թէև կան հարուստ և ազդեցիկ երիտասարդներ՝ բայց, սոքա, բացառութիւնքն յարգելով՝ ժամանակիս պահանջման համեմատ ուսումն ու կրթութիւն ստացած չեն. հետևապէս ոմանք անտարբեր են և ոմանք խաւարամիտ գաղափարներով տոգորեալ:

Գալով կանանց՝ սոքա, ընդհանուր առմամբ՝ համոզուելով թէ հարսն սկեսրոջ սպասուհին կամ գերին չէ, մեղմացուցին բռնութեան շղթայներն: Հարսն այլ ևս լեղապատառ չլինիր, երբ կեսուրը բարկանայ: Սոքա բաց 'ի ինչ ինչ սնապաշտական գաղափարներէ, զորս 'իբաց թողուլ կը թուին ունին դարձեալ կրօնասիրութիւն ու բարեպաշտական զգա-

ցուցմ։ Ի հնումն կը գտնուէին մի քանի կանայք որ փոքր 'ի շատէ կարդալ գրել գիտէին. օրիորդաց վարժարանն և կանոնաւոր կրթութիւնն դեռ քանի տարի է որ սկսաւ։

Զմոռնամք ազգայնոց՝ ազգային և քաղաքային կենաց և ինչ ինչ գաղափարաց վերայ ևս խօսիլ։ Իգական սեռին համար, ազգասիրութիւնը կրօնասիրութեան մէջ կամփոփի, և կզերին անձնաւորութիւնն անքննապատելի կը համարուի։ Արանց մէկ մասն ալ թէ և մեծ յարգանօք կը վարուի, բայց երբեմն քննադատութենէ ևս չխորշեր։ Մեծատունք թէև նախնեաց ազգային արժանապատուութեան զգացումէն ժառանգած են մաս մի, բայց երբ ազգ. ներքին խնդիր մը ծագի, կիրքերն ու եսականութիւնք երևան կ'ելնեն։ Առաջնորդ, ժողով և այն ամեն անձնաւորութիւնք և գործ, որ թէ և օգտակար, բայց որովհետև իւր կարծեաց և զգացման հակառակ է, վնասակար կը համարուի. պէտք է տապալել, կործանել։ Էֆէնտին, աղան չուզեր, ինքն ալ չուզեր. աղան ինչ որ ըսէ իրաւունք ունի. այն է լաւն։ Թէ ինչու ժողովուրդը այս ասպիճան կը հետևի. անոր համար, թէ երբ պարագլուխն հանրային խնդիր մը կը յուզէ, շարժառիթն կամ նպատակն բարի ըլլայ թէ չար, ազգային և ժողովրդական իրաւանց պաշտպանութիւն կը քարոզէ, ժողովրդէն ալ ոմանք համոզուելով և ոմանք իրենց շահուն համար կը հետևին նմա։ Զի նա է որ 'ի հարկին փոխ կուտայ, կը շահեցունէ և իրաւունքն կը պաշտպանէ։ Այսպէս, ժողովուրդն իւր շահուն համար բարոյապէս կաշկանդեալ, և չունենալով յստակ գաղափարներ, ինչ որ կը ներշնչուի, զայն կը խօսի և այն կարծեաց կը հետևի։ Թողումք բացարձակ կեղծաւորներն որ հացի համար կը շոյեն, կը շողոքորթեն հարուստին թիւր կարծիքներն։ Թողումք և կարգ մ'անձանց այն գաղափարն որով ամեն օգնութիւն, շնորհ, աշխատութիւն ու զոհողութիւն հարուստներէն, մեծատուններէն և ազգային ու քաղաքային վարչութեններէն կ'ակնկալեն, առանց սակայն զիրենք ևս պարտաւոր ճանչնալու՝ ըստ կարո-

ղութեան՝ աղքատին օգնելու, հանրային բարեկարգութեան և յառաջադիմութեան աշխատելու և ծախուց մասնակցելու։ Թողումք զայսոսիք և խօսիմք այլ թերութեան մը վերայ որ դժբաղդաբար՝ հազիւ թէ աննշան բացառութիւն մ'ունի։ Այս մեծ թերութիւն՝ ազգասիրական և հայրենասիրական զգացմանց սահմանափակ և կարի անձուկ վիճակն է, որոյ անունն՝ փոխանակ ազգասիրութեան՝ պէտք է ըսել անձնասիրութիւն։ Գրեթէ բոլորն ալ՝ ազգային հանրային մեծ շահէ մ'աւելի կը սիրեն Ակնայ վերաբերեալ մասնաւոր շահ մը, և աստիճանաբար, Ակնայ մէջ՝ քաղաքինն գիւղերուն, և իւրեանց թաղին մէկ փոքրիկ շահն տարբեր թաղի մը մեծագոյն շահուն կը նախադասեն։ Ի մի բան, համերաշխութեան ոգին կը պակսի։

Ակնայ Հայոց մէջ չկան մարդասպանութիւն և աւազակութիւն ընողներ, և ծանօթ գողերն՝ որոց թիւն 2—3 հատէն աւելի չէ, այժմ կը քաշեն իւրեանց յանցանքն։ Ի մեզ՝ կարի նուազ է քաջասիրտ և զինավարժ անձանց թիւն ալ։ Ապրուստի նեղութիւն, երկիւղ, յոռի կրթութիւն և զանազան պատճառք՝ տկար կազմութիւն և տկար սրտեր յառաջ բերած են։ Կան 'ի վերին թաղն բաւական թւով քաջասիրտ և կորովի անձինք. կը գտնուին և վարի թաղին ու շրջակայ գիւղօրէից մէջ ևս արիասիրտ մարդիկ, բայց թոյլ և երկչոտ անձանց թիւն ալ նուազ չէ։ Քարբերդցի Մեծ. Յովհաննէս Ներսէսեան որ քանի տարի յառաջ, 'ի լրագիրս «ուղևոր» ծածկանուամբ ծանօթ է, երբ 2—3 տարի յառաջ (ըստ յայտարարութեան 5-րդ կամ 6-րդ անգամն) յԱկն ևս այցելեց, «Ակնայ մէջ երիտասարդներ չկան, ծերացեր են», կ'ըսէր ու կը ցաւէր տեսնելով, որ մարած է երիտասարդական եռանդն ու աշխոյժն

Սակաւ մ'ալ գրեմք արհեստաւորաց ու մեծ և փոքր առևտրականաց վրայ։ Շատեր կան որ յաճախորդը համոզելու համար ստախօսութիւնը ներելի կը համարեն։ Կան ալ որ աննշան և խարդախեալ ապրանք մը քշելու կամ լաւն սովորականէն բարձր գնով մը վաճառելու, խաբելու համար՝ ոչ

միայն երկրին․ խօսքեր ու զանազան սուտեր կը խօսին այլ և սուտ երդմամբ հաստատել կը ջանան։ Թողումք մանր ու մունկր նենգութիւններ ընողներն ու յաճախորդին ապրանքին խորողներն։ Առևտրականաց սոյն վիճակ ինչպէս լսած եմք, շրջակայ գաւառաց և ըստ ոմանց բազում գաւառաց մէջ ևս գրեթէ նոյնն են դժբաղդաբար։

Բայց, վերջապէս, Ակնայ Հայն եթէ ունի թերութիւններ, ունի և ազգային արժանապատուութեան զգացումն, եկեղեցեաց, վարժարանաց, աղքատաց և այլ ազգային գործոց ըստ կարի հոգածութիւն. ունի համեստութիւն, ընտանեկան սէր ու բարեկրթութիւն, և որովք կրնայ մի քանի գաւառաց ազգայնոց ևս բարի օրինակ հանդիսանալ։

## ԳԼՈՒԽ Ե.

### ՄՆԱՊԱՇՏԱԿԱՆ

1. Վեց-հազարեակ և դևք. 2. Համայիլք. 3. Աչեկնաք. 4. Ալք. 5. Գուշակութիւնք. 6. Նազար. 7. Նուէրք. 8. Կապք.

---

Ինչպէս ամեն ազգ կամ երկրի մը ժողովուրդ իրենց սնապաշտութիւնքն ունեցած են՝ Ակնայ Հայք ևս ազատ չեն նոյն սխալ կարծիքներէն։

1) Վեցհազարեակ և դևք։

Հին ատեններն Ակնայ Հայք յաճախ կը խօսէին Վեց-հազարեակի վրայ, որ գրեթէ հիմն կը համարուէր կախարդական գիտութեանց։ Երբեմն կ՚ըսէին. «Այսինչ անձն Վեցհազարեա կարդալով կարդալով խենթեցած է»։ Այն գիրքը կարդացողը կ՚առանձնանայ սենեակ մը և այսչափ օր կ՚ընթեռնու եղեր. եթէ կրցաւ անշփոթ բոլոր գիտութիւնն ուսանիլ՝ այնուհետև ամեն բան կը գուշակէ, կը գիտնայ, իսկ եթէ ոչ՝ խելացնոր կը լինի։ Հայք, կարծեմ, յայլոց առնլով կը կարծեն, թէ այն կախարդական գիրքն կամ ուսումն երկու տեսակ է.

մին աստուածային և միւսն սատանայական։ Եթէ մէկն յաջողի 'ի գլուխ հանել առաջինն՝ միշտ 'ի բարին կը գործածէ իւր գիտութիւնն. իսկ եթէ սատանայականն ուսած է՝ ուզած կինն կը բերէ, ուզած անձն կը կապէ և այլն։ Բայց ինչ է պատճառն, որ այդ անձն կրնայ դիւթել, կրնայ կապել, կրնայ արձակել, և իբրև թէ ամենագէտ կը լինի. կը պատասխանեն թէ «Որովհետև Վեց-հազարեակն դեւերու բնութեանց և գաղտնեաց ուսումն է՝ զայն կարդացողն կը ծանօթանայ դիւաց, որք կը հնազանդին նմա։ Երբ կոչէ՝ կուգան, երբ տեղ մ'ուղարկէ՝ կ'երթան, եթէ գաղտնիք մը հարցունէ՝ կը յայտնեն. ոսկի, արծաթ, կին, ինչ ուզէ՝ կը բերեն. վերջապէս, միշտ կը ծառայեն նմա»։ Ահա այսքան զօրութիւն կը վերագրուի Վեցհազարեակին և զայն ուսանելու բաղդն ունեցողներու՝ որոց թիւը և ըստ այնմ ժողովրդեան այս կարծիք, շնորհիւ լուսաւորութեան, նուազած և դադրելու վրայ է։

2) Համայիլ, Յուռութք կամ Նուսխա։

Համայիլն ի Հայս հաւանական է թէ զանազան հիւանդութեանց համար ևս գործածուի, բայց յԱկն՝ մասնաւորապէս, ծննդաբեր կանանց համար օգտակար կը համարին, ազատ մնալու համար «Ալ»-էն, զորմէ պիտի գրեմ, 'ի ստորև։ Համայիլներն կարելի է որ բազմազան լինին, բայց հաւանականաբար նպատակն նոյն է, այսինքն նման Ալքէ, չար դեւերէ և արկածներէ զերծ մնալ, 'ի գործս յաջողութիւն ստանալ և այլն։ Համայիլ մի տեսայ, որ Քէչեան ընտանեաց կը վերաբերէր և դեռ 40 օրն չի լրացուցած ծննդաբեր կնոջ մի քով կը գտնուէր առ ժամանակեայ։ Յիշեալ համայիլն իբր վեց կանգուն երկայնութեամբ, չորս մատնաչափ լայնութեամբ ձեռագիր թուղթ մ'էր։ Ընթերցողն գաղափար մի ունենալու համար՝ յիշեալ համայիլին կարևորներն 'ի ներքոյ համառօտակի օրինակեցի։ Սկիզբն «Հաւատով խոստովանիմ» աղօթքին «Ամենախնամ»-ին վերջին երկու տողն կայ. յետոյ «Հուր կենդանի և այլն» ցվերջն գրուած է. մէջ տեղերն և վերջն պատ-

կերպներով. հաւանականաբար՝ «Հաւատով խոստովանիմ»էն սկը-սուած է, բայց յայտնի չէ թէ անկէ յառաջ ալ կա՞յ եղեր գրուած մի։ Ցետոյ «Աղօթք տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ի Խաչելութեան վասն կապանաց դիւաց. կախարդաց սատանայի. Թագաւոր հզօր ապաւէն ևայլն. զարթո զզօրութիւն քո Տէր և եկ 'ի կեցուցանել զգին արեան քո Տէր, և մի տար բնակութիւն չարին զտաճար անուանդ քում սրբոյ և մի տար զերել ոգոյ (սատանայի) զքո փրկեալքս ևայլն. չար իշխանքն խաւարին ևայլն. ցոյց մեզ տէր զողորմութիւնս քո և զփըրկութիւնս քո տուր մեզ։ Ապա մի քանի բոլորակաց մէջ պատկեր, աղօթք և բարեխօսութիւն գրելէն յետոյ, «Աղօթք գլխացաւի և աչացաւի. հբ. (72) ցաւի։ Գայր գետն յորդանան և բերէր ծառ մի գեղեցիկ և պատուական և կայր ի մէջ գետոյն խաչանման սերովբէք և քերովբէք շուրջ կային զնովաւ և բարձրաձայն աղաղակէին և ասէին սուրբ սուրբ սուրբ տէր զօրութեանց. լի են երկինք և երկիր փառօք քո, խնդրեին յԱստուծոյ վասն փրկութեան ցաւոց, ակնարկին դասակին դրուց ակին. խաժակին. մեղուշակին. գլխացաւին. և աչաց ցաւին. և սրտացաւին. և ծնկացաւին. և հբ (72) ցեղ պիղծ ցաւոց զոր ազատեալ եղիցի 'ի ծառայս յԱստուծոյ մարիամ յուղիտայ. ամեն եղիցի. եղիցի. բժշկութիւն ամենայն ցաւոց անուամբ հօր և որդւոյ և հոգւոյն սրբոյ. այժմ և միշտ յաւիտեանս յաւիտենից ամէն»։ «Բարեխօսութեամբ Աստուածածնին սուրբ Նշանացն, ևայլն. և սուրբ Խաչափայտին Քրիստոսի և աւագակին սուրբ Նշանին, Վարագայ սուրբ Նշանին, պատերազմի, երևման, հաղբատայ, Վանից, կողբայ, արդինայ, սերեխայ, մարաւ, գանձասարայ, Թուխ մանկանն, սուրբ գեղարդի, տունկալ, գռուռօ, գետարդելայ, սքանչելագործ, ապարանից, կարմրակի, ծիծեռի, աղթամարի, սահանա, կիպրադիմայ, եսուվանէ, կոստանդիանոսի, տապանակի, (ատոնց ամենուն առաջին ալ «սուրբ Նշ.» գրուած էր)։ Վրաց հոռմոց սուրբ Նշանին և ամենայն սուրբ Նշանաց բարեխօսու-

թեւամբն պահեա զծառայս քո յուղիտայ (կամ այս ինչ)»։ Ցեւտոյ հրեշտակի պատկեր մը սուր ի ձեռին, որոյ ներքեւ կը գրէ. «Աղօթք հրեշտակաց վասն պահպանութեան. Գաբրիէլ և Միքայէլ. ռափայէլ. տակուէլ. աթանիէլ. բայիէլ. փանուէլ. սուքիէլ. սաղաթիէլ. ուրիէլ. աննաէլ, և ամենայն հրեշտակք, որ ունիք իշխանութիւն 'ի վերայ ամենայն ցեղ որի որ չորանայ և փայտ դառնա 'ի դիմաց ծառային յաստուծոյ.... ամէն։ Այս են անուանք հրեշտակաց Գաբրիէլ սարագմիէլ ուրիէլ գանձիէլ սեղրաք միսաք միսայէլ. եզեկիէլ. գանձիեա. սարմիա. յուրիէլ. տածիէլ, ուր այս անուանքս լինայ ոչ մերձանա կապք և կախարդութիւնք ընդ դէմ ծառային (յուղիտայ) ամէն։ Աղօթք վասն ճանապարհորդաց. ուղիղ. կենդանամայէլ, կենդանամայէլ, որ էք սպասաւորք յԱստուծոյ դուք ճանապարհորդակից լերուք ծառայիս Աստուծոյ յուղիտայ և խաղաղութեամբ տարէք զտեղի իւր և բարի վաճառ արարէք սմա անուն հօր եւայլն ամէն։ Աղօթք չար աչից և չար լեզուի կապքի. Հրանիւթ հրափայլ, հրատն համակէզ որ էք սպասաւորք յԱստուծոյ, դուք կապեցէք և պապանձեցուցէք, զամենայն չար ակն և չար լեզուն, և չար խորհուրդքն և կախարդութիւնքն չքանի և հալածի, կապ ընդդէմ ծառային, յուղիտայ ամէն. Չար աչքն ի փուշ, փուշն ի կրակն, կրակն 'ի քարն. քարն 'ի յանատակ ծովն եղից եղիցի ընդդէմ ծառայինս»։ Ցեւտոյ ս. Գ. կամ ս. զօրավարին պատկերն և 'ի ներքոյ աղօթք մի ս. զօրավարաց. (տառմեանց և սուքիասեանց և խարիթեանց եւայլն) ս. Թագաւորաց եւայլն։ Ցեւտոյ սրբոյ պատկեր մը, որոյ ձեռքը սուր մի կայ, և հանդէպ սորա կայ պատկեր մի սեաւ կապկի նմանութեամբ և կանգուն, որոյ գլխոյն ձեւն մարդոյ կը նմանի բայց եղջերաւոր է, և 'ի ներքոյ սորա գրեալ է. «Կապք թպղի և ալքի վասն տղացկանի. սուրբն սիսի և սուրբն սինիանէ գնացին յանապատ [illegible] և հանդիպեալ եղեն ալքն չար, և ունէր 'ի ձեռին [illegible] սիրտ մարդոյ. բռնեցին զալքն հարցին նմա թէ զի՞չ է

այդ 'ի ձեռիդ զինչ գործեցեր ով չար. Եւ ալքն ասէ այս է սիրտ տղացկանի յորժամ ծնանի զկինն զերեխայն և մեք շրջիմք ընդ յայնմը մինչ պարապեալ գտանիմ ոչ գոյ ի նմա մարդ և գտանեմք զնա յուռնայն յառաջ առնեմ զխելքն և յուշն և լսել տայցեմք նմա զձայն սահանաց և մտանեմ զիրատն գողանամք. և տանիմ լուանամ զջուրն և բերիմք 'ի տղայոց կերակուր։ Յայնժամ բարկացեալ սուրբն հանեալ ըզ-սուրն, և կամէր սպանանել զնա և նա աղաչեաց և ասէ ով սուրբդ յԱստուծոյ աղաչեմք զձեզ մի՛ սպանաներ զիս երդու-նում ի յանուանս ձեր այսուհետև յոր տեղ ձեր անուանքն գրած լինի կամ՝ յիշուի ոչ մերձենամք 'ի յայնմը տեղւոջ ես տառաւել ծառային յաստուծոյ յուղիտային ամէն։

«Թվին ՌՃԽԴ (1695) ի ձեռամբ մեղապարտ Գրիգորի Ճկարեցի. որք ինձ ասէք ողորմի Քրիստոս իւրեան ողորմի ամէն»։ Ցընթացս գրուածոյն՝ Յուղիտայ անուն մի կայ յա-ճախ գրուած. ուրեք ուրեք անուան տեղ պարապ թողու-լէն կը հետևի, թէ այս համայլին հեղինակ կամ հետևոր-քը կը գնեն կը պատրաստեն, և երբ գտնեն որս մի՝ կ՚ստա-նան արծաթն, անունն կը գրեն համայլին մէջ և կը յանձ-նեն. հաւանականաբար այս կարգէն է նաև «Յուղիտայ» ա-նուն կինն։ Մեր դիտողութիւնքն 'ի վերջն թողլով շա-րունակեմք։

Համայիլ մ'ալ Օ. աղա Սէմէրճեանի քով տեսայ տպագը-րեալ. Թուական ՌՃՀԴ (1725) վերոյ գրեալ համայլին ձեւովն է. միայն աղօթքներն ուրեք ուրեք փոփոխութիւն կրած են և մի քանի աւետարան և աղօթք յաւելուած ունի։ Հետեւեալ երկու գրուածն հարկ համարեցի արտագրել... «Աղօթք կապա-նաց դիւաց». Սողոմոն իմաստուն ետես զիշխանն դիւաց խա-ւարի, գոռայր իբրև զամպ. ճչէր որպէս զվիշապն։ Ասէ Սո-ղոմոն, ով պիղծ և անիծեալ զինչ ես դու. ասէ դևն ես եմ իշխան դիւաց, և մայր ամենայն չարեաց և մեղաց. ես եմ

որ առէլութիւն աճեմ ի մէջ եղբարցն աճեմ վէճ և կռիւ և խռովութիւն. և պոռնկութիւն մտանեմ ի սիրտ մարդկան, և երբեմն սերմանեմ զչար ցանկութիւնն։ Աւէ Սողոմոն բարձրացիր որ ես տեսանեմ, և բարձրացաւ քան զլեառն և կամէր անկանել ի վերայ նորա։ Աւէ Սողոմոն փոքրկացիր, և փոքրկացաւ քան զհատն մանանխոյ, և Սողոմոն կալաւ զնա և եդ ի յաջ մատանին. և մաս մի ի տախտակացն սինեայի եդ ի վերայ ական մատանւոյն։ Այլ և Նոյի տապանակաւն, և յակոբայ սանդխտաւն, և ահարօնի գաւազանաւն և կոնոսի աղօթիւքն, հալածեալ և խափանեալ եղիցի ամենայն չար դևքն. և այլն. ի ծառայէս Աստուծոյ..»։ Յետոյ՝ «Աղօթք վասն ծննդեան» և այլն։ Ձեռագրի յիշեալ պատկերին նմանութեամբ պատկերի մը վրան «Աղօթք թպղայի և ալի։ Սուրբն Սիոն տուրբն սիսի և սուրբն սիսիանէ և սուրբն նօվիէլ և սուրբն տազիէլ հրեշտակ. հրամանաւն Քրիստոսի յորս էին ելեալ և առին զձայն երեխային, գնացին և տեսին զալն ի չարութեան, բռնեցին և կապեցին զալն ի յալին վէմն, եկեալ մայրն ալին և ասէ ինչ իցէ այս։ Ասացին այս ինչ է, որ մտանէք ի մօրն յորովայն. զերեխային զմիսն ուտէք, զարիւնն խմէք. զլոյս աչացն խաւար դարձուցանէք. ասէ մայրն ալին. թողէք որդին իմ. որ տուն որ ձեր անուանքն յիշեն, անդ ոչ մերձենամք, ի ծառայն Աստուծոյ... յանուն հօր և որդւոյ և հոգւոյն սրբոյ. և այլն»։ «Աղօթք վասն վաճառի և ամենայն բանի։ Յայնժամ բացան երկինք և ելին հրեշտակք. և ունէին բանալիք, ԿԶ. (66) հրամայեաց տէրն մեր յիսուս քրիստոս, և ասէ. ուր երթայք. պատասխանի ետուն հրեշտակքն և ասեն, երթամք տէր մտանեմք ի տուն ծառային քո, զդուռն բարւոյ բանամք. զդուռն ողորմութեան և վաճառի. հրամայեաց տէրն մեր յիսուս քրիստոս և ասէ գնացէք, և ես օգնական լինիմ ծառայիս իմոյ... յորժամ կանգնի առաջի դատաւորաց և թագաւորաց և ընկերաց, քան զնուշն... քան զշաքարն քաղցր քան զջուրն խոնարհ... պայծառ... և պատուօք.

*է ամէնս (Թղթին քովէն կտոր մի ինկած է)․ յետոյ, կարծեմ, առ գործածողն գրուած՝ քանի մը տող ոտանաւոր բարեմաղթութիւնք և յետոյ աւարտեցաւ հէմայիլս ի Թուին Հայոց ՌՃՀԴ։*

*Յուռութքն (Նուսխա) հաւանականաբար ի Հայոց ոմանք եւս կը գործածեն։ Նուսխային մէջ աղօթք կամ սրբոց անուանք, երբեմն ալ նշանագրեր կը գրուին և ծալլելով կուտան գործածողին, որ եռանկիւնի լաթի մը կամ թիթեղեայ և կամ արծաթեայ պահարանի մը գլանի մէջ կը դնէ և արծաթեայ բարակ շղթայով մի կամ պարզ թելով մի պարանոցէն ՚ի կուրծս կը կախէ կամ թևին վերի կողմը կը կապէ, որով կը յուսայ իւր ախտէն բուժիլ, կամ թշնամւոյն յարձակումներէն և վնասներէն միանգամայն և կախարդութիւններէ զերծ մնալ․ կարծեմ կան մինչև իսկ հաւատացողք, թէ երբ մէկը այս ինչ անձին նուսխէն ունենայ իւր վրան՝ ոչ թշնամւոյն հրացանի գնտակն և ոչ դաշոյնն չթափանցեր մարմնոյն։*

*Չըմոռնամք նաև աստ յիշել այն կնիքն՝ զոր տեսայ Ապուչեխի Զարաղ Թաղէն հայու մի քով․ որոյ օրինակն է ի ներքոյ։ Զարաղցին տան աւերակ մի պեղուած ժամանակ գըտած է և չգիտեմ ինչ հիւանդութեան համար կնիքն կը գործածուի եղեր։*



*Սոյն կնքոյն գրերը կամ նշանագրերը ինչ կը նշանակեն և ուղիղ կողմն որ կողմնէ չգիտեմ․ միայն 84-ին, Գեր․ Սրուանձտեան երբ աստ էր, ըսաւ թէ «Սողոմոնի մեօհիւր» կ՚ըսեն։*

## 3. ԱՂԵԿՆԱՔ ԿԱՄ ՅԱՒԵՐԺԱՀԱՐՍՈՒՆՔ *)

*Աներեւոյթ արարածք, սովորաբար ՚ի կերպարանս կնոջ՝ ՚ի հնումն շատ տուներու մէջ կը գտնուէին եղեր։ Ասոնք երբեմն խմբովին կամ միայնակ մարդոց երեւան կ'ելնեն, կը խօսին. Թմբուկ (տէֆ) կը նուագեն, կը խաղան և կը պարեն եղեր։ Աղեկնաքք՝ զոր կը ստուգաբանեն «մեզմէ աղէկները», սովորաբար կանանց կ'երեւան։ Կը պատմեն, թէ այս ինչ կինըն գիշերն տանն մէջ շրջած կամ քնացած ժամանակն, արթըննալով կամ աղեկնաքներն արթնցնելով՝ կը տանեն աղեկնաց հանդիսի մը, ուր մանկամարդ հարսունք կ'երգեն, կը պարեն, երբեմն նորեկն ՚ի պարն կ'առնուն։ Կանայք երբեմն կը տեսնեն որ իրենց սնտուկէն ծանր շապիկ մը կամ պարեգօտ մի աներեւոյթ եղած է, կը հասկնան, որ աղեկնաքք տարած են տղացկան աղեկնաքի մը համար։ Քանի օր վերջը կը բերեն շապիկը, որ աղտոտած է. լոհ մը (կտոր) օճառ դնելու է քովը, զոր աղեկնաքքն տանելով ընդ շապկին՝ կը մաքրեն, և մաքրեալ շապիկն դարձեալ կը բերեն սնտուկն կը դնեն եղեր։ Այս ինչ տանն կանայք երբեմն երեք օր երեք գիշեր մոմ թափեր են աղեկնաց տուրքէն, երբ տեսեր են, թէ պտուկին ճիրագուն չի հատնիր՝ ամաններ, դաշուններ բերելով իւղն հոն քաշեր են։ Յիշեալ տանն կանայք, իրենց սնտուկներուն վրայ, Սուլթան Մահմուտի 5-նոց և 6-նոց դրամէն դէզադէզ շարուած կը տեսնեն եղեր. կը վերցնեն դրամները և հետևեալ օրն կը տեսնեն որ դարձեալ շարուած է։ Մէկը հաց կ'եփէ, կը տեսնէ որ տունն հացով կը լեցուի և խմորն չսպառիր։ Այսպէս, աղեկնաքք զանազան բարիք կը ընեն եղեր մարդոց. պէտք է գիտնալ, թէ ո և իցէ պարագայի մէջ, երբ աղեկնաքն շնորհ մ'ընէ, պէտք չէ բնաւ մարդու ասել, զի շատ մարդիկ երբ շնորհք մը վայելած են և [illegible]ու մը յայտնած են՝ անմիջապէս նոյն շնորհն դադրած և*

*) Տաճ. փէրի.

մինչև իսկ շնորհեալ դրամն ալ եա առնուած է եղեր։ Կ՚ըսուէր թէ աղեկնաքները այս ինչ անձին ձիուն գլխուն մազերը կը հիւսեն գիշերայն. տէրը կամ ծառայն կը քակէ, և հետևեալ գիշերն դարձեալ կը հիւսեն, և քանիցս կրկնելէն վերջըն կը դադրին։ Կ՚ըսեն թէ զարդիս ևս ձիու մազերն երբեմն կը հիւսուին։ Աղեկնաքները չեն բռնուիր, բայց եթէ մէկը յաջողի անոնց միոյն կրնակը կամ ձեռք չըհասած կամ չըգիտցած տեղ մը ասեղ մի շուլլել (կարել), չը կրնար փախչիլ, և ասեղն շուլլողն ինչ որ ուզէ անկէց՝ կը բերեն ուրիշ կնկան մը սնտուկէն։ Աղեկնաքները անմեղաս են, բայց երբեմն «չար» կուտան։ Երբ մէկն աղեկնաքի մանկան վրայ կոխէ, որ աներևոյթ լինելով չէր կրնար տեսնել՝ մայր-աղեկնաքն «չար» կըտայ կոխող անձին, որոյ ծնօտն կամ այլ անդամն կը ծռի, խեղանդամ կ՚ըլլայ. կամ կոխող անձն եթէ որրանին մէջ երեխայ մի ունի՝ աղեկնաքն 'ի վրէժխնդրութիւն՝ նոյն հասակաւ աղեկնաքի տղեկ երախայ մի դնելով նորա տեղ, կը փոխէ մարդածնին հետ. կամ նոյն իսկ կոխողն կը հիւանդանայ։ Չար տրուած անձին՝ «հանտերքի է ըռաստ եկեր» կ՚ըսեն։ Դարմանն՝ «սև պարան պտտցնելն ևայլն» պիտի գրեմ ըստ կարգին։ Խեղանդամն կ՚ապաքինի, բայց փոխուածն չեն բերեր այլ ևս։ Աղեկնաց չարէն զերծ մնալու համար, պէտք է—մանաւանդ գիշերն—սննկաց կամ այլ դրան սեմէն անցած ժամանակ Երրորդութիւնն յիշել և երեսն խաչակնքել։ Աղեկնաքները գիշերայն աներևութապէս քար ալ կ՚արձակեն մարդուն։ Կը պատմուի, թէ այն ինչ անձն գիշերը այն ինչ տեղէն անցած ժամանակն ճանապարհին վրայէ կամ ուրիշ կողմէն քարեր տեղացուցած են. փախած ազատած է։ Քարկոծումն սովորաբար աշնան վերջերն խէզէլ թափին կը պատահի։ Կ՚ըսեն թէ աղեկնաց սկզբնաւորութիւնն յայտնի չէ։ Թէ 'ի հնումն և թէ այժմ կան. պարզամիտ անձինքն կը սիրեն և անոնց միայն կ՚երևան և զանազան շնորհ կ՚ընեն. կ՚ըսեն նաև, թէ այժմ մարդիկ աւելի սատանայացած լինելով, աղեկնաքները չեն երևիր եղեր այլ ևս։

## 4. ԱԼ ԿԱՄ ԱԼՔ. ՆԱԵՒ ԽԸԴԸԼԻԿ ԵՒ ՔԷԴԷ

*«Ալ» *) կ'ըսեն այն երեւակայական ճիւաղին, զոր երբեմըն տեսած են 'ի կերպարանս մարդոյ։ Ալն ծննդաբեր կանանց, զոր տղայկան կը կոչեն՝ թշնամի կը համարուի. երբ տղայկանն մինակ թողուի՝ կուգայ և սիրտը (ճիյէր) փորէն կը հանէ և կը մահացունէ։ Անգամ մի վերի թաղն Քէչեաններէն քաջասիրտ անձ մի, 'ի լեառն, Ալին հանդիպելով, որոյ ձեռքը տղայկանի սիրտ մի կայ եղեր՝ մարտնչած է հետն, և Ալն խոստացած է բնաւ Քէչեանի տունն ոտք չկոխել. և եթէ տղայկանի մի տունն Քէչեանի տնէն գիրք, բեհռ, մկրատ կամ այլ իր մը գտնուի՝ այն տունն չիմտնել: Ուստի այս աւանդութեան համեմատ, այժմ իսկ Քէչեանց տունէն գիրք եւայլն տանելով ծննդաբերին անկողնոյ և բարձին ներքև կը դնեն կամ տղայկանն իւր վրայ կը պահէ մինչև 40 օր. զի վտանգն 40 օրուան մէջ է եղեր։ Սոյն կարծիքն «համայիլ»ներուն մէջ գրուածին նմանն է գրէթէ. սա տարբերութեամբ, որ անծանօթ «սուրբն Սիսի»ին ու Սիսիանէ»ին վերոգրեալ դերն՝ աստ Քէչեաններու նախահարց միոյն տուած է։ Գալով ժողովրդեան, թէ և չհաւատայ այլևս Ալին և համայիլին՝ սակայն սնապաշտութեան դարաւոր սովորութեանց ու գաղափարաց տպաւորութեանց ներքև, չուզեր բոլորովին հակառակիլ այս զգուշական արարողութեանց խորհելով, թէ կրնայէն, մկրատն և այլն եթէ օգուտ մի չունենայ տղայկանին՝ գէթ վնաս մ'ալ չունի։*

*Կայ նաև խըդըլիկ անունով երեւակայական էակ մի, որ անվնաս է։ Ասիկայ երբեմն գիշերայն մարդոց ձեռներն 'ի կար-*

---

*) Գաղտաստար պատուելոյ պարսկահայ բառարանին մէջ. Ալ կամ Ալք—ուխթօրեայ սաստակիչ տենդ որդեծին կանանց։ Կ'երևի թէ Նախնիք այս տենդն չար էակ մի ճանչցած են։

մէր կամ ի գետին կը ներկէ. կ՚ըսեն թէ երբեմն խըպըլիկը այնպէս կը ծանրանայ վերմակին վրայ, որ մարդ կը կարծէ թէ պիտի խեղդուի։

Կայ նաև «քէպիս»-ի հիւանդութիւն մը, զոր ունեցող կանանց զաւակունք սովորաբար 1—2 կամ 10, երբեմն մինչ 20 տարեկան՝ կը մեռնին, և կ՚ըսուի թէ «այս ինչն քէպէ ունի». տղան կը խեղդէ։ Ի դարման՝ այն տղեկին ծնողք կամ ազգականքն 40 տունէ 40 տեսակ կերպասի կտորներ կը ժողվեն, պարեգօտ կը կարեն, կը հագցունեն. ոմանք ալ աւագ ուրբաթ օրն անարեկացաթ՝ կնիկ մը ճամբայ կը հանեն, որ պարտի առանց խօսելու 7 կամ 40 տունէ մէյմէկ պատառ արծաթ ժողվել, զոր օղակ մի շինելով քէպէ ունեցող կնոջ թևը կ՚անցունեն։ Քէպէ անունով բրդէ տեսակ մը կապերտ՝ քէպէ ունեցող կինն բնաւ չի գործածեր։

---

## 5. ԳՈՒՇԱԿՈՒԹԻՒՆՔ

Բազմատեսակ են գուշակք. ոմանք երազ կը մեկնեն. ոմանք մարդոց ճակատագիրն կը յայտնեն. ոմանք կորուսեալ մտաանի, ուրկի և այլն գտնել կը փորձեն. ոմանք այսահարաց կամ սիրահարաց գաղտնիքն կ՚իմանան. ոմանք կրցած են, կ՚ըսեն, Կ. Պոլիս կամ այլ հեռաւոր պանդուխտի մը թաշկինակըն կարդալով իսկոյն բերել և ներկայացունել։ Երազահանն ձայն գիրքն է, ուր զանազան երազներու մեկնութիւնն և անոնց կատարման ժամանակն գրուած է։ Շատերը կը պատմեն, թէ այս ինչ ժամանակ գործի մը կամ անձի մը վերաբերեալ երազ մի տեսած են և քանի օր վերջը կատարուած է. զոր օրինակ, հանգուցեալ հօրեղբայրս՝ որ արժանահաւատ անձ մ՚էր, 1864-ի միջոցներն երբ 'ի Կ. Պոլիս էինք, պատմեց, թէ երազին մէջ տեսած է, թէ յԱկն իւր խնամիին՝ Գ. Նարլըեան աղայի հետ նորա տունն սենեկի մը մէջ կը գտնուին, ուր ներկայ գտնուած են եւայլք յընտանեաց։ Յիշեալ Նարլըեան տա-

քի ելնելով կըսէ. «Անհաւատիկ ես կ՚երթամ, մնացէք բարեաւ», և կը մեկնի անկէ։ Հօրեղբայրս զարթնլով օրուան թուականն նշանակել կուտայ կրտսեր որդւոյն. և քանի օր վերջը սուրհանդակն գալուն կը գուժեն յիշեալ Նարլըեանի մահն։ Նամակներէն կը տեղեկանայ, թէ յիշեալն իւր մահկանացուն կնքած է ճիշդ այն գիշերն՝ երբ տեսած էր զայն երազին մէջ։ Հայրս երբ 1871-ին աստ իւր մահկանացուն կնքեց՝ հօրեղբօրս երէց որդին, որ յայնժամ ՚ի Պօլիս էր, յերազի կը տեսնէ զհանգուցեալն, որ Ակնայ հանդիպակաց լերան բարձունքն կը գըտնուի և ՚ի կատարն կը դիմէ. կ՚ուզէ հասնիլ նմա, բայց չկըրնար. և նա ելնելով լեառն կ՚աներևութանայ։ Սեբաստացի Հայ բժիշկ մի Տօքթ. Շիրինեան որ 2—3 տարի յառաջ հիւանդի մը համար այսր եկած էր՝ կը պատմէր թէ «երբ յԱմերիկա էի, ամեն անգամ որ դրամ ուղարկուէր հայրենիքէս՝ նախապէս երազիս մէջ ոջիլ կը տեսնէի։ 5—6 տարի յառաջ շատերը պատմեցին, թէ վերի թաղը Թուղլըեան Նիկողոս անուն անձ մի կայր, որ աղքատիկ ոստայնանկ մ՚է եղեր։ Սա գիշեր մի յերազի, կամ ըստ ոմանց աչօք բացօք՝ կը տեսնէ, որ 12 մարդ և մի պետ կուգան կը բոլորին իւր շուրջն և կ՚ըսեն, թէ «ժամանակ է արդ հոգիդ յանձնելու». պետն կ՚ըսէ թէ «գործերդ մաքրելու համար պէտք է օր տալ» և 10—15 օր կը տրուի։ Թուղլըեան զայս կը պատմէ կնոջն և գործերն կարգադրելով մահուան կը պատրաստուի։ Երբ որոշեալ օրն և ժամն կը լըրանայ՝ Թուղլըեան հոգևարք կ՚իյնայ. և իբր մեռեալ կ՚անշնչանայ. կինն կ՚սկսի ճիչ և աղաղակ բառնալ, սակայն մի յետոյ այրն աչքն կը բանայ և կ՚ըսէ «Ինչու այդպէս ծանրապէս մեղանչեցիր. ըսին թէ որովհետև կինն դեռ կարօտն առած չէ՝ քանի մ՚օր ևս տալ պէտք է, և տուին մինչ նոյն Տեառն ընդառաջի կամ այս ինչ օրն։ Օրն կը հասնի և Թուղլըեան հոգին կ՚աւանդէ *)։ Սորա նման այնպիսի զարմանալի երազներ

---

*) Չմոռնամք Տրապիզոնի Գրիգոր աղայի հայրն որ՝ ինչպէս

պատմուած են, որ մարդ կ'ընկնի մտածել, թէ ինչ են այս կարգի երազք։ Շարունակեմք մեր գործն։ Ժողովրդեան մէջ կան կարգ մ' երազներ, որոց մեկնութիւնք անփոփոխ են. ինչպէս՝ երբ սեւ գլուխ տեսնես՝ սատանայ է. երբ կանաչ գլ-րուխ տեսնես՝ ուխտ է կամ սուրբ է. երբ մէկը մեռած տեսնես՝ շատ կ'ապրի. երբ ակռայ քաշես, ցաւի, արիւնոտ՝ ընտանի-քէն կամ ազգականէն մէկը կը մեռնի. եթէ չցաւի՝ օտարն կը մեռնի. երբ ջուր տեսնես՝ մուրատ է եայլն. և կան որ կը փոփոխին. միոյն համար բարեգուշակ՝ և միւսին ընդ հակա-ռակն. ըստ այսմ կը հարցունեն միմեանց. «Այս ինչ իրն քու աչքիդ ինտո՞ր է», ինչպէս խաղողն եայլն։

Երազի վրայ այս չափն բաւական համարելով՝ անցնիմք գուշակութեանց։ Սորա յատուկ գրքի մը բացատրութեամբ՝ եր ժամանակին, որ կենդանակերպին եայլն ծնած ըլլալէն կը գուշակեն մարդոց հեզ կամ դաժան եայլն բարքն, այս ինչ բարիքըն կամ չարիքն պատահելն։ Այս գուշակութիւնք ալ երազի մեկնութեանց կարգէն կը համարուին։

Գալով գողօններու գտիչ գուշակին՝ ասոնք սովորաբար տասանց գրքի կը գուշակեն զանազան կախարդական արարողու-թիւններով։ Անոնց մէջ այս կարգի գուշակաց «հայոց» (պա-պըր) կ'ըսեն։ Իբր 15 տարի յառաջ Թուրք կին մը կար, որ լուսնոտներու և կորուսեալ կամ գողցուած իրերու համար գու-շակութիւն կ'ընէր։ Մօրուս պատմեր է, թէ յիշեալ կինն լուս-նոտ հայ կնոջ մի տունն կոչուած էր. սենեկին մէջ նստաւ, 'ի հրամէր դիւաց հալուէ և այլ անուշահոտ խունկեր ծխեց, ինքնիրեն շատ մի բան կարդալէն և դիւաց հետ խօսակցելէն յետոյ՝ ձեռքը պատին տարաւ և աներևութէն թուղթ մի առաւ ձեռքին մէջ. գոցեց և այլ չբացաւ. փրփրեցաւ և ուժասպառ մարեցաւ ընկաւ. այս պահուս հայ կին մը որ խօսակիցն էր,

---

Մասիսի 3900 թուոյն մէջ (1887 Նոյ. 28) գրուած է, իւրեան եղած վիճակացման համեմատ՝ նոյն օրն ընտանեօք կը հրճուի, և երեկոյին քահանային կը կոչէ կը հաղորդուի և որոշեալ ժամուն հոգին կ'ա-ւանդէ։

գուշակ կնոջ անունն կոչելով քանիցս և խնդրելով՝ ձեռքը բանալ տուաւ և առաւ թուղթն, զոր նուախս պիտի շինեն։ Ի վարձ հայցելն՝ շաքար կամ եազմա և այլն կուտան։ Կորուստի համար ալ վերոյիշեալ գործողութիւնն կը կատարէր, և թէև ոչ որոշակի, այլ և այլ մարդոց անուններ կուտայր. իբրև թէ գողին անունն կը ծանուցանէր։ Կայր նաև Նարվերցի հայ մի, որոյ համար կը խօսուէր, թէ կոնքովն ջուր կը բերէր, կը կարդաք, ջուրին մէջ նայել կուտար, և իբրև թէ գողին պատկերը կը ցուցնէր ջուրին մէջ։ Կայ տակաւին հայ մի, զոր երբեմն այլ և այլ հիւանդաց․ կը տանին. կը կարդայ և այլ և այլ կախարդական արարողութիւնք կը կատարէ կ՚ըսեն։ Պատեհութիւն չունեցայ տեսակցիլ և իւր արհեստին նկատմամբ հարցումներ ընել։ Ըսած է եղեր մէկու մը, թէ իւր բժշկական գործիններն ս. Գրոց և ս. Գ. Նարեկացւոյն աղօթագրքին ընթերցումն և աղօթքն է։ Կան նաև շատ մի գուշակութիւնք՝ որ աւանդական են. զոր օրինակ երբ անծեղն տանն շուրջն կամ տանիքն գայ երգէ՝ պանդուխտն գալու նշան կը համարին և կ՚ըսեն. «խերը լընի. խերը լինի. երբ ճամբորդս դայ՝ պաշարը առջին թոթվիմ»։ Կուիկ ըսուած թիթեռնիկն և ջորւոյ ճանճն ալ պանդխտին գալուն նշան կը համարին։ Ագռաւին կանչելն, հաւուն՝ աքաղաղի պէս խօսիլն, շանն այս ինչ տան կամ սենեկի առջև ոռնալն չարագուշակ կը համարին։ Ծիածանն, որ յաճախ ընդ արևելս է՝ լաւ. իսկ երբ յարևմուտս պատահի՝ չար նշան կը համարին։ Երբ հարսանեաց կամ հանդիսի մը մէջ մէկու մը ձեռքէ գաւաթ մի կամ սկաւառակ մի իյնայ կոտրի, կամ այլ վնաս մ՚ ըլլայ՝ բարի նշան մի կը համարին. զի կը կարծեն թէ այն փոքր վնասն կենաց կամ ընչից վերաբերեալ ապագայ մեծագոյն վնասու մի առաջքն կ՚առնու։ Երբ մէկը փռնգտայ՝ կ՚ըսեն. «Յիշեցին քեզ այս ինչ տեղ»։ Երբ խօսակցութեան մէջ մէկը այնպիսի բան մը խօսի զոր ուրիշ մը խօսել պիտի սկսէր՝ այս վերջինն կ՚ըսէ առաջնոյն «Ես պիտի

ըսէի, գնա՛ն ըսիր. դուն ինծի շատ տ՚ապրիս։ Երբ խօսակցութեան մէջ պատահի որ երկու անձինք միևնոյն խօսքը մէկէն ըսեն՝ ատենցմէ մին կ՚ըսէ. «Երկուքս մէկտեղ տի մեռնինք»։ Ծըրագին մոմին շրթունքէն երբ նամականէ ծալք մը *) տեղի կ՚ունենայ, ներկայից որուն կողմը որ ըլլայ, «Քեզի նամակ պիտի գայ. գիր կը գրուի» կ՚ըսեն. իսկ երբ շրթունքէն վեր աստեղնաձև գիծեր ըլլան «վաղը ձերը հիւր պիտի գայ» կ՚ըսեն։ Շաբթու օրերուն մէջ գշ. օրն Հայոց և մանաւանդ Թուրքաց մէջ ձախորդ օր մը կը համարուի. ոմանք գշ. ճամբայ չեն ելներ. նոր գործ մը չեն սկսիր։ Թուոց մէջ բաց 'ի մէկէն կատարեալներն են. 3, 7, 12, 40 ինչպէս՝ 3 անգամ ըսել. 3 որդի. 3 աղջիկ. և այլն. 7 եղբարք. 7 խորհուրդ եկեղեցւոյ. 7 մահացու մեղք. 7 գլխէ դև. 7 տարուան գինի. և այլն. 12 առաքեալ. 12 խաչապաշտ ազգ (իբր թէ բոլոր քրիստոնեայք 12 ազգէ կը բաղկանան). 12 տեսակ և այլն. 40 տարի. 40 անգամ (առակաց մէջ) 40 դուռն. 40 գող. և այլն։ Երկրորդականներն են՝ 4, 30, 70, 99, 100 և այլն։ 9 թիւը թէև գշին չափ չարագուշակ չէ՝ բայց լաւ թիւ չի համարուիր։ Օրուան առաւօտն բարեգուշակ, և երեկոյն՝ ընդ հակառակն է։ Ո՞ր մէկը թուեմ. տակաւին շատ կան այս տեսակ բարի կամ չար գուշակութիւնք, սակայն վերոյ գրուածներն բաւական համարելով զանց առի։

---

## 6. ԱԶՔԻԼԵԼ. ՉԱՐԱԿՆՈՒԹԻՒՆ (ՆԱԶԱՐ)

Նազարին վրայ ևս զանազան դէպքեր կը պատմուին. կ՚ըսեն թէ մեծ վէմ մը կայ եղեր, զոր կոտրել կուզեն և չեն յաջողիր, այն քաղաքին մէջ ալ համբաւեալ չար աչք ունե-

---

*) Գտնուած են կամ գուցէ կը գտնուին ոմանք, սովորաբար կանայք, որ ծալլուած ճարպէ թերթիկն անկողնոյ դարակին վրայ նետելով կը պահեն, մինչև որ գուշակեալ նամակն գայ։

ցող պատառ մի կայ եղեր. կը բերեն կինն, որ երբ նայելով քարին կ'ըսէ «Օ՛, այս ինչ մեծ քար է», քարն անմիջապէս կտոր կտոր կ'ըլլայ։ Դարձեալ մէկը պատմած է, թէ Պոլիս մանրավաճառութիւն (աթթար) կ'ընէր։ Թուրք կին մի խանութին առջև եկաւ և ըսաւ. «Օ՛. այս խանութն որչափ բան կայ». այն վարկենին խանութին ապակափեղկերը փշրեցան»։ Երբ մէկին գլուխը ցաւի, մանաւանդ երբժկտալով (յօրանջելով), կ'ըսեն, թէ «Նազար դպեր է, նազար են տուեր». սովորաբար, վրայէն Թաշկինակ կամ եազմա մի առնելով Նազարի դէմ սէպապ *) ունեցող կնկան մը կու տան, որ Թաշկինակը կը շփէ ձեռքով և հետևեալն կ'ըսէ. «Չար աչքը ճաթի, չար նիյէթը վար հալածի»։ **) Անկէ զատ աղօթք ալ կ'ըսէ և կը յօրանջէ. եթէ Նազարն շատ դէշ տրուած է, յօրանջումն աւելի սաստիկ կ'ըլլայ։ Եթէ կարծեն, թէ «աչք տուողն» այս ինչն է, և դիւրութիւն կենայ, այն անձին գաղտնապէս պարեգօտէն փոքրիկ կտոր մը կը կտրեն կամ բնակած տանը սեմէն փոքրիկ կտոր մը կը տաշեն, և գլուխն ցաւած անձին տունը բերելով՝ կ'այրեն։ Երբեմն անդրանիկ զաւակ մի նազար տուած անձին գլխուն վերև գաւաթ մի ջուր կը դնէ. յետոյ, եօթն հատիկ կրակ ջուրին մէջ կը ձգէ, կը մարէ և աղօթք կ'ըսէ, և ջուրէն տակաւ ինչ հիւանդին խմցնելով մնացեալն կը նետէ։

## 7. ՆՈՒԷՐՔ.

Նուէրք կ'ըսուին այն ամէն գործողութիւնք, որ Աղէկ-

---

*) Սէպապ ըսուած զօրութիւնն դուստրն իւր մօրմէն կամ ազգականէն կ'ստանայ և Ակնայ մէջ քանի մը հատ միայն կան։

**) Մէկը իբրև Նազարի աղօթք՝ կ'ըսէ «Չար աչքը. չար փուշը. չար կրակը. տուունծը (ճնճղուկը) կթեցին. օձուն կատողը. միջիւմին կաթը. աղէկ աղջնին ծամը. աղէկ կըլիճին բաղջակը չար փուշը հալածի»։

նաքէ, Ալէ, կախարդութիւններէ, նազարէ, կամ բնական արկածից և հիւանդութեանց իբր դարման՝ և կամ առանց պատահականութեան դէմ իբրև արգելիչ դեղ կը գործածուի։ Ըստ այսմ՝ նախ դարմաններուն վրայ խօսիմք։

Երբ արեգակն կամ լուսինն խաւարի, ոմանք լօգնալու մեծ կոնքեր (պղնձեայ) կը ծեծեն, ոմանք ալ հրացան կ՚արձակեն. իբրև թէ այս լուսաւորաց հանդէպ մեծ թուչուն մի կամ չար էակ մի եկած ըլլալով, շռինդն կամ հրացանի պայթիւնն հոն համնելով, լոյսն արգելողն խոյս կու տայ։ Այս արարողութեանց ՚ի Հայոց ոմանք ալ կը մասնակցեն շռինդ հանելով կամ աղօթքով։ Դեռ երէկ *) Սեպտ. 23-ին գիշերն, լուսնոյ խաւարման ժամանակ սոյն արարողութիւնք կատարեցան. թէև խաւարման օրն, ժամն ու վայրկեանն օրացոյցին և բոլոր երևոյթներն «Արևելք»-ի մէջ կանխաւ գրուած էր։

Երբ ժամանակ մի անձրև չի գայ, տղու մի ձեռք խաչափայտի ձևով ձող մի կու տան, փայտին վրայ հին պարեգօտ մի կը հագցունեն, որ կը պատէ փայտն և զայն ունող անձն. փայտին գլուխն ալ գտակ մը կ՚անցունեն. և այսպէս, մարդաձև՝ ծաղրելի բան մը կը շինեն, որոյ «Զիչի մամա» կ՚ըսեն, և զոր կը շրջեցունեն տներն ու փողոցներն և կ՚երգեն տաճկ. «Զիչի մամա նէ իսթէր, Ալլահտան եաղմուր իստէր. քեսէտէն փարէ իսթէր, նըչճանդան էթմէք իսթէր, վէր Ալլահըմ վէր, եաղմուր իլէն սէր (հայ.) կամ սէլ»։ Այսպէս, Զիչի մաման կը պտտցունեն, տեսնողներն հաց կամ դրամ կու տան, վրան ջուր կը նետեն և կը թրջեն։ Այս սովորութիւն գրեթէ ջնջուած է։

Եթէ հիւր մը երկար ատեն նստի և անոր մեկնելն ուզուի, հիւրին մուճակին մէջ քիչ մը աղ կը լեցունեն։ Եթէ ատելի մէկը, որ հանդերձեալ է ճամբորդել և չեն ուզեր վերադարձն, յետ մեկնելոյն հողէ սափոր կը նետեն գնացած կող-

*) Սոյն տողերը 1884 Սեպտ. 24-ին գրուած էր։

մըն և կը կտրեն։ Երեխայ մի խօթութիւն (սանձը) ունենայ, կապուտագոյն բամբակէ ղենջակի (պօհճայ) մը մէջ դնելով կ'օրօրեն 'ի դարման *) Երբեմն զմանուկն պառկեցնելով և երկու ոտներէն բռնելով վեր կ'առնուն և գլխիվայր կախելով մեղմիւ կը թօթվեն և կը շրջեն (թագլա)։ Երիցս կը կրկնեն զայս իբրև նուէրք։ Տեսնուած է շատ անգամ, որ այս կերպով մանուկն կը հանդարտի լալէ։

Երբ մէկը մեռանի և զաւակներէն, ընտանիքէն մէկը վախնայ ու նիհարնայ սկսի, «Կոխուածք է եղեր» կ'ըսուի. այսինքն մեռեալն կոխեր է։ Ի դարման, 7 աղբիւրէ ջուր կը ժողվեն, մեռնողին գերեզմանին վրայ կը դնեն, յետոյ փախցողն կը լոգցունեն։ Երբ ննջեցեալ մը կը տանին՝ մէկը, որ 'ի տան նըստեր է՝ կ'ըսեն «Ելի ոտքի վրայ կայնէ, մեռեալը կու կոխէ»։

Եթէ մէկին աչքին մէջ արիւն ժողովուի, «պահեա ընկած է» կ'ըսեն. պահեայի սէպտապ ունեցողի մը կը դիմեն. սէպտապին տէրը գաւաթ մի ջուր կը բերէ, 7 կուտ աղ, կամ 7 կուտ ռապ ձեռքը կ'առնու. կտիկ կտիկ աչքին շուրջը կը շրջեցունէ աղօթք ըսելով, և ջուրին մէջ կը ձգէ. նոյն ջրէն քիչ մը աչքը կը քսէ, երբեմն ալ քիչ մը կը խմցնէ, մնացածը կը թափէ։ Աչքի հիւանդն ջուրին մէջ 5—10 փարա կը ձգէ, որ սէպտապին տիրոջն է։ Ոմանք՝ կարմրագոյն քար մի կայ պահեայի համար 'ի դարման, աչքի քովն 'ի վար կը կախեն։

Եթէ մէկին մարմնոյն՝ սովորաբար երեսին կամ ձեռաց մորթն կը թեփոտի և կը կեռայ, «Մրջիւննոցք է եղեր» կ'ըսեն։ Յիշեալ Քէչեան ընտանիքն այս հիւանդութիւնն դարմանելու նուէրքն ունին եղեր. ախտացեալն անոնց կ'երթայ, յորոց մին, գրչի մը ետևի կողմին ծայրովն, մելանով գրելու պէս,

*) Կայ և այլ դարման մի, որ է փոքրիկ կաթսայի մի ներքևի սևն քերելով՝ ջրով քիչ մը կը մարեն և կը խմցնեն։ Կայ նաև խօթութեան այլ դեղ մը կամ նուէրք մի, որ չափահասոց եւս կը գործածեն. այն է՝ մկան ծիրտը օղիով կամ ջրով մարել և խմցնել։

կը գծեն թեփոտած տեղն և իրենց սովորական աղօթքն կ'ըսեն։

Այն տղայք, որոց ոտք ելնելու ժամանակն կուգայ և 2—3 տարեկան կ'ըլլան ու չեն կրնար քալել՝ 'ի հնումն կ'ըսեն եղեր, թէ «Մէլայլին տալու է» և է այսպէս։ Աւագ ուրբաթ օրը, ցերեկին, կը տանին տղայն Թուրքաց ժամակոչին (միւէզզինին), որ տղան առնելով մզկիթին աշտարակը կ'ելնէ և ցերեկուան աղօթքէն յառաջ, աղօթքի կոչման ժամանակ տղան հետն կը շրջեցունէ եղեր։

Այն տղայն, որոյ խօսելու ժամանակն եկած է և չի կրնար, Վանք գիւղն ս. Սարգսայ մատուռն կը տանին. անդ սիւն մի կայ. քովն երկու մարդ նստելով, տղայն երեք անգամ՝ սեան բոլորտիքը կը շրջեցունեն. յետոյ, մատրան դրանը բանալին երեք անգամ տղուն բերանը կը դնեն. 10—12 հատ փայտէ դգալ կամ աւել մի ընծայ կուտան ուխտատեղւոյն։

Վերոյ գրեալ վերջին երկու դարմաններ՝ ընողներն կարի սակաւաթիւ են. Նազարի շփումն, մրջիւննոցք և պահեալի դարմաններն յաճախ կը գործածուին։ Իսկ աղեկնաց չար տալոյն խեղանդամ ըլլացողաց և այլ շատ մի հիւանդութեանց 'ի դարման՝ սովորաբար աւետարան կը կարդացուին և աղօթք ևայլն՝ կը կատարուին։

Երբ նորածին երեխայ կամ մանուկ մի հիւանդոտ, նիհար է, 'ի դարման հետևեալքն կ'ընեն. 1. տանը ճանապարհին վրայ փոքր հոր մի կը բանան, որպէս զի անցորդք կոխելով հորն լեցունեն, տղան առողջանայ։ 2. Քառուղիի մը (տէօրթ եօլ աղզի) մէջ, եռոտանիի վրայ կաթսայ մը կը դնեն. ներքեն քիչ մը խռիւ կամ աւելի կը վառեն, կաթսային մէջ տապաստակ մի (մինտէր) դնելով մանուկն կը նստեցունեն. եօթն աղջիկ կարգաւ կուգան կը հարցունեն եփելու ձև կատարող կնկան. «Մամ, ի՞նչ կ'եփես», որ կը պատասխանէ «զամշու (թերևս գամեշու) միս». կը յուսան թէ այս արարողութեամբ մանուկն կ'առողջանայ։ 3. «Ջուրին տալ», որ է այսպէս. երեք առաւօտ զմանուկն յետիրատ տանելով ջուրը կը

թաթխեն մերկ. երրորդ առաւօտուն՝ շապիկով մը կը թաթխեն և յետոյ շապիկը գետը ձգելով կ՚ըսեն. «Ցաւերը առ ու դընա»: Տակաւին կան շատ նուէրքներ, բայց գրուածն բաւական համարելով՝ սկսիմք նախազգուշական նուէրքներու:

1. Երբ մայրն կամ ընտանիքն զբաղմանց պատճառաւ ստիպուին զերեխայն միայնակ թողուլ՝ որրանին գլխոյն ներքև սովորաբար կտոր մի հաց կամ երբեմն աւել մի կը դնեն, որ մի գուցէ աղեկնաքները փոխեն:

2. Երբ հարսն ու թագուորն· յեկեղեցի կ՚երթան, ձիէն իջնելուն, հարսին հանդերձից կոճակները կը քակեն և փեսին գրպանը (ճեպ) բացուած զմելի մը կամ կղպակ մը կը ձգեն, որ կը մնայ ցաւարտ պսակին կամ մինչ առագաստի օրն:

Երբ յեկեղեցի մտնեն, դուռը ձիերուն վրայ մէջմէկ մարդ կը հեծնէ, և յետ պսակի երբ փեսան ու հարսն եկեղեցիէն ելնեն՝ անոնց ձիերը իրարու հետ կը փոխեն, որպէս զի կախարդք հարսն կամ թագուորն չի դիւթեն, չի կապեն: Կ՚ըսեն թէ հին առենները երբ հարսն ու փեսայն եկեղեցի կը տանին՝ տունն մանելու ճախարակ մի կը մանեն եղեր 'ի պարապ. և փոխանակ յաջէ 'ի ձախ դարձունելու՝ 'ի ձախէ յաջ կը դարձունեն եղեր:

4. Երբ պանդխտութեան գնացող մը տունէն կը մեկնի, դրան սեմէն դուրս ելած վայրկենին չոր հաց մի կը բերեն կը կտրեն և յետոյ աղքատաց կուտան: Ոմանք ալ նոյն մեկնելու վայրկենին ետևէն քիչ մը ջուր կը նետեն, որպէս զի շուտ վերադառնայ: (Սափորը կոտրելն ասոր հակառակն է):

5. Երբ մէկը նոր տուն մի շինէ՝ վերին յարկի առաստաղին մեծ գերանին ծայրը, փողոցի կողմը, հին մաշած մուճակ մը կամ հաւկիթ մը և կամ պճեղ մի խտոր կը կախեն, նազար չի դպչելու համար:

6. Երբ մէկը նոր հանդերձ մը հագնելու ըլլայ՝ օձիքը գետինը դնելով վրան կը կոխէ ոտքովը և յետոյ կ՚զգենու:

7. Երբ մէկը լուացուած առենն ձեռքին օճառը ընտա-

նեաց միոյն կամ ուրիշի մը տայ՝ առնողն ձեռքն կը դարձու-նէ, որ օճառն ձեռքին վրայ կը դնէ. զի եթէ օճառն ձեռքին միջոցէն առնու՝ միջերնին պաղութիւն կ՚իյնայ։ Նոյնպէս երբ մէկը ջուր խմէ՝ սեղանին մէջ ըլլացողներէն եթէ ջուր խմող կայ, կ՚սպասէ որ նախ առջի խմողինն լրանայ, զի եթէ մէկ-տեղ խմեն՝ պաղութիւն կ՚իյնայ միջերնին։

8. Երբ մէկը դիւահար կամ մոլի և կամ ախտացեալ մէ-կու մի խօսքն կընէ՝ փիւ, փիւ, փիւ կ՚ընէ մեղմիւ. որպէս թէ ըսէր «Հեռու ըլլայ իմ տունէն, ընտանիքէն ևայլն»։

9. Երբ մէկին ոտքը լուանան և հարկ լինի նոյն ջրով ուրիշի ոտքն ալ լուանալ՝ սոյն վերջինն կոնքին մէջ կը թքնէ, որպէս զի զիրեար չատեն։

10. Երբ կայծակ զարնէ և տեղատարափ անձրև գայ՝ ջրհեղեղի մը կամ ողողման երկիւղիւ, խորովելու (քէպապ) երկու շամփուր կը բերեն, տանն գաւիթն կամ տանիքին միջա-վայրն կը դնեն իրարու վրայ և խաչաձև, որով կը յուսան պատուհասէն ազատիլ։

11. Պէտք չէ ձեռքով կամ ցուցամատով աստղ ցուցնել կամ համրել. զի ձեռքը կամ երեսը ասպի չափ, փոքրիկ, թուխ բուսած մեղէն հատիկն կը բուսնի եղեր։

12. Պէտք չէ կերակրոյ սեղանէն հաց տալ աղքատաց, զի առատութեան շնորհ կամ օրհնութիւնը (պէրէքեաթ) կը փախչի եղեր։ Պէտք է որ աղքատաց հացն՝ հացի դարակէն կամ պդնձեայ ամանէն տրուի։

13։ Պէտք չէ նաև սեղանի ներքևի սփռոցն, ուր հացի փշուրք կան՝ փողոցը թօթվել, այլ պարտէզն կամ այլ ան-կիւն մի, որ փշրունքը չի կոխոտուի և պէրէքէաթը չի փախչի։

14. Պէտք չէ զուր տեղը կաժառը կամ մանելու ճախա-րակը յունայն դարձունել, զի երկրաշարժ յառաջ կը բերէ եղեր։

Տակաւին շատ կան զանազան արկածից և հիւանդու-թեանց ՚ի դարման նախազգուշութիւններ, բայց այսքանը

բաւական համարելով՝ անցնիմք նկարագրել սնապաշտութեանց մէկ տեսակն ալ։

## 8. ԿԱՊՔ

Կապքն երկու տեսակ է. մին՝ կախարդաց «կապք»ը *) և միւսն՝ ընդդէմ գողի, կարիճի և այլ կապքն։ Ըստ այսմ՝ նախ կախարդականին վրայ խօսիմք։ Ինչպէս տեսնուեցաւ «նուէրք»ին մէջ՝ փեսին ու հարսին պսակուած միջոցին կղպաքի կամ այլ նուէրքներ կան 'ի նախազգուշութիւն, զի դուցէ կախարդն՝ ամուսնութեան օրն, երբեմն ալ օրեր, ամիսներ յետոյ, կը կապէ զփեսայն՝ որ անկարող կ'ըլլայ զուգաւորիլ։ Երբեմն միայն զհարսն կը կապեն (պիւյիւ կ'ընեն), որ կ'ատէ զփեսայն, և երբեմն զերկոսին միանգամայն։ Երբ նորապսակ ամոլք իրենց մեղրալուսնին մէջ զիրեար չի սիրեն, ի՜նչ կ'ըլլան անոնց ծնողքն ու ընտանիքն և որչափ կը տրտմին։ Երբ կը տեսնեն թէ համոզում, յորդոր և երբեմն ճնշումներ ապարդիւն կը մնան, կը կասկածին թէ կախարդած են. ուստի կ'սկսին հայոցի կամ կախարդական գործերէ հասկցող անձինք բերել, որք սովորաբար անոնց կարծիքն հաստատելով՝ կապքին եղծման համար զանազան ընթերցմունք և կախարդական դարմաններ կ'ընեն։ Երբեմն կը յաջողին կախարդին կապքը (պիւյիւն) գտնել, որ սովորաբար թաղուած սև ածուխ կամ այլ իր մ'է։ Կապքին գտնուելով ու լուծուելովն՝ ատելութիւնն սիրոյ կը փոխարկի եղեր։ Դեռ շատեր կան, մանաւանդ 'ի կանայս՝ որ այսպիսի դէպքերու հաւատ կ'ընծայեն։ Ոմանք կը պնդեն թէ այս ինչ անձն, որ կախարդական գործերէ կը հաս-

*) Կարծեն ոմանք, թէ երբ երկու անձինք կռուի կամ բանակռուի սկսին և 'ի ներկայից այլ ոք չարամտութեամբ ձեռաց երկու բթամատից եղունգներն գաղտնի և արագապէս իրար քսէ՝ կռիւն աւելի կը սաստկանայ։

կնայ՝ այս ինչ ժամանակ այս ինչ դէպքը գիտցաւ, գուշակեց, և ըսածին պէս կատարուեցաւ. Թէ՝ այս ինչն կապքը գտաւ և քակեց։ Սկսինք միւս կապքերն գրել։

Կապոյտ գօտի. Երեք երեք լուսին եկաւ.
Երեքին հագածն է ճերմակ.
Մէկն է Յիսուս. մէկն է Քրիստոս.
Մէկը դուռը կը պահէ.
Մէկը երդիքս կու պահէ.
Մէկն ալ գալած չարիքս կու խափանէ։

---

Ս. Սարգիս, մեր տունը օթէ.
Թուրը դրանը գոցէ.
Վալան երդիքը ծածկոց է.
Ո՛վ դուռը գայ, կապի.
Ո՛վ երդիքն ելլէ, կարկամի։

---

Կապոյտ գօտի եւ չորեքծնի. Լուսաւորիչ պապան քովիկս է.
Շուրջառը վրաս ծածկոց է.
Գաւազանը դրանս գոց է.
Պահէ ու պահպանէ.
Կապէ ու կարկամէ։

---

Կապոյտ չամ նուէրք չոր ուշքի, նաղարի.
Անդնդային ծառ մի կար.
Ան ծառը սև օձ մի կար.
Անձեռք վար առինք.
Անդանակ մորթեցին.
Անկրակ եփեցին.
Ո՛վ կերաւ ճաթեցաւ.
Ո՛վ չկերաւ պատռեցաւ։

---

[illegible]

Տունն իջաւ տապանը.
Օձն ու կորը (կարիճը) մէկտեղ եկան.
Լուսաւորիչ վրայ եկաւ.
Գմբզռապատ ի՞նչ *) կու բանիս.
Քեզ կապիմ բթնուկ մատովս.
Մարիամ մօրը քաղցր կաթնովը.
Ս. Սարգսայ ձիուն ձարովը.
Վազն առաւօտուն.
Արդար տղան քնէն ելնէ.
Ոչխարը լեռն ելնէ.
Կապիս ու կարկամիս։

---

Կայ նաև կարիճի այլ նուէրք կամ կապք մի հետևեալ երպիւ։ Աւագ ուրբաթ գիշերն կ՚ոոր մի բամպակէ մանած թել թզաչափ կու կտրին և իւրաքանչիւր թելին վրայ եօթը հանգոյց ձգելով աղօթք կ՚ըսեն, և այս թելերը տունն կարիճ ունեցող անձանց կուտան մէյմէկ հատ, զորս ծոցերնին կը պահեն մինչ յաջորդ տարուայ նոյն օրն։ Վերոյ գրեալ կապքերն ըսող կամ ընողներն կը յուսան, թէ գող չի գար, և կարիճն կապուելով այլ ևս չի խայթեր։

---

# ԳԼ. Զ.

## ՄԱՐՄՆԱՄԱՐԶԱԿԱՆ ԽԱՂԵՐ ԵՒ ԶՈՒԱՐՃԱԼԻՔ

Ակնայ մարմնամարզական և վէգի, թօփի և այլն խաղերն, որ դեռ 20—30 տարի յառաջ հանրածանօթ այսօր ըստ մեծի մասին դադրած են։ Այն ատեններն ո

---

*) «Գմբզռապատա» ի՞նչ կը նշանակէ հարցայ, չի գ ըսին։ Ակնայ մէջ «դուռը պինտ արէ» կ՚ըսեն՝ «դուռը իմաստով։

այն պատանիք և երիտասարդք, այլ բուն բարեկենդանի միջոցները չափահաս անձինք ևս կը խաղային։ Կ'ըսեն, թէ 40—50 տարի յառաջ, խաղացողաց մէջ ալևոր կամ ալեխառն մարդիկ ևս կը գտնուէին։ Այժմ պատանիք կամ երիտասարդք ոմանք՝ միայն Մարդ պահուկին և Բոշա-օյնին, նաև վէգ, Թօփ և էկիր դեռ կը խաղան և այն ալ կարինուադ։ Արդ սկսիմք սոյն զանազան խաղերու նկարագրութիւնն։

1. Բոշայ-օյուննա։ Խումբ մի խաղացողք երկու դասու կը բաժնուին։ Նախ վիճակաւ կ'որոշուի, թէ ո՛ր կողմն պիտի պառկի։ Սոքա իւրեանց մէջէն ամենէն յաջողակն Մայր (պետ, մեծ) կ'ընտրեն։ Տանիքի մի միջավայրն, իրարմէ իբր կէս կանգուն հեռի, ոտքի վրայ բոլորակ մի կը կազմեն. իւրաքանչիւն աջ ձեռքովնին աջ կողմի և ձախովնին ձախ կողմի ընկերին գօտին կը բռնեն։ Մայրն մէկին պարեգօտին քղանցքէն կը բռնէ և կը շրջի ու կը հսկէ. Թող կուտայ, միւսին քղանցն կը բռնէ։ Հակառակ կողմի անձինք շրջապատելով կանգնողաց կռնակն, կամ յաջողակքն՝ ուսն կը ցատկեն, ըստ հաճոյս կը կենան, կեցնեն, կը փախչին, ուրիշի մը վրայ կը ցատկեն։ Պայմանն է՝ որ մայրն հակառակորդաց մին՝ ցատկելու կամ խոյս տալու և կամ կանգնած միջոցին, քղանցի մի ծայրն բռնած՝ յաջողի ոտքովն զարնել։ Յայնժամ պառկող կողմը կ'ազատի և միւս կողմն կը պառկի, և ազատուող խմբի անդամք կ'սկսին ցատկել։ Անոնք ալ Մայր կ'ընտրեն. պայմանն նոյն է։ Երբ վերջնոց Մայրն ալ յաջողի հակառակորդաց մին զարնել՝ խաղն լրացած է. երկու կողման համաձայնութեամբ կրնան երկրորդել կամ երրորդել։ Երբեմն Մօր վրայ ալ կը ցատկեն. այս միջոցիս, հակառակորդք աւելի ազատօրէն կը ցատկեն, մէկին ուսէն միւսին ուսն կանցնին, կ'իջնեն խոյս կու տան, նորէն կը ցատկեն. վասն որոյ Մայրն կամ ճարահատելով, պարտասելով՝ իւր բռնովն՝ շրջանակը կը մտնէ և ուրիշ մը Մայր կ'ըլլայ. և կամ այս տաժանելի պաշտօնն կը

շարունակէ, բռնան 'ի թիկունս. ինչու, զի Մօր վրայ ցատկողն երբ ուզէ խոյս տալ՝ մեծ հաւանականութիւն կայ, թէ երբ ոտքն 'ի գետին դնէ, պիտի զարնուի, և այս յուսովն է որ թէ Մայրն և թէ այլք կը տոկան։

Միւս խաղերու նկարագրութիւնն դեռ չ'սկսած՝ հարկ կը համարիմ «վիճակով» վրայ ծանօթութիւն մը տալ։ Մէկը՝ մուճակ մ'առնելով հակառակորդ խմբէն միոյն կ'ըսէ. «ներքին թէ վրան». նա ալ կամ «ներքինս» կ'ըսէ, կամ «վրանս». մուճակը բռնողն դէպ 'ի վեր օդը կը նետէ մուճակն, որ 4—6 կանգուն բարձրանալով գետին կ'իյնայ։ Եթէ հակառակորդին ըսածին պէս իյնայ՝ մուճակն վեր նետողին կողմն կը պատկի նախ, իսկ եթէ ոչ՝ միւս կողմն։

Մուճակին պէս, երբեմն դրամի «Նաքշն թէ թուրան» (գի՞րն թէ պատկերն) ալ կը հարցունեն, վեր կը նետեն, և կ'որոշուի։ Երբեմն վէգով «Էքին, գող»—ով կ'որոշուի։ Երբեմն ալ մէկը փոքր քար մի (ոսպի չափ) առնելով ափին մէջ՝ գաղտնի պահելով թէ ո՛ր ձեռքին մէջ է քարն, և ներկայացնելով երկու ձեռքն ալ որ գոց են՝ կը հարցունէ. «Քա՞ր թէ պօշ» (պարապ)՝ միւսն կողմն եթէ գիտնայ քարն կամ պարապն՝ քար պահողին կողմն կը պատկի նախ, իսկ եթէ ոչ՝ միւս կողմն։ Չմոռնամք նաև ըսել, թէ երբ ըստ խաղին 3—7-ական ընկեր պիտի որոշուին՝ այնպէս կը բաժնեն որ երկու խմբին մէջ ալ Մայրցու գտնուի. և աշխոյժ կամ տկար՝ երկու հաւասարազօր մասանց բաժնուած ըլլայ։ Նաև երբ «Լող պահուկին» և այլն խաղերու մէջ մէկը պարտաւեալ, չուզեր այլ ևս շարունակել՝ «որձիկ» կ'ըսեն և «ոռծեծ» կ'ընեն, և երբեմն «տըռաքս» (տկար, դասալիք, վատ) կ'ըսեն և «Ցըռի, տըռի լըխլըխի, հասան դէնէ Նօխմաղի, մազդ քաշեմ՝ ուտենաս, մխտոր ծեծեմ թերանաս. լախ լուխս» կ'երգեն։

2. **Աւշան էշէ՞։** Խաղացողք երկու խմբի բաժնուած՝ վիճակաւ որոշեալ կողմէն մէկն կը ծռի, և ընկերքն ևս կար-

գաւ ծռելով՝ յետինն առաջնոյն գօտիէն կը բռնէ գլուխն ՚իքով, և երկայն կրնակ մի կը ձևանայ. Հակառակ կողմն կ'սկսի ցատկել այնպէս, որ եթէ ամենքն կրցին պառկողաց վրայ հեծած շարուիլ, քիչ մը վերջն «Իջէ՛ք» կ'ըսեն, կ'իջնեն, նորեն կը ցատկեն, մինչև որ մէկն լաւ չկրնայ ցատկել դէպ յառաջ, և իւր յաջորդին տեղ չի մնալով երբ սա ցատկէ առհի իյնայ՝ կ'սկսի այս խումբն պառկել։ Պայմանք նոյն են։

3. Զէփէծիմ։ Խաղացողք միջերնին վիճակ կը ձգեն. ամենէն վերջին մնացողն տանիքին կամ ընդարձակ տեղւոյ մի միջավայրն կէս մէջքէն կը ծռի և աջ կամ ձախ կողմն ցաթկողին կողմն կուգայ։ Ցատկողներն միջերնին «վարպետ» մի կ'ընտրեն, որ կը սկսի քիչ հեռուէն գալով և երկու ձեռքն պառկողին կռնակին վրայ դնելով վրայէն միւս կողմը ցատկել և կ'ըսէ «Զէքիճիմ». միւս ընկերք ալ ըստ նմին օրինակի կը ցատկեն. և ոմանք առանց ցաթկելու և որոշեալ խօսքն ըսելու, «վարպետիս բամբը» կ'ըսեն և կ'անցնին։ Երբ լրանայ՝ վարպետն միւս կողմէն «Զէքմէ...եայլն». ըսելով կը ցաթկէ վրայէն, միւսք ալ կը հետևին. խօսքերն՝ որ 11 են և գրեթէ անիմաստ կամ անկապ և գռեհիկ, կը լրանայ՝ վերջին անգամ, պառկողն կ'ուղղուի և միայն գլուխը կը խոնարհեցունէ։ Վարպետն և այլք պարտաւոր են ցաթկել՝ առանց ոտքով կամ հանդերձովն դպչելու, ով որ չի կրնայ ցաթկել կամ հանդերձն դպչի ինքն կը պառկի, և խաղն նորէն կ'սկսի և կը շարունակէ։ Խաղին մէջ, եթէ մէկն առանց ըսելու ցաթկէ, կամ սխալ ըսէ՝ խաղն կէս մնացած, սխալողն կը պառկի, պառկողն կ'ազատի և նորէն կսկսին. վասն որոյ անոնք որ չեն վստահիր իրենց՝ ազատ են «վարպետիս բամբը» ըսելով անցնիլ և ասոր համար, ուրիշ գործի մէջ ալ «վարպետիս բամբը» իբրև առած կը գործածուի։ Այս խաղին պէս է «պիրինէ գալտը քէօսէ» եայլն, որոյ խօսքերն միայն տարբեր են։

4. Սէմ—լէ—լըմ օէն հէ՛չ։ *) Երկու խմբի կը բաժնուին

*) Զó չօ, անունով խաղ մ'ալ կայ, այս խաղին կը նմանի սա

և իւրաքանչիւրն մէյմէկ ընկեր կ'որոշեն։ Իւրաքանչիւր զոյգ մէյմէկ անկիւն երթալով պառկող կողման ընկերն կը ծուի և միւսն կը հեծնէ։ Վարպետին առջև երկու քար կը դնեն. կ'սկսի եղանակաւ մի ըսել «Սիւմպիւլլըմ սէն կէլ, գարա գուշում սէն կէլ, տօլանի տօլանի, աթլարի պինըն, կէօզլէրի իւմըն»։ Հեծնողներն անմիջապէս երկու ձեռքովնին հեծեալներուն աչքերն կը գոցեն, վարպետն հեծնողաց միոյն նշանացի կ'ընէ, որ կ'իջնէ գաղտագողի կուգայ, վարպետին առջևի յիշեալ քարն քարին կը զարնէ. կը յիշեմ թէ երկու մատամբ ալ (Փիսկէ) վարպետին հեծածին կը զարնէ և կը մեկնի իւր տեղն։ Վարպետն ձեռքերն յետս կ'առնու. հեծածն աչքը կը բանայ, որ գիտնայ թէ ով էր զարնողն, եթէ չգիտնայ՝ կը տեղափոխեն անկիւններն։ Եթէ հեծուածն դիպուածով կամ ընկերաց ոտքով կամ այլ նուրբ զեկուցմամբն գիտնայ ո՛րն ըլլալն, միւս կողմն կը պառկի. և երբ ա՛յն ալ ազատի՝ խաղն լրացած է։ Ընկերաց աչքերն այն ատեն թոյլ կը տրուին բացուիլ՝ երբ վարպետին հեծածն իբրև քար զարնող՝ ուղիղ կամ սխալ՝ մէկու մի անունն տայ։ Թէ ինչպէս կը զեկուցանեն. որովհետև քար զարնողին հեծածն բնականաբար կը գիտնայ, թէ իւր վերայինն էր, երբ սա քարն զարնելէ և գալով հեծնելէ վերջն՝ դարձեալ աչքն կը գոցէ ներքևինին, և այս միջոցին վարպետին հեծածին աչքը բացուելով իւր միւս ընկերաց կը նայի, որոց աչքերն գոցուած են վերայիններուն ձեռքովն, քար զարնողին յիշեալ հեծածն որ ինչպէս ըսենք՝ գիտէ թէ իւր վերայինն է՝ ոտից կամ ձեռաց շարժում մի

---

տարբերութեամբ, որ հեծնող կողմին վարպետն ձեռքը (թէռնէ) բրդեալ մանածէ գնտակ մի (թօփ) ունենալով իւր յաջորդ ընկերին կը նետէ և սա միւսին. մինչև որ վարպետին հասնի. երբ կարգն լրանայ «Զօ, չօ, պէն պու եէրէ պէյէնմէտըմ» ըսելով մայրն բ.ին տեղն և բ-ն գ-ին տեղն կ'երթան հեծեալ։ Երբ տեղափոխութիւնն լրանայ՝ նորէն կ'սկսին, մինչև որ թօփն չի կրնան վարպետին հասցնել, գետին իյնայ և հեծեալ կողմն պառկի։

Կ՚ըլնէ, և մօր հեծածն յիշեալ անձին անունն կուտայ։ Պէտք է գիտնալ, թէ երբ ոտից կամ ձեռաց զեկուցմունքն հակառակորդք գիտնան՝ քար զարնողն գիտցուի ալ՝ նենգութեամբ գիտցուած ըլլալուն համար, չեն ընդունիր։

5. Օշ օշ։ Խաղացողք իրարմէ իբր 2 կանգուն հեռուն բոլորակի կը նստին կըկըզիկ։ Վարպետ մը կ՚ընտրեն. թաշկինակէ գունտ մի կը շինեն. վիճակաւ, մէկը վազող և մէկը հետապնդող կ՚ընտրեն և այս վերջինն թաշկինակէ ձաղկ մի ունի ՚ի ձեռին։ Վարպետը կ՚սկսի գունտը մէկ կողմէն քովինին նետել և այն ալ իսկոյն իւր յաջորդին, մինչև որ գընտակն վարպետին հասնի։ Երբ վարպետն գնտակն կը նետէ՝ վազող ընկերն բոլորակին դրսէն կը վազէ արագապէս, և հետապնդողն եթէ հասնի՝ կը զարնէ ձաղկովն և դէպ յառաջ կը վարէ։ Պայմանն է. գնտակէն յառաջ վարպետին քով հասնիլ կամ յընթացս գնտակին անցնիլ զայն։ Երբ վազողն խիստ արագընթաց է, կամ բաղդն յաջողելով գնտակը ձեռքէ ձեռք նետուած ժամանակ իյնայ և վազողն անցնի՝ ձեռքէ առհեցնողն կ՚ելնէ, ձաղկողն անոր տեղն կը նստի, նախկին վազողն՝ ձաղկող կամ հետապնդող կ՚ըլլայ, և նորեկն վազող։ Վարպետն դարձեալ կ՚սկսի գնտակն (թօքն) մէկ կողման վրայ նետել կեղծելով միւս կողմն նետել և յիշեալ պայմաններով խաղն շարունակել։

6. Տէլվի թօլ։ Խաղացողք երկու խումբի կը բաժնուին. սահման կ՚որոշեն, մէկ կողմէն ընկեր մը «Տէլվի տիլվի տօլ. չիվլինչինի լէպլէպի» ըսելով սահմանն կ՚անցնի, բազուկներն կօշկակարաց կար կարելուն պէս՝ երկու կողմանց վրայ կը շարժէ միշտ, կը զգուշանայ որ չի պաշարուի։ Ծուկ կուտայ (ճկիլ), խոյս կուտայ նորէն կերթայ։ Պայմանն է՝ հակառակորդին կողմէն մէկը զարնել և խոյս տալ իւր սահմանն։ Եթէ յաջողեցաւ առ այս, զարնուողն՝ մէկ կամ երբեմն 2—3 անձինք, կը դադրին գործելէ։ Իսկ եթէ յարձակողն ձերբակալի, նմանապէս կը դադրի գործելէ ցվերջ խաղին։ Երբ երկու կողմէն փոխ ընդ փոխ

ասպարէզ կ՚ելնեն և մէկ կողմն զարնուելով կամ բռնուելով սպառի, յայնժամ, պարտեալ կողմն յաղթողներէն մէյմէկ հոգի շալկելով տանեաց մէկ կողմէն միւս կողմը կը տանին։ Խաղըն վերջացած է։ Յետոյ խումբերն զատուելով նորէն կ՚սկսին։

7. **Մօրը պահուըտքին**։ Վիճակաւ մէկը կ՚որոշուի, որ կը նստի տանեաց միջավայրը և ուրիշ մի Մայր կ՚ընտրուի։ 4—5 կանգուն չուան մի, մի ծայրն նստողին և միւս ծայրն մօր ձեռքն։ Խաղացողք կ՚սկսին պատեհ առթիւ նստողին վրայ գալ, ձեռքով կրնակին զարնել և արագապէս խոյս տալ, յաջողակք երբեմն մօրն ալ կը զարնեն։ Մօր պաշտօնն է՝ հսկել և չը թողուլ որ իւր պաշտպանեալն ծեծ ուտէ, և նպատակն է՝ խաղացողաց մին ոտքովն զարնել, պայմանաւ որ չուանին ծայրերն իւր և նստողին ձեռքն եղած ըլլայ։ Երբ ճարպիկ մայրն կը տեսնէ, թէ խաղացողք չեն համարձակիր մօտենալ, չուանն 'ի ձեռին և անոր երկայնութեամբ կը հեռանայ և կ՚ըսէ «Պօյ կուտամ, վրա՛յ եկէք». խաղացողք համարձակութիւն ստանալով՝ նստողին վրայ կը ժողովին, կը ծեծեն։ Մայրն յանկարծ կը յարձակի անոնց վրայ. անոնք որ նստողն ծեծելով հանդերձ ընդ միշտ կը դիտեն զմայրն և իրենց փախուստի դիրքն ապահոված են՝ կրնան խոյս տալ, իսկ այն, որ անհոգաբար և դանդաղօրէն կը շարժի՝ կը զարնուի։ Ճարպիկ խաղացողաց մին երբեմն կը յաջողի չուանի ծայրն մօր ձեռքէն խլել. այս պահուս միւս խաղացողք նըստողը տեղէն կը վերցնեն և, 'ի պատիժ՝ մօրն հետ «ոռածեծ» կ՚ընեն, որ է երկուքին կրնակը երիցս իրարու զարնել։ Նորէն կ՚սկսին, մինչև որ մայրն յաջողի մին զարնել, որով իւր պաշտօնն կը լրանայ. Նոր զարնուողն կը նստի և նստողն մայր կ՚ըլլայ։ Երբեմն մէկն մօրն վրայ կը ցատկէ, և այն միջոցին խաղացողք կը սկսին ազատ համարձակ նստողն ծեծել, մինչև որ մայրն յաջողի այս խառնաշփոթ վիճակին մէջ, կամ կրնակինն խոյս տուած միջոցին և կամ ուրիշ մը, որ չափազանց կը մերձենայ՝ զարնել և ազատիլ. Եթէ չըլլա-

Ջոկի մայրութիւնն նստողին կը թողու և ինքն կը նստի։ Այս խաղն՝ առանց մօր վրայ ցատկելու կանայք և օրիորդք ևս կը խաղան. լաւ ևս է ըսել՝ կը խաղային։

8. Լող պահուկին։ Քիչ տարբերութեամբ նախընթացին պէս է, որուն նկարագրութիւնն կը բերեմք ոտանաւորով մի, զոր գրած է ապուշեխցի Գահվէճեան հանգուցեալ Պետրոս էֆէնտի դաստատուն։

«ԼՈՂ ՊԱՀՈՒԿ»

1) Մեծ բարեկենդանին ՚ի քաղաքն Ակնայ,
լող պահուկ անուամբ խաղալ մը տեսայ.
Տղայք և օրիորդք հասակաւ մանուկք.
Տանիք ժողուըւին կայտառ զուարթունք։
2) Լող մը գլտորած մէջտեղը կանգնեն.
Վիճակ կը ձգեն, մէկը մար ընեն.
Որուն պաշտօնն է լողէն անբաժան
Ման գալ ու հսկել շուրջ անձին վրան։
3) Որպէս զի հարուած չուտէ վշտանայ,
Շուրջ պատողներէն իրեն անխնայ.
Մինչև ժրութիւնն ու հնարքն անոր,
Տան զարնել մէկը ու ընել մար նոր։
4) Իսկ անոնք որ միշտ բոլորը շրջին,
Ամէնը ձագկեր առած ձեռքերնին,
Ձուանէ լաթէ ոլորած ամուր,
Հեռուն կանգնելով շարժեն մտադիւր։
5) Խեղճ մօրը վրայ թափին չարչրկեն.
Հարուածէ հարուած տանին ու բերեն.
Մէկը զարնելու դիտում մը ընէ ան,
Միւս մ՚անդիէն ցրուէ խորհուրդն այն։
6) Երբեմն ալ յանկարծ վրան կը ցաթկեն,
Տան տան ըսելով ձիու պէս քշեն.
Շատ ճգնի մնայ խեղճը ու տանջի,

Ճարը հատնելով հազիւ քիչ մ'հանգչի։
7) Բաբախէ սիրտը քրտինք վար վազեն.
Ծուխ մ'ըն է ելլէ շառագոյն ճակտէն.
Մերթ լայ կարեվէր 'ւ մերթ ծիծաղի,
Խենդ է ան՝ մ'ըսեր, զի խաղ խաղցուի։
8) Վերջապէս ելլէ ճիգ մըն ալ թափէ,
Ձեզաւ նէ ուրիշ կերպեր ալ փորձէ,
Մինչև որ զարնէ յոգնողին մէկը,
Քաջութեան պսակ ձեռքն առնէ ձաղկը։
9) Այլ եթէ տկար գտնուի ու անզօր,
Քաշուի աւըրէ դաշնը զօրաւոր.
Ձայն մըն է փրթի, «Հէ, հէ, հէ կանչեն,
Յովհաննէս... Մարկոս, թուք տըւոր երեսն».
Խեղճը ան ատեն խայտառակ եղած,
Երթայ մենաւոր նստի տրտմազգեաց։
10) Մեծ մեծ տղայքներ ու փափուկ տիկնայք,
Որ մերթ վիճակաւ դուք ալ մար կ'իյնաք,
Աշխարհիս կերպ կերպ խաղերուն մէջը,
Լսէ՞ք ի՞նչ կ'ըսեն ձեզ այս տողերը։
Վիճակնիդ լող մ'են, բռնեցէք ամուր,
Ձեզ պատողք երկրիս բերմունքը հանուր.
Ձըլլայ վհատիք խաղուն յասպարէզ,
Որ այդ նախատինք կը բերէ կոր ձեզ։
Միմիայն միջոց՝ որով ձեզ փրկէք
Ճարտարութիւն է ու խելք զայս դուք լաւ գիտցէք»։

51. Սեպտ. 12 Պ. Գահուքճեան

9. Կաղն է չաղ։ Մէկը կ'ընտրուի, որ որոշեալ սահմանն երթալով կ'ըսէ. «Կանչիմ կանաչիմ, Թորոսը և այլն զարկէք ու դայ». կուչուողն կը հալածեն, որ կը փութայ երթալ։ Կանչողն կամ ընկերն կ'սկսի մէկ ոտքը վեր բռնած և ծռած,

միւս ոտքովը ոստոստելով, կաղալով սահմանն անցնելու։ Նըպատակն է՝ կաղն իկաղ շրջած ժամանակ, վեր բռնած ոտքովն մէկուն զարնել։ Հակառակորդք կը ջանան յոգնեցնելով կամ կրնակէն մեզմիւ հրելով ոտքը վար իջեցնել և ձերբակալել. զի մինչ կը խաղայ, կանոնն չի ներեր բռնել։ Եթէ խաղացողն յաջողի կաղն 'ի կաղ մէկն զարնել՝ ընկերովն կ'ազատի, և զարնուողն կ'երթայ ընկեր մը կը կանչէ և կ'սկսին։ Իսկ եթէ խաղացողն բռնուի՝ միւս ընկերն կուգայ, եթէ այն ալ բռնուի՝ «ռուծեծ» կ'ըլլան, նորէն կը շարունակեն։

10 **Ընկեր մեզ կերան։** Ասպարէզն երբեմն սահմանաւոր և երբեմն բաց կ'ըլլայ։ Խաղացողք երկու խմբի կը բաժնուին. Վիճակաւ մէկ կողմը կ'որոշուի, որ մայր մի կ'ընտրէ. 1, 2, 3 և այլն 9 կը համրուի, և հակառակորդք մէյ մէկ կողմ կը փախչին. մայրն անոնց ղհետ կը պնդի մին բռնելու նպատակաւ, և երբ կը հեռանայ՝ հակառակորդք, որ դարանամուտ են՝ կուգան կը ծեծեն իւրեանց հակառակորդները, որ անպաշտպան են. տղքա կը կանչեն մորը «Ընկե՛ր մեզ կերան»։ Մայրն ետ կը դառնայ կուգայ, կը վանէ ծեծողները, և մինչ մէկին կը հետապնդէ՝ ուրիշ մը կուգայ. մինչև որ մայրն յաջողի հակառակորդաց մին բռնել, այն խումբը կ'սկսի և կը շարունակեն։

11. **Աչքը կապուկին։** Վիճակաւ որոշեալ անձի մ' աչքը կը կապեն թաշկինակով մի. սա պարտի՝ աչքը գոց՝ խաղացողներէն մին բռնել, որ ինքն ազատի և անոր աչքը կապեն և շարունակեն։

12. **Աչքը խփուկին։** Մէկն մայր կ'ընտրեն, թաղի մէջ տեղ մը կ'որոշուի, մայրն աչքը գոց՝ երեսն 'ի պատն կը կանգնի, որոշեալ 50 կամ աւելի թիւն կը սկսի համրել, միւսք մէյմէկ անկիւն կը պահուըտին. երբ լրանայ համրանքն՝ «ինն է» կ'ըսեն. աչքը կը բանայ կ'սկսի բնտռել, եթէ յաջողի մին տեսնել՝ կուգայ տեղն կը թքնէ. բայց տեսնուածն եթէ անկէ արագ վազէ և գայ մոր տեղն թիւ անէ՝ այն կը շահի։ Վերջապէս,

եթէ մայրն յաջողի պահուըտողաց մեծամասնութիւնն զինքն տեսնել և իւր տեղն վազել՝ կ՚ազատի, և առաջին տեսնուողն մայր կ՚ըլլայ. իսկ եթէ միւսք մօրմէն աւելի ճարպիկ և արագընթաց են, նոյն վերջինք կը շահին յաճախ։

13. **Իս փէգառ։** Վիճակաւ մէկը կ՚որոշուի, խաղացողաց մին մեղմիւ կը զարնէ և կը փախչի. երբ անոր ետևէն կը վազէ զարնելու՝ ուրիշ մի զինքն կը զարնէ, «իս տիգառ» կ՚ըսէ, պարտի նոր զարնողին հետապնդել. եթէ յաջողի՝ առանց ուրիշէ մը զարնուելու, զինքն զարնողին հասնիլ, զարնել և խոյս տալ՝ նոր զարնուողը կ՚առնու մէջ տեղը և այսպէս կը շարունակեն։ Ինչպէս որ 8-րդ խաղին վերջը գրուած է, երբ պարտեալն չուզեր այլ ևս խաղալ՝ որձիկ կ՚ըլլայ. կը նստեցունեն և «Տըռի, տըռի լըխլըխի, հասան պէկի թօխմախի, մազդ քաղեմ ուռենաս, սխտոր ծեծիմ թերանաս, լախ, լուխ» կ՚ըսեն և կը նախատեն։

14. **Էլիմ էլիմ։** Աղջիկ կամ տղայ փոքրկանց խաղ մ՚է։ Բոլորակի կը նստեն, ոտքերնին կ՚երկնցնեն և մէկը կ՚ըսէ «էլիմ էլիմ, էօփ էլիմ, էվտէն չըգար քիւփէլիմ, կուռ ուտիմ, կանկար ցանիմ. հաւկիթ ածիմ, բունը դնիմ. թառ, ճնճող»։ Այս խօսքին առաջինէն՝ էլիմ էլիմէն սկսելով իւրաքանչիւրին ոտքին վրայ մատնովն համրելով, վերջին խօսքն որուն ոտքին որ հանդիպի՝ այն կ՚ազատի։ Կրկնելով «էլիմ էլիմ»ն, երբ մէկ ոտք մի կը մնայ՝ սորա տէրն երեսի վրայ կը պառկի, ձեռք մի կռնակին վրայ կը դնեն, եթէ գիտնայ որունն է՝ փրկուած է. եթէ ոչ՝ մեղմիւ կը ծեծեն. և նորէն կ՚սկսին խաղն։ Դարձեալ, փոքրկունք կը ժողովուին, իւրաքանչիւրն իւրեան ձեռներն իրարու բոլորտիք անուոյ պէս դարձունելով կ՚ըսեն «Մանիմ մանիմ գալուն (գայլին) տամ, գայլին աչքը հանեմ տամ. երթամ չարսուն ծախել տամ ևայլն»։

15. **Հոլանձ։** Ձեղունէն չուան մի անցունելով գետնին մօտ երկու ծայրն միացնելով հանգոյց մի կը ձգեն. և վրան տապաստակ (մինտէր) մի կը ձգեն, որրանի պէս կ՚ըլլայ։ Համ-

բակք և փոքրկունք մեզմէ կ'օրօրին, և վարժք կրնան աւելի հեռուն սորուիլ։ **Հոլածածին**։ Կանգուն մը կամ աւելի բարձրութեամբ յենարանի մը վրայ գերան մը դնելով և հաւասարելով՝ երկու ծայրերն մէյմէկ կամ երկու-տական մարդ կը նստի և ել և էջ կ'ընեն։

16. **Սիրն ու բիրն**։ Սիրն է մատնաչափ թանձրութեամբ թզաչափ փայտ մի, և բիրն է 3—4 թզաչափ և քիչ մը հաստ փայտ մի։ Երկու քարի վրայ կը դնեն սիրն. բիրոմը վեր նետելով կը զարնեն հակառակորդաց կողմն. եթէ սոքա յաջողին սիրն դեռ օդին մէջ՝ բռնել և կամ գետինը ինկալէ յետոյ նետել, բիրին դպցունել, որ երկու քարին մէջ տեղը դրուած է՝ խաղացողն կը դադրի և ընկերքն կ'սկսին։ Եթէ սիրն չի բռնուի կամ բիրին չի դպչի, զարնողն մէկ խաղ շահած կ'ըլլայ. և եթէ յաջողի, 2, 3, և այլն։ Երբ բոլոր խումբն լրանայ, հակառակորդքն կուգան, նոյն պայմանաւ կը շարունակեն. վերջն որ կողմն թիւն շատ ըլլայ, կամ որոշեալ թիւն առաջ լրացունէ՝ շահած են. պարտեալք, յաջողակքն կը շալկեն։ Սիրն աչքի դպչելու պատահականութեան համար, սոյն խաղ վտանգաւոր կը համարուի.

17. **Թօք**։ Թէռնէ փաթթած, կլոր, խնձորի չափ գնտակ, որոյ մէջ ոմանք սպունգ կը դնեն, աւելի թեթև և առաձգական դարձնելու համար։ Խաղերն են. 1. **Թօք չոլոմլին**։ Քար մի կը տնկեցունեն, խաղացողն քարին քովէն ձեռքոմը թօքն քիչ մը վեր նետելով ուժգին կը զարնէ թօքին, որ բարձրէն կ'արձակուի յասպարէզ. եթէ միւս խաղացողք կամ բարձրէն բռնեն թօքն կամ ընկնելէն յետոյ յիշեալ քարին նետեն ու զարնեն՝ թօք նետողն պարտեալ է. իսկ եթէ ոչ, «1» կը համրէ, նորէն կը նետէ, երբ այն կամ միւս անգամին, որոշեալ թիւն լրանայ՝ պարտեալքն յաղթողն կը շալկեն ասպարիզին երկայնութեամբ և դարձեալ կը շարունակեն։ 2. **Ճինկիլիօտն**։ Խաղացողք՝ որմի մը մօտ իրենց թուոյն համեմատ նռան մեծութեամբ փոսեր կը բանան իւրաքանչիւրին յատուկ։ Ուրիշ փոս

մի որոշ ճինկիլիսօն կ'ըսեն (թերևս ճին-գօչուսը)։ Խաղացողաց մէկը՝ առ ժամանակեայ կերպիւ, 5—6 կանգուն հեռուէն թօքըն գետնի վրայ գլորելով կը նետէ. որու հօք որ ձգէ զայն, հօքին տէրն խաղացող կ'ըլլայ. սա կը նետէ թօքն, որու հօք որ իյնայ, հօքին տէրն՝ թօքին նետողն կը շալկէ, շալկողն կը շարունակէ թօքն գլորել, մինչև ուրիշի մի հօքն ձգէ, վրային կ'իջնէ, նետողն հօքին տիրոջ շալակը կ'ելնէ, և կ'սկսի շարունակել։ Երբ գնդակն ճինկիլսօնն իյնայ՝ մայրն (նետողն) և միւսք բոլորն կ'երթան իւրեանց հօքերուն վրայ կը դնեն ձեռքերնին. մայրն թօքն կ'առնու և 1-էն սկսելուն պէս միւսքն մէյմէկ կողմ փախչիլ կ'սկսեն. մայրն մինչ 9 կը համրէ և թօքն փախչողաց որուն որ ուզէ՝ կը նետէ. եթէ դպչի թօքն՝ դպած անձն մայր կ'ըլլայ. ազատեալ մայրն կը շալկէ. իսկ եթէ թօքն չի յաջողի և ոչ միոյն զարնել, չազատիր. ըստ առաջնոյն կը շարունակեն։ 3. **Համրանք**։ Թօքն գետնին վրայ զարնելով 1 կ'ըսէ՝ թօքն վեր կ'ոստնու դարձեալ. 2 կ'ըսէ և կը զարնէ, կը շարունակէ անընդհատ։ Խաղացողն եթէ վարժ է, նստուկ խաղայ, և տախտակի կամ հողի վրա ըլլայ, կրնայ անընդհատ մինչև 1000 և աւելի համրանք զարնել։ Երբեմն պատի մ'առջև կանգնելով՝ պատին կը զարնէ դէպ 'ի վեր քիչ մը չ'ող և կը համրէ։ 4. **Տեօնմէ**։ Ոտքի վրայ, թօքն գետին զարնելով մինչ խաղացողին հաւասար և աւելի վեր կը բարձրանայ. խաղացողն ձախ կողմին վրայ շրջան մը կ'ընէ, կը դառնայ արագապէս, և թօքն որ օդին մէջ է, նորէն կը զարնէ, կը դառնայ, և մէն մի դառնալն մէկ արժէքով կը համրէ։ Երբեմն, եթէ թօքն շեղ եղած է, կամ հեռացած, զարնելով ուղղելու համար, մի քանի անգամ կը զարնէ և ապա կը դառնայ, մինչև որ թօքն իյնայ, միւսն սկսի. պայմանեալ թիւն լրացնողն շահած է, և այս ոչ այլ ինչ է, այլ ճարպիկութեան պատիւ մ'է։

18. **Վէգ**։ Հանրածանօթ ոսկորն է։ Երկայն կողմին մէկին կ'ըսուի «պէկ», որ ձևաւոր է. միւսին՝ «թուրա», որ հարթ

է. տափակ կողմի կրնակին՝ «էքին», և միւս կողման՝ որ փոս է «գող» *)։ Կողէն ելած վէգին «կոպաճ» կ'ըսուի, որ հաւկըթէն մեծկակ է։ Վէգի խաղերուն նկարագրութիւնն հանրածանօթ լինելով կը թողնենք։

Մանկըլտիկ. ոչխարի տոտիկ (պճեղ) է. 30—35 տարի յառաջ, փոքր տղայք կը խաղային վէգի պէս շարելով. բայց այժմ բոլորովին դադրած է.

19. Հաւկիթ։ Աւագ շաբթուան մէջ և Զատկին օրերը, հաւկիթ խաղացող տղայք թաղերու մէջ և եկեղեցեաց մօտակայ փողոցները կը ժողվին։ Իւրաքանչիւրն հաւկիթ մը ընտրած է արդէն, ակռան ծեծելով և կարծր ըլլալն ստուգելով։ Ծառ կ'ըսուի հաւկըթին սուր կողմին և «ոռ» կ'ըսուի լայն կողմին։ Կը սկսեն հաւկիթները փորձել. ծառ ծառի.—ծրն որ կոտրի «երկու թարաֆն եմ».—«ես ատ եմ» (այսինքն՝ այս պայմանաւ այդ հաւկիթն կ'առնում և իմս քեզ կուտամ). —«ես ալ ատ եմ». ևայլն։ Երբ սակարկութիւնն լրանայ, մէկն՝ ըստ պայմանի՝ եթէ պիտի պառկի, հաւկիթն ձեռաց մէջ կը բռնէ, կը գոցէ, միոյն ծառին ծայրը կ'երևայ. հակառակորդն իւր հաւկթին ծառովն կամ՝ ըստ պայմանի՝ միւս կողմովն ծեծելով կը սկսի զարնել. եթէ պառկողինն կոտրի, միւս կողմը կը դարձունէ. իսկ եթէ զարնողինն՝ նմանապէս. և երբ մէկ կողմին հաւկիթին երկու կողմն ալ կոտրի, կոտրողն կը գրաւէ, կը շահի կոտրածն։ Ոմանք առանց ընտրութեան՝ 20—25-ական և աւելի հաւկիթ «սըրա» կը շարեն և կ'սկսեն զարնել, փոխ ընդ փոխ. ամենէն վերջը որ կողմը որ մէկ կամ աւելի հաւկիթ մնայ, վերջնական յաջողութիւնն այն կողմն է. ուստի միւս կողմի բոլոր հաւկիթները կ'առնու։

20. Հին ատեններ աղջկանց և հարսանց յատկացեալ խաղ մ'ալ կայր, այն է՝ ընկոյզի մեծութեամբ հինգ հատ կլոր

*) Երբեմն վէգն իւր երկայնութեան վրայ կը կանգնի. այս ձևին ալ «Ջըլլիկ» կ'ըսուի և արժէք մը չունի։

*քարեր, զորս ձորերէն կը ժողվեն, խաղացող աղջկունք առնք՝ ըստ կանոնի՝ գետին ձգելով, մէկ քարն վեր կը նետեն և նոյն ակնթարթին, գետնէն զոյգ մ՚առնելով վեր նետածն կը բռնեն. երկրորդին, միւս զոյգն ալ կը ժողվեն։ Խաղացողն զայս երիցս կրկնելէ յետոյ, տակաւ առ տակաւ ձեռաց երեք դժուար ձևերով (գմպիկ, կամուրջ և մաննիկ), քարերն գետինն կը ձգէ 5-ն միասին կամ տարածեալ, և 1 քարն վեր նետելով ըստ առաջնոյն՝ դեռ գետին չընկած, 4-ն գետնէն վեր կ՚առնու։ Մէն մի ձևն երիցս պիտի կրկնուի. եթէ մէկ կէտին մէջ չի կրնայ, կամ փոքր թերութիւն մ՚ունենայ, կ՚երի (կ՚այրի, խաղէն կ՚ելնէ), եթէ յաջողի, պատիւ մ՚է։*

21. Ի Հնումն, «Թարխանա Նախարա» խաղ մ՚ալ կար, որ է՝ երկու խաղացող կրնակ կրնակի կը կանգնին և մին միւսին թևերն առնելով կը շալկէ և կ՚ըսէ. «Թարխանա Թահտա,— սուլու մուրատտա.—Անան նէ՞ պիշիրմիշ.—Թ՛արխանա.—Սէնտէ պէնի արգալա». շալկողն հարց—պատասխանին վերջին՝ «Սէնտէ պէնի ևայլն» ըսած ժամանակ, կրնակինն գետինն կը դնէ և այս վերջինն՝ փոխադարձաբար՝ կրնակ կրնակի կը շալկէ զմիւսն։

22. Ըստ պատմութեան ծերունւոյ մի, «Չոքի ղուլաղան» անունով խաղ մ՚ալ կայ եղեր, որ է՝ երկու խումբ խաղացողաց մէկ խումբը 3—4 կամ աւելի, կը բոլորին կը կանգնին, և միւս խմբի անձինք իւրաքանչիւրն զատ զատ՝ կանգնողաց ուսոց վրայ կը կանգնին եղեր ձեռք ձեռքի տալով և ներքևիններն բոլորակի կը շրջին, կը դառնան իրեանց տեղն։ Այս խաղ ինչպէս նաև պայմանքն մոռցուած են այժմ։ Հաւանական է, թէ տակաւին կան հին՝ զանազան մոռցուած խաղեր, բայց, կարծեմ, կարելի է ըսել, թէ 40 տարիէ և այսր, խաղցուած մարմնամարզական խաղերուն եթէ ոչ բոլորն, գոնէ մեծագոյն մասն վերը գրուեցաւ, ուստի և գրուածն բաւական համարեցայ։

Գալով մարմնամարզական, վէգի և այլ խաղերու մէջ ծագած վէճերու, որ է՝ Բօշա օյինի ևայլն խաղերու մէջ.—Ոսքս

գլլալու,—Ձէ. չի գլլար.—ձեռքիս գլլար. չի սեպուիր ևայլն., և որ յաճախ կը պատահի, խաղացողք կամ իրենց մէջ միճակաւ կ'որոշեն և կամ հանդիսատես անձի մը դատաստանին կը դիմեն. երբեմն ալ խաղն կը թողուն։ Կը գտնուին այնպիսի անձինք որ ներգութեամբ կը խաղան. կագն ու կռիւն կը սիրեն, կամ յամառութեամբ խաղին կանոններն և իրաւարարաց վճիռն չեն յարգեր։ Սովորաբար, այսպիսիներէ կը խորշին և խաղի մէջ չեն առներ։

Այժմ, Մարդ-պահուկինն, Բօշա-օյլինին, վէգն և մէկ երկու մանր ու մունր խաղերն մնացած են, որ այն ալ հնոյն տուներն է գրեթէ։ Բարեկենդանի օրերն, երիտասարդներէն և պատանիներէն ոմանք այցելութեամբ, ոմանք շրջագայութեամբ կամ խաղ կանչելով, ոմանք վէգ խաղալով ժամանակ կ'անցունէին և սակաւք են, որ յիշեալ խաղերն կը խաղան։ Հին խաղերը վերանալով նորերը անոնց տեղը չեն բռներ։

## ԶԱՆԱԶԱՆ ՏՆԱԿԱՆ ԽԱՂԵՐ

23. Մաննուտլէն։ Բազմածանօթ «իւզլիւք օյունու» խաղն է։ Խաղացողք թանիրին շուրջը երկու խմբի կը բաժանուին. առաջնութիւնն միճակաւ կ'որոշուի։ Դուր ափսէի մի (փօլատի մը) մէջ, սուրճի գաւաթի կամ սորա պատեանի (զարֆի) 10—12 հատն կը շարեն զանազան ձևերով, և սոնց միոյն մէջ գաղտնապէս մատանի կամ մատնոց մի կը դնեն։ Որոշեալ թիւն է՝ 100։ Ափսէն կը ներկայանայ միւս խմբին։ Պայմանն է՝ անոնցմէ մէկն կամ առաջին անգամին և կամ երբ երկուք մնայ՝ գէթ յայնժամ գտնել. զոր օրինակ, դիցուք թէ զարֆն 12 հատ է. եթէ մատանին առաջին անգամ վեր առածին ներքևն է, լաւ. եթէ ոչ՝ կ'սկսի շարունակել. եթէ երրորդին մատանին երևան ելնէ՝ մնացեալ 9-ն հակառակորդք կը շահին. եթէ 10-րդին գտնեն՝ հակառակորդք մնացեալ 2 թիւն կը շահին, իսկ եթէ 11-րդին գտնեն մատանին՝ առաջին անգամ գտածի

պէս կարգն կը շահին, ափսէն կ'առնուն և իւրեանք կ'սկսին. ուստի ամէն խումբ կուզէ որ երբ սկաւառակն ներկայանայ, առաջին անգամին գուշակէ կամ բաղդն յաջողի գտնել. եթէ չյաջողի՝ կուզէ որ մինչ երկուք մնացած չգտնուի. վերջէն 2-ին ժամանակ դարձեալ ըստ առաջնոյն կը խորհրդակցեն, գուշակութիւններ կ'ընեն որ գտնեն։ Վերջապէս, այս պայմաններով շարունակելով՝ որ կողմն որ կանխէ որոշեալ 100 թիւն լրացնել՝ խաղն շահած է։ Հին ատեններն, շահողք զանազան ոտանաւորներ կը յօրինեն, կ'երգեն և կը ծաղրեն եղեր, 'ի մեծ տրտմութիւն պարտելոց։

24. Պէն սանա։ Խաղացողաց վարպետն իւր աջ կողմի նստողին կ'ըսէ. «Պէն սանա», որ կը հարցունէ «Նէ՞ տըր օ». վարպետն կը պատասխանէ «պիր իւմուրթա. սիւր կիւթսին»։ Բ-ն Գ-ին կ'ըսէ և ըստ առաջնոյն կը շարունակեն մինչև կհասնին վարպետին. վարպետն երկրորդ անգամ աջակողմեան խաղացողին կը հարցնէ. «Պէն սանա».—(խաղացող) Նէ՞ տըր օ.—(վարպետ) Պիր իւմուրթա.—(խ) Փիշմի՞շ մի.—(վ) Փիշմիշ՝ եմ։ Բ-ն Գ-ին նոյն օրինակ կ'ըսէ, բայց երբ Գ-ն Բ-ին կը հարցնէ «Փիշմի՞շ մի», Բ-ն ալ Ա-ին՝ վարպետին կը հարցունէ, որ նա ալ դարձեալ կ'ըսէ «Փիշմիշ՝ եմ», Բ-ն Գ-ին «Փիշմիշ՝ եմ» կ'ըսեն։ Այսպէս, ցվերջն իւրաքանչիւր խաղացողի հարցումն նախընթացին հարցունելով՝ կարգաւ կը հասնի վարպետն՝ որոյ «Փիշմիշ՝ եմ» հաստատական պատասխանն յաջորդաբար կրկնելով կը հասնի ցվերջն։ Յետոյ կ'ըսէ վարպետը. «Պէնսանա.—(խ) Նէ՞ տըր օ.— (վ) Պիր իւմուրթա.—(խ) Փիշմի՞շ մի.—(վ) Հէմ փիշմիշ, հէմ չըլտըրըկտէնտէ աշաղը տիւշմիշ.—(խ) Տիւշմիւշ մի.—(վ) Տիւշմիւշ՝ եմ։ Բ-ն Գ-ին, Գ-ն՝ Դ-ին յաջորդաբար կը կրկնեն սոյն խօսքերն և երբ վերջին «Տիւշմի՞ւշ մի» հարցումն կ'ընէ իւր նախընթացին, նա ալ իւր նախընթացին «Տիւշմիւշ մի» կ'ըսէ, մինչ վարպետն՝ որ կը պատասխանէ «Տիւշմիւշ՝ եմ» զոր կը շարունակեն յաջորդաբար մինչ հարցունողն «Տիւշմիւշ՝ եմ» Տիւշմիւշ՝ եմ»։ Յետոյ վարպետն դարձեալ կ'ըսէ իւր յաջոր-

դին. «Պէն սանա.—(Ա) Նէ՛ տըր օ.—(Վ) Պիր խումուրթա.—(Ա) Փիշմի՞շ մի.—(Վ) Հէմ փիշմիշ, հէմ չըլտըրխկտէնուտէ աշաղը տիւշմիւշ. էյիլիպ սույա պագար իջէն, պիր ապտալ պիր խալըթ էթմիշ.—(Ա) Էթմի՞շ մի.—(Վ) Էթմիշ՝ եա՛։ Բ-ն Գ-ին նոյն խօսքերն կ՚ըսէ, որ նոյն հարցումն կ՚ընէ և նոյն պատասխաններն կը տրուի. և երբ կարգը վերջին հարցումին՝ («Էթմի՞շ մի»—ին կուգայ, առաջուան պէս յաջորդաբար նախնթացին հարցնելով կը հանին վարպետը՝ որ կը պատասխանէ հաստատապէս թէ «Էթմիշ եա՛». սոյն պատասխանըն Բ-ն. Գ-ին.՝ Գ-ն. Դ-ին և այլն կը հաղորդեն «եթմիշեա՛, եթմիշ եա՛» ըսելով ցվերջն։ Ամենէն վերջինն ալ վարպետին «Պէն սանա եւայլն» կ՚ըսէ, որ կը հարցնէ «Էթմիշ մի». այս հարցը պտտելով կը հանի վարպետին, որ «Էթմիշ՝ եա» կը պատասխանէ, և այս պատասխանն կը հանի յինքն, և կը վերջանայ խաղն։ Սոյն խաղին պէս կան ուրիշ խաղեր ալ որ խօսքն ետ չիդառնար ՚ի վարպետն, բայց հետզհետէ կը շատնայ խօսքերն և կը դժուարանայ։

25. **Արհեստ մը բանել**։ Մէկն վարպետ կ՚ըլլայ և թաշկինակի մը ծայրն հանգոյց ձգելով ձաղկ մի կը շինէ։ Խաղացողք մէյմէկ արհեստ կ՚ընտրեն. մին կօշկակար, մին դերձակ և միւսն դրագիր, նուագածու եւայլն։ Նշան դրուելուն, իւրաքանչիւրն իւր արհեստն գործելու ձեւն կը կատարէ, և վարպետն ծափ կը զարնէ։ Երբ ծափն ընդհատէ և մէկին արհեստը բանի, այն արհեստաւորն պարտի իսկոյն գործէ դադրել և ծափահարել, մինչև որ վարպետն կամ իւր սովորական ծափն սկսի և կամ այլ արհեստ մի բանի, և ծափահար արհեստաւորն դարձեալ սկսի իւր արհեստն։ Եթէ վարպետն արհեստաւորի մը, զոր. դերձակին արհեստն սկսած է և դերձակն չի դադրիր գործելէ՝ ձաղկոցն կը զարնէ վարպետն. եթէ վարպետն դադրած է և դերձակն դեռ ծափն կը շարունակէ՝ հարուածն կը զգաստացնէ զդերձակն, որ ծափն կը դադրեցնէ և գործն կ՚սկսի։

26. **Անունդ ի՞նչ է**։ Նախնթացին պէս, վարպետ մը կ՚ընտրուի խաղացողք մէյմէկ կենդանւոյ և նոյն կենդանւոյն յարմար ուտելիք կ՚ընտրեն. զոր. գառն եմ, խոտ կ՚ուտեմ, կաքաւ եմ, կուտ կ՚ուտեմ. և այլն։ Պայմանն է՝ երբ վարպետն մէկին անունն հարցնէ, պէտք է իսկոյն անունն ըսել. և եթէ ուտելիքն հարցունէ՝ ուտելիքն։ Ըստ այսմ, վարպետն կը հարցնէ. «Անունդ ի՞նչ է». պէտք է պատասխանէ «Գառն».—Ինչ կ՚ուտես.—Խոտ։ Վարպետն կը սխալեցնէ, մէկին անունն միայն և միւսին ուտելիքն հարցունելով. կամ փոխանակ անունէն սկսելու, ուտելիքն կը հարցունէ. ուստի ով որ զգաստ է, չի սխալիր. սխալողն կը կրէ հարուածն և զուղիղն կը պատասխանէ։

27. **Գոյնզգոյն փոխուիլ**։ Ի հնումն այս անուամբ խաղ մի կայ եղեր, որ է սենեկին միջի նստող արք՝ գլխարկնին միմեանց հետ կը փոխեն, և կ՚սկսին եղեր գլխարկին տիրոջն անուամբ զիրար ողջունել. զոր. եթէ Թորոսին գլխարկը, Կիրակոսն դրած է, պէտք է այս վերջնոյն Թորոս աղա կամ աղբար և այլն կանչել։ Սխալողն գաւաթ մի գինի ըմպել տալով կը պատժեն եղեր։

---

## ՋԱՆԱՋԱՆՔ

**Մտքանց անուանք** և խօսածներն.

Ճկոյթն—ճըթիկ, ճթնուկ.ըսած է—«եկէք հաց ուտինք»,
Մատանւոյ մատն—ճթնամատիկ—«Ուսկի՞ ուտենք»,
Միջամատն—Երկան լոլոզ—«գողնանք ուտինք»
Ցուցամատն—Տապկի լզող—«Աստուած տայ ուտենք»
Բթամատն—Ոջլի կոտրող—«(Ուչ (ոչ) կ՚ուտիմ, ուչ կու մեծնամ»։

**Ապուշ խաղացողն**։ Ապուշ մէկն կամ տղայ մի որ չի հասկնար ոչ նուագարանին եղանակն և ոչ երգն ու կը խաղայ, ներկայք երբեմն հետևեալն կերգեն։ Խաղացողն երգողաց ծիծաղին պատճառը չգիտնալով՝ կ՚սկսի աւելի եռանդով ցատկել,

և երգողք միաբերան երգն ու ծիծաղն կը շարունակեն։

Զարկէք զթին 'ի քնթին
Եղէ խաղայ մեր փնթին։

Զարկէք զթին ախոռը,
Եղէ խաղայ կախ ուռը։

—

Զարկէք զփարչն 'ի փարչը,
Եղէ խաղայ մեր արջը։

Զարկէք զթապլան 'ի թապ-լան,
Եղէ խաղայ մեր ապլան։

Մանչիկն։ Կայր նաև խաղ մի, որոյ դերասանք այր և կին տափոր մի ջուր փաթթելով խանձարրապատ մանկան մը կը նմանցունէին և սենեկին մէջ շրջեցնելով, ջուրն խեղճի մը վրան կը թափէին։

Գինեմոլաց ուղղելու խօսքեր։

Խմողին՝ մի տաք (օղի, գինի ևայլն)․ չի խմողին զօր մի անէք (մի՛ ստիպէք)։ Խմողը մէկ աչքից լոյսն է, չի խմողը երկու աչքից (լոյսն է)։

Հայ կանանց ոմանց Թուրքերէնն։ Սոքա՝ ըստ մեծի մասին՝ չեն կրնար Թուրքերէն լաւ խօսիլ։ Ի հնումն կանանց ոմանց խօսածներն, որ հայախառն են իբրև զուարճալիք՝ դեռ կը յիշուին որ է․

Կին մը իւր դրացի Թուրքի կնոջ մի հարցուցեր է․

«Երկան պարան վիզինդէն պէր կով նէչուն՞ ցանկնդան»։

Ուրիշ մը տեսնելով Թուրքի տղայ մի, որ ոտքը սահելով գետինն ընկած է՝ կըսէ․

«Երեսն Ձի գետինէ՞ նէչուն»։

Այլ կին մի գիւղացւոյ մի ըսած է եղեր․

«Վայն ի վրադ, չոր փատ նէնտուր՝ տի չոր միս մերեմ»։

Դարձեալ․

«Ախշամդան գող օլմաղ. նէ՛րդէ կէս գիշերդէ կէլ»․

«Համտես համտես էնտիկէր, պտուկի կէս էնտիկէր»։

---

## ՀԱՆԵԼՈՒԿՔ

Ի հնումն երբ մէկն հանելուկ մ'ըսէր և չգիտնայրին, խօսողն՝ «Ուխտ մի տուէք որ ըսեմ» կ'ըսէր. որոյ 'ի պատասխանի, աս. Սարգիս կամ Լուսաղբիւր ևայլն. քեզի» կ'ըսէին, և խօսողն հանելուկին մեկնութիւնը կ'ըսէր: *)

Անծակ մարգրիտ.
Անոլոր դերձան.
Աստուծ կու շարէ,
Մարդը կու քաղէ:
(Աստղներ).

—

Լուսիկ, լուսիկ. ուսկի կուգաս.
—Արիւնին կօլէն (կէօլ):
Տապիկդ ինչու ճերմակ է.
—Աստուծոյ հրամանէն:
(Ձրագ և ճարպ):

—

Ծնտիկ ծնտիկ ծրարիկ:
(Թուզ)

—

Տէվէն (ուղղն) համամ (բաղնիքն) է մտեր, պոչը դուրս է մնացեր:
(Դգալ)

—

Վերէն 'ի վար սել (հեղեղ) կուգայ, հինգ ախբարը դէմ կուգայ:
(Քիթը ձեռքով սրբելն է):

—

Երկան է պոչը, կու կրէ կոչը (կէօչ)
(դգալ):

—

Կլոր պաղճա (պարտէզ), բոլորը ցանկած:
(Աչք):

Կապուտիկ, կապուտիկ, անունը տամ չի գիտնաս:
(Ըստ ոմանց, նշանակութիւնը իւր հետ է. կապ և տիկ. և ըստ ոմանց, քէլէք (քալակ) որ կապ և տիկէ կազմեալ կը համարուի):

---

*) Մանկական հանելուկ մ'ալ կայ որ է՝ մանկան ծանօթ՝ դրացի կամ ազգական ընտանիքի մը անդամոց սեռն ու հասակն ըսել, առանց անունն տալու. զոր. տան մէջ հայր մի, մայր մի, որդի մի, հարս մի և երկու աղայք կան. կը հարցունեն. «Տուն մի գիտեմ, տուն մի չի գիտեմ, մէջը կայ երկու էրիկ մարդ, երկու կնիկ, երկու աղայ. աստնք ով են». տղան կը մտածէ, երբեմն առաջին ան-[illegible]ամին, երբեմն չետոյ կը գիտնայ. ուրիշ մը կը հարցուի.

Երկար բարդի՝ շուք չունի
(գետ)։

Անծինը անծինին բեռցուցին,
անդադարին երդօքն անցուցին
(Աղը՝ ջորիին բեռցուցին, Եփրատայ կամուրջէն անցուցին)։

—

Քէրթիկ, քէրթիկ մինարէ
(մզկիթի աշտարակ). մօլլան
վրան կու քալէ։
(Կշռորդ, գանթար)։

Ծընկըռ ծընկըռ մըյատիկ
աշխարհն անով կու դատինք։
(դրամ)։

---

ԱՐՏԱՍԱՆՈՒԹԻՒՆՆ ԴԺՈՒԱՐ ԽՕՍՔԵՐ

Ուլն ի ուռին ելաւ, իր ուլ ոտվը, ուռին ոլըրեց։ (Այս խօսքը 7 անգամ արագօրէն կրկնելու է, մէկ անգամ միայն շունչ առնելով)։

---

Ձուկն ու մուկը մէկ տապակ ձուկը ուտիմ, մուկը նետեմ. մուկը նետեմ, ձուկը ուտեմ։
(5 կամ 7 անգամ կրկնելի է)։

---

ՀԻՔԵԱՑԷԹ ԿԱՄ ՀԷՔԻՑԷԹ

Ինչպէս ամէն տեղ, նոյնպէս և աստ զանազան հէքիյէթներ կը խօսուի, որոնցմէ մէկ քանին աստ գրեցի, համառօտակի, ուրեք ուրեք խօսողին բառերն գործածելով։

1. ՀԱՄԲԵՐՈՒԹԵԱՆ ՕԳՈՒՏՆ.

Հայր մը և աղջիկ մի լեռը կ'երթան։ Աղջկան գլխուն վրայ ագռաւ մը կը թառի, կը կանչէ։ Աղջիկն կու քշէ չեր-

Թար. կը պատմէ հօրն։ Ցաջորդ երկու օրն ալ նոյնպէս ագռաւը կը թառի. յետոյ գետինը կը պատռի. աղջիկն վարի աշխարհը կ'իջնէ. երկար ատեն կ'երթայ։ Դաշտին մէջ պալատ մի կայ եղեր. վեր կ'ելնէ, ուր 40 սենեակ կայ ոսկւով ու մարգարտով լի. ոչ ոք կը տեսնէ. զի ժանտախտով բոլորըն մեռեր են, բաց 'ի կտրիճէ մը որ սենեկի մէջ հիւանդ պառկած է անշունչ։ Քովը կը նստի. բերնին վրայ կը դնէ ձեռքը որ քրտնի. կը հասկնայ թէ մեռած չէ. օշարակ կը շինէ, բամպակով բերանը կը կաթեցունէ. հիւանդը շունչ կ'առնու։ Օր մի, երբ աղջիկն լաթ կը լուայ և տանիքէն կը փռէ՝ անդիէն խումբ մը կանայք և աղջիկ մը կուգան։ Աղջիկն չի գիտնալով թէ եկողներն վհուկ (ճատը) են, ընկեր մ'ըլլալու համար, կ'առաջարկէ մազ մի ոսկի տալ 'ի փոխարէն աղջկանն։ Ճատըներն կը հաւանին. իրենց աղջկան խրատ կուտան թէ «Հոն հիւանդ մի կայ որ 40 օրէն աչքը տի բանայ. նախ զով տեսնէ՝ զայն տ'առնու 'ի կնութիւն»։ Վհուկն աղջիկն հիւանդէն անբաժան կը մնայ։ 40 օրը լրանալուն, երբ աղջիկն բաղնիք կ'երթայ՝ հիւանդը աչքը կու բանայ, ճատըին աղջիկն կը տեսնէ և 'ի կնութիւն կ'առնու։ Աղջիկն բաղնիքէն կուգայ և տեսնելով եղածն՝ խոհարան կ'երթայ։ Տարիներ անցնելէն յետոյ, ճատըն բաղնիք կ'երթայ. աղջիկն երբ միայնակ կը մնայ, տանն աղբիւրին առջև «Սապուռ տաշի» մը կայ եղեր, խարազանն առնելով կ'սկսի զարնել և «Սապուր տաշիմ, սէ՞ն մի սապուրլու, պէն մի սապուրլու» կ'ըսէ ու կուլայ. քարն կը պատասխանէ. «Հանըմ, սէն սապըրլը» սապըրլը»։ Ադ հատըղին (միջոցին) երիտասարդն կուգայ, դուռըն կը զարնէ, աղջկան ըսածներն մտիկ կ'ընէ, կ'իմանայ. վերջապէս, դուռն կը բացուի, աղջկան լալուն պատճառը կը հարցնէ, «Սոխ կեղուեցի» կ'ըսէ. բայց աղան՝ «Սապուռ տաշին հետի խօսքն տ'ըսես» կ'ըսէ. աղջիկն գլխուն գալածը կը պատմէ. աղան ճշմարտութիւնն իմանալով հօճան կը բերէ,

կ'ամուսնանայ աղջկանն հետ։ Ճատըրին աղջիկն երբ կուգայ կը տեսնէ եղածն՝ խոհարան կը քաշուի. մինչև ցայսօր այն (ճա-տըրն) կ'ըլլայ սպասուհի, և աղջիկն ալ կ'ըլլայ տանն տիկին (հանըմ)։

---

## 2. ԴԵՒՔՆ ԻՍԿ ԱՆԶԳԱՄ ԿԱՆԱՆՑՄԷ Կ'ԵՐԿՆՉԻՆ ԵՒ ԽՈՅՍ ԿՈՒՏԱՆ.

Այր մի և կին մի կան եղեր. այրն էշ մ'ունի որով լեռնէն փայտ կու բերէ։ Կինն գիշերն 'ի բուն չի թողուր որ այրն քնանայ, ըսելով թէ այս ինչ կինն զարդեր, ոսկեթել հանդերձներ ունի, դուն չես գներ. էրիկն ալ կ'ըսէ թէ չունիմ. ի՞նչպէս ընեմ։ Բայց, վերջապէս ճարը հատնելով՝ կը խոստանայ։ Միւս օրը երբ լեռը կերթայ՝ հորի մը մէջէն դիւու ձայն մի կուգայ. կը խորհի կինն բերել հոն ձգել։ Եբեկոյեան կինը կ'ըսէ, թէ չի բերե՞ր. կը պատասխանէ թէ գտայ, բայց հորին մէջն է։ Յաջորդ օրը չուան մի կ'առնուն կ'երթան. հորին կափարիչը մէկ կողմ կ'առնու և դիտմամբ կ'ըսէ թէ «Չուանը մէջքս կապէ, իջնեմ ուզածներդ բերեմ»։ Կինն կ'ըսէ թէ «Դուն ի՞նչ դիտես. ես իջեցուր որ ուզածս առնումն»։ Չուանն կնոջն մէջքը կու կապէ, երբ հորին կէսն կ'իջուցանէ, կու ձգէ վար, քարը վրան կու քաշէ և կու փախչի։ Կինն այնքան անզգամ է եղեր, որ դեւըն ուտել կուզէ զկինն, ու չըկրնալով մօտենալ՝ փախչիլ կուզէ. հորին բերանը կ'ելնէ, բայց գոց ըլլալուն հոն կը նստի։ Քանի օր վերջը այրն կ'երթայ թէ ձայն կու գայ. դեւն կը կանչէ թէ «Ինսան օղլու, քարը վե՛ր առ փախչիմ, աս անզգամ կնկանէն ազատիմ»։ Մարդն կը պատասխանէ, թէ «Գնա՛ բանդ. ես ճոռով ատոր ձեռքէն խալսեցայ. հիմա ալ քու ձե՛ռքդ տ'իյնամ»։ Դեւն կ'երդնու թէ «Քեզի չեմ վնասեր. կ'երթամ թագաւորին աղջկան փորը կը մտնեմ, Ռուռեար խուստութի *) կը բռնէ. ամեն

---

*) Սաստիկ փորացաւ։

մը յետոյ, բժշկի լաթ հագիր, Ռօղ մի առ, եկուր կանչէ թէ բժիշկ եմ. երբ ներս տանին, թագաւորը պիտի խոստանայ թէ, եթէ բուժես՝ աղջիկս քեզի կուտամ. անոր փորէն կ'ելնեմ, վէզիրին աղջկան փորը կը մտնեմ. բայց չ'ըլլայ թէ հոն ալ գաս. չէնէ քու փորդ կու մտնեմ»։ Մարդն քար վեր կ'առնէ, դեւը կ'ելնէ, կ'երթայ թագաւորին աղջկան փորը կու մտնէ։ Բոլոր բժիշկները կու բերեն—օգուտ չըներ։ Մարդը ձեռք մի զգեստ կու հագնի, կ'երթայ, բժիշկ եմ կու կանչէ, թագաւորին կ'իմացունեն. կ'ըսէ թէ «Լօգման հէքիմ եկաւ, չի կրցաւ. այս տ'աղեկցունէ». կ'ըսեն թէ «Անգամ մ'ալ այս թող գայ»։ Հրաման կուտայ, մարդն կուգայ։ Թագաւորն կու խոստանայ եթէ բժշկէ՝ աղջիկը տալ. դեղն կը մարէ, աղջիկն կու խմէ, կ'ապաքինի։ Թագաւորն 7 օր 7 գիշեր հարսնիք կ'ընէ. աղջիկը աս մարդուն կուտայ։ Դեւն կ'երթայ վէզիրին աղջկան փորը կը մտնէ. բոլոր բժիշկները կու բերեն, օգուտ չըներ։ Վեզիրն կ'երթայ թագաւորին կ'ըսէ թէ «Երկինք ելանք, աստղերն իջանք՝ ճար չեղաւ» և կը խնդրէ փեսայն ղրկել. թագաւորն հրաման կ'ընէ. փեսայն կը վարանի, բայց հնարք մի կու մտածէ. կ'երթայ որ աղջիկն ինքզինք պատէ ի պատ կը զարնէ։ Դեւն փորէն կը ճչէ թէ «Ես քեզի չ'ըսի՞ թէ չի գաս». փեսան կ'ըսէ թէ «Դեւ աղբար. այն անձուգա կինն քեզ կը փնտռէ, եկի լմէ իմացունեմ»։ Դեւն կ'ըսէ թէ «Ուրեմն կ'աղաչեմ, դէմ կայնէ, ելնեմ ամայի լեռները փախչեմ, մի՛ գուցէ անզգամ կինն զիս գտնէ»։ Մարդն դէմ կու կայնի, դեւն կ'ելնէ լեռները կու փախչի. աղջիկն կ'ազատի։ Այս ի՞նչ է կը հարցնեն. մարդն գլխուն եղածները կը պատմէ։ Այս մարդն որ թագաւորին փեսայացու՝ մինչև ցայսօր դէմ ու տեօվլէթ կու քշէ։ Երկնուցն ինկաւ երեք խնձոր. մէկը ինծի, մէկը հէքիյէթ խօրաթողին, մէկն ալ մէճլիսին։

3. Աղքատիկ պատանի մի յերազի կը տեսնէ որ արեւն մէկ

ուսին վրայ և լուսինն միւս ուսին վրայ է։ Երազ տեսնելն՝ շատերուն և մինչև իսկ Թագաւորին կը պատմէ, բայց «Խայր օլսուն» չ'ըսելուն համար, չի պատմեր և կը բանտարկուի։ Տարիներ անցնելէն յետոյ, Թշնամի Թագաւոր մի դժուար հարցումներ՝ խնդիրներ կը ներկայէ Թագաւորին. շատ կը խորհին, չեն կրնար գիտնալ։ Բանտարկեալք առ ժամանակեայ Թող կը տրուին. երիտասարդն հարցման պատասխաններն կուտայ ուրիշ փափկասուն երիտասարդի մի որ իբրև ինքն գիտցած՝ կը խօսի և մեծ պատիւ կ'ստանայ։ Բայց հարցումներէն յետոյ, արտասովոր ույժի փորձեր կ'առաջարկուի. ազնուականի տղայն չի կրնար, խայտառակ կ'ըլլայ, և վերջապէս, կը գիտցուի թէ այս բանտարկեալն է որ ույժի փորձն յաջողեցաւ, բանտէն կը հանուի և Թագաւորին կը փեսայանայ։ Կռուասէր Թշնամին կնոջ գտակ մի կը ղրկէ Թագաւորին կամ գործածել և կամ պատերազմի պատրաստուիլ։ Փեսայն անարգանօք ետ կը ճամբէ դեսպանն և պատրաստութիւն կը տեսնէ. քաջ ընկերներ գտնելու կ'ելնէ։ (Աստ անոր բերնէն կ'ըսէ խօսողն). «Քիչ գնացինք, դուր գնացինք սար ու ձոր ուղիղ գնացինք. գիշերը չըգնացինք, միշտ ցերեկը գնացինք. ընդամենը մի մախաթի չափ տեղ գնացինք»։ կը տեսնէ մարդ մի որ մէկ լեռնէ ուրիշ լեռան մէկ քայլով կ'երթայ, կը հարցունէ թէ այդ ի՞նչ քաջութիւն է. կը պատասխանէ թէ, այս չէ քաջութիւն, այլ Թագաւորին փեսին է որ 40 կամ 80 լիտր երկաթեայ դուռն բռնցուց մէկ ձեռքով. կ'ըսէ թէ, եթէ ան ըլլայ՝ միասին կ'երթամս. այո, կ'ըսէ. ուրեմն այն եմ կ'ըսէ, միասին կ'առնու։ Անդին ուրիշ մարդ մը կը տեսնէ որ բերանն ձորուն դրած՝ եկած ջուրն կ'ըմպէ. ուրիշ մը ջաղացին քարն գլուխն անցուցած կը շրջի. միւսն ծառերն մէկ ձեռքով արմատախիլ կ'ընէ, և ուրիշ մ'ալ ականջն գետին դնելով հեռաւոր տեղեր եղածներն կը լսէ. վերջապէս ամեն անգամին, վերոգրեալ «Քիչ գնացինք, դուր գը-

նացինք» ևայլն ըսելով՝ 7 քաջ կը գտնէ. պատերազմի կը հրաւիրէ Թշնամին. Նորա բանակին դէմ մարդոյ զգեստներով զինուորներ կը ձևացնէ քարերով. Թշնամիք մինչև երեկոյ հրացան կ'արձակեն և իբրև թէ կը յաղթեն. միւս առաւօտուն հետաքայլն կ'երթայ ուտելիք կը պահանջէ Թշնամիէն, որ շատ մի ուտելիք կը ղրկէ և շատակերն իսկոյն կը լափէ, քանի մ'օր դարձեալ կը պատերազմին։ Յետոյ Թշնամին երբ կը տեսնէ թէ անյաղթելի են՝ ծանր վնասներով ու պայմաններով հաշտութիւն կը կնքէ։ Փեսայն կը փառաւորուի և Թագաւորն իւր իշխանութիւն փեսային կուտայ։ Երիտասարդն յանժամ կը յիշեցունէ երազ տեսնելը «ինչ ըլլայ» կ'ըսեն. կը պատմէ և կը մեկնէ միանգամայն, թէ բարեգուշակ երազն կատարուած է. զի «արևն Թագաւորութիւն է, զոր ստացաւ Թագաւորէն, և «լուսինն» նորա գեղանի դուստրն է, որ այժմ իւր կինն է։ *)

---

## 5. ՓՈՔՐ ՊԱՏՄՈՒԹԻՒՆՔ

1. Մուրացկան ծերուկ մի գիւղ մը կ'երթայ, տան մի մէջ հիւր կ'ըլլայ։ Երեկոյին տղայք շուրջը կը ժողովին և կ'ըսեն «Պապա, պապա, հէքիյէթ մի խօսըթէ». Ծերուկն կը սկսի տղայոց սովորական խաղն ասել. «Հէքիյէթ, հէքիյէթ աս պապս. պարնին լաթերը՝ պարկս, կարմիր ձիակը՝ տակս, խատուտիկ հարսը կրնակս, առտուանց ելլեմ՝ չի գտնես աս պապս»։ Տղայք առանց ըսածն հասկընալու, կը խնդրեն, կրկնել կուտան հէքիյէթն։ Առտուանց կ'ելնեն կը տեսնեն որ ծերուկն կանուխ մեկնած է. չուանին վրայի հանդերձներն, ախուին ձին և տանն հարսնուկն միասին տարած է։

---

2. Ճանապարհին աւազակներէ կողոպտեալ մէկն, երբ իր

---

*) Այս հէքիէթը վաղուց լսած եմ և մանրամասնութիւնները մոռացած. Յիշածս համառօտակի գրեցի։

կողոպտման դէպքը այլոց կը պատմէ, ըսած է. «Երբ ասաց թէ «ասոյունն», այն ժամանակը սուրբ հոգին վկայեց թէ գող և աւազակ է»։

---

3. Բռնաւոր սկեսուր մի իւր զօրութիւնն նորեկ հարսին հասկցնելու և երկիւղ ազդելու համար՝ ըսած է «Գալ (գայլ) եմ, մարդ կուտեմ»։ Երբ զայս կը կրկնէ քանիցս, հարսն քողին ներքևէն ըսած է. «Կ'երևայ թէ սև շան ռաստ չես եկեր»։

---

4. Գիւղացի մի իշուն թան բեռցած՝ քաղաք կ'երթայ եղեր. ուղևոր մի կը հանդիպի, որ կ'ըսէ. «Աղբա՛ր, կարծեմ դուն այս ինչ գիւղէն ես»։ Գիւղացին կը պատասխանէ. «Այո՛»։ —Կարծեմ այս ինչ տեղը կերթաս.—Այո.—Կարծեմ այդ բեռը թան է.—Այո՛ թան է.—Կարծեմ այդ թանէն գաւաթով մի պիտի տաս խմիմ։ Գիւղացին կը պատասխանէ «Ի՛նչ կու կարծես կարծէ, այդ մի՛ կարծեր»։

---

5. Ոսկերիչ մի արծաթեայ զարդ կամ սպաս մի պիտի շինէ եղեր։ Դիցուք թէ յանձնարարեալ զարդին համար 100 տրամ արծաթ պէտք է, բայց նա ոչինչ ունի։ Կը խորհի թէ, եթէ կարենայ 50 տրամ արծաթ փոխ առնուլ՝ մնացեալ 50 տրամին տեղն կրնայ պղինձ խառնել։ Այս խորհրդով՝ արհեստակցի մը կ'երթայ և կ'ըսէ «100 տրամնոց զարդ մի պիտի շինեմ, բայց 50 տրամ արծաթ կը պակսի ինձ. փոխ տուր»։ Արհեստակիցն խորհուրդ կու տայ թէ «Բարեկամ, 50 տրամ ալ պղինձ խառնէ»։ Կը պատասխանէ միւսն «Եղբայր, այդ քու ըսածդ (պղինձն) ունիմ. ինձ պէտք եղածն զուտ արծաթ է»։

---

6. Կ. Պոլսեցի հայ մի մէկու պատմած է թէ «Անգամ

մի տէրվիշ մը, որ իբրև թէ փոշիէ մը ոսկի շինելու արուեստն գիտէ՝ կը համոզէ զՀայն, որ բաւական ընծաներ կուտայ տէրվիշին, և սա նորա տանն մէջ թով մի շինելով կտոր մի ոսկի կը շինէ, և աշակերտին՝ Հայուն ալ սոյն շահաւէտ արուեստն շարունակելու համար մաս մի փոշի և ամեն հրահանգ կուտայ, բայց կը պատուիրէ թէ «Փոշին ձգած պահուդ՝ որ ոսկի պիտի փոխուի, կապիկը (մայմունը) միտքդ չի բերես»։ Տէրվիշն կը մեկնի և Հայն իւր նոր արուեստն կ՚սկսի. բայց երբ փոշիին ժամանակն կուգայ, դժբաղդաբար, մայմունն չյիշելու պատուէրն կը յիշէ և գործն չի յաջողիր. կը կրկնէ, կ՚երեքնէ և ամեն անգամ մայմունն անյաջողութեան կը մատնէ խաբուած աշակերտն։

---

Քանի մը հատ ալ Թուրքերէն խօսուած պատմութիւնք։

7. Գիւղացի մի յոռետես և չարագուշակ լինելով՝ անունը «Խայըր սէօյլէմէզ» կը դնեն։ Հարուստ դրացիներէն մէկն կը պատրաստուի հաճճ ուխտի երթալ. ուստի յիշեալ մարդն կը կոչէ և կ՚ըսէ. «Խայըր սէօյլէմէզ, լաւ բան մի խօսէ, երթամ գամ, քեզի աղեկ ընծայ մի կուտամ»։ «Բարի, կը պատասխանէ մարդն, բայց եթէ երթաս ու չի գաս»։ Ուխտաւորն վերադարձին, երբ հեռուէն կը տեսնէ գիւղացին ընդ որս և խայըր սէօյլէմէզն՝ որք ընդ առաջ կուգան, կը խորհի թէ որովհետև բարի լուր մը չպիտի տայ, այնպիսի բան մը հարցնելու է, որ մեծ վիշտ մը չի պատճառէ. ուստի երբ կը մօտենայ, կը հարցնէ «Խայըր սէօյլէմէզ, փոքրիկ շունս ինչպէս է»։ «Տէր իմ, կը պատասխանէ, ձեր իշուն դիակը կերած ժամանակը կոկորդին մէջ ոսկոր մի մնաց և սատկեցաւ»։ Ուխտաւորն հետաքրքրելով կ՚ըսէ. ուրեմն էշն ալ սատկեցաւ։ —Մի հարցաներ, տէր իմ, հօրդ գերեզմանին քար կրած ժամանակն ընկաւ սատկեցաւ։—Ի՞նչ կ՚ըսես, հայրս մեռա՞ւ։—Մօրմէդ 3 օր առաջ.—Ո՛հ, մայրս ալ մեռաւ.—Այո՛, տունն

այրեցաւ, այն ալ մէջը մնաց, այրեցաւ.—Ուրեմն տունն ալ այրեցաւ.—Այո՛, բոլորն այրեցաւ. Հոս եկած ժամանակս գարի կը ցանէին։

---

8. Թուրք մի կ'ամուսնանայ կնոջ մի հետ։ Յաջորդ առաւօտուն կինն՝ որ յոյժ տգեղ է եղեր, կը հարցնէ անոր. «Որո՞ւ երևան ելնելու է և որու ոչ»։ Այրն, որ առաջին անգամն ըլլալով կնոջն երեսն կը տեսնէ՝ կը պատասխանէ տըխրութեամբ. «Ինծի մ'երևար, բայց ուրիշ որու կ'ուզես, երևա»։

---

9. Տ. Գարահիսարի գիւղացի մը գիւղին հօճային վըճռագիր մը (իլեամ մի) կուտայ կարդալու։ Հօճան, որ ուսեալ չէ և իլեամին նամակ կարծած է եղեր՝ կ'սկսի նամակի ոճով ընթեռնուլ, սակաւ ինչ յետոյ ներկայից մէկուն կ'ըսէ. «Սանա սէլամ եազմըշ» (Ողջոյն գրած է քեզ)։ Սակաւ մի յետոյ, ուրիշի մը ևս կ'ըսէ. «Սանմատա սէլամ եազմըշ»։ Իլեամին տէրն տեսնելով թէ «Եարև»-ներն շատցան՝ կ'ըսէ. «Հօճա պու մէքթուպ տէյիլ տըր, իլեամ տըր. (Նամակ չէ այս, հօ՛ճա, վճռագիր է)։ Հօճան կը պատասխանէ. «Եա՛. տեսէ՞նէքի իլեամ կիպի օգույայըմ»։ (Չըսէ՞ս որ վճռագրի պէս կարդամ)։

---

10. Խումբ մի երիտասարդք կ'որոշեն փոխադարձ հացկերոյթ տալ գառան միսով և կ'սկսին կարգաւ կատարել։ Ընկերաց մին՝ այլ ընկերի մը, որոյ կարգը հետևեալ օրն է և երկու գառն պատրաստ ունի՝ կ'ըսէ. «Փոխանակ այդ երկու գառներով խումբ մի մարդ հրաւիրելու, վաղն ըսէ թէ «Գիշերս գառները գողցան». այսպէս ազատ մնալով այդ պատրաստութենէն, յետոյ մեզ՝ երկուքիս կը մնայ գառներն»։ Ընկերն կը համոզուի այնպէս խօսիլ, բայց նոյն գիշերը

գառները իրօք կը գողցուին։ Հետեւեալ առաւօտուն, կ'երթայ խրատատու ընկերին և կ'ըսէ «Բարեկամ, չըսէ՞ս որ գիշերս գառները գողցան»։ «Այո՛, բա՛րեկամ, կը պատասխանէ ընկերն, արդէն խօսուածնուս համեմատ գողցուած են.—Ոչ, կ'ըսէ, ստոյգ գողցուած են.—Զիս ալ կ'ուզես հաւատացունել, բայց լաւ է. այդպէս պէտքէ ըսես և պնդես.—Ո՛չ, բարեկամ, կ'երդնում որ գողցուեցան.—Լաւ, ահա այդպէս երբեմն երդումն ալ ընելու ես։ Վերջապէս, ինչ որ կ'ըսէ չի հաւատար ընկերն և ինքն ամօթապարտ կը մնայ խմբակին քով։

---

11. Երեք մարդ ընկերութեամբ բաղնիք մը կը վարձեն. հասութից արկղը կը կնքեն և պայման կը դնեն տարին լրանալուն միայն բանալ և դրամը բաժնել։ Կ'սկսին փոխընդփոխ հսկել։ Առաջին անգամ արկեղ գլուխն նստողն կը խորհի, թէ ինչո՞ւ եղած հասոյթը արկղիկը ձգեմ. ես՝ իմ օրով եղած դրամը ինձ կը պահեմ. ընկերներս պիտի ձգեն. տարեգլխոյն, արկղը կը բանամք և կը բաժնեմք։ Այսպէս ընելով իւր աւուրց հասոյթներն գաղտնապէս իւր գրպանն կը լեցունէ. բայց երբ կարգը միւս ընկերաց կուգայ՝ անոնք ալ ճիշդ միւսին նման խորհելով հասոյթները կը գրպանեն։ Տարեգլխոյն՝ երեքն միասին կը բանան արկղը, ուր կնքեալ օրուան պէս՝ դանկ մը չի կայ, կը հասկնան եղածը և մէկը կ'ըսէ «ընկե՛րք, նպատակնիս մէկ է եղեր»։

---

12. Խուլ մի կ'ուզէ այցելել իւր բարեկամներէն միոյն, որ հիւանդ է։ Նախապէս, իւր հարցունելիքն և անոր հաւանական պատասխաններն ինքնին որոշելէ յետոյ՝ կերթայ հիւանդին քով, և կ'ըսէ. «Ի՞նչպէս ես. աղէ՞կ ես»։ «Կը մեռնեմ, կ'ըսէ հիւանդն։ Այցելուն կարծելով թէ «աղէկ եմ» սովորականն պատասխանն տուաւ, կը յաւելու «Աստուած տայ», Յետոյ կը

հարցնէ «ի՞նչ կուտես»։ Հիւանդն կը պատասխանէ. «Զէհիր զըգըմ» (Թոյնի պէս դառն բաներ)։ Խուլն ենթադրելով թէ ապուր կամ այս ինչ անմնաս կերակուրն ըսաւ, «լաւ է, առողջարար է՝ կը պատասխանէ։ Ետոյ, մեր խուլը կը հարցնէ. «Ո՞ր բժիշկ կը խնամէ»։ „Գաբրիէլ հրեշտակապետն» կը պատասխանէ հիւանդն վշտագին։ Այցելուն ենթադրելով թէ, այս ինչ բժշկին անունն տուած է, կ՚ըսէ. «Այո, լաւ բժիշկ է. յաջողակ և բաղդաւոր է»։ Մեր խուլ այցելուն բաւական մխիթարած համարելով իւր հիւանդ բարեկամն, կը մեկնի բարեբաղդաբար։

13. Կը պատմեն թէ հայր մի իւր որդւոյն հետ Կ. Պոլիս պանդոկի մի մէջ կը բնակին եղեր։ Հայրն քիչ մը պանիր գնելով՝ շիշի մի մէջ կը դնէ ու ճաշէ ՚ի ճաշ ՚ի սեղան կը բերէ. բայց ոչ թէ պանիրէն կուտեն, այլ հացին ամեն մէկ պատառն շիշին վրայ քսելով կը բաւականանան եղեր։ Օր մի հայրն հոն չի գտնուած պահուն, որդին կ՚անօթենայ, և ձեռքը կտոր մի հաց կ՚առնու պանրով ուտելու։ Եւ որովհետև պանիրն դարակին մէջ է եղեր, որ կղպուած է՝ դարակին դրան վրայ քսելով կ՚ուտէ։ Այս միջոցին հայրն կուգայ, և տեսնելով զորդին դարակին առջևը՝ կը հարցնէ, թէ ի՞նչ կ՚ընէիր. «Անօթեցայ, կը պատասխանէ որդին, հաց առի, և որովհետև պանիրն կղպած էր՝ հացն դարակն կը քսէի ու կուտէի։ Հայրըն բարկանալով՝ ապտակ մը կը զարնէ որդւոյն և կ՚ըսէ. «Կը ճաթէի՞ր, այսօր ալ առանց պանիրի թող ուտէիր»։

14. Մազմանենց Հաճի մայր մի կայ եղեր, զոր Երզնկան կուտանին (28 ժամու ճանապարհ էր). երբ Ակնայ դիմացի լեռն կ՚անցնի և քիչ մի կ՚երթայ, (անշուշտ ձիով)՝ կ՚ըսէ որդւոյն «Մաթոս, եայլն. Երզնկան չանցնինք»։

15. Կին մ՚որ իւր ննջեցելոց հոգւոյն համար յաճախակի նուէրներ կուտայ եղեր հանգուցեալ տէր Գ–ին օր մի կը հարցնէ «Տէր պապա, արդեօք արքայութիւն տ՚երթամն». «Օ՛րհնած, կը պատասխանէ. դուն ալ չերթաս, ո՞վ տ՚երթայ»։

---

16. Կը պատմեն թէ հին ատեններն Ակնէն խումբ մը մարդիկ, այր, կին, տղայ Արակայ ս. Գ. Նարեկացիին ուխտի կ՚երթան։ Այս ուխտաւորաց մէջ աղքատիկ մարդ մ՚ալ կայ եղեր, որոյ կինն հիւանդոտ և քալելու անկարող լինելուն, և այրն ջորի մը վարձելու իսկ դրամ չունենալուն՝ կը շալկէ զկինն և կ՚երթան խմբին հետ։ Երբ կարաւանն քաղաքին վերևն Կապանի մօտերն կը հասնի՝ հեծեալ կամ հետիոտն ուխտաւորներէն ոմանք կ՚սկսին զանազան երգեր երգել։ Զայս տեսնելով կինն, առանց խղճալու ամուսնոյն վիճակին, որ կին-բեռան ներքև արիւն քրտինք մտած, համբերատար ուղին կը շարունակէ՝ կ՚ըսէ առն. «Հմուասուղ, (եռանդ չունեցող) բան մ՚ալ դուն կանչէ»։

---

17. Կ՚ըսեն թէ երբ 60 տարիներ յառաջ, Միսաքեան աղաներէն մին, (ըստ ոմանց Պետրոս աղայն՝ հայրն Միսաք ամիրայի) դրացի Հայու մը, Կոկենց Քէլ ըսուած կռուասէր անձին ուլն հրացանով կը զարնէ։ Ուլին տէրն կ՚երթայ Վօյվօտային կը գանգատի, որ ռէյման (ոստիկան) մը ղրկելով Միսաքեանն կը կոչէ։ Սա երթալով վօյվօտային, և հարցնելով թէ ուլին գինն քանի՞ դահեկան էր, կը վճարէ յայտարարելով, թէ «Ես աժան գնով մի քանի մը գործ միանգամայն կատարեցի. 1. ինքզինքս փորձեցի թէ կրնամ լաւ նշան զարնել. 2. թէ հրացանս ինչպէս է. 3. թէ դրացիս աննշան մէասու մի համար կառավարութեան պիտի բողոքէ՞ թէ ոչ. 4. թէ դուք ալ այսպիսի աննշան գործի մը համար ոստիկանաւ զիս հոս պիտի բերէ՞ք»։

18. Յիշեալ Միսաքեան գերդաստանէն Մ. Պօղոս աղայն կամ եղբայրն, օր մի եկեղեցիէն 'ի տուն մեկնած միջոցին կը մոռնայ գլխարկը (գալբագը) առնուլ. մէկին կ'ըսէ թէ «նա խալբախս տուր»։ Այն անձն ալ կը փութայ բերել և տալ։ Յետոյ Միսաքեանի հետ նորա տունն կ'երթայ. կը նստի, կերակուր կուտէ և կը մեկնի։ Հետևեալ օրն դարձեալ կ'երթայ, և մեծատունն դարձեալ կը պատուէ գալբագն տուողն։ Բայց երբ յաջորդ օրն ալ կ'երթայ, անշուշտ գալբագն տուած ըլլալուն համար՝ Միսաքեանն չհանդուժելով այլ ևս՝ կ'ըսէ. «Աղբար, չըսանք (երանի չսաէի) թէ խալբախս տուր»։

19. Զոհրապեան վարժապետն և երկու ամիրայ կամ աղապետերքն զբօսնլոյ կ'երթան, Զորբերանի վրայի պարտէզն կը նստին և նարտ (թավլ) կը խաղան եղեր։ Ի զուարճութիւն՝ պայման կը դնեն, թէ ով որ խաղը կորսնցնէ՝ զԶոհրապն շալկէ։ Երբ անոնք խաղալ կ'սկսին, վարժապետն կ'սկսի պատրաստուիլ։ Կ'ըսեն թէ «Կեցիր նայինք, ո՞վ պիտի յաղթուի»։ «Որովհետև, կը պատասխանէ Զոհրապն, անպատճառ մէկդ պիտի յաղթուիք՝ ձեզմէ որդ որ ըլլայք՝ ինձի համար հոգ չէ, ես այժմէն պատրաստ եմ»։

---

20. Կ'ըսեն թէ հանգուցեալ Տէր Մ..ի տունն հիւր մը կ'երթայ, և քիչ մը վերջը մեկնիլ ուզելով՝ երեց կնոջն որ ներքնազարկին է եղեր՝ կը կանչէ. «Երէցկին մայր, խահուէ չեմ ուզեր»։ Վարէն կը պատասխանէ երէցկինն «Եփո՞ղն ով է»։

---

21. Յիշեալ տան՝ դրացիները ընտանիքով երեկոյ մի այցելութեան կ'երթան։ Երբ կը տեսնեն թէ երէցկինն և ընտանիքն հետզհետէ բոլորն ալ քնացան՝ իրենք ալ կը մեկնին իրենց տունն։ Առտուանց, երէցկինն յիշեալ դրացի կնոջն երթալով կը յանդիմանէ ըսելով թէ «—ոնց հայրս, (տան անու-

*նըն), արածիդ կը հաւնի՛ս, դիշերս կ'երթաք կ'երթաք, ճրա-գը ինչու չէիք մարեր»։*

---

22. *Կին մի 'ի տուն կոչելով հանգուցեալ Յ. քահանայն՝ 'ի Կ. Պոլիս կամ այլուր գտնուող ամուսնոյն կամ ազգականին նամակ մը գրել կուտայ։ Երբ կը լրանայ նամակն՝ կ'ըսէ. «շնորհակա՛լ եմ Տէր պապա, աչքդ լուս, ձեռքդ դալար»։ Տէր հայրն տեսնելով որ օրհնութեամբ միայն կը վարձատրէ՝ կ'ը-սէ. «Օրհնած, Աչքդ քեօրնա՛յ, ձեռքդ չորնայ ըսէ, ու 40 փա-րա տո՛ւր»։*

---

23. *Երբեմն Ակնայ առաջնորդ Նիկողայոս եպիսկոպոս Աղասեան, կամ ըստ ոմանց տիգրանակերտցի Յակոբ եպիսկո-պոսն, որ մի ծերունի Տ. Յ. քահանայն կոչելո՛վ կը պատուի-րէ օղի չխմել այլ և։ Տէր հայրն յետ բազում խնդրանաց կ'ըսէ. «Հայր սուրբ, իրիկուընէ իրիկուն երկու գաւաթ (խա-տէհիկ) մըլ չխմեմ. «Ո՛չ, չ'ըլլար, կ'ըսէ եպիսկոպոսն, բնաւ չի պիտի խմես։ Տ., հայրն գիտնալով որ չի պիտի կրնայ օղիէն բոլորովին հրաժարիլ՝ կը պատասխանէ «Մառա՛յ իմ, Հա՛յր սուրբ, ինծապը նայէ (ինչ որ ընել պէտք է, ըրէ)»։*

---

24. *Կ'ըսեն թէ Զմըշկածագի Ս. Թորոսի գիւղացիներէն 2 հոգի խօսակցած ժամանակ, մէկն ըսած է միւսին թէ «Աճապ փատիշահ նէ՞ իէր (արդեօք թագաւորն ի՞նչ կուտէ). —Նէ՞ իէճէք, (ի՞նչ պիտի ուտէ), գոյրուգ կախըրտաղի իլէ, սողան ղըլլիկի. (հալած դմակի խառնըզին և սոխի միջուկն). —Հէր կիւն պուլուպտա իէ՞յի մի.—Եա՛, փատիշահ տըր, պուլուպտա իէյի. (ամէն օր կը գտնէ ու կուտէ՞.—այո, թա-գաւոր է կը գտնէ և կուտէ)»։*

---

25. Ակնայ Հաբեչնոց կամ Աղրակ գիւղացիներէն մէկն հարցեր է գիւղացւոյ մը թէ «երբ լուսինն լրանայ, ինչ կ'ընեն»: Կը պատասխանէ ուրիշ մը. «Ինչ պիտի ընեն, մանրելով մանրելով աստղ կը շինեն»:

29. Հայ կամ Հայ-Հոռոմ կին մը կոչելով տան երէցն՝ կը զանգատի տանն կատուէն, թէ այս ինչ պղնձէ ամանէն ջուր լակեր է, կը խնդրէ օրհնել պղծեալ անօթն: Ըստ խնդրանացըն տէր-պապան կ'օրհնէ պնակն և կը մեկնի: Քանի օր յետոյ դարձեալ կը հրաւիրէ և նոյն անօթն կամ ուրիշ կաթսայ մի օրհնել կուտայ: Երբ տէր-պապան երրորդ անգամ կը կոչուի՝ կ'ըսէ. «փոխանակ կատուին լակած անօթներն հետզհետէ օրհնելու, լաւագոյն է մի անգամ և եթ կատուին բերանը օրհնել, որ լակածն պիղծ չհամարուի»:

---

30. Սկեսուր մի իւր հարսին հետ նստած խրատներ կուտայ: Տուն մի ունին եղեր, որ նա ևս քովերնին նստած է: Երբ կեսուրն իւր խրատներն աւարտելով կ'ըսէ թէ «հասկցա՞ր քսածներս», կը պատասխանէ հարսն, թէ «Նինէ խաթիւն, քանի խրատ տալ ես պաշլայեր շունը 7 ճոնճ (ճանճ) կլլեց» *):

---

# Գ. Է.

## ԱՌԱԾՔ **)

Երբ խօսքի մէջ առած մի պիտի ըսեն՝ սովորաբար նախ «Մեծունաքը (նախնիք) ըսեր են թը» կամ «Մեծսունաքը պօշ (պարապ) տեղ չեն թողուցեր» կ'ըսեն, և յետոյ իբրև վկայութիւն պատշաճ առածն կ'ըսեն:

*) Կրճատմանց մասին տես ի վերջ գրքիս:
**) Կրճատմանց մասին տես ի վերջ գրքիս:

1. Աժան մսին շուրվան (կերակուր մ'է) շունը չէ կերեր։

2. Ախը (աղխը) գիտէ դրանը վախը. (կ'ըսեն նաեւ վախը գիտէ դրանը աղխը)։

3. Ածան հաւը կարգըճան կուլլի։

4. Աղբարը պարուն է՝ իր տիրուն (կնոջն) է։

5. Աղբորորդի՝ իմ որդի. քուր որդի՝ շանորդի։

6. Աղջիկն իր քէֆին (կամքին) թողուս, կ'երթայ քէօչէկը (կաքաւող, անպարկեշտ պատանի) կ'առնու։

7. Ամենը սուտ՝ Աստուած իրաւ։

8. Ամեն տըպա (անգամ) կամ տարի գետը չ'եըլլեր (հեղեղով չի յորդեր) ու գետուտի (գետի բերած փայտեր) բերեր։

9. Ամպ օրը հաւուն ջուր տուող շատ կըլլայ։

10 Ան բանն ուր զօրով (բռնի) տ'ըլլի, ան երել պէտք է կրակով։

11. Ան մարդն ուր մեծ չունի, թող երթայ մեծ կարաւըն հարցնէ։

12. Աչքը լուսուն վատ չուզեր։

13. Առնողն ուր տուող ըլնի, բոշին հարսը խաթուն կուլլի (կը լինի)։

14. Առջի խօսողը գիտնայ թէ ետքի խօսողը ինչ տի խօսի՝ առաջի խօսողը չիտի խօսի։

15. Առջուն խաղը՝ գոզողին (տկար) մահ է՝։

16. Առղանը ծակէն Հնտուստան սէյիր կ'անին (կը դիտեն)։

17. Աստուած հացը մեկին կուտայ, իշթահը (ախորժակը) մեկին։

18. Ավան (Ենիչէրի տեսակ մի անկանոն զօրքեր) գայ, փիլաւ ուտինք։—Կան մարդիկ որ նեղութեան աւուրց կ'ըսպասեն, ուսկէց իրենց շահ կայ։

19) Արունը՝ արունով չեն լուանար. ջրով կը լուանան։

20. Արունը ջուր չիլլիր։—Եղբարք կամ մօտ ազգականք

որչափ ալ հակառակին, կուգայ ժամանակ որ կը համակրին։

21. Բանը (գործը) աւուր մի, հոգը տարուան մի։

22. Բարեկամի հետ կեր, խմէ՛, առուտուր մ՚ըներ։

23. Բարկ թանիրը՝ բարկ երիկ մի կ՚արժէ։

24. Բարկ քացախը իր ամանը կ՚երէ (կայրէ)։

25. Բարով ըսէ ուր (որ) բարով փոմոզը (երակը) անճի։

26. Բերեր տուրկ, բերեր թսիկ, մօրն ու քրոջն է. բերեր օղեր, ապրճանններ, ան իր կնոջն է։

27. Բրտէն տող (ողջ) մա (փարչ, պտուկ ևայլն). կոյլինը (եթէ կոտրի) բաղդիդ։

28. Գալուն աչիցը առաւ։ *)

29. Գալուն հետ կ՚ուտէ, տիրոջն հետ կ՚աղւակուի (ցաւել)։

30. Գալուն տունը պաստրմա (ապուխտ) չիմնար։

31. Գարնան արեւը՝ տղուս ու հարսիս վրայ, աշնան արեւը՝ փեսիս ու աղջնիս վրայ։

32. Գարնան [illegible] (յաջորդն) աշուն է, ան փերթն (փինէ) ալ ան կաշուն է։

33. Գետատարը ձեռքը օձն է ձգեր։

34. (Լուրը, գաղտնիքը) գինովէն ու տխմար տղէն (իմացիր)։

35. Գնա մեռիր ու՛ եկուր սիրեմ։

36. Գողը գողէն գողացաւ, Աստուած տեսաւ զարմացաւ։

37. Գողուն սիրտը դող կուլլի։

---

*) Առիւծն, գայլն և աղուէսն ընկերանալով ոչխար մի կ՚որսան. բաշխումն գայլին կը յանձնուի։ Անմիտ կենդանին լաւ կտորները իրեն կը պահէ. առիւծն զայրանալով կը զարնէ գայլին՝ որոյ աչքերը կը կուրանան։ Յետոյ նոյն պաշտօնը կը յանձնուի աղուէսուն. սա՝ դմակը և լաւ կողմերը առիւծին բաժին կը հանէ և երբ նա կը հարցնէ թէ «Այդ բաշխումը ուսկէ սովրեցար»։ «Գայլին աչքերէն», կը պատասխանէ աղուէսն։

38. Գրողն եկեր տղայ կու ճառղէ (բաշխել)․ մերը թող չ՚առնէ, իրն՝ իրեն թող լընի։

39. Դահեկը ք՚զ (քան զ) մարը սրտցմէ է.—Ոչ։

40. Դանակը՝ իր կոթը չի (կրնար) քերեր։

41. Դեղ է նը՝ ան ալ հերիք է, թը մօշու ծաղիկ նը՝ ատ չի գիտեմ։

42. Դուռըդ ամուր պահէ, դրացիդ գող մի՛ բռներ։

43. Դրացնիդ կով մի ուզէ, Աստուած քեզի երկուք տայ։

44. Եա՛ (կամ) բարով, եա բարովի ընկեր։

45. Եզը մուսանտարան մի՛ հաներ։—Մինչդեռ կայ դիւրութիւն, դժուարը մի՛ գործեր։ (Ինչպէս որ ժամանակաւ Ապուչեխցիք եզը մորթելու համար փոխանակ դանակը վար առնելու, եզը մուսանտարան հանած են, կ՚ըսեն)։

46. Եզը իյնի՝ դանակը կու շատնայ։

47. Ելեր հերսակ (զայրանալով) կըցեր գլխակ, իջեր հերսակ, չի կայ գլխակ։

48. Ես աղա, դուն աղա․ տէկիրմէնը (ջրաղացքը) ո՞վ տ՚աղայ։

49. Երբ ուր ձախ է՝ կապպատ ծախէ.

50. Երթամ Սամսուն, գամ Կռասուն․ ալ՚ի վար պէտք չէ։

51. Երթանք օվան (դաշտը) խմենք թան, թը որ տան։

52. Երկան բռնէ, կարճ չի գայ։

53. Երկու ղչնդը (ամուր) պատ է պատռեր։

54. Երկուք չափէ, մէկ մի կտրէ։

55. Զրկուողն ապրեր է, վայ եկեր զրկողին։

56. Էշը՝ իշուն քովը կապես, եա՛ առուցը կ՚առնէ, եա՛ փառուցը։

57. Էշը հարսնիքն իմ ձեներ․ եա՛ աղն է պակաս եա՛ մաղը։

58. Էշն ինչ գիտէ թը նուշն ինչ է։

59. Էշն ուր էշ է, մէկ անգամ մի չամուռը (ցեխին մէջ) կ՚իյնի։

60. Ըռատ (առատ) ջուրը տեղ չի պարտկիր։

61. Թանիշը (գիւղացի ծանօթն) եկաւ խնտացանք. պարկը բացանք նը լացանք։

62. Թափած եղը չի ժողովուիր։

63. Թը շահպու գերի լընիս՝ հացդ ուտես պահիկ մի հանկէ։

64. Թուլթը՝ թութը կու նայի, կու հասնի։

65. Թուխ աչքը մօրուց պիտի. դեղ դրածը թեղ (շուտ) կ՚աւըրրի։

66. Ժամը կու հանէ մարդուն սրտին գամը (բեւեռ)։

67. «Իմ ու քու» բանին վրայ՝ ձուն եկեր հեղեղն 'ի վրայ։

68. Իմ սէրս 'ի քեզ, իմ գանգատս ալ 'ի քեզ։

69. Ի՛նչ որ ցանես, ան տի քաղես։

70. Իշուն ըսեր են թէ մարիֆէթդ (ճարտարութիւնդ, գիտութիւնդ) ի՞նչ է, պոչը վեր առեր տ... է։

71. Իշուն պոչը մարդու քով մի՛ կըցեր, ո՛րը երկան կ՚ըսէ, ո՛րը կարճ։

72. Լաւ է աչքն ելլէ՝ քան զանունն։

73. Լաւ է իմաստուն մեղաւոր՝ քան զյիմար արդար։

74. Լաւ է հիւանդը քան զհիւանդկալը։

75. Լաւ է հոտած քան զհատած։

76. Լաւ է մեր մոզին, քանթէ գնալ դուռը բոզին։

77 Խամաց եշէն մի՛ խառնուիր. «Տանի՛ր զքեզ»։ *)

78. Խաչը տէրը զօրաւոր կ՚անէ։

76. Խելքերը ծախու ին հաներ, ամեն մարդ իր խելացն է հաւներ։

80. Խելօք կեցիր ուր շատ ապրիս։

81. Խենթը գոմէ՞ (գոմէ որ) ելլէ խաղայ։

---

*) Ըստ աւանդին, երբեմն ցորեանն յԵրուսաղէմ ուխտի երթալուն, կ՚աղաչէ զգարին հացի, ապուրի եւայլ պարզ ուտելեաց համար իւր տեղը բանել. երբ գարին կը հարցնէ թէ «Խմորեղէն կերակուր ալ ըլլա՞մ», «Ոչ, կը պատասխանէ ցորեանն, Խամաց եշէն մի խառնուիր» (զի անկարող ես առ այդ)։

82. Խենթը խուլյան (հօրը) քար մ՚է ձգեր, 40 խելօք չեն կրցեր հանել։

83. Խենթին ուտինք, խելօքին պահենք։

84. Խենթն է գացեր հարսնետունը, աս աղէկ է ք՚զ մեր (քան զմեր) տունը։

85 Խժոտ ընկոզը (ընգոյզը) մախթով կը փորին։

86. Խոշոր աչուին լուս չունի, հաստը թևերն ուժ չունի։

87. Խօսքը թ է ք չիլլիր, չիֆտ (զոյգ) կուլլի։

88. Խօսքը՝ մեծին, ջուրը՝ պզտիկին։

89. Ծոյրը (ծանր) կեցիր (կեցի որ) լիր (լիտր) գաս։

90. Ծուռ նստինք, տըրուստ (ուղիղ) խօրըթինք։

91. Կակղնաս չօրպաճ (ապուր) թող ըլլայ. *)

92, Կամաց երթաս, կամկար կ՚ըսեն, թեզ, թեզ (արագ) երթաս շըլեաս կ՚ըսեն։

93. Կատուին փինին դեղ լին ըսեր, խորունկ է թաղեր։

94. Կատուն քացախ չի խմեր։

95. Կիշէռած քարը չի պակսիր։

96. Կոյած (կոտրած) կամ կըյած (կտրած) հացը չի կոցուիր։

97. Կովուն տէրը ամեն օր մածուն չուտեր։

98. Կուշտն ի՞նչ գիտէ թը (թէ) աշխարհս անօթի կայ։

99. Կուսը (հատիկը) կուտին օգ է (օգնական է)։

100. Հա՛ (այո՛) ըսէ ու կաւ քսէ.—(Եթէ մէկը՝ հակառակ կարծիք մը կը յայտնէ՝ մի՛ հակառակիր, այլ գործդ շարունակէ։

101. Հաճի մար, կատուին փիսթ ըսէ։

---

*) Կ՚ըսեն թէ ժամանակաւ Թուրք մի աղքատիկ հայ մարդու մի տուն կ՚իջնէ և կ՚սկսի զանազան կերակուրներ ուզել. տանտէրը «Աղա՛, չունիմ» կ՚ըսէ. բայց հիւրը կը պնդէ. մարդն կը պատասխանէ թէ «Կակղնաս չօրպաճ կայ, եթէ կ՚ուզես՝ բերեմ։ Երբ հիւրն լաւ մի կ՚անօթենայ՝ կ՚ըսէ. «Կակղնաս թող ըլլայ, բեր». տանտէրն ալ իւր պատրաստած հասարակ ապուրը կը բերէ։

102. *Հայուն եղջի խելքը ինծի պիտէր։*

103. *Հաստ ու բարակ մէկ գին է, վայն եկեր բարակ մանողին։*

104. *Հարուստը խրատ ին հարցեր, իր կալուն վրայ է կալանէր (կալանայ ընել, զրուցել)։*

105. *Հարուստը մեռնի, գեղն երըրայ, աղքատը մեռնի՝ մարդ չիմանայ։*

106. *Հարուստին հաւը ածան կուլլի, խորոզը կարգը-ձան։ (Ոմանք կը յաւելուն) Ծունն՝ հաչան, կատուն՝ մէյան։*

107. *Հարսինը՝ սուգը սեզանն է։*

108. *Հացն՝ 'ի հորուն (հորէն) տղան՝ 'ի փորուն։* *)

109. *Հաց ու գինի ունիս, իմ սէրը դուն ես։ Հաց ու գինի չունիս, իմ դեւը դուն ես։*

110. *Հաւը իր առջի ածած հաւկթին վրայ կու խնդայ։*

111. *Հաւը ջուր կու խմէ՝ Աստուած կու նայի։*

112. *Հաւ մի չի պահողն հաւկիթ մի չարժեր։*

113. *Հեռուկ ուխտը զօրաւոր կուլլի։*

114. *Հերս եկիր (եթէ բարկանաս) քեար (շահ) արէ. Հերս եկի (եկնելով) զարար (վնաս) մ'աներ։*

115. *Հէրքէս (ամեն մարդ) իր Բավլին կուլայ։* **)

116. *Հողէն շատ բան չի կայ, օձը տրամով (կշռով) կ'ուտէ։*

117. *Հօրքրոջմէն կուգայ՝ հօր հոտիկ, մօրքրոջմէն կուգայ՝ մօր հոտիկ։*

---

*) *Ոմանք՝ «Հարսն 'ի հորուն» կ'ըսեն, և ոմանք ալ կը յաւելուն «հոզ գրամն (այսինքն Թաղման ծախսն) զատուն ճօթուն»։*

**) *Կ'ըսեն թէ երբեմն Կապան-մատէնն այր մի (մեռողի) փլչելով յոյն գործաւորներէն շատ մարդ մեռած է, որոց մէջ մի քանիին անուանքն «Բավլի» են եղեր, Ուղևոր մի տեսնելով որ մի քանի տեղ «Բավլի» կ'ողբան՝ կը հարցունէ, թէ ով է այս անձն. կը պատասխանեն թէ մի քանի հատ են և ամեն տուն »իւր Բավլին կուլայ»։*

118. Ձեռքը՝ ձեռքը կը լուայ (լուանայ), երկու ձեռքը՝ երեսը։

119. Ճնճղին (ճնճղուկին) ըսեր են թէ ոտքդ ինչու բարակ է (կամ կարմիր է). ըսել է թէ «ցրտէն է».—Ես քեզ ամառն ալ տեսայ։

120. Մաման բան կու տայ,՝ ետև ձան կուտայ (նենգամիտ կամ մեծ մարդիկ երբեմն նուէրներ կընեն, յետոյ կրկինն տուժել կուտան)։

121. Մանէ, մանէ, ման խաթուն, մանը կ՚անէ քեզ խաթուն։

122. Մարդն ի հալաւը, էշն 'ի փալանը (համետ)։

123. Մարն (ի) հաց, ու տղայ (ի) լաց։

124. Մարոնցս տնակն հեռուն պիտէր, պարծենալու ալ ինչ պիտէր։

125. Մար (մայր) պիտի ու բերան չի պիտի։

126. Մեծ կատուին խաղ չի վայելեր։

127. Մեծ պատառ կեր, մեծ խօսք մի՛ զրուցեր։

128. Մէկ մ՚ալ հարս ըլնիմ (լինիմ), կըկըզ տի նստիմ։

129. Աստուած մէկ աչքը մեկալին մխահարած (կարօտ) չանէ։

130. Մէկը մեկին հողէն (վիճակէն) չի հասկանար, կէս գիշերին ժամ կու կանչէ։

131. Մէկը մէկին սատանայ, մէկը մէկին քահանայ։

132 Մէկ (մարդ) կայ հազար կ՚աժէ (կ՚արժէ), հազար կայ, մէկ մի չարժեր։

133. Մ՚ըսեր (գէշ խօսք) ուր չի լսես (փոխարէնն)։

134. Մի ծեծեր երկըրի դըռնակ, կու ծեծեն քուկին դըռնակդ։

135. Մինչև խելօքը մտմտայ, խենթը տղան կու կարգէ։

136. Մինչև հաստը բարկընայ (բարակնայ), բարակին հոգին կ՚ելլէ։

137. Մինչև քաջուն առուն ջուր գայ, գորտան աչուին դուս կուգայ։

138. Մինչուկ (մինչև) գլխուս կապելը տորվեցայ՝ երիկս գնաց։

139. Միսն ըղնգէն չի զատիր։

140. Մ'ուղեր ատելուդ (ատելիիդ), կուգայ սիրելոյդ։

141. (Ոմանք գհարսնացուն) Մօտէն չեն առներ թը կըսմըրթուած է, կ'երթան հեռուէն կուբերին, կէսը տարած է։

142. Նաչարը (անկարողը) կ'ուտէ բանճար (բանջար)

143. Նստինք մանինք պայոդ մ'երկուք, քան զուր կամ քանզ ուր բերինք խապար (լուր) մ'երկուք։

144. Շանը պոչը 40 տարի մէնկէնէն (մամլոյ պէս) դնես, չի տըրըլտիր։

145. Շերեփն ոսկիէն ըլնի, մարդու (այլոց) դուռ կերթայ։

146. Շէնը շէն է, աւերը զէն. է։

147. Շունը կու ծեծին, տիրոջը խաթրը կը բնտռեն։

148. Շունը շանը ձանին (ձայնին) կ'երթայ։

149. Շունը շանը միսը չուտեր։

150. Շունը չէմը, հարսն 'իկեսուրը։

151. Շունն հաչելով գալ (գայլ) կու բերէ։

152. Շուն ու գալ (գայլ) ըլնիս, մար չիլլիս, փատի հար ըլնիս, հար (հայր) չիլլիս։ (Մեծ է կսկիծն ծնողաց՝ զաւակացըն թշուառութեան ժամանակն)։

153. Ողջը գլուխդ աւետարանին տակը մի՛ դներ։

154. Ոսկի գօտևորը մարդու դուռ է գնացեր։

155. Ո՛վ իյնի՝ տղոց տէր. ո՛վ ելլէ՝ տղոց տէր։

156. Ո՛վ իր հոլը (գոյք) շատ համարի, ք'զայլունն (քան զայլոցն) թեզ (կանուխ) կու հատնի։

157. Ո՛վ խօսի խօսի, խոստվողը (փորու խիթ ունեցողը) թող չի խօսի։

158. Ո՛վ կերեր՝ առղան (ակռան) առեր, ով չէ կերեր՝ մռացն է ուզեր։

159. Ո՛վ որ սուրբ գիտես, խաչն անոր ծոցուն կ'ելլէ։

160. Ո՛վ չուսթ (ճարպիկ), ան կուշտ։

161. Ոտքն (կամ նստոց տեղին) երեր է (՛այրեր է), դրացներուն կու մեղքրէ։

162. Ո՛րը հոտուն, ո՛րը կարօտուն։

163. Ո՛րն ուր չուտինք, ան տանք չուննեւորին։

164. Որուն կուտայ բերդ ու փլվան, որուն չի տար չարուխին (տրեխին) չուան։

165. Ուզան (խնդրող) բերանը կթան կով մի կ՚արժէ։

166. Ուզողին մէկ երեսը, չի տուողին երկուքը։

167. Ուչ (ոչ) բոզը պառւի, ուչ առուըզերուն խոտը թոռմի (թառամի)։

168. Ուչ ուխտին մում խոստացիր, ուչ չօլուխին (տղային) բան (ուտելիք)։

169. Ուչ պատառը բերանս, ուչ ամօթը երեսս։

170. Ուտին որդիքը, վճարին հոգիքը։

171. Ուտողը չի գիտէ, բրդո՛ղը գիտէ։

172. Չի լացող տղին կաթ չեն տար։

173. (Չաւակ) Չի կալլողը (չուննեցողն) մէկ տէրտ (վիշտ) մի ունի, կալլողը՝ հազար։

174. Չի համրած ոչխարը գայլը կու տանի։

175. Պարը մտնողը կու ճոքայ (կ՚երերայ)։

176. Ջանալով ճուքար չառնուիր։

177. Ջորիին հարցեր ին թը տատդ (հայրդ) ո՞վ է. ըսեր է թը ձին տայիս (քեռիս) է։

178. Ջուրը գայ, ջաղացն աղայ, խենթն ուտէ, ելլէ խաղայ։

179. Ջուրը չի տեսած՝ ոտքդ մի՛ չըլպըխցներ (մի՛ մերկացներ)։

180. Ջրին ըռատնալը կըյրելու նշան է։

181։ Սեւը սապունն ինչ անէ, խենթը խրատն ինչ անէ։

182. Սիրտը սիրածն եկեղեցին պսակած է։

183։ Սիրտը (որդեկորոյս մօր եւայլն) 40 գամ (բեւեռ)՝ կը մխուի. մէյմէկ հատն ելնելով 39ն կ՚ելլէ, մէկն կու մնայ։

184. Սոխը քանի կեղուես, կու կեղուուի։

185. Սոխ չեմ կերեր ուր սիրտս երի։

186. Սրտէ 'ի սիրտ ճամբայ կայ։

187. Վատ պարտկանէն հող ու մախիր։ (Անշահ բաներ պիտի առնես այնպիսիներէ, կամ անշահ ալ ըլլայ, ձու, խալիճ)։

188. Վէզ ձգելով (գուշակութեամբ) աղան չի գար։

189. Տան-տիկինը գող կ՚ու յլի։ (Տանտիկինը խնայողութեամբ կը վարուի. երբեմն մաս մի կը պահէ և պէտք եղած ժամանակ երեւան կը հանէ)։

190. Տատը (հայրը) տղուն եգի (այգի) մ՚է տուեր, տղան տատին կող մի (ողկոյզ մի) խաղող չէ տուեր։

191. Տէրտէր եղի գեղն ինկի, երբ ուր չեղաւ գետն ինկի։

192 Տէվէին (ուղտին) ըսիր ին թը ինչու շըլլիդ ծուռ է. ըսեր է թը ո՞ր տեղս տրուստ (ուղիղ) է։

193. (Աստուած) տէրտը՝ (վիշտը եւայլն) քաշողին, բարին՝ չափողին կուտայ։

194. (Փոխ) Տիտաս ու (դրամդ, կամ վաճառքդ, և երբ ուզես) գէշ տ՚ըլլիս (տի լինիս), մի՛ տար ու գէշ եղիր։

195. Տունը չի կայ թան-ջուր, եփեէն (ետևը) կախեր է չանչուլ (ծոպի պէս զարդարանք մ՚է եղեր)։

196. Տուր (կամ) տամ ունեւորին, տամ չունեւորին, տամ տակի զօտեւորին։ (Աստուած ինձի առատօրէն պարգևէ որ ամենուն ալ տամ։ Կանայք ոմանք պարտէզն հունտ սերմանելու կամ տարեկան խաւուրման թակոյկն լեցուցած առեննին՝ իբրև բարեմաղթութիւն կ՚ըսեն. «Տամ ունեւորին, եւայլն»)։

197. Ցաւը լեռներուն ին տուեր, չլին դիմացիր, առեր մարդուն ին տուեր։

198. Ցորենին ծառը պզտիկ է, ամմա (բայց) իյնողը կու կոտրտի։ (Ցորենին առևտուրին վնասը մեծ և կործանարար կը լինի)։

199. Ցուրտը խլլոտին մահանայ (պատճառանք) է։

200. Փշածդ՝ դգալդ տի գայ։

201. Քանի հագնիս ատլաս ու խաս (կերպաս), կինէ (դարձեալ) կ'ըսին Լորտուենց (միջին կամ աղքատիկ ընտանիք մը) հարս։

202. (Պէտք հոգացած) տեղդ մարդու մ'ըսեր։

203. Քէլը դեղ գիտնայ, իր գլխուն կ'անէ։

204. Քիչ բեռցիր, թեզ (շուտ) դարձիր։

205. Քու մոմդ ու խունկդ քեզի՝ մեր ժամը մի՛ գար։

206. Քուրդը տեսնես՝ հաց ուզէ, որ ան քեզնէ չուզէ։

207. Քուրդը քէնը քառասուն տարին կը հանէ։

208. Օձն ուր (որ) օձ է՝ ջուր խմած տեղը (մարդ) չի կճեր (խայթել)։

209. Օտար աչքն ուր լուս կայլէ (ունենայ)՝ ան հերիք է աս տնուորին (աշխարհիս կեանքին)։—Օտարին բարեկամութեան վրայ մի վստահիր, եթէ գտնես բարեկամ մի, որ նուազ կարող բայց անկեղծ լինի, այդ իսկ բաւական է այս աշխարհիս մէջ *)։

---

## ԳԼ. Ը.

### ԱՍԱՑՈՒԱԾՔ

1. (եթէ չի գայ եայլն) Ագռաւները սև՞ տի հագնին։ (Արձու հոգ է)

---

*) Կայլին մի քանի անհամեստ առածներ ալ, զորս անպատշաճ համարեցի գրել։

2. (վասն առն) Ագրկու թագւոր եղեր է։—Բոլոր ունեցած զգեստն հագեր զարդարուեր է։

3. Ալ եկաւ, գալ (գայլ) եկաւ. կամ գալ եկաւ, մարդ եկաւ ըսելով (խաբել կ՚ուզէ)։

4. «Ալիին կուլայանք, «վէլիին կարպետով (կապերտ) բերին։—Մինչ մէկ դժբաղդութեան վրայ կը հոգայինք, աւելի մեծ չարիք մը պատահեցաւ։

5. Ակինը (Ակնայ) մէջ՝ քար մի տնկեց։—Մեծագործութիւն մի ըրաւ։

6. (այս դէպքը, եայլն) Ակնճի օղ թող լընի։

7. Ակնճուլիդ կամ ակօնճդ կըլյէ ետիդ դիր։—Ձէս լըսեր, քեզ կամ ձեզ համար ինչ բամբասանքներ կ՚ընեն։

8. Ակնճուլին (ականջներն) երկան է։

9. Ակնճուլին կախեց։

10. Ակոբիկ մ՚ընել։—Ցերեկն կամ սովորականէն դուրս համառօտ ճաշ մ՚ընել։

11. Ակռայ զխմել (սեղմել)։ (Տոկալ, համբերել վշտաց, նեղութեանց կամ նախատանաց)։

12. Ակռայիս տակը (սխմելով) արուն թօք եղաւ։—Երկար համբերեցի, որպէսզի երեսը չի զարնեմ յանցանքը։

13. Ակռայ կու կըճըռցնէ։

14. Ակռայն (կամ) առղայները թափեր է։

15. Ակռայները ճեպս (գրպանս) է։—Անոր նեղութիւնը գիտեմ. չի կրնար ինձ դէմ խօսիլ կամ վնասել։

16. (այս ինչ գործէն կամ անձէն) Ակռաս առեր է։—Այդ անձէն եայլն, նեղութիւն տեսած ըլլալով զզուեր եմ։

17. (վասն ուտելեաց) Ակռաս, կամ, ակռային ծմկը տի մնէ։

18 (այս ինչ զարդ եայլն) Ազբարն աղբօրը այս գինը չի տար։

19. Աղ բերել գնացել է։—«Մեռեր է» (անարգական է)։

20. (այս ինչ վաճառք) Աղբոր պէս ճող է։—Վաճառք մի որ չի վաճառուիր, երկար ատեն կը մնայ։

21 Աղը չոր է։—Հարուստ և բարեկեցիկ է։

22. (գնելիք իր մը) Աղի է։—Թանկ է. սուղ է։

23. (խնձոյքը) Աղ ու մուր եղաւ. կամ՝ Աղումուր ու աղձըմուր եղաւ։—(խնձոյից) Ուրախութիւնը դադրեցաւ, տակն ու վրայ եղաւ։

24. Ամենդ ի վրայ եկէք, ազուորին կապան կարեցէք։

25. Ամեն թատան գին տի դնինք։

26. Ամենուն լօ, լօ, ինծ ալ լօ, լօ։—Համր կամ տգէտ ձեւանալով ամենը կը խաբես, զիս ալ խաբել կ՚ուզես. զիս որ գիտեմ ինչ ըլլալդ, կամ, ես սովրեցուցի զայդ (լօ լօ ըսել)։

27. Ամուր գլոխ (գլուխ) է։

28. Ամուր երես է։

29. Ամպոքը մուկ է ինկեր։—(Ցղի է, յղացած է)։

30 Ամպէն հոտ կ՚առնէ։—Հեռատես, զգուշաւոր է։

31. (վասն անձի կամ իրի) Ամպը չէ գոռացեր վրան։—Բարեմասնութիւն մի, լաւ բան մի չունի։

32. Ամպի պէս կու գոռար։—Մեծափարթամ հարստութիւն ու ազդեցութիւն ունէր։

33. Այբը կ՚ըսէ, բէնը [illegible] (դատարանը) կու քաշէ։ Կարդալ չգիտէ, կամ գիտցածն աննշան է։

34. Ան ախոռէն ձի չելլեր։—Այն ընտանիքէն բարի կամ խելանի մարդ չելլեր։

35. Ան գեղն ուր աղա չի կենայ, կէչիին (այծին).... աղա կու կանչին։

36. Ան ժամանակները տէվէն (ուղտը) խուռմայ (արմաւ) կու թռքէր։—Այն ժամանակներն աժնութիւն, առատութիւն կար։

37. Անլուանկայ գիշերը կ՚երթամ հոն։—Կուզեմ, պարտաւոր եմ այցելել, բայց զբաղեալ եմ եւայլն։

38. Անծինը (անձինը) վրայ (կնիկ մ՚) է։—Մտաւորապէս թոյլ կամ ապիկար է քիչ մը։

39. Անձը դրեր անձին կու ոքայ, ինք (զինքն) թողեր երկիր կու հոգայ։ (Ոմանք կ՚ըսեն, տիկը դրեր անթը կու ոքայ եայլն)։—Ինքն ողորմելի է և զայլս կը հոգայ։

40. Ան շանը ան շարականը շատ է։

41. (խնդիրը վէճը) Անուշ տեղը կապել։

42. (գ) Աշխարքը ջուրը լեցուցեր է։

43. Աշխարքն աշխրքով ըսին (թէ մ՚ընէր), մտիկ չըրաւ։—Բազմաթիւ մարդիկ ըսին, մտիկ չըրաւ։

44. Աշխարք ուր վրայ գայ (չեն կրնար համոզել, կամ, չեմ ընդունիր)։

45. Աշխարքս ձան կըլեցաւ, կամ՝ Աշխարքս պանիր, խաղող, եայլն կըլեր է։

46. Աշխարքին վրայ հեծեր է։—Աշխարհային ո և իցէ գործ կամ դէպք չի հոգար. միշտ զուարթ է։

47. Աշխրքով եղաւ (այս ինչին այցելութենէն եայլն)։—Շատ ուրախացաւ (այցելութենէն եայլն)։

48. (վասն կնոջ) Աշնան տան տիկին տիլլի։—Ձըմրան և ըստ մասին գարնան եայլն պարէնը զոր աշունն կը լնուն, դեռ ձմեռ չեկած պիտի սպառէ. ըսել է որ տան-տիկնութիւն չգիտէ։

49. Աչիցը արուն կու կաթէ—Երիտասարդ, Կորովի է։—Խալէմէն (գրչէն) արուն կու կաթէ—քաջ գրագիր է։

50. Աչիցը որդը կոտրել։—Երկիւղ ազդել։

51. Աչիցը ջուր տալ։—Խօսեցեալն կամ Նորապսակ ամուսինն տեսնել։

52. Աչիցս լուսուն գնաց (այս ինչ իրը)։—Ակամայ տուի։

53. Աչուիդ չոր իքէն (մինչ չոր է, ծեծ կերած՝ լացած չեռ) այս ինչ իրը տուր կամ գործէ եայլն։

54. Աչուին դուռն ի դուրս կուղայ։—Հիւանդութենէն, փախելէն, հազալէն շատ կը նեղուի։

55. Աչուին ցից՝ մնաց։—1. Կոկորդը բան մը մնալով խղդուելու պէս աչքերը տնկուեցաւ.—2. ապշեցաւ մնաց։

56. Աչուորը լաւ, կուրուորը (կոյր) լաւ, Աստուած ո՛ր մէկին ողորմի։

57. (առ գործէն եթէ այնքան մի շահէիր) Աչքդ կու հանէ՞ր։—Ի՞նչ վնաս ունէր. չէ՞ որ դիւրին շահ մ'էր։

58. Աչքերնուն փուշ եղեր է։—Նախանձելի եղած է։

59. Աչքը խոշորնալ։—Գործի մը, աշխատութեան մը և այլն մեծութենէն, ծանրութենէն վախնալով դժուարանալ։

60. (ոմն վաճառքն ունեք) Աչքը քաշեց։—Այս ինչ նենգեալ վաճառքը արժէքովն կամ բարձր գնով այս ինչին վաճառեց։

61. Աչք խփել։

62. Աչք ունի ու տեսնել չունի։

63. Աչք չունիս. քթի ծակ ալ չունիս։

64. Աչքս ճամբան մնաց։

65. Ապուշխուրայ դմակն է։—Ինչպէս կ'արտորաս արդիւնքըն ստանալ, զի նոր սկսար։ (Կ'ըսեն թէ մարդուն մէկը՝ խոտը դմակով ոչխարի մը բերանը տալէն քիչ մը վերջը ձեռքը դմակը տարած է տեսնելու համար թէ խոտը ուտելէն 'ի վեր մեծցա՞ծ է)։

66. Աջ բազուկն է։

67. Առաջ փախչող է։—Ծրաբար կ'աշխատի և հլութեամբ կը ծառայէ։

68. Առաջքը կուտ կու ցանէ։—Կը համոզէ, խաբել կուզէ խոստանալով կամ հրապուրելով։

69. (գիտես թը) Առաջքն ինկեր էր։—Օրհասական էր գոգցես մահուան վտանգին կը դիմէր։

70. Առնետի տնկած ինկող (ընգոյզ) է։—Հայր, մայր, ազգական չունի։

71. (վասն պատանւոյ կամ երիտասարդի) Առնողը 3 օր տի խնդայ։—Դաժան, անառակ մ'է, հետն ամուսնացող աղջիկն եթէ երբէք երջանիկ օր մի պիտի տեսնէ, այն ալ առա-

գառանէն առաջ պիտի տեսնէ. (զի պասկի 3 օրն փեսային ընկերութեան դեռ ծանօթ չլինելով թերեւս ուրախութիւն մ'ըզգայ)։

72. Առանց դմպուկի (առանց թմբկի) կու խաղայ։

73. Ասեղը շուք կ'անէ (եթէ ուզէ)։—Կրնայ պատեհ ժամանակ մի գտնել և ուզած տեղն երթալ, հնարը գտնել ևայլն։

74. Ասեղ ձգես վար չէր իյնար։

75. Ան ինչ ձուն է եկեր գլխուս։

76. (հանդերձի, տան ևայլն բազդատութեան մէջ)։ Ան փորսուլի, ան գտնողչէք կուտան։—Այս քան զայն շատ լաւ է։

77. Ասղը (աստղը) լուսնկի կէօրէ (չափ) է։—Ցոյժ բաղդաւոր է։

78. Ասղը (աստղը) ցած է։—Դժբաղդ է։

79. Ասված (աստուած) Արտը նայեր, փուշը տուեր է։

80. (մոլութեան մի կամ անհաճոյ գործի մի նկատմամբ խօսողն իւր համար) Ասված գրեր է նը՝ աւըրէ։—Այդ գոզութիւն, գործ, խնամութիւն ևայլն չեմ ուզեր ընել, Աստուած չընէ։

81. (երկար ատենէ 'ի վեր տառապող հիւանդի համար) Ասված երկու բարուոյն մէկը տայ։

82. Աստուծու միայն օրը։—Հանապազօր։

83. Ատ սէրը շատ մարդ է կշտացուցեր, վրայ սալունն է կըկըլզցուցեր։—Մի կարծեր թէ այդ սէրն մնայուն է, այլ ինչպէս բազումք դու ևս պիտի յոգնիս, յագենաս։

84. Ատ սէրն ուր աշխարք եկաւ, ադ սիրուն վարպետը մենք էինք։

85. Ատ փստէ, (սահէ, անցիր), մէկալը չալէ (նուագէ)։—Ուրիշ կերպ ըսէ, խորհէ։

86. Աքանքն (միջև) սև կատու է անցեր։

87. (այս ինչին հետ) Աքանքս ջուր չօանիր (չանցնիր)։—Ցոյժ մտերիմ, սիրով եմք։

88. (ի գովեստ) Արարատ աշխարքը (նմանը) չի կայ։— Աշխարհիս մէջ նմանը չի կայ։

89. Արեւը քարին վրայ է (վասն անձի)։—Ծերացեր է, մերձ է 'ի մեռանել։ (Երբ երեկոյ ըլլայ՝ արեւը Ակնայ արեւմտեան լերան ապառաժեայ գագաթէն կ'անցնի եւ իբր 2 ժամ յետոյ մարը կը մտնէ)։

90. Արծել—Ընկեր մի ճամբել պատրուակաւ մի։

91. Արուն բերան է։—Սուղ վաճառող է։

92. Արուն ելլելիք տամարը (երակը) գիտէ։—Դրամ, ևայլն ստանալու համար գիտէ, թէ որու և ինչպէս պիտի դիմէ։

93. Արունը կու ցողայ։—Աղքատ, խղճալի ողորմելի է։

94. Արունը կու քաշէ (արենակցութեան բնազդմամբ կը ճանչնան կամ ճանչցան մեկզմէկ)։

95. Արուն կը կըկըլցնէ (կը տանջէ)։

96. Արուն կու հոտի։—Այս ինչ տեղ աւազակ ևայլն կայ, սպանութիւնք անպակաս են։

97. Արուն հաւի պէս կու դողայ։—Սարսափահար կը դողայ։

98. Ափդ աղնծով տի լեցնի՛ն։—Կարծես թէ առատօրէն տի վարձատրե՛ն զքեզ քու աշխատութեանցդ ևայլն համար։

99. Ափ մի ծաղկով տուն կու պահէ։—Ամեն բարեօք լի տուն կը պահէ։

100. Աւլիր ու աւելը կախեր է։—Տունն ոչինչ թողած է, բոլոր գոյքն տարած է։

101. Բալլին (բանալին) (յ)իս, ու կղպաքը քեզ։—Այս ինչ գործն անկանոն, անվստահելի վիճակ մ'ունի. կամ, անունն իմ վրայ, պաշտօնը ուրիշին վրայ։

102. Բամպակն երդիքն (տանիք) էղներէ կամ էղնած է։— Թեթեւամիտ է, կամ, սնանկանալու վրայ է։

103. Բան ըսողին բերանը կու ծռի։—Այս ինչի մասին վատ ասելը զրպարտութիւն է։

104. Բան մի է կ'երթայ, թող տա՛ւր ուր երթայ—Կարգ,

կանոն չկայ. սպասելու է տեսնենք ի՛նչ ելք պիտի ունենայ։

105. Բարև տուողին էշը կու սատկի։—Այն ինչ մարդն յոյժ դաժան, չար է։

106. Բարի ծաղիկ (սովորաբար, պատանեաց և երիտասարդաց համար հեգնաբար)։—Անառակ, անբարոյական։

107. Բարի՞ ուր հացը կ'երթայ, մենք ետեւէն։—Մեր այս սխալ ընթացքին համար չէ՞ որ յաղքատութիւն կը դիմենք։

108. Բարձ տեղի (իբր բարձ) քէօշէն (սենեկին վերի կողմը)ին դրեր։

109. (անոր) Բարով ըսողը 7 անգամ Էջմիածին պիտի երթայ մկրտուի։—Շատ չար անօրէն ևայլն է։

110. Բացուէր (ուր, որ) հով բանի։—(անարգաբար) Որովհետև քու ներկայութիւնդ, խօսքերդ կամ վարքդ անվայել են, կամ կը ձանձրացնես, գնա՛ ասկէ։

111. Բեռը բռնեց։

112. Բեռս ոսկի է ըսէ ու գնա՛։—(այս ինչ կողմն) Կատարեալ ապահովութիւն կայ։

113. Բերան բերնի ին տուեր։—Միաձայն, համախոհ են։

114. (գործը) Բերան է եկեր։—Լրանալու, յաջողելու վրայ է։

115. Բերանը բաց է։—Խորհրդապահ չէ։

116. Բերանը բնտռել։

117. Բերանը թքեր է։—Մէկը ինչ որ կ'ըսէ՝ միւսն ալ նոյնը կ'ըսէ, կարծես թէ խրատուած է։

118. Բերանը լեզու դրեր ին (հրահանգած, խօսք սովրեցուցած են։

119. Բերանը մեղրը քաշել։—Հրապուրել, շահեցունել, տակաւ մը յետոյ վնասելոյ կամ շահածին կրկինն անկէ շահելու նպատակաւ։

120. Բերանը ոսպը չի թրջիր։—Լսածը իսկոյն կը խօսի։

121. Բերանը չի բացուիր։

122. Բերանդ սմբր կար։—Ըսածդ գուշակածդ կատարեցաւ։

123. Բերանը սրբեց։—Ուրացաւ, չգիտել ձեւացուց։

124. Բերանը փոյրազին (հիւսիս կամ հիւս. հողմ) է տուեր։—Անգործ կեցեր է։

125. Բերա՛ն, ի՞նչ կ՚ուտես։—Հարուստ են, միշտ համադամ կերակուրներ կ՚ուտեն։

126. Բերան ծռել։

127. Բերանս երեցաւ։—Այս ինչ գործէն վնասուեցայ։

128. Բերանս մազ բուսաւ։—Շատ խօսեցայ, յորդորեցի, բայց մտիկ չըրաւ։ Բերանս... (ո՛ և իցէ իր մը խնդրուած, առաջարկ եւայլն) բուսաւ, շատ ըսի, առաջարկեցի, կրկնեցի՝ մտիկ չըրին։

129. Բե՛ր հազար թեզնիք ուր, դնէ հազար բերնի։—Խօսքըն որ անգամ մի հասարակութեան բերանը ընկնի՝ անկարելի է զայն ծածկել։

130. Բերնին համը աւրեցաւ։—Նախկին հանգիստ կամ զուարթ վիճակն չունի։

131. Բերնին հոտը քաշել։—Մէկու մը ծանր խօսքերուն ձանձրութեանցն համբերել, լուծը կրել, ներկայ կամ ապագայ շահու մի համար։

132. Բերնին պատառը չէ։—Կարողութենէն վեր է։

133. Բերնիս պառկեցաւ։—Ճաշակիս եկաւ. համոզուեցայ թէ կը յաջողի, լաւ է։

134. Բերնովը խուշ (թռչուն) բռնողը (չի կրնար շահել)։—Ամենէն ճարպիկն անգամ (չի կրնար զայդ)։

135. Բէռ մի բամպակը բերանը չի գոցեր։

136. Բիր նետել (երթալ)։—Մէկու մի երթալ ծանրանալ, նպաստ խնդրել։

137. Բոշային պագ մի տի տաս, տո՛ւր ու խալիսէ։—Ու այդ հոգէն ազատէ։

138. Բուրդը թող տուեր է։—Աղքատացեր, սնանկացեր է։

139. Բրդերը տնկուեցաւ, բրդոտեցաւ։—Զայրացաւ, կատղեցաւ։

140. Բրի ճօթ ցոյց տալ։—Սպառնալից խօսք մ՚ընել։

141. Բրին երկու ճօթն ալ բռներ է։—Ոչ այսպէս կ՚ընդունի, ոչ այնպէս։

142. Գազին վրայ նստի, կամ միզէ՝ գազը կու չորնայ։—Ցոյժ ժլատ է։

143. Գալոզը մայրս կու հարցնէ։—Ամեն անոնք որ ինձ կը զիջեն, տեսնուիլ կ՚ուզեն՝ ինձմէ շահիլ կամ զիս խաբել կ՚ուզեն։

144. Գազտուկ մախաթ մի՛ շիներ։—Խաբեպատիր ձեւերով մի՛ խնդրեր։ *)

145. Գեղը պտուկ՝ ինք շերեփ եղեր է։—Ամեն տուն կը մտնէ, կ՚ելնէ, կը յուզէ, կը խառնէ։

146. (այս ինչ երեւելի անձին մահուան առթիւ) Գեղն արքունատ տի փլչի տիգայ։—Գեղէն կամ քաղաքէն մեծ բազմութիւն տիգայ ՚ի մխիթարութիւն։

147. Գեղ վրայ հասկցնել։—Անուղղակի խօսքերով կամ հարեւանցի իմն հասկցնել պատշաճն, իրողութիւնն եայլն։

148. Գետ գայ գետեզերով, առու գայ առուեզերով։—Եթէ շատ ունենայ կամ շահի՝ շատ կը ծախսէ։

149. (ընտանիքս) Գետը (կամ ջուրը) լեցնես, գետը կու կայնի։—Անկարող եմ, և ընտանիքս շատաւոր են։

150. Գէռը (աղտը) փեշդ (քղանց) մի՛ քաշեր։—Այս գործը մի՛ստանձներ։

151. Գիշերն է եղեր։—Բան մը տեսած լսած չէ։

152. Գլխուդ ջուր դիր։—Ինձմէ կամ ուրիշէ օգուտ չի կայ. գործդ ինքդ տեսնել ջանա։

153. Գլխուն դարուդուր չէ եկեր։—Նեղութեան դժուա-

---

*) Կը պատմեն թէ ժամանակաւ մէկը երկաթագործին պատառ մի երկաթ տանելով՝ խնդրեր է ծեծել բարկցնել, ցետոյ մէկ կողմը ծակել տուեր է, ցետոյ խնդրեր է միւս կողմը սրել։ Երկաթագործն հասկնալով ըսեր է. «Աղբար, չըսես ուր գաղտուկ մախաթ կու շինես»։

րութեան չէ հանդիպեր։

154. Գլխուն պարապար (հաւասար) կու բունէ։—Վրան կու դողայ, կը պաշտէ զայն։

155. Գլխուս կամ՝ գլխուն շատ դըխիկ դրաւ. կամ՝ չի դրած գլխիկը չի մնաց. կամ՝ թրծեր դրաւ գլխուն։—Բաւական դաւ, խաղ խաղաց, փորձանքներ բերաւ։

156. Գլուխ առնե՞լ տերթաս։—Ինչու կ՚աճապարես մեկնիլ։

157. Գլուխը բարձի մը դնել։—(Գործը) այսպէս կամ այնպէս կարգադրել։

158. Գլուխը զարնել (այս ինչ տեղը)։—Այցելելով անցնիլ։

159. Գլուխը (գլխուն) զարնել (իրմը)։—Տաղտկանալով, մշտանալով տալ։

160. (վաճառելի ապրանքի մը) Գլուխը կապել։—(ապրանքին) Բարձր կամ չափազանց գին մը արժեցնել, այնպէս որ ուրիշները չի կրնան գնել, իրեն բերեն։

161. (հօրը, վարպետին) Գլուխը տի լուանայ։—(հայրը, վարպետը) Պիտի գերազանցէ ստութեան, նենգութեան մէջ։

162. Գլուխը փորը։—Թող ըլլայ։ Երբեմն կանայք «Մեղքը շլլին» իմաստով կ՚ըսեն. «Մտիկ չաներ նը ինք գիտէ. գլուխն 'ի փորը, կամ, այս ինչ կարեւոր պարագային մէջ ծախք մը պիտի ըլլայ եղեր, թող ըլլայ. գլուխն 'ի փորը»։

163. Գլուխս դդում արաւ, կամ, դդմեցուց։

164. Գլուխս ինձի չէ։

165. Գլուխս խոտ մի մնայ բուսնելիք. (Ամեն՛ տեսակ նեղութիւն, արկած պատահեցաւ։

166. Գլուխս տարաւ։

167. Գլուխս քերելու ժամանակ չունիմ։

168. Գնացած տեղէն խապար (լուր) կու բերէ։—(Այս ինչ դեղ կամ հարուած) յոյժ ազդու է։

169. Գնտիկ, ուչ ելլնաս, ուչ պակսիս։—(Ինչ որ է միճակն՝ նոյն է. ոչ առաջ կ՚երթայ ոչ ալ կը յետադիմէ։

170. Գործը բրինձ է։—Գործը յաջող է։

171. Գտա՛ր մարդը, քաղեցիր վարդը։—(Հեգնաբար) Այդ մարդէն շահ կամ շնորհ պիտի ստանաս։

172. Դայեկը (մանկաբարձն) բերնին վրայ տ...է։—Շատախօս է։

173. Դահիճ է։

174. Դանակը պօղազը (կոկորդը) կու քսէ։—Ապրուստի կողմանէ շատ անձուկ վիճակի մէջ է։

175. Դա՛ն գնա (անդի՛ն գնա) կ'ըսէ։—Զօր. այս ինչ պըտուղն քաղցր է՝ շաքարին դա՛ն գնա կ'ըսէ. կոպիտ է՝ իշուն դա՛ն գնա կ'ըսէ։

176. Դաւթենց խահուէն դարձաւ։—Իրարու կ'ըսեն թէ «Ցզմյք, խահուէ բերէք այցելուին համար», բայց բերող չի կայ։ (Դաւթեանք զուարճախօս լինելով՝ հաւանականաբար կատակի համար այսպէս կ'ընեն եղեր)։

177. Դաւի՛թ, ինկի՛. *)

178. Դդմի համ տուաւ։—Ձանձրացոյց, տաղտկալի եղաւ։

179. Դեղն երդուընցեր՝ դեղ չի ըներ։—Անդարմանելի դարձաւ. չի բուժուիր։

180. Դէմ դողալ (ուտելիքի, հանդերձի, դրամի եւայլն)։ —(սակաւ ինչ ուտելիքի եւայլն)։ Կարօտութիւն քաշել։ (Դէ՞մ կու դողաք...—Զունի՞ք, կարօ՞տ էք)։

181. Դիպդպիլ։—1. Իրարու դպչիլ. 2. երկու ուտելեաց կամ այլ իրի մը համար ատդին անդին երթալ բնտռել կամ պատրաստել։

182. Դմակ է ու դանակ է։—Այս ինչ տեղ կամ գործին

---

*) Կը պատմեն թէ Խօչենց Դաւիթ անունով տղան սրդողելով՝ տանեաց եզրը կ'երթայ և կ'սպառնայ ինքզինքն վար նետել. հայրն եւայլն, կսկսին համոզել, յորդորել, աղաչել որ ատրին գայ. երբ Դաւիթ անհամոզելի կը մնայ՝ կ'ըսեն «Դաւի՛թ, ինկի՛». տղան կ'սկսի ցուիքէն եռքաշուիլ, որչափ կ'ստիպեն ընկնիլ, այնչափ ետ կը քաշուի. վերջապէս ատրին կուգայ։

մէջ պատիւ, հարստութիւն կայ՝ բայց վտանգ և մտահոգութիւն ալ կայ։

183. Դմակը մեծ է, կու ծածկէ։—Հարուստ, է ըրած վնասը կամ գործած յանցանքը կը ծածկուի։

184. Դմակին վրայ եղ քսել։—Հարուստին դրամական և այլն նուէր տալ, որոյ պէտք չունի։

185. Դուն աղուես ես նը, ես ալ ագին եմ։

186. Դուն կ'երթայիր նը՝ ես կուգայի։

187. Դուն վերի արտին ցորե՛նն ես։

188. Դուռը գոցուեցաւ։—Հայրն կամ որդին մեռաւ. այր չի մնաց, տունն գոցուեցաւ կամ գոցուելու վիճակին հասաւ։

189. (Երբ այն աղջիկն հարս առնուն) Դուռն երդիքէն տի բացուի։—Այն աղջիկն լաւ չէ. գնացած տունն պիտի կործանի։

190. Դուռ ու' երդիք կու քըքրին (այս ինչ աղջկան հօր տանն)։—Աղջիկն 'ի հարսնութիւն կ'ուզեն (հօրմէն). կը պըռդեն, կը կրկնեն։ (Այլ խնդրոց համար ալ թախանձելու իմաստով կը գործածուի)։

191. (զգեստը ևայլն... ձմեռս կամ գիշերն) Դուրս չի ձգեր։—(զգեստը ' այլն այս ինչ ժամանակ) Չի տեւեր, չի դիմանար այլ ևս։

192. Դրեր ես նը գիտ։—Վերցուցած գողցած էին։

193. Դրօշմը անանկ է։—Երևոյթէն մի՛ դատէք, այնպէս չէ. այլ բնութիւնն այնպէս է։

194. Եախա (օձիք) կու թօթվէ։—Շատ դժգոհ՝ զզուած է։

195. Եախան (օձիքն) երկուք չիլլիր։—Որովհետև ծոյլ, նախանձոտ կամ խարդախ ևայլն է, լաւ վիճակ մը չունի։

196. Եախան չի բացուած սուտ մի խօսեցաւ, կամ կու խօսի։—Նորահնար կամ անհաւատալի սուտեր խօսեցաւ կամ կը խօսի։ (Մանրագին [illegible] շապիկներուն օձիքը՝ չի

գործածուած ըլլալու ՚ի նշան՝ չեն բանար. գնողն յետոյ կը բանայ. թերեւս սորա նմանութեամբ է)։

197. Եմ (կամ) հըռօ, եա մըռօ։—(Ժամանակաւ Անեցի մը կ՚ըսէր թէ ուղիղն «Եմ յարմ, եմ մեռմ» է)։

198. Եկեր պատեր, ճարն է հատեր։—Գործը, պէտքը անհրաժեշտ է այլ եւս։

199. Եկուր ձեռքդ թոթվիմ։—(հեգնաբար) Եկուր որ շնորհակալութիւն յայտնեմ պաշտօնդ, յանձնարարած գործս լաւ կատարելուդ համար։

200. Եղեր ուլիկ թը տուտէ խոտիկ։—Հարսն, հարսին մայրն կամ ծառան եւայլն պէտք է յանդիմանութեանց համբերեն։

201. Եղը աղայենցմէ, ալուրը մոլլայենցմէ (էր)։—Պէտքերն, կերակուրներն ասդիէս անդիէն էր հաւաքեր։

202. Ե՛ղը (իւղին մէջ) պառկեցաւ։

203. Եղը թափի, կու ժողուըտի։

204. (վասն մարդոյ) Եղի (իւղի) պէս ջրին երեսը կ՚ելլէ։—Դուրս կը պրծնի.պատճառներ մէջ բերելով զինքն կ՚արդարացնէ։

205. Եպիսկոպոս, կամ, կաթողիկոս եղեր է։—Ցոյժ արբեալ է։

206. Ես (ան կամ ամենն ալ) ակռաս ծեծեր իմ (զատկի հաւկթի պէս)։--Փորձեր հասկցեր եմ։

207. Ես անոր կու սորվեցնիմ թը (եթէ) թանը մածունէն կ՚ելլէ քի (թէ) մածունը թանէն։

208. Ես իմ արծած ոչխարս գիտեմ։

209. Եսի թօքին պարուտ (վառօդ) թող պահէ։—(Քարն ականով կտրելուն, նաեւ սնանկանալուն՝ «թօք նետել» կըսուի)։ Շատ ծախք կ՚ընէ, թուի թէ սնանկութեան «թօքն» ալ պիտի նետէ։

210. (վասն կնոջ) Եսի չունի, էռջի չունի։—Մեծ կամ փոքր զաւակներ չունի, ազատ է։

211. Ետի տէրը գտաւ։—Զգեստը եւայլն չարաչար գործածելով հինցաւ, մաշեցաւ։

212. Ետքը առաջքդ տի նայիս։—Վերջը ամօթապարտ պիտի լինիս։

213. Երած արտին փին մխիթարանք։

214. Ե՞ք (Ե՞րբ) եղար տէրտէր, Եք եղար տէր պապա։

215. Երբ կէյէկը (եղնիկն) ծառն ելնէ, այն ատեն տի կատարի։—(Այս ինչ գործը) բնաւ չի տի կատարուի։

216. Երդումը ջրի պէս կու խմէ։

217. Երդում կատարում կ՚անէ։—Երդնլով կ՚երդնու։

218. Երես դէմ ձգել։

219. Երե՛սդ կուզամ։—Կը վայլէ՞ որ յիշեմ իմ արած բարութիւններն։

220։ Երես ելաւ։

221. Երե՛սը կ՚երի. կամ, երեսը կ՚երի՞։—Մեծ բան մ՚է. ի՞նչ կ՚ըլլայ եթէ այդ ծառայութիւնն ընէ։

222. Երեսը ձուն կու ձգէ։—Առ վշտին գունաթափ է։

223. Երեսը վար տալ։—Կշտամբել, այպանել։

224. Երեսիդ ջրովը (գնա՛, կամ տո՛ւր եւայլն)։—Մինչդեռ պատիւդ վրադ է (գնա՛, եւայլն)։

225. (վասն աղջկան) Երեսին գիրը մարդ չէ տեսեր։—Պարկեշտ է, մարդոց երեւան չելլեր գրեթէ։

226. Երեսին ըռէնկը (գոյնը) տիրացուի ըռէնկ կու մանի (նմանի)։—Գունատ է։

227. Երեսին կաշին հագնիս Պաղտատ երթաս, չի կտըրտիր։—Զամաչեր բնաւ. ամուր երես է։

228. Երեսին ջուրը գնացեր է։

229. Երեսն ի վար կա՛խ ես մնացեր։—Այս ինչ անձէն կամ իրէ՛ն կախումն ունի ձեր գործը կամ ապրուստը։

230. Երեսով ազատ կ՚անէ։—Քաղաքավարութեամբ եւ մեծարանօք կրնայ գոհ ընել (հիւրերն)։

231. Երեսս ելաւ։—Հանդիպեցաւ։

232. (Հօր, զաւկի, կամ իրի մը նկատմամբ հեգնաբար) Երեսս մէջը կ'երեւայ. (իբր հայելի)։—Լաւ չէ։

233. Երեսս չի բռներ։

234. Երես տուանք՝ աստառ կ'ուզէ։

235. Երկթէ լէպլէպուկ է (բոված սիսեռ)։—Այս ինչ գործը կամ այս ինչին ծառայութիւնը շատ դժուար, անտանելի է։

236. Երկթէ չարուխ (տրեխ) հագաւ։—Տաժանելի ուղեւորութիւն, աշխատութիւն կրեց։

237. Երկինքը աստղ մի չունի։—Ո՛չ զոք ունի պաշտպան կամ օգնական։

238. Երկնային տէրը արաւ, կամ ըրի թը.... մտիկ չըրաւ։—Շատ թախանձեցի, բայց մտիկ չըրաւ։

239. Երկնքէն ինչ է եկեր ու գետինը խապուլ չէ արեր (չէ ընդուներ)։—Այս հրամանին կամ դէպքին ինչ կըրնամք ընել, բայց եթէ ընդունել։

240. Երկու թրին արան (մէջ) մնացեր է, կամ մնացի։—Անելանելի դրութեան մէջ լինել։

241. Երկու խենդին խելօք մ'են դրեր։—Եթէ իրաւունքը չըճանչնաք՝ մէկը կը գտնուի որ իրաւունքը պաշտպանէ։

242. Երկու ձուն թապլեցայ։—Երկու անգամ այրիացայ։

243. Երկու ճոթը (ծայրը) իրար չի կրնար բերեր։

244. Երկուք արաւ իշուն վրայ ձգեց։—Աշխատեցաւ կատարել, բայց չի յաջողեցաւ։

245. Երկու քարին արայէն (մէջ տեղէն) ալուր մի թող ելլէ, որմէն կ'ելլէ, թող ելլէ։—Թող ես շահիմ, բայց որմէ՝ միւնոյն է։

246. Երկրի տղայ գիրն ետըւէն կու կարդայ։—Մարդիկ ճարտարամիտ են. գաղտնիքն կը գիտնան։

247. Եփած ապուրին մէջ ջուր մի՛ կապեր,—Սակարկու-

թիւնը խնդիրը լրացած է. զանազան առարկութեամբ մի՛ պղտորեր, մի՛ եղծաներ։

248. Զուեր (արդէն) ջաղացքը ջուր չի կայ (կամ տունը մարդ չի կայ) դիւանաքն ալ իրար կու տան։—Արդէն թշուառութեան մէջ է նորանոր դժբախտութիւնք ևս վրայ կուգան։

249. Զարկածը շատ է, ձգած չի կայ։—Մեծամեծս կը պարծի, բայց գործ և արդիւնք բնաւ չի կայ։

250. (անոր հետ) Զար (նարդի խաղի քուէ) չեմ կրնար նետել։—Չեմ կրնար մրցիլ։

251. Էլային թուղթը առաւ։—Պնդեց, հակառակեցաւ, վերջապէս գործն կարգադրեց, բայց այնպիսի կարգադրութիւն մի որ հակառակորդին պահանջածն այլ ևս էր արդէն։

252. Էշը դրին ;(այս ինչն)։—Ծաղր ու ծանակ ըրին։

253. Էշը Խախամով (եղանակով) զռալ կու տան։—Ամենքին կարգի կանոնի կ՚ենթարկեն։

254. Էշը պոչ մ՚ունի, այն ալ այն։—Անոր զբաղումն ալ այն է. միշտ հետն կը պտտցնէ։

255. Էշը պօչ (պարապ) ճամբեց։—Հիւանդացաւ, պիտի մեռնէր, բայց ապաքինեցաւ։

256. (քէպապի հոտ կուգայ, կ՚երթաս ուր) Էշ կու տաղին։

257. Էշն ախոռը կու խնդայ։—(անանկ սուտ կը խօսի որ) Բնաւին անհաւատալի է։

258. Էօքը դպաւ (վասն անձի)։—Զանաց։

259. Ըղունկ կու քերէ։—Կուզէ կռուեցնել։

260. Թագւո՞ր տ՚ելլես։ — Ինչո՞ւ հանդերձ ճանր կը հագնիս։

261. Թաղին (բարակ) մեր թաղին է, չուլը (վրայի լաթը, քուրձը) փոխեր է։

262. Թաթ եսի, կրունկ էռջիս։—Անկանոն, խառն ՚ի խուռըն բան մ՚եղաւ, գուլպայի սխալ հագնելու պէս։

263. Թաղնան խաաապա եղաւ։—Աղջիկ էր, հարս եղաւ (անկէ յետոյ ինչ կ'ըլլայ, ըլլայ)։

264. Թանթուլ թեւերճին է վառակեր։—Իւր աշխատութեամբն է շահեր։

265. Թանով պատարագ կուլլի։—Մենք արանք՝ եղաւ։

266. Թանս թթու է ըսող չի կայ։—Մարդիկ սովորաբար իրենց ունեցած թերութիւնն չեն յայտներ։

267. (քեզ) Թապախը կուգնէ կ'ուտէ։—Քեզմէ շատ հարուստ է։

268. (այս ինչին) Թասէն (գաւաթէն) ջուր է խմեր։—(անոր) Բնոյթը առացած է։

269. Թաց տեղ չի պառկիր։—Թեթեւ բան չի բռներ։

270. Թելէ դերձնէ կըյուիլ (կտրուիլ)։—Նիհարնալ, ուժասպառ ըլլալ։

271. Թելին դպչիլ։—Անհաճոյ խօսք մ'ընելով բարկացնել։

272. Թեպոէն թեպուռ մի ըլնիր։—Ի յիշատակ զաւակ մի ունենայ։

273. Թեր ճաթեց, (հոն եկաւ եւայլն)։—Կարծես բնագդում մ' եղաւ, հոն եկաւ եւայլն։

274. (այս ինչին) Թեռմը կու թռչիր։—(անոր) Ապաւինելով կամ անոր շնորհիւն է որ համարձակ կը գործէ կամ կ'անիրաւէ։

275. (այս ինչ գործը եւայլն) Թեփէն հանել։—(այն գործը եւայլն) Լրացնել, գլուխ բերել. որ մէկ հոգն պակսի։

276. Թէփէլէնէ (անիւը) կոյնեցաւ։—Գործի ընթացքը կասեցաւ։

277. (իբր նօսր՝ հալելու մօտ ձիւն) Թիու վրայ չի գար։—Շատ երես տրուած է։

278. Թիւյը (մազը, աղուամազը) վար կ'անէ։—(Այս ինչ պաժան, թռնաւոր անձն) կը շոյէ, սիրտը կը շահի։

279. Թող կըյին (կտրին) առտուանը, չի խրկին իրիկուանը։—Բնաւ վախնալու բան մը չունիմ։

280. Թող հինայուի (ձեռքը հինա դնէ)։—(հակառակորդըն կործանեցաւ. ուրեմն) Թող ուրախանայ (փափագը կատարեցաւ)։

281. Թորիկոնց Թանիրին գլուխը դարձաւ։—Անկարգ վիճակ մը առացաւ. հանդիսականք խառն 'ի խուռն կը խօսին, կը գործեն։

282. Թոր...ոնց Կարապետ՝ չէքէ՞ր։—(այս ինչէն) Բարիք ակնկալելն աւելորդ է։

283 Թուղթը պակաս է։—Թեթեւամիտ, թեթեւսոլիկ է։

284. (այս ինչին) Թուրը կու քաշէ։—(այս ինչ անձին) ի նպաստ կը խօսի, կը պաշտպանէ։

285. (իլուր կամ խոսս այս ինչ գեղեցիկ աղջկան կամ իրին) Թուքն ու շողուքը վազեց, կամ թուքը կլլեց։

286. Թուքս բերանս չորցաւ։—Սոսկացի. զարմանքէս ապշեցայ մնացի։

287. (ապրանքի մը եւայլն նկատմամբ խօսելով) Թըռցընել։—Չափազանց գովել։

288. Թքնես՝ անձրեւ կուգայ կ'ըսէ։—Անպատկառ է։

289. Թքնես՝ գետինը չիյնիր։—Շատ ցուրտ է։

290. (գործի մը համար) Թքնես՝ տի մարի, փչես՝ տի վառի։—Զօրաւոր ես, ինչպէս ուզես՝ կրնաս կարգադրել։

291. Ժիժին ճաթեր է։—Որդին բնութեամբ ճիշդ հօրը կը նմանի։ (Կ'ըսեն թէ ժիժին՝ ժժալով ժժալով կը ճաթի եւ կը ծնի)։

292. Իզին (հետքին) վրայ ետ դարձաւ։—Անմիջապէս, կամ, դեռ նոր եկած էր՝ ետ դարձաւ։

293. (վաճառքն մէկի մը) Երեսն վաճառել։—Մէկի մը հաշուոյն վաճառել։

294. (աղջիկն) Ինն ու լուսէն ու բարկ արեւէն է։—Ցոյժ գեղանի է։

295։ (տեսնելուն՝ սկսաւ) Ի՞նչ ես կերեր, մալեզ—ապուր։—(սկսաւ) Գանակոծել զլանցաւորն, կամ յանդիմանելով յանցանքն թուել։

296. Ինտոր աղջիկ, անանկ հարս։—Ի՛նչ որ էր առաջ՝ նոյն է և այժմ։

297. Ինք իր գլխուն խառափուզ (ձմերուկ) կտրել։— Ցանձնապաստան գործել։

298. Ինշալլահ Խաչուկին էշը գալը չէ տարեր կամ կե- րեր։—Եղածն եղեր լմնցեր է, տակաւին կը յուսաս կ՚ըսես թէ «Կարելի է չըլլար»։ *)

299. Իշուկ չունի, հավաս (փափաք) ունի։—Հարստու- թիւն, պաշտօն ևայլն չունի, բայց կուզէ հարուստի պէս վարուիլ։

300. Իշուն ամիսն է եղեր։—Անմիտ կապիտ է։

301. Իշուն դրախտը (գնաց)։—Ախոռը (բանտը) տարին։

302. Իշուն ինկեր ճիվը թօփալ է (կաղ է) կամ կոյ՞ր է։ — Ի՞նչ, կարծես թէ կարողութիւն չունի՞։

303. Իշուն չի հասնիր, փալանը (համետը) կու ծեծէ։ —Իւր զօրաւոր ոսոխին բան մը չի կրնար ընել՝ անոր վե- րաբերեալ տկար անձէ մը վրէժը կ՚առնու։

304. Իշուն տուին ափ մի գարի, թօք մ՚ալ ոյտգնէցին (վարձք)։

305. (գործը) Իշու պոչ է։—Յառաջդիմութիւն չի կայ (այն գործին մէջ)։

306. Իս (զիս) տմք տի պահէ։—(հանդերձն...) Ի՞նչ շահ ունիմ զայն պահելէն։

---

*) Ժամանակաւ, Ակնեցի Տէլի Խաչիկ ին (զ) էշը գայլն կերեր է լեռն։ Խենթն գէթ իշուն նալերը քաշելու համար ոտքերն կը կտրէ ՚ի քաղաք շուկան կը բերէ։ Բայց, ով գիտէ. կամ սիրելի իշուն արկածն չեղած լինելու փափաքով կամ կասկածելով թէ գուցէ սխալած է՝ կը հարցնէ հանդիպողներուն թէ «Լսեցի՞ք, Խաչուկին էշը գալը կերեր է կ՚ըսեն»։ «Այդպիսի բան մը չի լսեցինք» կ՚ըսեն։ Խաչուկն տեսնելով թէ դէպքն չի հաստատուիր՝ ինքն ևս «Ինշալ- լահ, Խաչուկին էշը գալը չէ կերեր», կ՚ըսէ։

307. Իրար կուտին։

308. Իրարու բերան թքերնին։

309. Իրեք (երեք) աւուր հորթը (որթ, մոզի) ջուրը կերթայ։—Թէև հասակը բաւական է, բայց որչափ տկար, ապիկար են։

310. Իրը (զիւրն) լեռներն է մոլրցուցեր, օտարը ծոցն է սովրցուցեր։—Իւր որդիքը չի շահելով աստ և անդ ցրուեր է, և օտարները բերած է իւր տուն կամ գործին մէջ։

311. (այս ինչ ճամբորդին, կամ յղի կնոջ և այլն նըկատմամբ) Իրիկու առտու է։—Ժամէ 'ի ժամ կամ օրէ օր (գալըստեանն, ծննդեանն) կ'սպասուի։

312. (վառուած ճրագներ տեսնելով) Իրիսկինը (երէց կինը) մ՞ինչ է բերեր։—Ի՞նչ կայ, որ այդքան ճրագ վառեր էք։

313. Իւլարը (պախուցը) վրան թող տուր, կամ թող տուի։—Գործելու ազատութիւն տուր, թող վարժուին։

314. Լան (լայն) փարթը (փորը) նեղ աւուր է եկեր։—Շուայտութեանց կամ առատութեան մէջ մեծցող որկրամոլն նեղութեան հանդիպեր է։

315. Լաց կ'իյնի (այս ինչին ժառանգութենէն)։—Բան մի չիյնար օրինօք, իւր բաժինն լացն է։

316. Լեզուին կուտայ։—Առանց ակնածանաց կծու խօսք, քերով կը խօսի։

317. (այս ինչ բառը կամ անունը) Լեզուիս վրայ է։

318. Լեզուին տակը շեղ կայ։—Բան մը պիտի ըսէ, բայց չըսեր, կը ծածկէ։

319. Լեզուն երկան է։

320. Լեզուն կու դառնայ։—Ճարտարախօս է։

321. Լեզուն ոսկոր չունի։

322. Լեզուս բերնիս մէջ չորցաւ։—Սարսափահար եղայ։

323. Լեզուս խածի։—Համբերեցի, տոկացի։

324. (վասն անձի) Լեռը ձուն չէ եկեր։—Դժբաղդութիւն, նեղութիւն անծանօթ են ատոր

325. Լեռ քար կու կոյնի (ստ խօսքին վրայ)։—(այս կամ այն բացատրութեան առաջարկին դէմ) Այլ ևս ըսելիք չի մնար։

326. Լիմոն քմեց (քամեց)։—Նշանաւոր խօսքով մի (գործը) փայլ տուաւ։

327. Լորտուքին աղ նետեց։—Ի բարկութիւն գրգռեց զնա։

328. Լուանալ։—Ցանդիմանել, կշտամբել խստիւ։

329. (վասն աղջկան) Լուի կծած չունի։—Պակասութիւն բնաւ չունի.

330. (հաշուոյ մէջ) Լու չի թողներ։—Ճիշդ կը հաշուէ, աչալուրջ է։

331. Լուսը կ'երթայ, լուս չի տար։—Մախք կ'ըլլայ և արդիւնք յառաջ չի գար։

332. (վասն աղջկան) Լուսնկան պատռեր ու միջէն ելեր է։—Ցոյժ գեղանի է։

333. Լուսնկան՝ ջուվալը (պարկը) տի դնէ։—Գիշերայն խոյս պիտի տայ։

334. Խալկին դրաւ տատին (հօրն) ու մօրը։—(հեգնաբար) Զար գործեց. ուստի ընդ միշտ անիծիւք պիտի յիշեն զայն և իւր առթիւ հայրն ևս։

335. (վասն կնոջ) Խալու (գորգի) վրայի վէգ է։—Փափկասուն է։

336. Խաշը պտուկը տի մնայ։—Գործը կիսատ տի մնայ։

337. Խաշուխ մի (դգալ մի) ջրի մէջ կու խեղդէ։—(այս ինչն այս ինչին) Կրնայ դիւրաւ նուաճել։

338. Խառխզին (հալած ճարպին կամ դմակին մնացորդն) լինել։—Մտահոգութեամբ տոչորիլ։

339. Խելացը բունը գտաւ։—Կրցաւ համոզել։

340. Խելացն հետ է. կամ, խելացն հետ (եկաւ, ըրաւ ևայլն)։—Անգիտաբար անխորհրդաբար (գործեց)։

341. Խելքը ջրեց։—Պատրեց։

342. Խենթէ կուշտ՝ խելօքէ կարօտ։—Այս անխելք մարդը մտիկ ընելու ժամանակ չունիմ. ես արդէն ունիմ այդպիսիք։

343. Խենթը քուն ու բաղդն արթուն։

344. Խենթն է կալլեր (ունեցեր) ափ մի չաման, կու չափէ ամանէ աման։—Ունեցածն բան մը չէ, բայց աստ և անդ կը տեղափոխէ կամ նորանոր կարգադրութիւններ կ՚ընէ։

345. Խենթն ըսաւ խելօքն հաւտաց։—Խելացին առանց խորհելու գործեց։

346. Խեւ Կիրակոս [illegible], ինչ կ՚ըսէին կ՚աւտայի (կը հաւատայի)։—Յոյժ պարզամիտ է. կը խաբեն. ինչ ըսեն կը հաւատայ։

347. Խլրդուկի պէս հողը իրմէն կուգայ։—Իր նեղութեան և անհանգստութեան պատճառն ինքն է։

348. Խմած ջուրերնին (միայն) զատ կ՚երթայ։—Յոյժ մտերիմ են։

349. Խոտ է, խոտի կուտ է։—Պարզամիտ է։

350. Խոտը ձիուն ագիքն է, ձին անօթի ժուռ կուգայ։—(այս ինչն) Ջաւակ, դրամ ևայլն ունի, բայց կարօտութիւն կը քաշէ։

351. Խորունկ է։—Խոր հմտութիւն ունի. շատ գիտուն է։

352. Խաշլը՞ տի քրքրէր, կամ քրքրեցիր. (գառին փորը բրինձով կամ ձաւարով ևայլն լեցուցած կ՚եփեն և ուտելու ժամանակ կը քրքրեն)։—Ինչու փութաց. լիախորտիկ սեղան կայ։

353. Խուռշունով (հրացանով) կու զարնէին։—(այսինչ իրն) Հազուագիւտ է։

354. Խօսած խօսքը կամ ըրած վէճերնին ընկուզի կճեպ չի լեցներ։—Անկարեւոր խօսքեր են։

355. Խօսքդ թագաւոր անիմ։—Խօսածիդ ուղիղ ըլլալը հաստատիմ։

356. (հանդերձն, կերակուր ևայլն) Խօսք կու նետէ։—(հանդերձ ևայլն) Աղուոր, ձեւաւոր, լաւ է։

357. Խօսք նետել.—անորոշ խօսքերով ակնարկութիւն ընել։

358. Ծակեցաւ. (կամ) Սատընին չորօքը ծակեցաւ։—Դաւը եւայլն երեւան ելաւ.

359. Ծառն ելլէ, փապուճը (մուճակը) գետինը չի մնար։—Ո՛չ ընտանիք, ո՛չ ստացուածք ունի եւ ո՛չ ալ ասոնց հոգերը։

360. (յղի կնոջ մի նկատմամբ) Ծեփած քիւփ է։—Արու կամ էգ ծնանելն յայտնի չէ։

361. (խնդիրք մը, խօսք մը) Ծխել։—Անցողակի կերպով ըսել, հասկցնել։

362. Ծովը մտաւ, ցամաք դուրս ելաւ։

363. Ծուռ բուսաւ։

364. Կաթդ գետինը մի՛ կթեր։—(իզուր) Մ'աղաչեր ; մի խնդրեր։

365. Կաթեցնել (խօսքը)։—Լաւ մը հասկցնել, բաց ...րել։

366. Կաթը վաթած դարձաւ։—Պատահած անա..կալ դէպքին համար տրտմեցաւ։

367. Կաթն ակռան բերմնն է։—Տղայ է. չի՛ գիտեր։

368. (վասն անձի) Կաթնով լուացած է։—Անամօթ, ամեն նենգութիւն ընող է։

369. (խնդրածդ) Կալլիմ նը՝ քէլ (գոնչ) գլխուս դեղ տանիմ։—Ինձմէ խնդրածդ չունիմ, զի եթէ ունենամ, ինձ աւելի եւս պէտք է։

370. Կախ ու կարիք եղաւ։—Յոյժ աղաչեց, թախանձեց։

371. Կակող փուշ է։—Կեղծաւորութեամբ սիրով կը վարուի, բայց չարամիտ է։

372. Կակոսիկի բաներ մ'աներ։ *)

*) Կ'ըսեն թէ ժամանակաւ աղջիկ մի կամ կին մի ջուր բերած ատեն ծառի մը ներքեւ նստած «Երբ ամուսնանամ, տղայ մի պիտի ծնի, անունը Կակոսիկ պիտի դնեմ, բայց երբ մեծնայ, գայ այս ծառը ելնէ, վար իյնի մեռնի, ես ի՞նչ պիտի ըլլամ» խորհելով՝ ողբալ սկսեր է։

373. (այս ինչին) Կաղաթը թոթվեց։—Անոր տեղեկու-թիւնքն, գաղտնիքը բոլորը խօսել տուաւ։

374. Կողմնեկ է ու շալկեկդ է։—Դու ալ աղջիկ ունիս, խնամի պիտի ունենաս եայլն. տեսնեմ ինչպէս պիտի ընես։

375. Կաղնդին՝ էշն ախոռը կ՚իմանայ։—Կաղանդին ցե-րեկուան երկայնութիւնը զգալի լինել կ՚ըսկսի։

376. Կամաց, վրայէդ բան չի թափես։—Մի յուսար բնաւ, մանաւանդ զգուշացիր որ քեզ չի խաբէ։

377. Կանչեցին, կանչեցին, կանաչ արտը չորցուցին։—Այս ինչ մարդը հարուստ է, բարեկեաց է ըսելով ըսելով մար-դը աղքատացաւ, թշուառացաւ։

378. Կանչեմ կու լսէ։—(այնքան) Մերձ է։

379. Կապերը ժողվէ։—Զապէ։

380. (պարտականի մը նկատմամբ) Կապը երկնցուր։—Աւելի ժամանակ տուր։

381. Կապը ծամել։—Վնասուիլ, անանկանալ. գործը չի կրնալ 'ի գլուխ հանել։

382. Կապ կտրել։—Անգիտօրէն ներկայից մէկուն դպչե-լիք խօսք մ՚ըսել։

383. (3 մարդոց կամ տան նկատմամբ) Կաս կրակքը։—(այս ինչ 3 անձինք կամ ընտանիքն) Որք միաբան են։

384. Կավառը վար անել։—Կշտամբել։

385. Կատուի հոգի է։—Հիւանդութեան, նեղութեան և այլի կը դիմանայ։

386. Կատուն կապեր է։—Իւր ապագայն ապահոված է. գործը կարգի դրած է։

387. Կարգը առեր է։—Արբեալ է։

388. Կարդացնել։—Հրահանգել, խրատել.

389. Կարճնալ ու երկննալ. (չեմ ուզեր երթալ, զի տի կարճնայ ու տ՚երկննայ)։—(խնջոյքի, քաղաքավարական ձևե-րու և պատրաստութեանց համար) Հոգալ, նեղութիւն կրել։

390. (Երբ այս ինչ գումարն ունենամ կամ գործս յաջողի) Կեանք իմ Ազնաւուր աղա։—Երջանիկ կեանք մը պիտի ունենամ։

391. Կեն է նը՝ չթու է կամ Կանթոռ է. (գեղ մ՝ է Նի-Գուրուչայ. Թուի թէ տետրակին մէջ կտաւ կամ Կոնտոսի գրելու տեղ «Կ» գրած է)։—Այդ գրուած եայլն յայտ անորոշ է, չմ կրնայ գուշակել թէ Կ գրով «կտաւ» կամ «Կոնտոսի» իմանալու է։

392. Կեցիք, մեռելին ոջիլը սատկի։—(սուգէ ելնելու, ամուսնանալու, ժառանգութիւնը բաժնելու եայլն) Դեռ կանուխ է. զի դեռ նոր՝ քանի օր է, որ մեռաւ։

393. Կէմին (Նաւը) լեցուն է։—Ընտանիքը շատ է, սենեակը լեցուն է։

394. Կէռկէռլէքէշ կուլլի։—Կը խրոխտայ. (Կարկառի ծխախոտին նմանութեամբ)։

395. Կէս մարդու եղայ։—Մեծ մտահոգութենէ կէս եղայ։

396. Կէտ եկաւ։—Արգելք, դժուարութիւն երեւան ելաւ։

397. Կոթը օրթան (կեդրոնն) բերաւ։—Գործը ուզած տեղը բերաւ, հասոյց։

398. Կողերը հաստ է։—Անկիրթ և յամառ է։

399. Կողերը փորը լեցուց.—Ջախջախեց, անխնայ դանակոծեց։

400. (այս ինչին կամ իւր) Կողմը տաշել։—(Նորա կամ իւր) Նպաստաւոր կերպիւ խօսել եայլն։

401. (խօսքի մէջ մէկը խօսողին) Կոճակ կամ կոճկէ։—Այդ խօսքը ծածկէ. դադրեցուր։

402. Կոճ-աթոռ նստեր է (թերեւս դուճ-աթոռ)։—Տունըն փակուեր նստեր է։

403. Կոյր մեռաւ, խաղը (գիւղացւոց՝ կաթի փոխատուութիւնն կարգաւ) հասաւ։—(մեր) Ի հարսնութիւն տուած աղ-

ջիկը եւայլն մեռաւ, այլ եւ խնամութիւն մի, պարտաւորութիւն մի չունիմք։

404. Կոտիկ հաւուն պոչ կու դնէ։—Գէշ անուն դնող, զրպարտող է։

405. Կոտիկ մ'ալ ան կ'աղայ։—(այլք կը հեգնեն, կ'առարկեն) Անդիէն այն ալ սկսաւ սակաւ ինչ հեգնել եւայլն։

406. Կու մուրայ՝ թապախը (պնակը) եքսէն (յետկոյսն) բռներ է։—Անուղղակի ողորմութիւն կը խնդրէ, բայց մեծամիտ է, իւր վիճակը չի յայտներ։

407. Կու ջարդէ, կամ, խոշոր կու ջարդէ։—Կը պարծի։

408. (զգեստն, նորաշէն տունն եւայլն) Կու վառի։—Ցոյժ զարդարուն է. կը փայլի։

409. Կ'ուտէր կուռն 'ի կուռը, կ'երթար ծուռն 'ի ծուռը։—Հանգիստ և անհոգ կեանք մը վարէր։

410. (խօսելու կամ գործին, արհեստին եւայլն) Կուտը կու հանէ։—Շատ ճարտար է։

411. (խնճոյքը եւայլն) Կուտ կուտ եղաւ։—Տակն ու վրայ եղաւ, ցրուեցաւ։

412. Կուտ կ'ուտէ թանիրը կ'իյնի։—Կը բողոքէ սաստկապէս, և բարկացած է յոյժ։

413. Կուտ մ'աղալ կու մորթուի։—Հեղահամբոյր է (իբրև գառն)

414. (այս ինչ երիտասարդ) Կուտ չի տի կապէ։—Չպիտի ամուսնանայ, կամ, չի տ'ըլլայ։

415. (ոմն զոք) Կու ցատկեցնէ։—Չարամտաբար վտանգաւոր դատի կամ գործի և կամ շռայլ ծախուց կ'ենթարկէ։

416. Կու քաշուի։--Տանելի է։ Չի քաշուիր։--Անտանելի է։

417. (վասն անձի) Կու քսուի։—Կը ձգտի բարեկամանալ։

418. Կչճանը կապես՝ հաց կ'ուտէ. եէմլիքը (մսուրը) կապես՝ խոտ կ'ուտէ։—Անասնոց պէս մարդ մ'է, կարելի է զայն ըստ հաճոյս վարել։

419. Կռնակը կու կեռայ։—Դեռ չզգաստացաւ, կրնակը ծեծ կ՚ուզէ։

420. Կանուց (կտուց) մի տուն ունի։—Փոքրիկ տուն մի ունի։

421. Կտցակը (Թերևս կտցածը) պատը ձգեր է։—Բեռ եղածն (անձն) ըրին չըրին հեռացուցին։

422. Կրակին վրայ իմ՚ նստեր։—Կարևոր գործ մ՚ունիմ, վասն որոյ անհանգիստ եմ։

423. Կրակի վրայ քաշեց։—Գրգռեց։

424. Կրակ կու վառէ։—(փոխանակ յորդորելու)՝ Գրգռիչ խօսքեր կ՚ընէ։

425. (պէտք մը այս ինչին) Կրնակէն հանել։—1. (պէտք մը) Կարողութիւն ու պատրաստութիւն ունեցողէ մը առնալ. 2. Միջոց մի գտնելով հրաւիրեալ տեղէն այլ տեղ մ՚ևս այցելութեան երթալ։

426. Կրնակը գետինը չի գար։—Անկման վտանգ չունի. զօրաւոր է։

427. Կրնակը ծեծել։—Շոյել, գովել։

428. Կրնակը քարէ պատին է տուեր։—Զօրաւոր անձի մը պաշտպանութեան տակ կը գտնուի։

429. Կրնկին (կըրընկին) վրայ (վճարել, գործել)։—Իսկոյն (վճարել ևայլն)։

430. Հազայ ՚նը՝ գօտին կու կըցի (կտրի)։—Շատ աղքատ և խեղճ է։

431. Հազար առուէ հազար ջուր բերի՝ չեղաւ։—Զանազան փաստեր, օրինակներ մէջ բերի՝ բայց չի համոզուեցաւ։

432. (Ինչ կու մտմտաս) Հազարին կէսն հինգ հարիւր է (ի կատակ)։—Բարակ մտածելով մտահոգ մի՛ լինիր։

433. (այս ինչն) Հազար տարուան մեռելին հասաւ։—Թէ և նոր է, բայց հներուն հաւասար իրաւունք ունի այժմ։ Կամ, Թէև օրուան մի մեռեալ է, բայց 1000 տարուանին կարգն անցաւ։

434. Հա՛ (այո) կ'ըսէ (կ'առնու եւայլն), չէ կ'ըսէ (կ'առնու)։—Ցարմար և անյարմար պատճառ մէջ բերելով՝ կամ շարունակ (կ'առնու)։

435. Հաղորդմիշ հետը խօսելու է։—Ա՜յնչափ դաժան կամ բռնաւոր է որ հետը խօսելու համար մահը աչք առնելու, ճաշակելու լինի։

436. Հապը (դեղահատը) կլլեց։—Յաղթուեցաւ, անանկացաւ եւայլն։

437. Հավա՛ տուտուղ, բան մ'ալ դուն կանչէ.—(Գիտեմ որ անհանգիստ ես կամ ախորժակ չունիս երգելու, խօսելու, բայց) դիտմամբ կ'ըսեմ որ թերեւս խնդաս, տըրտմութիւնդ փարատի։

438. Հարած վարած է։—Զանազան մոլութեանց մէջ սընած, վարժուած վարպետ որդի մ'է։

439. Հացը ականճս չիմ տանիր։—Զարն ու բարին կը հասկընամ։

440. Հացը Ֆնկանը վրայ է։—Ապերախտ է։

441. Հացը, կամ, կերածս կրնակս ի վար կ'երթայ։—Հանդարտ սրտիւ չեմ կրնար ուտել։

442. Հացի ցեց, ապրի դուհեկ է։—Որկլամոլ և ծոյլ է։

443. Հաց մի կե՛ր, հա՛ց մ'ալ տուր (ողորմութիւն) տո՛ւր (որ այն գործն այսպէս եղաւ) (եղածէն)։—Գոհ եղիր։

444. Հա՛ց ու պանիրով պահել (զոք)։—Աննշան թոշակ մի սահմանել կամ ձրի պահել։ Հաց ու պանիր է։—Պարզ, դիւրին է։

445. Հաց ու ջուր չի կերաւ, գնաց խաղաղ տուաւ, (կամ) գնաց ականճը ձգեց։

446. Հաւերը (կամ) Շուշիկը թառն ին ելեր։—Գինովցեր է։

447. (գինովի կամ ցնդածի նկատմամբ) Հաւերը տունն ին։—Այս պահուս խելքը գլուխն է։

448. (Եւ անանկ բաներ գիտեմ որ) Հաւը խօսի ձայն չի տար։—Շատ բան (գիտեմ խօսելու)։

449. Հաւկթին մէջ մազ կու բնտռէ։—Բծախնդրութիւն կ՚ընէ։

450. Հաւկթին միջէն նոր ելած եմ։—Նոր սկսած եմ խաղցուրուելը, ուշքի գալ։

451. (այս ինչէն) Հաւկիթ առնողը դեղնոցը մէջը չի գտներ։—Խարդախ, նենգաւոր է յոյժ։

452. Հաւկիթը ոռուն վրայ է եկեր։—(Ժամանակն եկեր լրացեր է դեռ նոր պատրաստութիւն կը տեսնուի)։

453. (այս ինչն այս ինչ տեղ) Հաւկիթ կ՚ածէ։—Հոն կը դեգերի։

454. Հոն (սեղանը կամ տունը) հաւու կաթ ու օձի լեղի կար։—(սեղանը կամ տունը) Լի էր. բան մը պակաս չիկար։

455. (զայն) Հաւ փեցի (իբրև հաւ) բունը կ՚անին։—Եթէ հոն երթայ ով կարևորութիւն կուտայ, գի հարուստ, զօրաւոր մարդիկ են։

456. Հենք կու հանէ։—Անընդհատ կուգայ կ՚երթայ այս ինչ խնդրոյ համար։

457. Հեռուանց կարմրուկ կ՚երևայ։ — Երևցածին կամ կարծուածին պէս լաւ չէ։

458. (մէկու մը) Հետն իյնիլ։

459. Հէմ (թէ) լանք, հէմ երթանք *)

460. (մեղադրանք) Հին հաւերուն քշէ քշէ, նոր հաւերուն ճու ճու ճու ճու։—Քանի որ նոր խնամի կամ նոր բարեկամ ունեցած ես՝ մեզ մոռցար գրեթէ։

---

*) Աղջկունք երբ պսակուելուն օրն հօր տունէն պիտի մեկնին կուլան։ Ո՛չ նուազ կ՚արտասուեն մայր և քոյրքն ևս։ Կ՚ըսեն թէ ժամանակաւ աղջկան մէկն ամուսնութեան օրն երբ կու լայ՝ կ՚ըսեն թէ սեթէ չես ուզեր՝ ետ անինք (խզենք)»։ «Ո՛չ, կը պատասխանէ օրիորդն, հէմ լանք հէմ երթանք»։ Այս առած կամ ասացուած այլ պարագայից մէջ ևս կը գործածուի, զոր. «Թէև այս ուրախութիւն, խոստկցութիւն հաճելի է՝ բայց վերադարձման, հիւրերն ընդունելու հայլն պատրաստութիւնն ևս չի մոռնանք»։

461. *Հնտուստան կլլէ (կլանէ), բերնէն հոտ չի գար։— Եթէ մեծագումար հարստութիւն իսկ ունենայ կամ շահի՝ ըլ-նալ չի յայտներ։*

462. *Հոգի Աստուած չի թողուր։—Առանց միջոց տալու կը պահանջէ, կը թախանձէ։*

463. *Հոգին տուեր՝ գաղտուկ կ՚ապրի։—Թէ և կենդանի է՝ բայց գերեզմանին դուռը հասած է։*

464. *Հոգին քարերը կու քսէ։—Անգործ մնալէն կամ զբօսնելոյ ընկեր չի գտնելէն սիրտը կը նեղանայ։*

465. *Հոգիս կ՚առնէ կամ առաւ։—Շատ կը թախանձէ։*

466. *Հոգուս տունը կը թնտայ։—Կը զայրացնէ, կը ցաւեցնէ։*

467. *(այս ինչը) Հողուն ու ջրին երեսը չի կայ։—Շատ կեղծաւոր, նենգամիտ, չարաճճի է։*

468. *Հով կու կլլէ։—(խանութին մէջ) Պարապ նստեր է. յաճախորդ չունի ։*

469. *(ոմն պոք) Հում հում կ՚ուտէ։—Բաղդատաբար յոյժ զօրաւոր է. կրնայ զայն չարաչար յաղթել։*

470. *Հծ-ի մը կունայի։—(այս ինչ տեղ գնալու համար ևայլն) Պատրաստ է, առաջարկի մը, առթի մը կը սպասէ։ (Գուցէ «Հօծն՝ կովուն գործածեալ «Հծ — գնա»ին իմաստն է»)։*

471. *Ձագը կ՚ելլէ մարը կ՚ուտէ։—(կը պատահի որ) Տոկոսն մայր դրամն կ՚անցնի. ապրանաց մնչափ ծախք կ՚ըլլայ որ ապրանքն տալով իսկ ծախքն չի գոցուիր։*

472. *Ձաղկուիլ (թոթուըռտելու պէս)։—Անմոաբար ըն-նոտի, փառասիրական ցոյցեր կամ ծախքեր ընել։*

473. *Ձանը տեղն ու խուփն ՚ի վրան.—(այդ խօսք) Պէտք է ծածկել, լռել որ չի տարածուի։*

474. *(այս ինչն) Ձեռացն եքսէն (ետևի կողմը) ու առաջքը չի գիտէ։—Տգէտ է. մեղքն ու վարձքը, շահն ու զէնը [illegible]իտէ։*

475. Ձեռացս մէջ գրուած էր։—Կը զգայի, կը գուշակէի
թէ այս դէպքն պիտի պատահէր կամ այսպէս պիտի՝ ըլլար։

476. Ձեռաց տակէ ծախեց։—Գաղտաբար ծախեց։

477. Ձեռք բռնել։—Օգնել։

478. Ձեռքդ արունը մի՛ թաթխեր։—Մի՛ դատապար-
տեր մինչդեռ իրողութիւնն լաւ մի չգիտես։

479. Ձեռքդ (կամ ոտքդ) թեթեւ է։

480. Ձեռքդ ձեռքս չէ դպեր։—Իմ հետ առեւտուր մի
չես ըրեր որ փոքր 'իշատէ դրամդ առած ըլլամ. կամ դրամ
պարգեւած չես։

481. Ձեռքէ անցունել (վաճառք եւայլն)։—Հատ հատ զա-
տել հարեւանցի կերպով եւ դուրսէ մարդ չի գիտցած։

482. Ձեռքս արունն ուր ըլլայ (պէտք է երթալ եւայլն)։
—Ո՛րչափ ալ ծանրազբաղ վիճակի մէջ ըլլամ՝ (պէտք է եր-
թալ եւ այլն)։

483. Ձեռքը բերանը կ'երթայ։—Ապրուստը, վիճակը
փոքր ինչ բարւոքեր է։

484. Ձեռքը գիտես թը շանը կրիճն է լուացեր։—Դըժ-
բախտ է ձեռնարկութեան մէջ։

485. Ձեռքը կըրնըկին է դրեր։—(հիւրը) ճամբու դրեր
է, ակնարկելով որ գնայ։

486. Ձեռքը մէջքը մնաց. կամ ձեռքը քարին տակը
մնաց։—Աջ բազուկը, օգնականը մեռաւ կամ այլ երկիր գնաց,
անօգնական մնաց։

487. Ձեռք թօթուել կամ ձեռք քաշել (հիւանդէ մը
կամ յայլմէ)։—Հրաժարուիլ օգնելէ, յուսահատիլ։

488. (այս ինչն այս ինչին վրայ) Ձի կու քալեցնէ։—
(անոր վրայ) Կը յոխորտայ, ճնշում կը բանեցնէ։

489. Ձիու պէս կու թրքէր։—Շքեղ կեանք մը կը վա-
րէր. մեծ, շռայլ ծախքեր կ'ընէր։

490. (վասն աղջկան) Ձիու վրայ ելնելիք է։—Հասուկ է,

ամուսնանալու համար քիչ մ'անցած է (ձիով պսակ տանելն ակնարկելով)։

491. Ձիանը (ձեանն) վրայ կու քալէ, իզը (հետքը) պէլլիսիզ (աննշմարելի) կ'անէ։—Գաղտագողի կը գործէ առանց իւր նենգութիւնը յայտնելու։

492. Զորչան ճըռան է (Զորակ գիւղի փոքրիկ կարաս է)։—Հինաւուրց սնած, տոկուն մարդ մ'է։

493. Ձունը երկրի (այլոց) երդիքը պողեց։—Իւր դժուարութիւնը ուրիշի գլխին կապեց։

494. Ճակատը հուկիթ մի զարնելու է։—Արցանակի կամ գովեստի արժանի ես (յանդիմանական կամ ծաղրական ձեւով)։

495. (ստացուածքը այս ինչին) ճակատը գրել։—Շընորհել, կտակել։

496. Ճաղէն (դագաղն) տ'իյնի։—Ծաղրող, բամբասող, զրպարտող է. (ուստի կը կարծուի թէ 'ի պատիժ, դիակն դագաղէն վար պիտի իյնայ)։

497. Ճըճուկին ձայն կու գայ (քեզի)։—Դեռ քեզի անկարեւոր կը թուի։

498. Ճընկըռտուկը (բոժոժը) ով տի կախէ։ *)

499. Ճի արաւ գնաց։—Եկաւ և իսկոյն մեկնեցաւ։

500. Ճիժանանք ու չաղանանք (չափահաս կամ ծեր խօսակցին ուղղելով)։—Դուն չափահաս ես բայց այդ ըրածդ խաղը, խեղկատակութիւնը ևայլն տղու գործեր են։

501. (մեր) ճիկերը (թոք) անոնց դուռն 'ի վար կախ է։—(մեր ևայլն) Աղջիկն անոնց տունն հարս է. (ուստի պէտք է հանդուրժենք և խոնարհենք մեր աղջկան սիրոյն համար)։

502. (այսինչին) ճիկերը փարայ մի (կամ) 5 փ. չարժեր։—Անպիտան, փոքրոգի, երկչոտ մարդ մ'է։

---

*) Կ'ակնարկէ մկանց խորհուրդն, որ կ'ուզէին կատուին պարանոցէն բոժոժ մի կախել որպէս զի գալու ձայնն առնելով փախչին. բայց [illegible] այս ոչ ոք չհամարձակելով՝ խորհուրդն անիրագործելի է մնացել։

503. Ծիվերը ջուրը դրին։—(ամչցնելով զայն) Խնճոյք մի, ծախք ընել տուին։

504. Ծոնձը (ճանձը) ոտուն կու խածնէ։—Յոյժ ժլատ է, չափազանց խնայող է։

505. (կտաւի կամ կերպասի նկատմամբ) Ծոնձը պոչոտովը (դրոշ) կ'անցնի։—Գործուածքը շատ ցանցառ է։

506. Ծոնճ ու մժեխ էր։—Անթիւ բազմութիւն կար։

507. Ծոնճ (ճանճ) տիլլնիմ՝ պատը տի փակչիմ։—Ծերացեր եմ՝ բաւական է այսքան ապրիլս։

508. (այս գործէն այսքան դրուշ) Ծչեց։—(այս գործէն այսքան դրամ) Փճացաւ, վնաս կրեցի։

509. Մազը ձարէն զատել։—Մանրամասն հաշիւ տեսնել։

510. Մազիս դիմովը։—Շատ անգամ։

511. (հօրմէն եայլն) Մազ մի կայլէ (ունենայ)՝ ձեռը կուտայ։—(եթէ հօրն եայլն) Բարեմասնութիւններէն քիչ մը ունենայ՝ բաւական է։

512. Մազս վեր կու քաշեն. (իրողութեան մը պատմութեան առթիւ)։—Զարմանալի է (այդ իրողութիւն եայլն)։

513. Մաշ գտած գող դարձայ։—Ցանականկալս երբ ստացայ՝ յոյժ ուրախացայ։

514. Մազը րուպ ($={}^1/_4$) պակաս եղաւ։—Սուղի նստաւ։

515. (խեղճին, ողբացելոյն զաւակունքը) Մազին տակն են։—Անչափահաս մանուկներ են։

516. Մոյմոփնը (կապիկը) անոր դուռը կու խաղայ։—Այս ինչը այժմ յաջողութեան մէջ է։

517. (այս ինչ կինն) Մանածը փուռը տիտայ.—Օրական մանածովը կ'ապրի. (ուրեմն ինչու չի կենար կամ չի գար)։

518. (ակարկութեան, խոստման մէջ) Մանչուն ու աղջկին (աղջկան) անուն դնենք։—Որոշեմք տալիքն կամ տեսակն։

519. (գործը եայլն) Մաշոյին (ունելիին) պոչովը կը բռնէ։—(գործը եայլն) Սրտով չի տեսներ, այլ անհոգաբար։

520. Մատովը կու լեցնէ։—Սկսեր է բամբասել, հեգնել Լալըն։

521. Մատը բերանը դուրս՝ելաւ (տնէն, գործէն)։—Զըր-կանք կրելով առանց բան մ՚առնելու բաժնուեցաւ, դուրս ելաւ։

522. Մատը բերանը կ՚երթայ։—Վիճակը բարւոքեալ է։

523. Մատը բերանը մնաց։—Զարմացաւ, ապշեցաւ մը-նաց։

524. Մատը դրած տեղէն չի վերցներ։—Ցամառ է։

525. Մատը մախիրը չի թաթխեր։—Աշխատութեան, բարեգործութեան բնաւ չի մասնակցիր։

526. Մատի վրայ կ՚առնէ, կամ Մատի վրայ կու խաղցնէ։

527. Մատնամլուր արին։—Զարաչար բամբասեցին, մե-ղադրեցին։

528. (կերակրոյ նկատմամբ) Մատները հետը կերաւ։

529. Մատնով ցոյց կուտան։

530. Մատս հոտ կուտայ։—Ի՞նչպէս կարելի էր գիտնալ կամ գուշակել թէ այսպէս պիտի ըլլայ։

531. Մատս մէջն է։—Ես ալ մասնակից եմ։

532. Մարդը մարդն է կցեր։—Անդադար մարդ կը ղրկէ (գործի կամ հրաւէրի համար)։

533. (վասն կերակրոյ) Մարդուն բերնին կու տըքըրտէ (կը հայհոյէ)։—Յոյժ համեղ կը թուի, մարդ տեսնելով կը փա-փաքի ուտել։

534. (անդ) Մար զմանուկը կ՚ուտէ։—Մեծ իրարանցում, խառնաշփոթութիւն կայ։

535. Մարը դնէ (որդւոյն անունը) գեղը կանչէ։—Մայրն երբ որդւոց գէշ անուն մի տայ՝ օտարն ալ կ՚սկսի ըսել։

536. Մարը մեռեր է, կամ տի մեռնի. (ուտելեաց եւայլոց նկատմամբ)։—Ինչու կ՚աճապարես կամ կը հոգաս թէ սպառե-ցաւ. շա՛տ կայ տեղն, կամ շատ պիտի գայ։

537. (մինչև ուր այս գործը տևայ ևայլն) Մարս խմեյ մ'ալ բերաւ։—(այս ինչ դժուարին գործը գլուխ հանելու համար) Շատ նեղութիւններ կրեցի։

538. Մեծ էշը ախոռը մոռցանք։

539 Մեծ հիւր՝ ու պզտի պատիւ։—Մեծ հարսանիք, խնջոյք ևայլն կ'ընէ, բայց պատրաստութիւնը քիչ է։

540. Մեծ պատառը ականճը կը մնայ։

541. Մեծ տատիս տարին գիտէ։—Շատ տարիք ունի, հնօրեայ է։

542. (վասն անձի կամ գործի) Մեղք պորտուն վրայէն եղին (իւղին)։—(այդ անձն կամ գործ) Բնաւ արժանի չէ այդ ծախուց ևայլն։

543. Մեղքս կ'ուտուի.—Կ'արգահատիմ, խղճալի է (այս ինչը). ընտիր, մաքուր է (այս ինչ բանը վաճառելս, գործածելս ևայլն չի գար)։

544. Մեռայ ու ողջցայ։—Մեծ մտահոգութեան մէջ էի, բայց այժմ սիրտս հանդարտեցաւ։

545. Մեռելէն խարա՞ճ (տճկ. հարկ քրիստոնէից) կ'ուզես։—Այդ անձը տկար, բնաւ անկարող է այդ պարտաւորութիւնը կատարելու։

546. Մեռելը իր օրը կու լան։—Ամեն բան իւր ժամանակին պէտք է ընել։

547. Մեռելը կու խնտացնէ։—Շատ զուարճախօս է։

548. Մեռելիդ աչքը ես էի ճանկեր։—Քեզի ինչ վնաս ըրած էի, կամ ինչ թերութիւն ըրած էի։

549. (այսինչ բանը զոր տուիր) Մեռելին բերանն 'ի վար գնաց։—Կարի պէտք ունէի, և յոյժ շնորհակալ եղայ։

550. Մեր էր ու ձեր եղաւ, ետի տէրը սրտացաւ եղաւ։—(այս աղջիկն, անձն ևայլն) Շատ ժամանակ մերն էր. այժմ գէթ նոր ճանչցաք և իբր թէ մեզմէ աւելի կը խնամէք։

551. Մեր իշուն պաղպաղուկը նայինք։—Մեր գործին նայինք։

552. Մեր տունը ջուր է եկեր։—Մեր տունը տուն չէ. կեցէք, այստեղ ևս խորհուրդ դարման կ՚գտնէք։

553. Մէկ աչքէն մէկալը չէր խտար, կամ չի տար (զայն)։ —Շատ կը սիրէր, կամ կը սիրէ (զայն)։

554. Ծէկ աչքը լայ, մէկ աչքը խնդայ՝ (տ՚ընէ, տ՚երթայ եւայլն)։—Կամայ թէ ակամայ՝ (տ՚ընէ, տ՚երթայ)։

555. Մէկ Աստուած ըսելուն կու հաւատամ։—Յոյժ սըրտախօս է, միայն երբ «Աստուած մի է» ըսէ՝ կը հաւատամ։

556. Մէկ դրան շան պէս կեչինե՛շ եղէք (ապրեցէք)։—Ինչու կը կռուիք, հաշտ ապրեցէք (իբրև զուարճաբանութիւն)։

557. (վասն երկու անձանց) Մէկ խնձորի շէկոյ (հաւասար կէս մասն) են։—Երկուքին բնութիւնն, դէմքն եւայլն նոյն են։

558. (վասն անձի) Մէկ կտաւի ճօթու են։—Միևնոյն բնութիւնն ունին։

559. Մէկ փարային վրայ մուկ կու մորթէ։—Ժլատ է։

560. Մէջն երերուն ենք։—Անորոշ տարտամ կացութիւն մ՚ունիմք. տարակուսանաց մէջ եմք։

561. Մէջքը կոտրեցաւ։

562. Մէջքը շտկել։—Անձկութենէն ազատելով վիճակը բարւոքել։

563. (վասն անձի կամ գործի) Մէջքս ամուր չէ։—(անոր խոստման կամ այս գործին) Վստահ չեմ։

564. Մըթղալը առաւ։ Վտանգաւոր դրութիւնը լրում գտաւ. բանը շատ վատ է։

565. Միզը մտնել։—Գաղտնիքը գիտնալու համար հարցաքննել. մորթին, կերպասին եւայլի խորը մտնել։

566. Մինչև 40 ընկոյզը մէկտեղ չի տեսնէ՝ քար մի չի նետեր։—Մինչև որ յաջողութեան մեծ հաւանականութիւն ձեռք չը բերէ և վստահ չըլլայ՝ չի գործեր։

567. Մինչուկ երեկու շանն աղ[illegible]ր կուտայ։—Անգործ փողոցները աստ և անդ կը շրջի։

568. Միսն 'ի վրան կ'ուտէ։—Անհանդարտ է, ինքզինքն կը տանջէ։

569. Միտք թուացնել։—Ուշադրութիւնն, կասկածն զարթուցանել, հնարք սովրեցնել։

570. Մուխը կ'ելլէ ու բոցը չելլեր, կամ՝ կու մխայ։—Ի սրտէ կը վշտակրի, բայց չի յայտներ։

571. Մուխն ու բոցը կ'ելլէ։—Առ վշտին կը հառաչէ, դառնապէս կ'ողբայ։

572. Մուկն իյնի գլուխը կը պատռի։—(դարակը, մարագը ևայլն) Բոլորովին դատարկ է։

573. Մսեր է (այս ինչէն)։—(անոր խօսքէն կամ արարքէն) Վշտացեր է, առանց յայտնելու։

574. (այդ հաշիւը, առևտուրը ևայլն) Մսին կու դպչի։—Թողումք շահն՝ դրամագլխէն ալ վնաս կ'ըլլայ։

575. Մսէն կ'ուտէ։—Դրամագլխէն կերթայ։

576. Մակեր է. (այս ինչին) Միսը կ'ուտէ։—Բամբասող է, կը բամբասէ։

577. Մտած դռնէն դուրս ելաւ։—(այն գործէն կամ վաճառէն) Ոչ շահեցաւ, և ոչ վնաս տեսաւ։

578. Մտքդ անցածը ամպավարի լեռներն անցնի։—Կը մաղթեմ, որ միտքդ դրած չար խորհուրդդ, փափաքդ չը կատարուի։

579. Մորդ փորը ինտոր ինն ամիս կեցար կամ համբերեցիր։

580. Մորը մանածը ծախեր է։—Վարպետորդի, փորձառու է։

581. Մորուացը բուրդը կուտայ, կամ տըկէն անցեր է։—Կեղծ գովեստներ կը շռայլէ։

582. (երբ լսեց) Մորուքը բռնեց։—Զարմացաւ։

583. Մօրուքը համրեր է։—(այս ինչն այս ինչէն) Այնչափ երես առեր է կամ գաղտնեացն թափանցեր է՝ որ չակնածեր այլ եւս։

584. Նալերը նետեց։—Մեռաւ սատկեցաւ։

585. Ներկել (բաց ի սովորական իմաստէն)։—1. Ներկը ներկեց։—Գործը վարպետութեամբ տեսաւ։—2. Բացը ներկեց։—Գաղտնիքը խօսեցաւ։—3. Ներկը ցցուց կամ դուրս տուաւ։—Չարութիւնը, մոլութիւնը յայտնուեցաւ, երեւան ելաւ։—4. Ներկդ երեւան կու հանեմ։—Դաւդ եւայլն կը յայտնեմ։

586. Ներսուկ քեզի կ'ըսիմ, դուրսիկ դուն լսէ. (ըստ ոմանց՝ «Հարսնուկ, քեզի կ'ըսիմ, դուստրիկ, դուն լսէ»։—Մէկը խրատել, յանդիմանել, որպէս զի ուրիշը խրատ առնու, զգուշանայ։

587. Ներքն-գործ է։—Խորամանկ է։

588. Նէպզը (երակը) բռնել։—Մէկու մը բնոյթը գիտնալով ըստ այնմ վարուիլ։

589. (վասն անձին) Նիկլեան (կէս օխանոց) փառէն է։—Թեթեւամիտ է։ (Այլ քաղաքաց ոմանց մէջ «Նիկլիւ» կը գործածեն, բայց սատ կէս օխա եւայլն կ'ըսեն։

590. Նոր աշխարհք եկայ։

591. Նոր եախա (օձիք) է։—Դեռ նոր ոտքի է կանգներ, սկսեր է յառաջ դիմել։

592. Տանը շապիկ կու հագցնէ, կատուին վարտիք։—Խորագէտ կամ խորամանկ է։

593. Տանը շնութիւնը գիտէ, կատուին բնութիւնը։—(Նախատական ձեւով) Խորագէտ է, ամեն բան գիտէ։

594. Տանը փարթը (այս ինչին) գլուխը անցուց։—Խըստիւ յանդիմանեց (զոմն)։

595. Տանը փարթը խաւուրմա՞ տի լեցնեմ։—(այս ինչին) Ջուր տեղը ինչու դրամ, ընծայ տամ։

596. Տան մսի գին է։

597. *Ճանն հետ ջուվա՞լը տի մտնիմ։—Այն չար կռուաւէր անձին հետ ինչեւ տի միաբանիմ։*

598. *Ճան քարող տալ. քարոզել։—Օրինակներով բան հասկցնել խօսակցին (զոր. եթէ խօսակիցը ազգական է, ըսել՝ «Այս ինչին ազգականին այս ինչ շնորհը ըրեր է կամ կ՚ընէր եւայլն)։*

599. *Ճապկին հետ կու ծեծկուի։—Անհարդարտ է, միշտ կռիւ եւայլն ընել կ՚ուզէ։*

600. *(վասն անձի) Ճատ հաց ու պանիր պիտի ուտէ մինչեւ ուր։—Դեռ շատ ժամանակ պիտի աշխատի, մինչեւ որ (անոր հասնի)։*

601. *Ճեմանը կրունկն է բուներ (վասն անձին)։—Ճատ մօտ դրացի է։*

602. *Ճէմը անանկ է բերեր, կամ չէմէն է։—Այն տանը աղջիկներն, ծառաներն եւայլն նոյն բնութիւնը կ՚ունենան, կամ գժբաղդ կ՚ըլլան։*

603. *Ճէն անունը աւեր քաղքին (ին դրեր)։—Հանգուցեալ այս ինչ երեւելի անձին անունը ազգականէն կամ ՚ի թոռանց այնպիսի անձի մը դրած են, որ հանգուցելոյն կարողութեան կամ առաքինութեանց եւ ոչ մին ունի։*

604. *Ճէնը կ՚ուտէ՝ աւերը կու թըքէ (վասն անձի)։—Ցունը կու նայի, նորոգութիւնը չի հոգար։*

605. *(այս ինչին հետ) Ճէքէրի է։—(այս ինչին հետ) Սակաւ ինչ գժտեալ է։*

606. *Ճըլլին կախ է։—Ջրկեալ կամ տառապեալ՝ տխուր է։*

607. *Ճըլլիս երկնցաւ (նայելով եւայլն)։—Ակնդէտ երկար սպասեցի։*

608. *Ճըլլիս քըզ (քան զ) մազը բարակ է։—Եթէ յանցանքս հաստատուի, ես ՚ի տանջանս պատրաստ եմ։*

609. *Ճողգամին նօսրը թօրզէն (թանձրէն) լաղէկ է։—Լաւ է որ այնպիսի մարդոց այցելութիւնն, յարաբերութիւնն սակաւ ըլլի։*

610. (անձի մը նկատմամբ) Շուն անոր կ՚ըսիմ՝ ուր իր տէրը խածնէ։—Անձ մի որ իւր տէրը կը բամբասէ։

611. Շունը կապես չի կենար (վասն տեղւոյ)։—Բնակութիւն անկարելի է։

612. (ի՞նչ գամ) Շունը կացինը ձեռքն է բերեր։—Ի՞նչ պատճառ ունիմ ձեր տունը գալու ։

613. (անդ) Շունը շապիկ էր հագեր, կատուն՝ վարտիկ։—Բազմութիւն շատ կար (անդ)։

614. Շունը պոչը փարտէ, այս ինչ տեղացի, կամ այս ինչ արհեստաւորք են (անդ)։—(անդ) Այս ինչ տեղացի կամ արհեստաւորներէն եւայլն շատ կայ։

615. (այս խօսքդ կամ արարքդ) Շո՛ւն, իս (զիս) խած ըսել է։—(այդ խօսքովդ եւայլն) Թշնամիդ կամ այս ինչ անձը ի զուր կը գրգռես։

616. Շուն կ՚արծէ։—Անգործ՝ ասա եւ անդ կը դեգերի։

617. Շո՛ւնն առնէ մեղքը։—(Թէեւ կասկածելի է, բայց) Չեմ կրնար պնդել անպատճառ, թէ այն յանցանքը նորա գործածն է։

618. Շունն իր տէրը չի ճանչնար։

619. Շունն յիշէ ու բիրն հայէ (կամ նայէ)։—Ահա այս ինչ անձն զորմէ կը խօսէինք, եկաւ. (անարգական ձեւ մ՚է)։

620. Ոնցեր (անցեր) ինք ըռատ առուէ, ագուգին ջրերըն ենք մնացեր։—Անցան մեր բարեյաջող օրերն, հարստութիւնն կամ հոյակապ անձինքն, եւ այժմ աննշան անձանց ձեռքն կամ կարօտն եմք մնացեր։

621. Ոջիլը բայլա բայլա եղաւ։—(երբ աղաչեցին, գովեցին զինքն) Փառասիրութիւնը գգուելով՝ հպարտացաւ։

622. (գործն, գալուստն) Ոտքը փակաւ։—Ետ մնաց, արգելքի հանդիպեցաւ։

623. Ոսկու հորը ինկաւ։—Հարուստ անձի տունն հարս եղաւ։

624. Ո՞վ գիտէ, ի՞նչ թև ու ճիվ կոչեր է։—(այն հարստութիւնն եայլն ձեռք ձգելու համար) Ո՞վ գիտէ, ի՞նչ զրկանք, անիրաւութիւններ ըրեր է։

625. Ո՞վ է մեր խօլլաքը (տողնակ փայտեայ, այգեաց գրան) կու լխուցնէ։—Ո՞վ է այն որ գաղտնապէս զիս կը բամբասէ, Փնասել կ՚ուզէ։

626. Ո՛վ իս ըղնկին, ես ան ըռըմպին։—Ո՛վ որ ինձ փոքր բարիք մ՚ընէ կամ պատուէ զիս, փոխարէնն մեծ բարիք մը կ՚ընեմ անոր, կամ աւելի ես կը պատուեմ։

627. Ո՞վ որու տարին (խօսակցին ուղղելով)։--Ինչո՞ւ կ՚աճապարես կամ մտահոգ ես։

628. Ո՛վ ուր մեզ գալած՝ կնտած ու մազն առած։—Մեզի աժան վաճառք (գրաստ, ոչխար եայլն) չեն տար, թէև լաւ, շահաւէտ կ՚երևայ, բայց թարմութիւն անցած կամ թերութիւն մ՚ունի։

629. Ոտացդ տակը հաւկի՞թ կայ։ – Ինչու շատ ծանր կը քալես։

630. Ոտաց ձեռաց կուտայ։—Խնայողութեամբ կ՚ապրի, եռանդով կ՚աշխատի։

631. Ոտուին գետինը կու ծեծէ։—Կը պնդէ, կը ստիպէ։

632. (այս ինչ կինն ինչո՛ւ չի գար) Ոտուին հինայ է դրեր. կամ ոտացը հինան կու թափի՞։—Ձանձրութիւն, կամ արդուզարդին Փեմս կ՚ըլլայ։

633. Ոտքդ վե՛ր առ (ուղեկցին)։—Արա՛գ քալէ, փութա՛։

634. (այս ինչ բանը) Ոտքը ժողվեր է։—Սպառելու վըրայ է։

635. Ոտքը լուա ու ջուրը խմէ՛։—Յարգը գիտցի՛ր։

636. Ոտքը քաշն է ձգեր։—Դիտմամբ կ՚երկարաձգէ իւր գալուստը կամ մեկնումը։

637. Ոտքը քսեց։—Եկաւ, և անկէ յետոյ ուրիշներ ալ սկսան գալ։

638. Ոտքին կուտայ։—Իւրեան եղած շնորհն, բարիքն ոտնակոխ կ'ընէ։

639. Ոտքին սապոն տուաւ։—Հնարքով մի (այս ինչին) ճամբել տուաւ. (Նրա տեղը բռնելու համար)։

640. Ոտքը կու զարնէ (ապրանացն վաճառման, գործին յաջողութեան)։

641. (այս ինչն դեռ) Ոտքովը կամ..ովը վարտիք չէ չորցուցեր.—Դեռ նեղութեան չէ հանդիպեր (զոր ճամբորդութեան մէջ թրջելով, թրջած շապիկն իւր վրայ չորցած չէ դեռ)։

642. (այս ինչ ուտելիքն Լայլն) Ոտք ու ձեռք է։—Շատ առատութեամբ կը գտնուի։

643. Ոտքս առաջ չերթար։—Թէ և կ'երթամ, բայց երկիւղով կամ կասկածով գոգցես կ'զգամ թէ չպիտի յաջողիմ։

644. Ոտքս կոտրեր նստեր իմ։—Ստիպուած եմ տունն նստած՝ սպասել։

645. Ո՛րը կոտրի՝ երկու թարաֆն (կողմն) իմ։—Որ կողմն ալ յաղթուի, կամ խնդիրը ինչ ելք ունենայ, գործիս կուգայ։

646. Ո՞ր մատը կտրին նը արիւն չ'ելլեր։

647. Ո՛ր քար ամուր է նը, գլուխը ան քարին թող զարնէ։—Որու կ'ապաւինի կամ ինչ միջոցի դիմել կ'ուզէ, թող դիմէ։

648. Ո՛ր քար վերցնես, տակէն կ'ելլէ։—Ամեն խնդրէ, լուրէ տեղեկութիւն ունի։

649. Ո՛ւչ (ո՛չ) ած (թերևս՝ այծ) ունինք, ո՛ւչ ուլ, սատանին-ականջը խուլ։—Զունիմք ոչ զաւակ և ոչ սորա նման բարիք, և ոչ ալ հոգ և զբաղմունք։

650. Ո՛ւչ ատենի է, ո՛ւչ անտենի։—Ո՛չ աշխարհային զբօսանքէ ախորժ կը զգայ կամ գործի կը խառնուի, և ո՛չ հոգևորի. անտարբեր մարդ մ՛ է։

651. Ո՛ւչ արօղի է, ո՛ւչ գրօղի։—Ձեռքէն ոչ բարիք կու-գայ և ոչ չարիք։

652. Ո՛ւչ է լաս, ո՛ւչ է խնտաս։

653. Ո՛ւչ իր է, ո՛ւչ իր տիրուն։—Ո՛չ ընտանեացն և ոչ իւր անձին օգուտ մի չունի։

654. Ուռեցեր է։—Նեղացած սրտմած է (բայց չի յայտներ)։

655. Ուռին տոնծ մի կար, քղ (քանղ) գլոխս մեծ է։—Այդ բսածդ կամ խօսածդ անհաւանական է, սուտ է։

656. Ուռ մի ուռուն կ'ելլէ, գոմէշ մի փորուն։—Գէր, այտերն կարմիր, և քաջառողջ է։

657. Ուռն ի կուռն ալ չէ։—Այդքան նիւթական ապ-րուստ և այլն ալ չունի։

658. Ո՛ւր եԹաս, օխան 400 տրամ է։—Ամէն ուրեք պայ-մանները, հաշիւն նոյն է։

659 (վատ անձի) Ո՛ւր ուտէ, հոն կու հաչէ։—Իւր ապ-րուստը, շահը ուսկէց որ է՝ 'ի նպաստ անոր կը խօսի։

660. Ձոյը (գետակը) ոնցեր է։—Արբեալ է։

661. (այս ինչին) Ձոքլը (անիւ, ճախարակ) դարձաւ։—Բախտը ('ի վատն) դարձաւ։

662. (այս ինչ խօսքը կամ անձն այս ինչին) Ձոփուծին (կռանին) տկէն ելեր է։—(այս գէշ խօսքը) Այս ինչէն ելած, հնարուած է. (այն խաբեբայ կամ ճարպիկ անձն) այս ինչէն կրԹուած սովրած է։

663. Ձըսանք Թը խուլճուխս (գլխակս) տուր։—Աննշան օգ-նուԹեանդ փոխարէն տուած ձանձրուԹիւնդ շատ եղաւ. քեզ-մէ այդ փոքր աշխատուԹիւնը խնդրելս զղջացի։

664. Ձի կտրած չուանը չէ մնացեր։—Ամեն զեղծմունք ու մոլուԹիւնք գործած է։

665. Ձիմ (չեմ) ուտեր, Ճեպը (գրպանս) ձգեցէք։

666. (անդ գնացած է) Ձին ըսեր Թը չու՛ն ես Թը կա-տու ես։—(այս ինչ տեղ գնացած է, բայց) Բնաւ երես, կա-րևորուԹիւն չեն տուեր։

667. Չի քաշեր։—(այդ խնդիրն կամ առաջարկը) Չըլլար, հաշուի չի գար։

668. Չամուռ (շաղախ) մ՚է պատը զարկ. բռնէ նը՝ (եթէ բռնէ) բռնէ, չի բռնէ նը՝ չի բռնէ։—Առաջարկ մ՚է, փորձ մ՚է ըրէ, եթէ ընդունի, լաւ. եթէ չընդունի, վնաս մը չունիս։

669. Չոր է։—Ժլատ է։

670. Չոր կաւուին (ջրի կաւառին) վրայ խաղչա (կռիւ) մի՛ անէք։—Առանց շահու գործ մի կենալու, իզուր կռիւ մի՛ ընէք։

671. Չորս դին ծով կտրիլ։—Դժուարութեանց հանդիպելով շուարիլ, վհատիլ։

672. Չորս դիս նայելու ժամանակ չունիմ։—Կարի ըզբաղեալ եմ։

673. Չոր փայտը չոր արունը մի՛ քսեր։—Այն անձն ևայլն անմեղ է. ըսածդ զրպարտութիւն մ՚է, մի՛ ըսեր։

674. Չուլ անել։—Թղթի, նարտի ևայլն խաղի մէջ մաս մը (բարթի) շահիլ. կամ երբ մէկը մէկու մը այցելէ և տունն չի գտնուի, այցելողն «Չուլ արի» կ՚ըսէ։

675. Չուլը կ՚երթայ, չուլքը կու թափի։—Հագած զգեստն շատ հին՝ ցնցոտիներ են։

676. Չուլը շակեց։—Վիճակը բարւոքեց։

677. (այս ինչին) Չուլի վրայ նստեցուց։—Կեղեքեց, տնանկացուց։

678. (երբ եկաւ տեսաւ որ գործը լմնցեր է)՝ Պաղ առաւ։—(ուշ հասաւ, և իր շահն ուրիշն առնուլն տեսնելով) Անյաջողութենէն տրտմեցաւ։

679. Պաղ թոնիրէն տաք հաց (կու բնտռէ)։—Վերջացած հաշուէ կամ անկարող անձէ մը շահ կամ իրաւունք մ՚ստանալ կ՚ուզէ։

680. Պոյքոխ (դրօշակ) բացաւ (թէ...)—Պնդեց, լացաւ, պոռաց (թէ ևայլն)։

681. (պահանջը) Պատ եղաւ։—Չառնուիր այլ ևս. (զի պարտականը սնանկացաւ ևայլն)։

682. Պատենքը պատռեց։ — Ոգեվարք և անյոյս վիճակէ մ՚ազատեցաւ. ապաքինեցաւ։

683. (այնպիսի միս մ՚էր որ) Պատը զարնես չի փակչիր։ — Յոյժ վատուժ էր։

684. Պատը խազէ (գծէ)։ — 1. Այս ըսածս միտքդ թող մնայ. որ մի երբ սխալդ հասկնաս՝ յիշէ այս խօսքը կամ նըշանն։ 2. «Պատը խազեցէք» այս բարեկամը չէր իգար. եկաւ (մեղադրանք մէ)։

685. Պատին ետին պատարագ մ՚ընեն։ — Գաղտնածածուկ մի՛ գործեր։

686 Պառկած տեղէն դանակ կու քաշէ։ — Իւր պարտեալ, տկար վիճակին չնայելով դեռ կ՚սպառնայ։

687. (այս ինչին) Պարկենքը (պատկերը) պատը տեսնէ, կ՚աւըրէ։ — (Նմա) Հակակիր է. յոյժ կ՚ատէ։

688. Պէռենց (ի Կամարակապ) տունէն Վառենց (Արփիարեանց՝ որ յԱպուչէխ) տունը խնամի՞ ես եկեր։ — Մեծ, հարուստ տունէ մի մեծ տուն մի խնամի՞ ես եկեր. ինչու այնչափ ծանր նստեր ես, կը նազես։

689. Պէնէշը (սովորաբար կանանց և 'ի հնումն արանց եւս երկայն վերարկուն) պօչէն (հասակին երկայնութեան) բերաւ (ձևելով)։ — Նենգեց, և վերջապէս հաշիւը, պարտքը խօսքով գոցեց, անհիմն ծախքեր ևայլն ցուցնելով։ Երբեմն մէկը ըսած է «Պէնէշը պօչէն բերաւ, երկու մատ ալ գետինը կու քսուի»։ — Անիրաւն ոչ միայն պարտքը խօսքով գոցեց, այլ, անխղճաբար, պահանջ ալ ունիմ կ՚ըսէ։

690. (մէկու մի խոստման առթիւ) Պէ-ըղէ-ըն ըսաւ մէկ մի՝ գնաց։ — Խօսք կամ խոստում մ՚էր ըրաւ. յայնմ հետէ չյիշեր այլ ևս։

691. Պըղըեց (պըղուր—ձաւար)։ — (խօսքին, գործին) Վերջը չի բերաւ, աւրեց։

692. (խնդրոյ մի համար) Պըռճոտիլ (որդնոտիլ)։ — Գայթակղիլ, շփոթիլ։

693. Պողազը (կոկորդը) փէրթ (գիծ, սատիճան) չունի։— Առանց խորհելու, բերնին եկածը կը խօսի։ (Կ'ըսեն թէ կոկորդը 40 սատիճան ունի, ուսկէց խօսքը անցնելով, այսինքն լաւ մը խորհելէ յետոյ կը խօսուի)։

694. Պոչդ մէջըդ մի՛ ձգեր։—Մի խառնուիր, մի՛ միջամտեր։

695. (զայն հեզահամբոյր կը կարծես, բայց) Պոչէն մազ մ՚առ ուր տեսնես։—Սակայն ինչ ծանր խօսէ, որ տեսնես, թէ ինչպէս խիստ բնոյթն երևան կ'ելնէ։

696. Պոչը կ'երրցնէ։—(անարգական) Կը շողոքորթէ, կը քծնի (շան պէս)։

697. Պոչը հանկուրծտել (հանգոյցել)։—Ճամբայ տալ, հեռացնել։

698. Պոչը հաստցաւ, կամ՝ պոչը ձեռք չի տար։—Հարստացաւ։

699. Պոչը վեր առեր է։—Յանդգնիլ, նորէն խլրտիլ սկսած է։

700. Պոչը տնկեց։—Սատկեցաւ, մեռաւ։

701. Պոչին վրայ կոխել։—Զինք գրգռելով պատճառ տալ նմա յարձակիլ և վնասել։

702. Պոչովդ աղտ (աղբ) բերիր։—Դաժան, չարագործ, վնասակար մարդ մի բերիր հետդ։

703. Պոչուն հետ կու խաղայ։—Թուի թէ չի գիտէ հակառակորդին զօրութիւնը, և թշնամական գործեր կամ ցոյցեր կ'ընէ։

704. (այդ գործն կամ դարմանն ընելով ևայլն) Պոչուն վրա՞յ է ցատկեր։—(այդ գործէն ևայլն) Ի՞նչ օգուտ տեսած է։

705. Պորտդ տեղն ինկա՞ւ։—(ահա ըսածդ, փափագածդ եղաւ կամ ըրիր) Հանգստացա՞ր։

706. Պորտէն միզող է։—Աներկիւղ և հարուստ է. Ի հարկին կը մաքառի, կը ծախսէ։

707. Գորտը հո՛ն ին կըյեր։—Ինչու հոն յաճախ կ'այցելէ և կը մնայ։

708. Գորտին վրան ին կըյեր (կտրեր)։—Իրեն միայն սեպհական է այս ինչ ստացուածքն։

709. (այս բնութիւնը, ախտը) Գորտ կու քշէ։—Սերունդէ 'ի սերունդ կ'անցնի։

710. Գուկը մտնել (մէկու մը)։—Թախանձել, հարց ու փորձ ընել (տեղեկութիւն, գաղտնիքն իմանալու համար)։

711. Գուկին (պարանոցին) վրայ կոխել։—Ստիպել, բռնադատել։

712. Գույնուզդ (եզջիւրդ) եկմէ։—(Թախանձածդ, պահանջածդ կատարուելով) Ի՞նչդ աւելցաւ։

713. Գակունք խածաւ։—Նշանացի ազդարարեց թէ մի՛ խօսիր, լռէ։

714. Գտուկդ եղ (իւղ) ձգէ։—Ցոյսդ կտրէ։

715. Գրչումին (տանեաց կաթիլ) տակէն օլուխին (վրան բաց՝ փայտէ փողրակ, ուստի կը հոսի տանեաց ջուրը) տակը գնաց. (ոմանք «օլուխին տակէն պրչումին տակը գնաց» կ'ըսեն)։—Փոքր վնասէն խոյս տուաւ, և աւելի մեծին հանդիպեցաւ։

716. Գօյէք շուն մ'իյնի՝ կու սատկի։—(ամօթ չէ՞ ըրածըդ) Ահագին մարդ ես։

717. (տունը կամ այս ինչ տեղը) Գօշ (դատարկ) կու հաշէ։—Թափուր է. ո՛չ ոք կամ ոչինչ կայ։

718. Գօշ նետել, լեցուն բռնել։—Աննպատակ հարցում մ'ընել և չսպասած բայց փափագած պատասխանն ստանալ։

719. Ջուրը կու տանի, ծարաւ կու բերէ։

720. (ապուրին) Ջուրը՝ կուտը փախ է դրեր (հալածեր է)։—(ապուրը) Շատ ջրոտ է։

721. Ջուրը պատն 'ի վեր մի՛ հաներ։—Գործը մի՛ դըժուարացներ. դիւրին եղանակաւն գործէ։

722. Ջուրը ոխղէնը (քարէ գուշ) կու դնէ (կու ծեծէ)։—Ջուր կը ծեծէ. առանց նոր բան մը աւելցնելու՝ 'ի զուր կը

կրկնէ, կ'երկարէ (խօսքը կամ պայմանախօսութիւնը)։

723. (այսքան գումարի մը վրայ) Ջուր լեցուցի։—(այսքան գումար) Ջոհեցի ('ի փորձ կամ 'ի զգուշութիւն)։

724. (այս գործ տակաւին շատ) Ջուր կը վերցնէ։—Թէպէտ իբրև թէ կատարուած է, բայց վինելի կէտեր դեռ շատ ունի։

725. (այս ինչ պահանջիդ վրայ ևայլն) Ջուր մի խմէ։—Ցոյսդ կտրէ։

726. (անգամ մի) Ջուրն առուն իջնայ նէ՝ ետքէ խօլայ (դիւրին) է։—(գործը) Երբ կանոնաւոր վիճակ ստանայ՝ շարունակութիւնը դիւրին է։

727. Ջուրն 'ի վար կ'երթայ, մախսս (մկրատ) կ'ըսէ։—Ցամառ է *)։

728. Ջուրն 'ի վար տամ (քեզ) ջուրն 'ի վեր բնառեմ։—Առելի ես, չեմ ուզեր երեսդ տեսնել։

729. (2 անձանց նկատմամբ) Ջրերնին մէկ առու չերթար։—Համաձայն, միաբան չեն. կը հակառակին միմեանց։

730. (զոմն) Ջրի բերել։—Համոզելով՝ պատշաճից օրէնքն յարգել տալ։

731. Իր ջրին տանիլ կուզէ։—Կ'ուզէ ուրիշն ալ իրեն նմանեցնել, իւր համոզման, ընթացքին հետևցնել։

732. Ի՞նչ ջուր ին։—Ի՞նչ վիճակի մէջ են։

733. (այս ինչ վաճառքը) Ջրին մէջ է։—Շատ աժան՝ դիւրագնի է։

734. (վասն մարդոյ) Ջրի վրայի ճինճող է։—Փոփոխամիտ, թեթևամիտ է։

---

*) Կ'ըսեն թէ, կին մը առն կամ ուրիշին հետ վիճելով թէ այս ինչ իրը մկրատով կը կտրուի, մինչդեռ զմելի կամ դանակով կը կտրուի եղեր, կը յամառի. Ջուրը կը ձգեն։ Կինն գետն 'ի վար գլնալով հանդերձ, ձեռքն վեր բարձրացնելով ցուցամատովն և միջամատովն մկրատը կը ձևացնէ, ըսել ուզելով թէ մկրատով կը կտրուի։

735. (այս ինչն այս ինչին) Ջրլաթն է։—Հլու ծառայն, գործիքն է։

736. (այս ինչ տունն եայլն) Ջրտուած ջաղացք է դարձեր։—Աղքատացեր, կահ կարասիք կամ համ ու հոտ չէ մնացեր։

737. Սալը գոռալն խէն (մինչ պէտք էր), սալ վրան (ոմանք «սալավարը» կ'ըսեն) կու գոռայ։—Փոխանակ զրկեալն բողոքելու, զրկողն, պարտականն յանիրաւի կը բողոքէ։ (Ոմանք հարցմամբ կ'ըսեն՝ սալ վրմն կու գոռայ)։

738. (վատ մարդոյ) Սաղլամ (աննենգ, ողջ) ոտաց աման չէ։—Վստահելի, աննենգ մարդ չէ։

739. (կու) Սատկի (այս ինչին խնամի ըլլալու, կամ զարդ մ'ունենալու, փայլելու համար)։—Փափաքելով կը փափաքի։

740. Սատնին ականճը խուռշուն (կապար)։—(ինծի այդ հիւանդութիւնն եայլն չէ պատահեր) Սատանան չի լսէ որ ինծ ալ չի պատահի։

741. Սատնին դիմաց խըպըլի՞կ կու խաղցնէ։—Քան զինքըն խորագէտ մէկը խաբե՞լ կը ջանայ։

742. Սատնին ետի ճիշն է. Սատանայ է։—Խորագէտ, վարպետորդի է։

743. Սատնին շապիկ կու հագցնէ։—Վարպետորդի է։

744. Սատնօք է. (այն միջոցին այս ինչը եկաւ, կամ՝ լսեց, կամ՝ բնտռուած իրն կամ դեղը չի գտնուեցաւ եայլն)։—Գոգցես սատանայի ազդեցութեամբ (այս ինչը եկաւ եայլն) և գործը չի յաջողեցաւ։

745. Սարերուն կաքաւը մարմանդը հաղս (բանտ) ին աբեր։—Այն մարդը որ ամենուրեք կը շրջէր ազատօրէն՝ այսօր, այս ինչ պաշտօնին կամ տան մէջ գրեթէ բանտարկեալ վիճակ մ'ունի։

746. Սենկ կամ սանկ ին (իրարու հետ) (երկու ցուցամատն օղակաձև իրար անցունելով)։—Իրարու հետ յոյժ գըժտեալ կամ թշնամացած են։

747. Սևաստ ամենութիւն է եղեր, (կամ՝ շուկան լաւ ցորեն մ'է եկեր)։ (Երբ 2—3 մարդ առանձինն կը խօսակցին և այլ ոմն կը հարցնէ խօսակցութեան նիւթը, որ ըսել չուզուիր՝ այսպէս կ'ըսեն)։—Չեմք ուզեր մեր խօսակցութեան նիւթը քեզի ըսել։

748. Սևը ճերմկին վրա ելլէ նը (այնուհետև....)։—Երբ անգամ մի թղթի վրայ գրուի (այդ պարտքը, այնուհետև.... տես թէ ո՞րչափ պիտի նեղէ զպարտականն. զի պահանջն օրինաւորութիւն ստացած կ'ըլլայ)։

749. Սևը սարէն՝ ճերմակը ձորէն (կուգայ)։—Ամեն կողմէ առատօրէն կուգայ։

750. (Ի՞նչ կը վայելէ) Սև իշուն ճերմակ պանկեր։—Այդ անձն, իրն, և այլն անարժան է այդ զարդուց։

751. Սևուկ, դուն հոստա կեցի, երթամ ճերմըկուկ բռնաիմ։—Նշանելիք աղջկան մը ծնողացն, կամ ապրանքի տիրոջն հետ խօսակցիլ, սակարկել, և, հաւանութիւնն ստանալէ յետոյ՝ առկախ թողլով զայն, աւելի լաւն գտնելու յուսով այլոց դիմել։

752. Սև ուրբաթ է կըլյեր։—(իբնէ) Տխրադէմ է, (կամ պատահաբար) տրտում է։

753. Սև չափութն (սև լաթի մը մէջ) է ծրարեր (պահանջած դրամը)։—Պահանջը պատրաստած է, երբ որ ուզես՝ կ'ստանաս (հեզնաբար)։

754. (այս ինչը) Սև օձը զարկած էր։—Յոյժ տխուր էր. (դժբաղդութեան մի հանդիպելով)։

755. Սև օձուն բերնէն (կամ՝ եզանը բերնէն) կու ճչճէ։—Բարձրաձայն՝ ուժգին կը ճչէ (առ վշտին)։

756. (այս ինչ ընտանեաց մէջ) Սէրը՝ սուր է, արունը՝ ջուր։—Բնաւ սէր չկայ, այլ միայն կռիւ և ատելութիւն։

757. (այդ գործը) Սըլիկին մնաց։—Յետաձգեցաւ, անորոշ ժամանակով. Յունական կաղանդին մնաց։

758. Սիմ սիմ կ՚ըսէ, Սիմաւոն (Սիմէօն) չըսեր։—Խօսքը կը ծամծըմէ, ակնարկութիւններ կ՚ընէ, բայց բացայայտ կերպով չի յայտներ։

759. Սիսէռը պողպէն (սրտին) վրայ է։—(Մեղադրանաց եւայլն խօսքի չի դիմանար) Անհամբեր՝ կը պատասխանէ։

760. (Իրարու հետ) Սիրն ու բիրն էին։—Միշտ կազ ու կռիւ կ՚ընէին։

761. Սիրտը եղ կապեց, կամ, սիրտը եօթը մատ եղ կապեց։—Յոյժ ուրախացաւ։

762. Սիրտս փորս ինկաւ։—Ահաբեկեցայ։

763. Սիրտ քերել։—Երգիծաբանել, մէկուն մը սիրտը նեղացնել ձեռաւ կամ անյաջողութեան մը համար։

764 Սոխն ու սխտորը տարի մի հարսնութիւն ին արեր։—Այս ինչ հարսը գոնէ տարի մը հարսնութիւն չըրաւ։

765. Սուտ ըսես, իրաւ կուգայ։—Հարեւանցի մը կամ ՚ի կատակ ըսես, իսկոյն կուգայ։

766. (այս ինչը) Սուր ոսկոր ունի։—Կը սիրուի, սիրելի է։

767. (երբ ըսի եւայլն) Վա՜յ, էշը գնաց, փալանը (համետ) մնաց։—(այս խօսքին կամ իրողութեան վրայ) Սկսաւ բարկանալ, յանդիմանել։

768. Վա՜յ մեր իշուն ուր փալան չունի։—(այդ խօսուած անձն ամեն բարիք ունի, կարող է) Մենք ենք որ չունիմք և տկար եմք։

769. Վա՜յ ւ՚եղուկը տուին։—Մեղադրեցին։

770. Վարդապետ, վեղարդ հովը տարաւ։—Ես ալ խօշնուտ (գոհ) չէի։—Թէ և այս ինչ գործը ետ մնաց, զոր դժբաղդութիւն մի կը կարծեմք, նորա համար, բայց նա ուրախ է, զի արդէն գոհ չէր այդ գործէն։

771. Վարդ ըլնի, հոտը կուգայ։—Թէև կրթութիւն, հարստութիւն ստացած է, բայց՝ ՚ի բնէ իւր ցեղն վատ կամ չար ըլլալուն, իւր բնոյթն երբեմն երեւան կ՚ելնէ։

772. Վար թքնես՝ մօրուքդ, վեր թքնես՝ պեխերդ։—Որ կողմը դառնամ՝ դժուարութիւն մը կայ։

773. (վաճառք մի ևայլն) Վար ծեծել։—Արժէքն կոտրել, աննպաստ խօսքեր ընելով։

774. Վարպետին բանծը։—Վարպետս, մեծս ինչ որ բանը՝ նոյնն առանց կրկնելու՝ իբրև բանծ՝ կ'ընդունիմ և կը հետևիմ նմա։

775. Վեր ինկաւ (այս ինչ առևտուրէն, գործէն)։—1. Տահեցաւ, յառաջդիմեց։ 2. Վերինկայ քնէս։—Ընդոստ զարթեցայ։

776. (հանդերձը, սենեակն...աղտէն կամ ցեխէն) Վեր չելլեր։—Շատ աղտոտ կամ ցեխոտ է։

777. (այս ինչ ապրանքը) Վեր վերուցին։—Ցաճախորդք եռանդեամբ գնեցին։

778. Վեր ցատկածը եփած է (կ'ըսէ)։—Գործին վրայ աւելի հոգ չիտանիր, ինչպէս ալ ըլլայ, գոհ կ'ըլլայ։

779. (այս ինչ անձն) Վզվզուկը առաւ. (ոմանք «կժկժուկը առաւ» կ'ըսեն)։—Երբ լսեց, իմացաւ՝ կասկածն ու երկիւղն պաշարեց զինքն. (և սկսաւ աշխուժիւ և շրջահայեցութեամբ գործել)։

780. Վէգը ոտի կոյնեցաւ։—Բաղդը յաջողեց։

781. Վէգ կու ձգէի։—Քու գալուդ կսպասէի անձկանօք (թող չի գայիր)։

782. Վէգը արծթած է։—Բարեբաղդ է։

783. Վրայ զարնել։—(Նուագածուն՝ խաղալու եղանակն) Արագել. (այցելուն) Ցաճախել ևայլն։

784. Վրայէն անցիր (գործին, ևայլն)։—Շատ բարակ մի մտածեր. մտահոգ մի՛ լինիր. եղածով գոհ եղիր։

785. (այս ինչն այս ինչին) Վրայ կուգայ։—(երբ զոմն կ'ամբաստանեն, կը մեղադրեն) Կը պաշտպանէ (զայն) բանիւ։

786. Վրայ նայել, (վրայ տի նայիմ, վրայ նայէ, ևայլն)։

—(գործին ընթացքն և պարագայքն) Դիտելով ըստ այնմ կամ ըստ պատշաճի վարուիլ։

787. (այս ինչ մարդուն) Վրան մազ կու խաղայ։—Գոգցես բնազդմամբ կ'իմանայ իրմէ գաղտնիք պահուածն։

788. (ժառանգութեան, ստացուածքին, ապրանքի մը, ևայլն) Վրան նստաւ։---Բոլորը գրաւեց յանիրաւի կամ աժան գնով։

789. (այդ գործը կամ պահանջդ) Վրաս գրէ։—(այդ գործ կամ պահանջդ) Ցուսալի չէ։

790. (այս ինչն երբ եկաւ, կամ ուտելիքն տուին, ևայլն) Վրաս լոս (լոյս) իջաւ։—Յոյժ ուրախացայ (զի նեղութեան մէջ էի, կամ անձկանօք կ'սպասէի)։

791 Տակդ գէշ կայ. կամ գէշ ին դրեր։—Ինչո՞ւ հանգիստ չես նստիր, ու ելնել երթալ կը փութաս։

792. (այս ինչն այս ինչին) Տակը ջուր կապեց։—Խաբեց, մեծ վնաս տուաւ։

793. (այս ինչ գործ, խնդիր, ևայլն) Տակը փախաւ։—Անյաջող ելաւ, ջուրն ինկաւ։

794. Տակս (տակաւին) մուխ կ'ելլէ. (Թղթի խաղին մէջ ընկճեալ կարծուած խաղացողի մը նկատմամբ)։—Տակաւին խաղալու թուղթ, զօրութիւն (դրամ, ևայլն) ունի։

795. (այս ինչն) Տանը հաւերը կու ջարդէ։—Օտարին բան մը չի կրնար ընել՝ իւր ընտանիքը կը նեղէ։

796. (եթէ այդ պէս ընեմ, վաճառեմ, ծախսեմ) Տանը ճամբան չեմ կրնար գտներ։—Կը վնասուիմ, կը կործանիմ։

797. Տաշուքով կու քերուըտի։—Նիւթապէս տկար, անձուկ վիճակի մէջ է։

798. Տաշտըքեր։—Ծնողաց վերջին զաւակ։

799. Տաշտիկս 'ի լի, փորիկս անօթի։—Մինչ դեռ տունըս, սեղանս լի է, և այլք իմ հացն կ'ուտեն, ես՝ տկարութիւն կամ տրտմութիւն մ'ունենալով՝ չեմ կրնար ուտել։

800. Տօնացոյց (Թմբուկը) իմ շըլլին տի կախեն ու անոնք տի չոյին (նուագեն)։—Պաշտօնը իմ անուան տ'ըլլայ ու անոնք տի գործեն յանուն իմ՝ իրենց ուզածին պէս։

801. (այս ինչ տունն, իրն եւայլն) Տանէն (հօրմէն) 'ի վեր մկրտութիւն չէ տեսեր։—(այն տունն, ընտանիքն որ զաւակ մ'ունեցաւ, մկրտեցին) Հօրն ծնունդէն 'ի վեր զաւակի ծնունդ տեսած չէր։ Հանդերձ կարելէն 'ի վեր լուացուած չէր։ Պղնձեայ ամանն առաջին կլայեկէն 'ի վեր, կլայեկուած չէր։

802. (այս ինչ վաճառքը կամ աշխատութիւնը) Տատի հոգին է։—Ջրի՞ կը կարծես։

803. Տատին (հօրը), կամ, մեծ տատին գինը (ծախած վաճառին) մէջն է դրեր։—Շատ սուղ կը պահանջէ։

804. (վասն իրի) Տատ ու մեր տանիմ։—Ի՞նչ հարկ կամ շահ կայ երկար ատեն պահելու. տալու վաճառելու է։

805. Տարուս մարդը սուղ է եկեր. չէնը (ապա թէ ոչ) քու ո՛ր տեղդ է սիրելի։—Այն անձն զորմէ կը խօսիմք ազնիւ կամ գործունեայ չէ, բայց ի՞նչ ընիմք. այսպիսի անձի մը վիճակեր, կարօտ եմք մնացեր։

806. (այս ինչն այս ինչին պահանջին) Տուկարդաց։—Նենգեալ հաշուով մը կամ այլ խօսքերով իրաւունքը չի տուաւ։

807. Տաք հաց ու փոխ հաց է։ *)—(նա իւր) Քաղաքավարական պարտաւորութիւնը չի կատարեց, եւ ալ նման օրինակ պարագայի մը մէջ փոխարէնը պիտի հանեմ։

808. (վատ, մոլի եւայլն մեռեալի մը նկատմամբ) Տեղը դուր ու բարձը կակուղ։—Լաւ է որ մեռած է այնպիսի մէկը։

809. Տեսը ուս է, կամ տես ու ուսէ կամ ուսեա։—(ար-

---

*) Կանայք սովորաբար, հաց ըրած (եփել տուած) օրերնին, 1—2 ական հաց, իւղ հալած օրն՝ իւղ, նոյնպէս պանիր, եայլն դըրացեաց կուտան «հոտը կուգայ» ըսելով. (ոմանք հեռաւոր թաղեր ազգականաց եւս կ'ուղարկեն)։ Փոխարէն անոնք ալ իրենց «հացոփին» եայլն օրն կը ղրկեն նոյն քանակութեամբ։

հեստաւորն, հարսն, ևայլն) Իւր գործին վերաբերեալ և իւր չգիտցածն տեսնելով կրնայ սովրիլ. կամ՝ տեսնելով կրնայ սովրուիլ։

810. (այս ինչին մէկ մի) Տ'երըլամ (տ'երևամ)։—(այս ինչին) Կարողութիւնս, ուժս, ճարտարութիւնս տի հասկըցնեմ։

811. Տղող է. (Նոր ստացուած)։—Այն գործն, խոստումն անհիմն, սխալ է եղեր։

812. (այն հին ատենները) Տէվէն (ուղտը) խուրմա (արմաւ) կու թըքէր։—Առատութիւն և աժնութիւն կայր։

813. Տէվէն (ուղտը) փիրէն ('ի դիւր) հանել։—Ապրուստը լաւ և ապահով վիճակի մը հասցնել։

814. (այս ինչ ճ'րն կամ մեձն) Տի խաղցնինք. (Նոր ստացուած)։—(այս ինչ անձին կամ իրին) Վրան տի խօսինք միշտ. կամ անյն մտիկ պիտի ընեմք։

815. Տիտաս (աղջիկդ) դուռ մի թագաւորին տղուն (ի կնութիւն)՝ մի՛ տար դուռ մի թագաւորին տղուն, տուր այս ինչ տղուն (երիտասարդին)։—Այս ինչ երիտասարդն ամենայաւ փեսացուն է աղջկանդ համար։

816. Տիրոջմէն առաջ ախոռը կու մտնէ. կամ մի մտներ։—Մեծէն, վարպետէն առաջ խօսքի կամ գործի կը խառնուի, կամ մի խառնուիր։

817. (այս ինչին այս ինչ գործը) Տխմրի (տխմարի) հարսնիք եղաւ։—Զզձգուեցաւ։

818. (այնքան դրամին, հարստութեան ևայլն) Տկէն մըտաւ, վրայէն ելաւ։—(այնքան հարստութիւնը) Մսխեց, ըսպառեց։

819. (վասն կնոջ) Տոլման սխտորով կ'ուտուի։—Այն կինն կամ աղջիկն որ տգեղ էր, պէտք էր ճոխ օժիտ, հարստութիւն ունենայր։

820. Տոնծ (տանձ) էր նը, հասաւ. շողգամ էր նը, կարմրեցաւ։—Բաւական է այլ ևս, պէտք է վերջ տալ։

821. (*Մեզայ Աստուած*) Տոնծին ալ կոլթ ես դրեր։— (*Հեգնելով*) Դուն ալ մարդ ես եղեր ու առարկութիւն կ'ընես ինծի՝ որ մեծդ եմ։

822. (*այս տրուած դրամն կամ իրն ալ*) Տոնծ վրան է։ —(*այս տրուածն կամ ուզածն*) Աւելորդ է (*զի իրաւունքն արդէն առած է*)։

823. (*գնածդ այս ինչ իրին*) Տուած ստակդ հետդ տարեր։ — Տուած դրամդ արժէ։

824. (*տունն սենեակն*). Տուզ խապի է. (*աղ-աման*)։— Փոքր, նեղ է։

825. (*այս ինչին*) Տունը բերան կուգար։—(*այս ինչ անձին*) Տունը բազմութեամբ լի էր։

826. (*Թորոսին*) Տունը (*Կիրակոսին*) տան մէջ 2. 3. 4 անգամ կու մտնէ կ'ելլէ։—(*Թ.-ին*) Տունը (*Կ.-ին*) տնէն այսքան անգամ փոքր է։

827. Տուն ու դուռ ելաւ գնաց։—Տունն, սենեակներն ճենճ, փոշի եղաւ, աղտոտեցաւ։

328. Տուր ձեռքդ թօթվիմ։—Յաջողութեամբ կատարեցիր պաշտօնդ. լաւ խօսեցար, եւայլն (*հեգնաբար*)։

829. (*վասն անձի*) Ցաթեց։—Եկաւ նա որոյ գալուստը չէր ուզուէր։

830. Ցանկին մասուրը իջնել։—Անկարեւոր մանրամասնութեանց մտնել։

831. Ցատկէ ուր պոչդ (*հասակդ*) տեսնեմ։—Չպիտի կրնաս և պիտի մնասուիս. ամօթապարտ պիտի մնաս։

832. Ցնծա (*դրամն կամ այս ինչ իրն*)։—Վճարէ կամ տուժէ։

833. Ցորենն աժներ է, կամ աժնութիւն տ'ըլլայ։— Հազուադէպ է այս։—(*Կըսուի՝ երբ ժլատն առատաձեռն կըլլայ կամ միայնակեացն զուարճանէր*)։

834. (*կերակուրի ջուրը, հանդերձի մը, իրի մը չափն*) Փախած է։—Չափէն աւելի եղած է։

835. «Փառք Հօրը ըսէ։—Երկար տեւեց այդ խօսքը, երգը եայլն, վերջացուր։

836. (ուժեք) Փառքն ու պատիւը տալ։—Կշտամբել խստիւ։

837. Փառէն երկու մարդ, (Թող գան ըսին)։—Ո՛վ և ինչպէս մարդ կ'ըլլան, Թող ըլլան, (Թո՛ղ գան վկայեն բայց գիտեմ որ սուտ խօսք է)։

838. (վառն յղի կնոջ) Փարթը (փորը) բերանը կու գայ։—Փորը մեծցեր է։

839. Փեշերը գիլ (տէֆի շրջանակի տափակ բոժոժն) կու չալէ, կամ, կու ծեծէ։—Իրարանցում մի ունի, արտօրնօք կերթայ, կու գայ։

840. Փեշը (քղանցը) վրան կու ձգէ։—Այս ինչն կը պաշտպանէ։

841. Փեշս ջուրը չի դպաւ։—(այս ինչ հարսանիքէն, տատմութենէն, նուէրէն եւայլն) Բնաւ օգուտ մի չի տեսայ։

842. (զոմն) Փեշ քաշել։—Հրապուրել, համոզել զոմն իւր դատին, նպատակին յարելու։

843. (այս ինչին որդիքը եւայլն) Փետատ, կամ՝ փուշուշ (փոքրիկ բրինչ) կոթ մի չեղան։—Մարդ չեղան. Ծնողացը և այլոց օգուտ մի չունեցան։

844. (իբրև թէ ընկղմեալ՝) Փէ—ռէնկէ—լյու (ծոպ) ճո՛թը կը երեւայ։—Մեծամեծ, ծանր վնաս կրեցի. մեծ պարտուց ներքև ընկած եմ։

845. Փոթ եկաւ։—Գործը արգելքի մը հանդիպեցաւ։

846. (այս ինչ երկու կամ աւելի անձինքն) Փոխ կու քերուըտին։—Ցիրաւի կամ յանիրաւի զիրեար կը պաշտպանին. Իրարու խօսքն կը հաստատեն։

847. Փոճը (սովորաբար, դմակաւոր ոչխարի մորթն) փաթթելու եղաւ։—Շատ յոգնեցաւ կամ զանակոծեցին *)։

---

*) Երբ մէկը ծառէն կամ տանիքէն իյնի և մարմինը ճմլուի, 'ի դարման՝ ոչխար մի մորթելով մորթը կը փաթթեն մէրկ, իբր մի օր։

848. (այս ինչն) Փապուչը (մուճակը) կու նետէ թը գնա բեր։—(երբ կարևոր գործ մի չի կայ կամ լրացած է՝ գոգցես զծառայն կամ զհարսն հանգիստ չթողլոյ համար) Անպէտ և աւելորդ աշխատութիւններ ընել կուտայ։

849. Փորուս վրայ կու նայիմ, լացս կու գայ։—Քաղցեալ եմ յոյժ։

850. Փորս կ՚եփի։—Մտատանջութեան մէջ եմ։

851. Փորփշտել (զոք)։—Մէկէ մը ճարտարութեամբ լուր, տեղեկութիւն հարցնել։

852. Քաղաքը ծախեր է։—Արբեալ՝ խելքը գլուխը չէ։

853. Քաղցրըցիր։—Վճարէ, կամ տուժէ (այս ինչ դրամըն ևայլն։ (այն ալ) Տի քաղցրնայ։—(այն ալ) Ծախքեր տը ընէ (ակամայ)։

854. Քանի կատու էր եղեր, մուկ մի բռնեց։

855. Քառսուն դրան 80 փէնճէրէ (բիր) կու զարնէ։—Շատ տուն կը մտնէ կ՚ելլէ. շատ տեղեկութիւն ունի։

856. Քառսուն (կամ 50, 100, 1000) անգամ ըսի (մըտիկ չ՚արաւ, ևայլն)։—Շատ անգամ ըսի (մտիկ չ՚ըրաւ)։

857. Քառսուն չէմպէրէ (երկաթեայ շրջանակ) ցատկած է։—Շատ գործերու մէջ մտած ելած, ամեն նենգութեանց և դէպքերու փորձառու եղած վարպետորդի մ՚է։

858. (այս ինչ մարդէն ստակն ևայլն) Քարէն կու քակի։—Դժուարաւ կ՚առնուի։

859. Քարը կաւառը (առուակի բերան) դրի, կամ դրաւ։—Խօսքը տեղը դրի. կծու խօսքով փոխարինեցի ինձ եղած պարսաւանքը։

860. (այս ինչ կերպաս ևայլն) Քարին հետ ծեծկուեցաւ։—Շատ տոկուն էր, երկար ատեն անխնայ գործածուեցաւ, բայց դիմացաւ։

861. Քար նետել։—1. կնկան մի աննուղղակի, անքարոյական առաջարկ մ՚ընել. 2. մէկու մը համար մեղադրական ակնարկ մի ընել։

862. Քար նետեցիր թեւդ թուլցաւ։—Ինչու այդքանով գոհ չես ըլլար. ի՞նչ աշխատութիւն կամ ծախք ըրիր։

863. Քաֆ կու կտրէ։—Մէկին գոված աղջիկն եւայլն կը պարսաւէ. ՚ի գլուխ ելնելու մօտ գործ մի այլ և այլ խօսքով կ՚աւրէ։

864. Քեզ (կամ զինքն) կու ծակէ՞։--(այս ինչ իրն որ քովդ է առ այժմ) Ինչու տալ կ՚ուզես, պահէ. վնասդ ինչ է։

865. Քէֆչէտ (քէմանչէդ՝ ջութակդ) քաշէ։—Գնա աստի. բաւական է։

866. (այն անձն ալ) Քէմ (նուազ) քաղցր մրուր չէ։—(այն ալ) Բաւական զուարճախօս, խորագէտ եւայլն է։

867. (երբ սեննակն, մոմն լուսաւոր չըլլայ և դիտողութիւն ըլլայ, ՚ի պատասխան) Քէրկէ՞հ տի բանենք։—Այս լոյսը բաւական է։

868. Քէօֆրիւ-էն (կամուրջէն) ձգես, պտոտէն*) կ՚ելլէ։—

869. Քըմմել (քամել) (զոմն)։—Մէկէ մը սպառնալեօք կամ այլ միջոցաւ ունեցածը կորզել։

870. Քինթը բունես, հոգին կ՚ելլէ։—Շատ նիհար և տըկար է։

871. Քինթը ինկաւ։—Առջի զօրութիւնը չի մնաց, այլ ևս չկրնար բռնանալ կամ վաճառքին գնոյն վրայ պնդել։

872. Քինթը կախեց։—Տրտմեցաւ։

873. Քինթը Պօզուտէն **) ջուր կու խմէ։—Հպարտացած է։

---

*) Հաւանականաբար Ակնայ կամուրջէն իբր 1000—1500 մեթր վարը եղած պտոյտն կ՚ակնարկուի։

Ո՛ւր զըկես, կ՚երթայ կուգայ, դժուարութեանց առջև չը ընկճիր։

**) Ակնայ հանդիպակաց լեռան գագաթը տեղ մ՚է, ուր նորակ ջուր կը բղխէ։

874. Քինթն երեսէն չեն կըլլեր։—Բարերարին, բարեկամին դէմ ապերախտ ըլլալու չէ. այլ այնպէս ընելու է որ չի զղջայ, ուրիշ անգամ մ'ալ բարիք ընէ։

875. (Վարպետն այս ինչ շէնքը, ձեռակերտը այնպէս լաւ շինած էր որ) Քինթ ու բերան էր դրեր։—Նուրբ ճաշակաւ, վայելչակերտ, անթերի էր։

876. Քինթ ու բերան քսել (ուտելիք, վաճառք եայլն)։—Կերակուրը աւելնալով առոր անոր տալ. վաճառքին մէկ մասը աժան գնով, մէկ մասը ապառիկ տալով սպառել։

877. Քինթս է բռներ (այս ինչն)։—Ինքն կամ տունն մօտիկս կամ տանս առջեւն է։

878. Քի՜չ, ո՞ւր կ'երթաս.—Շատին քով։—Գոգցես հարստութիւնը հարուստին կը դիմէ։

879. Քիրայ (վարձք) ես տուեր մինչեւ տանը դուռը մի հեծնե՞ս (ջորին)։—Թէեւ վարձք տուած ես, բայց ինչո՞ւ ցյետին վայրկեան աշխատցնես, մինչդեռ քու պէտքդ լրացած է։

880 (գինիին, օղիին) Քիւփին (Թակոյկին) տակը կու պառկի։—Յոյժ գինեմոլ է։

881. (այս ինչն այս ինչին) Քնթէն ինկեր է։—Ճիշդ անոր կը նմանի։

882. (այս ինչ դրամը, իրը եայլն՝ որ իրաւունքս է, ես անոր) Քնթէն կու քաշիմ։—(այս ինչ իրը) Անկէց կարող եմ ո եւ իցէ կերպիւ առնուլ։

883. Քնթէն ու բերնէն բերել։—Որեւիցէ զուարճութիւն կամ ուրախութիւն խանգարել, չթողուլ որ վայելեն։

884. Քնթին ու բերանին վրայ կու քաշէ։—Դէպ առաջ ծռելով՝ սայթաքելու պէս կը քաշէ։

885. Քնթին չի դներ. կամ, քնթին չի դրաւ (նուէրն եայլն)։—Չի հաւնիր, չի հաւնեցաւ։

886. (վասն ծառոց) Քողով հարս եղեր է։—Առատ պտղովք զարդարեալ է։

887. (այս ինչ խաղը) Քոս է։—Այնպիսի խաղ կամ զբօսանք մ՚ է, որ վնասն զգալով հանդերձ դիւրաւ ետ չի կեցուիր անորմէ։

888. (այս ինչ տունն) Քոս մատի մը դեղ չի կայ։—Ո՛չ ոք կայ օգնական, աշխատակից, ամեն հոգ մէկ անձի վրայ կը ծանրանայ։

889. Քրդուն տունը չի՜նչեր (տօսախ) խաշուըլս (դգալ) կու բնտռեն։—Այդ տունը քաղաքավարութիւն, կարգ, կանոն կու բնտռեն։

890. Քրտինքդ ժողվէ։—(յաջողութենէդ քաջալերուած ես, բայց) Քիչ մը. համբերէ, խորհէ և ապա գործէ։

891. Քրանցնել (զոմն)։—(մէկէ մը) Կէս մը յորդորանօք և կէս մը ստիպողաբար ստակ առնուլ։

892. Քօշ աղջիկը կամ խենթը նող կ՚անէ, գիտէ թը մարը հող կ՚անէ (կմխորժի)։—(այս տղան, աղջիկը, ևայլն) Խեղըցած բաներ կ՚ընէ։

893. Օխտը (եօթն) ոնդ (թերևս՝ անդ) ոնցաւ (անցաւ)։ —Դռնէ ՚ի դուռ շատ տուն պտտեցաւ։

894. Օծել (զոմն)։—Ցանդիմանել

895. (կերպասի մը նկատմամբ) Օձը լեզուն զարնէ, կու պառի։—Շատ նուրբ է։

896. Օձը (զօձն) պատին ծուծուկէն դուրս կուհանէ (իւր խօսքերովն)։ —Համոզիչ խօսքեր կը խօսի։

897. (շատ բարակ հացի նկատմամբ) Օձու լեզու է։— (ցորենի սղութենէն հացերն) Փոքր, նօսր են։

898. Օձուն վրայ թքնէ, օձը կու սատկի։—Շատ դաժան, խիստ մարդ է։

899. Օձուն վրայ կորն (կարիճն) ալ կճեց (խայթեց)։ —Հիւանդութեան, դժբաղդութեան վրայ նոր մ՚ալ աւելցաւ։

900. Օղիկ օղիկ, եղայ։—Քաղաքավարական պարտաւորութեանց ակամայ թերութեան (զոր. հիւրին արժանի լաւ կերակուր ևայլն չի գտնուելուն) կամ նմանօրինակ պատճառ նեղուիլ։

901. Օղն 'ի օդը գայ, պարանն ալ օդը, (տեսնիմք ինչպէս կ'ըլլայ եւայլն)։—Թող այդ ժամանակը գայ, կարգը առոր գայ յայնժամ պէտք եղածն կ'ընեմք կամ կը խօսիմք։

902. Օր մի չէ ըսեր թէ կուշտ եկուր ու անուժի գնա։—Երբէք զիս հրաւիրած՝ պատուած չէ։

903. Օրն եղէ, հաւերը բունէն չելլէ (սովորաբար, փորձանք մի անցունելէն յետոյ, իբրեւ զուարճաբանութեան կ'ըսուի)։—Այս վտանգն, փորձանքն ալ անցուցինք, փառք Աստուծոյ։

904. (այս հանդերձը) Օրն ու օսըրաքը (օր հասարակ) չի գնաց։—Շուտ մաշեցաւ, կտրտեցաւ։

---

Հետեւեալ ասացուածներն ալ թէ հայերէնի եւ թէ տաճկերէնի մէջ կը գործածուին, որոնց տաճկերէնը դնել զանց ըրի։

905. Ակոնճը ծակ է։—Ուշիմ, արթուն է, շուտ կը հասկնայ։

906. Ամենը կամ երկուքը մէկ ճամբայ կ'ելլէ։—Հաշիւը մէկ է (զօր. ուտելեաց եւ այլ գնելի վաճառքին մէկը սուղ՝ բայց դիմացկուն է. միւսը աժան՝ բայց շուտ կը կտրտի)։

907. Աչքը կու կտրէ։—Կը համարձակի. հակառակորդը յաղթելու վստահ է։

908. Աչքը մնել (ումեք)։—Հաճոյ, սիրելի լինել։

909. Աչքը չի տանիր։—Կը նախանձի։

910. Աչքս չի բռներ։—1. Չեմ հաւնիր (այս ապրանքին, գործին, եւայլն) 2. Չեմ համարձակիր, չեմ կրնար։

911. Առաւ քալեց։—1. Սիրտը նեղանալով մեկնեցաւ. 2. Յառաջ դիմեց, զարգացաւ (սուղ միջոցի մէջ)։

912. (վասն իրի) Ա'ռ, գլուխդ ծեծէ։—Խնդրելով պահանջելով ձանձրացուցիր. առ ահա։

913. Բանը բանէն անցաւ։

914. Բարակ կու քաշէ, կամ՝ բարակ քաշող է։—Ման-

բաղնիքն հաշիւ կ'ընէ. շատ մտածող, կծծի է։

915. Բերանս չի բռներ (այս ինչ լուրը խօսել)։—1. (լուրը վշտաբեր է) Ձեմ ուզեր ըսել. 2. (ստկարկութեան ևայլն) Առաջարկս ծանր է։

916. Բերնիդ, կամ, բերնիդ է ինկեր։—Ի՞նչ համարձակութիւն ունի (այս ինչ բանն ընելու)։

917. Գլուխս մուխ կ'ելլէ։—Վշտերով լի եմ, ծանրածանր զբաղումներ ունիմ։

918. (առաջարկդ ևայլն) Գլխուս վրայ։

919. Դուն որձու տուն կու հարցնես։—Ի՞նչ կը կարծես. դեռ ինչ գիտես այս գործին մէջ իմ ունեցած կարողութիւնըս ևայլն. միթէ կը խաբուիմ, կ'ընկճիմ։

920. Դուռը բաց է։—Եկող գնացող հիւրը շատ է. ձրի կը հիւրընկալէ. մեծատուն է։

921. (առևտրոյ և այլ պարագայից մէջ) Եղէն չ'ուտուիր։—Շատ աղէկ է. բաւական և շատ իսկ է. ատկէց աւելին չ'ըլլար։

922. Երես կուտայ (այս ինչին)։—Համարձակութիւն կուտայ, կը շոյէ։

923. Ինծի չի գար (այս ինչ գործը)։—Ինծի չի յաջողիր։

924. Խօրօղ խաղցնող։—Խաբեբայ, պճնասէր։

925. Խօսքը ոտք ինկաւ։—Խնդիրը հասարակութեան ինկաւ. ամէն մարդ սկսաւ խառնուիլ, կարծիք յայտնել։

926. Կրնակ ունի։—Զօրաւոր պաշտպան ունի։

927. Հացին եղ քսեց։—Հակառակորդին 'ի նպաստ խօսեցաւ կամ գործեց յանգէտս։

928. Հոտը ուտողին քիթը կ'իջնի։—Շատ վատ ու վատթար է։

929. Ձեռը (ձեռք) կուտայ։—Նպաստաւոր է. բաւական է։

930. Ձեռքը բաց է։—Առատաձեռն է։

931. Ձեռքը ծանր է։—1. պարտքն դժուարաւ կը վը-

;. 2. այն անձէն եթէ դրամ փոխ առ—
րուիր, անյաջող ձեռք ունի։

932. Ձեռք քաշել (մէկու մը, գործի մը բարւոքումէն, անդի մը ապաքինումէն)։—Յուսահատիլ։

933. Ճակատդ խառըշլամիշ կ'անիմ (Թզով կը չափեմ), ժէ ընես Լայլն։—Աֆէրին կ'ըսեմ՝ եթէ ընես կամ համարձակիս ընել։

934. Ճակատս բաց է։—Պարզերես եմ, վստահ եմ իմ գործոյս և վարուցս ուղղութեան։

935. Մէկ մի ես, մէկ մի դուն, մէկ մ'ալ Սևաստցի Աղջէկ օղլին։—(խօսիլն դիւրին է, բայց չես կրնար) Ո'չ դուն և ոչ այլ ոք։

936. Մեռելի հող ին ցաներ վրայնիս։—(Ազգային կամ հանրային իրաւանց պաշտպանութեան համար) Թմրած, անզգայ եմք։

937. Մրջիւնին վրայ չի կոխեր։—Մէկու մի չի վնասեր։

938. Ճըլլի ծռել (ումեք)։—Աղաչել, խնդրել։

939. (դրամ) Ուտել։—Կաշառք առնուլ։ Ուտող է։—Կաշառակուրծ է։

940. Ձի քաշեր։—1. Կը նախանձի. 2. Յոխորտանքը չի տանիր. 3. Հիւանդին Լայլն նեղութիւնը չի կրեր, կրել չուզեր։

941. Պարնին վրայ ալուր (ընել)։—Անզօր դարման մը ընել դիտմամբ. կամք խօսք մը, իրողութիւն մի ծածկել։

942. Ջուրը ջաղացքը տարեր է, շախշախը կու բնտռէ։—Այս ինչ հաստատութիւն կամ տունն կործաներ կամ բարեկարգութիւն հիմնովին խանգարեր է, դեռ անոր մէկ մասնաւոր անկանոնութեան վրայ կը խօսի։

943. Ջուր տալ (գնուած, սակարկուած իրի մը)։—Պասճառ մը բռնելով, որոշեալ գնէն մաս մը զեղչել։

944. (ժամը ... ին) Ջրերը։—(ժամ... ին) Միջոցներ

945. (այս խօսքին ևայլն) Վազած ջրերը կու կայնին։ —Այլ եւս ընելիք մը, առարկելի կէտ մը չի կայ (զի պարտքը ամբողջապէս կը հատուցանէ, կամ ճշմարտութիւնը, իրաւունքը այս է)։

---

*Ցանկումք վերջապէս հետեւեալ տեսակ մ'ասացուածներն եւ յանգաւոր խօսքերն:*

946. Ամառը, կամ, ձմեռը ելլէ երթայ (այսպէս կ'ընէ)։ —Ամբողջ ամառը (այսպէս կ'ընէ)։

947. Արունէն արցունք կու թափէ։—Վշտալից կ'արտասուէ։

948. Դատաստան կայ ու պատասխան կայ։—Մարդիկ պէտք է խորհին հանդերձելոյն վրայ, ուր դատաստան, վարձք և պատիժ կայ։

949. Լսողաց իմ (եմ), տեսողաց չիմ։—Այս դէպքը (զոր պատմեցի), չեմ տեսած, այլ ուրիշէն լսած եմ:

950. (Խնջոյքէ կամ հարսանիքէ եկողի մը) Կերածդ ու խմածդ քեզի, տեսածդ ու լսածդ խօսէ։

951. Կոտիկ հաւը իր պոչը տեսնէ նը՝ դուն ալ (այս շնորհն, տեղը, անձը ևայլն) տի տեսնես։—Բնաւ չպիտի տեսնես, ակնկալութիւնդ զուր է:

952. Հարզէն (հազարէն) մէկ (չի գար, չի գտնուիր, և այլն)։—Հազիւ երբեմն (կու գայ ևայլն)։

953։ Մածուն է ու թան չէ, ամէն մարդու բան չէ։—Ամէն մարդ չկրնար (համբերել, ընել ևայլն)։

954. Մեղուի սըռ (գաղտնիք) է (անոնց գործը կամ այս ինչ արուեստը ևայլն)։—Գաղտնիք մ' է.

655. Պատառը ոսկի մը լընի, չեմ ուտեր։—Որչափ ալ սուղ կամ համադամ ըլլայ՝ չեմ ուտեր (զի ախորժակ չունիմ)։

956. Պարզ ու պղինձ է (երկինքն)։—Պարզ, անամպ է։

957. Սուրա (դեղնագոյն) կովու պէս կաթը կու տայ ու ոտքովը կու զարնէ կու թափէ։—Լաւ ծառայութիւն կամ գործ մը կ՚ընէ, և քիչ մը վերջը չարութիւն մ՚ալ ընելով ըրած բարիքը մոռցնել կու տայ, կ՚ոչնչացունէ։

958. Տարին տաս ուերկու ամիս։—Տարունակ։

959. Քարին վրայ կոխէր, քարը կու կոչէր (կը կոտրուէր, կը կոտրէր)։—Շատ առողջ և ուժեղ էր։

960. Օձ ձգեs վրան, (չընեr, չընդունիr, ևայլն)։—Որչափ ալ ստիպեs (չ՚ընեr, չընդունիr, ևայլն)։

961. Օձու պէս կու գերընկնայ։—Շատ կը պաղատի։ *)

962. Օրս տարի է եղեր։—Օրերը շատ երկար կը թուին. համբերութիւն չունիմ մինչև ժամանակը գայ։

Հաւանական է թէ կան տակաւին բազմաթիւ ասացուածներ, սակայն վերոյ գրուածներն առ այժմ բաւական կը համարիմք։ Կային մի քանի տասնեակ ասացուածք ևս, բայց անպարկեշտ խօսքեր լինելուն՝ զանց ըրի։

*) Կը կարծեն թէ երբ օձն սպանել կ՚ուզուի, և նա նոյն միջոցին լեզուն դուրս կը հանէ, նշան մ՚է եղեր, անոր աղաչանաց և պաղատանացն որպէս զի իրեն կենացը խնայեն։

# ԳԼ. Թ.

## ԳԱՒԱՌԱԲԱՐԲԱՌ

1. Արտասանութիւն, աղաւաղեալ և զարտուղի բառեր. 2. Արկոտեան բարբառ. 3. Մնճերէն. 4. Մանկական բարբառ. 5. Խօսակցութիւն. Օրինակ մի (20 տարի առաջ)։

---

### 1. Արտասանութիւն եւայլն։

Յայտնի է ամենուն, թէ բաց 'ի գրաբար լեզուէն, և գրական աշխարհաբարէն՝ կայ և ժողովրդական լեզուն որ գաւառաց մէջ կը տարբերին 'ի միմեանց։ Ասոնց մէջ Վասպուրականի, Տուրուբերանի և Զէյթունի լեզուներն այլ գաւառացւոց բնաւին անհասկանալի են գրեթէ։ Թէ յիշեալ և թէ միւս գաւառաց ժողովրդական լեզուին մէջ, բաց 'իգրաբարէն աղաւաղեալ բազմաթիւ բառերէ, ըստ տեղւոյն, Թուրքական, Քրդական, և այլն և այլն բառեր ալ խառնուած են. այնպէս որ ամեն գաւառ՝ լեզուաւ և արտասանութեամբ քիչ շատ իրարմէ կը տարբերին։

Սկսիմք արդ Ակնեցւոց հնչման տարբերութիւնքն և այլն գրել. որք են։

1. Ակնայ Հայք՝ ընդհանրապէս *) «ու»ն «իւ»ի պէս կը հնչեն. զօր. փոխանակ «տուն» ըսելու, «տիւն» կ'ըսեն. Նըմանապէս, կուտ, ջուր, ուր, դուրս, ութ, ունիս, սնտուկ, մանուկ, կատու, աշուն, երկուք, և այլն բառերը կը հնչեն

---

*) Ուսեալներն և երկար ատեն Պոլիս կենալով արտասանութիւնքն փոխուած անձինքն 'ի բաց առեալ՝ միացեալ ժողովուրդն։

կիւտ, ջիւր, մանիւկ, իւնիս, եւայլն բոլոր հոլովմանց ու խոնարհմանց մէջ։

2. Բառին կամ վանկին մէջտեղը գտնուած «ո» գիրն «էօ»ի պէս կը հնչեն, զոր. «սոխ»ն «սէօխ» կը հնչեն. Նոյնպէս և դուռն, դող, գլուխ, սոր, անոր, չորս, Նիկողոս և նմանօրինակ բառերը կը հնչեն դէօռ, դէօղ, գլէօխ, սէօր, անէօր, չէօրս, Նիկողէօս եւայլն։ Աստ կարեւոր կը համարիմ լեզուագիտաց կամ քերականաց նկատողութեան ներկայել սա տարբերութիւն, թէ վերոյ գրեալ «տիւն, ջիւր, եւայլն» բառերուն «իւ»-երն ոչ թէ բոլորովին «իւ» կը հնչուին, այլ «ու»ի և «իւ»ի մէջտեղն հնչիւն մ'է. զոր. «ճ՜ւր»=«ճ՜ուր»ն ոչ թէ Էական դերանուն «իւր»ին պէս, այլ «իւր»ին և «ուր»ին մէջտեղն հնչիւն մ'է, զոր Ակնեցին կրնայ հնչել. Նմանապէս «սոխ, սոր, եւայլն բառերուն «ո» գրերն ոչ բոլորովին «օ»ի, և ոչ «էօ»ի, այլ ասոնց մէջտեղն ձայն մ'ունին։

3. Կան շատ մի բառեր որոց «ա»ին տեղ «ո» կը գործածեն. **) զոր. անձրև, անլի, հիւանդ, ճանճ, ականջ, մանչ, պայծառ, անդի, անցնիլ, կանգնիլ (կայնիլ), հանգչիլ, մանր, ծանր, եւայլն բառերն կը հնչեն որզև (ոզրև), օլլի, հիւոնդ, ճոնճ, ակոնճ, մոնչ, պոծառ, ոդդի, ոնիլ, կոյնիլ, հոգչիլ, մոյր, ծոյր, եւայլն. Նաև անդի տունն—ոդդի կամ ոնդի տիւնն—անդինոնք—ոնդինէօնք կամ ոդդինէօք, եւայլն բոլոր հոլովմանց ու խոնարհմանց մէջ։ Ճատերն, «որ» ըսելու կամ հնչելու տեղ «ուր» կը հնչեն, ինչպէս որ յընթացս գրոյս և մանաւանդ յԵրգարանին յայտնի է։

4. Ասդիս, ադդիդ, անդին ըսելու տեղ, կ'ըսեն. Սըդդին, տըդդին, նըդդին։ Սորա, դորա, նորա, եւայլն դերանուանց տեղ կ'ըսեն. սըվոր, տըվոր, նըվոր, եւայլն։ Երբեմն ալ

**) Ընդհակառակն, կան մի քանի բառեր՝ որոց «ո»ին տեղ «ա» կը գործածեն. զոր. Թանիր—Թոնիր,—Խանաչըհ—խոնարհ (սովորաբար կանաչք կը գործածեն) մախիր—մոխիր։

*-այսր, աստ, անդ ըսելու տեղ, դաս, դան կ'ըսեն. զոր. դմս եկու—Հաս, աստին եկու. դմն գնա—անդին գնա, եւայլն։ Աստ, անդ, եւայլն մակբայներուն տեղ կը գործածեն «հուսա, հուտա, հունա». զոր. հուտայէն հուսա—ատկէց հոս, և աստի, այտի, անտի (ասկէց, ատկէց, անկէց), կ'ըսեն սըվկից, տըվկից, նըվկից. զոր. սըվկից հուսա (եկաւ), նըվկից հուտա (գնաց), եւայլն։*

5. *Ոմանք՝ սովորաբար վերի Թաղեցիներէն՝ հոս, հոդ, հոն (աստ, անդ, այդր, անդր) ըսելու տեղ, ֆես, ֆետ, ֆեն կ'ըսեն։ Փոխանակ խաղող կամ խաւող ըսելու, խաւեղ՝ և փոխանակ «հող» ըսելու, «ֆեղ». փոխան «ծվ էր», «վծվէ» կամ վեվէ» կ'ըսեն։ Ոմանք՝ «մինչևոր» կամ «մինչև որը» իմաստով կամ փոխարէն «հիժվի» կամ «միժվի» կը գործածեն, և ոմանք ալ «այն ալ» ըսելու տեղ «այն ար» կ'ըսեն։*

6. *Կան մէկ քանի բառեր որոց յոքնակիներուն ձևերն տարբեր են. որք են։*

*Զև Ա. «Նաք» կամ «տաք» վերջաւորութեամբ։*

*Գեղունաք—Գիւղք, գիւղեր.*
*Դիւունաք—Դեւք.*
*Ըխտունաք—Ուխտք.*
*Ծաղկունաք—Ծաղկունք.*
*Մեծունաք—Մեծք.*
*Սրբունաք—Սուրբք.*
*Տերտրնաք—Քահանայք.*
*Աղբրտաք—Եղբարք.*
*Ներուըտաք—Ներք, ներեր.*
*Վարպետաք—Վարպետներ.*
*Տալուըտաք—տալք, տալեր.*
*Քուրուըտաք—Քորք.*
*(Կ'ըսուի նաև վրանտաքը—վրայի կողմերը. վըրանտուցմէն—վրայի կողմերէն, եւայլն)։*

ոնց սեռականքն ու տրականքն կ՚ըլլան «մեծունաց, աց, ըխտունաց, քուրուըտաց, ևայլն». բացառականքն , «մեծունացմէն, տալուըտացմէն ևայլն»: «Տաք» վերջա-Թեամբ եղածներուն գործիականքն կ՚ըլլան «աղբըտօք, -ըտօք, ևայլն»:

Յոքնակիի Բ. ձևն է.

Դուռիք — Դրունք.
Կըթոիք — Կանայք
Շնուիք — Շունք.
Տըկոիք — տակերը, ներքևները. (ծառերուն, պատերուն տըկոիքը—ծառերուն, և-այլն տակերը):
Տնուիք — Տունք:

Ասոնց Սեռ. և Տրակ. կ՚ըլլան «դռուոց, կըթոոց, շնուոց, տնուոց». բացառականքն կ՚ըլլան «դռուոցմէ, կըթոոցմէ, շնուոց-մէ, տնուոցմէ»: Ասոնցմէ «տունք» և «դըրունք» ին գործիական-ներն կ՚ըլլան «տընուըներով», դըռուըներով, և «տըկոիք»—ինն «տըկտըներով»: Ձեռք և ոտք բառերուն յոքնակիներն կ՚ըլլա[ն] «ձեռուին», ոտուին: Այս յոքնակիներն երբեմն իբրև եզակի, ա-խարհաբարի «եր» կամ «ներ» մասնիկներն առնլով յոքնակի կ՚ը-լան զոր. ձեռուընները, ձեռուըներով, ոտուընները ևայլն:

7. «Եմ» լծորդութեամբ եղած բայերուն սահման. ներ-
եզ. Ա. եյք. Ա. և Գ. դէմքերուն «ե» ին տեղ «ի» կը գո-
ածեն. զոր. Սիրիմ, սիրես, սիրէ. սիրինք. սիրէք. սի-
Տեսնեմ, տեսնես, տեսնէ. տեսնինք. տեսնէք, տեսնին, և

8. «Ա» էն անմիջապէս յետոյ «ն» եղած վանկերուն բառից մէջ, «ա» ին և «ն» ին մէջ «յ»ի ձայն մը կ՚աւե-զոր. ան, գան, ման, շան, պան, ջան, ևյլն. բառերն կ-չէն այն, գայն, մայն, ևայլն:

## 2. Արկոտեան բարբառ.

Ի Հնումն տեսակ մը բառեր կային որ իբրև Արկոտեան բարբառ կը գործածուէին․ բայց այժմ մեծաւ մասամբ հանրածանօթ լինելնուն, թէ պատեհ առթիւ և թէ սովորական խօսակցութեան ժամանակ ևս իբրև ասացուած կը գործածուին, որք են։

1. Արծաթ բունող—Սեղանաւոր։
2. Բիր բունող —Ոստիկան, զինուոր։
3. Գոքպիճ—Հրացան։
4. Դաղլը է (խաղի թըղթոյն արքայն)։ Զափահաս և ծերացած՝ բայց անմիտ։
5. Եկուր երթանք անել—Գողանալ․ (պէտք է գիտնալ թէ սոյն և յետագայ 7 տեղ «գողանալ» ըսուածը ոչ թէ գիշերային տուն մտնել, ևայլն, այլ իբրև բարեկամ, ծառայ, հանդիսական, ևայլն․ տան կամ խանութի մէջ գտնուելով բան մը գողնալը պէտք է հասկցուի)։
6. Թուցնել—Գողնալ․ (այս ևս նախնթաց իմաստով հասկանալի է)։
7. Ծակ—Բանտ։
8. Ծուռ լեզու—Քուրդ։
9. Ծրտել (թղթի մը վրայ)—Բառ մի, գիր մի գրել․ հրամայել։
10 Ծփել—Օղի ըմպել․ (կը նշանակէ նաև տղուն երեսին ևայլն զարնել)։
11. Կածակ (թերևս կայծակ)—Ոսկի, լիրայ։
12. Կարդացող է—Ո՛ և իցէ կրօնի պաշտօնեայ, գիտուն է։
13. Կեղուել—Կեղեքել։
14. Կըլտըրիկ—Լիրայ։
15. Կծիկը դնել—Խոյս տալ, փախչիլ։
16. Կնճել—Օղի ըմպել։

17. Կոպած է—Կոշտ է։
18. Կուտ, կորկոտ, կամ՝ կուտ ու կորկոտ—Դրամ։
19. Կրակոտը—Անգլիան, Անգլիացին։
20. Կրծոն—Կաշառք։
21. Համբարձաւ անել—Գողանալ։
22. Ձեռքն երկան է, կամ, ձեռքը ծուռ է—Գող է (վերոյ գրեալ կերպիւ)։
23 Ձուկ ուտողը—Յոյնը, Ռուսը։
24. Ճենճ—Իւղ (կարագ)։
25. Ճերմակ լաթը—Գաղղիացին։
26. Մաղը ծակ է—Զգուշացիր. հայերէն կը հասկնայ։
27. Մատնի—Կուսակալ։
28. Մէկ մարդ (ը)—Այն որ ներկայ է և զորմէ կ՚ուզեմք խօսիլ։
29. Մոյրը (մանր) գիրը—Մի-Ֆթին (կրօնակոն-օրէնսգէտ պաշտօնեայն)։ (Երբ մէկու մի համար ըսուի թէ «Մոյրը գիրէ», կր հասկցուի թէ օրէնսգէտ, հաշուագէտ է)։
30. Տուք անել, շուքը դնել (իր մը)—Գողանալ, պահել, ծածկել մէկէ մը։
31. Տփել (իր մը)—Գողանալ։
32. Տուել—Ուտել։ (Երբեմն «լափել»ի իմաստով)։
33. Ոլըրել—Գողանալ։
34. Ո՛չ կարդալ—Ձունիմ ըսել։
35. Ոսպը քարուտ է—Հայերէն կը հասկնայ։
36. Ունքը (յոնքը) վեր—Ո՛չ, չըլլար. մ՚ըներ։
37. Ջէ բուսեր—Մերժել, չկայ և այլն։
38. Ջորս ոտքը—Ջորին, ձին։
39. Պաչ ճաշ (մեղրամոմ) փակու—Դադրէ խօսելէ, այդ խօսքը գոցէ։
40. Պլորցնել (զիր ինչ)—Գողանալ։
41. Պիղատոս—Դատաւորը։

52. Գզկել—Օղի ըմպել։
43. Գտոտ է—Խաբեբայ մ՚է. (Տճ. տօլանտըրըճը). կամ սնանկ՝ գործը գէշ է։
44. Ջաղացք—1. ժամացոյց. 2. բերան և ակռայ.
45. Սև ջուր—Սուրճ (եփուածն)։
46. Վառն ՚ի վերուստ անել—Գողանալ։
47. Վերնատունը տախտկած է—Անխելք է։
48. Վերասին յաւելուած անել—Գողանալ։
49. Վիզ (պարանոց)—Երաշխաւոր։
50. Տունը մարդ չի կայ—Տգէտ, յիմար է։
51։ Փատ կերաւ, փատեցին—Ծեծեցին (փայտով)։
52. Փառուոր—(՚ի հնումն) Ոստիկան, զինուոր (Այժմ, «անկիրթ, անքաղաքավար» իմաստով ևս կը գործածուի)։
53. (վասն անձի) Փէնճէրիները (պատուհանները) գոց է։ —Կոյր է
54. Քամ, քամջուր—Օղի։
55. Քըմմել (Քամել)—Սպառնալով տուգանք և կաշառք առնել։

---

### 3. ՄՆՃԵՐԷՆ.

Մնճերէնն հին կամ նոր լեզու մը չէ, այլ մեր գիտցած (հայերէն, տճկ. և այլն) լեզուն է, ուսկից մասնաւոր կանոնով մի կը կազմուի, հետևաբար ամեն լեզուով կրնայ խօսուիլ։ Ցուցալով թէ ներքոյ գրեալ օրինակներէն դիւրաւ կը հասկըցուին թէ ինչ կանոնով կամ կանոններով կը կազմուի, բացատրութիւնն զանց առի։

Օրինակ «ճ» գրով կազմուածին։ Ա—ճայս մաճար—դը—ճը ո ճո՞վ է—ճէ։ «ք» գրով նոյն խօսքն. միայն բաց ի սովորական ք-էն, առաջին «ք» մ՚ևս յաւելլով։ Աք—քայս մաք—քար—դըք—քը ոք—քով էք—քէ=Այս մարդն ո՞վ է։ Հա-

ճաց. կու—ճու—տե—ճեմ։ Հաք—քաց կուք—քու—տեք—քեմ.=Հաց կուտեմ։ Ծ-ով. Ա—փայս ո փիմ է—փէ=Այս ոմ է։

Մեր սովրած ժամանակներն սովորաբար «ճ» կամ «ք» գըրերն և երբեմն «փ» կը գործածէին, բայց յայտնի է թէ ուրիշ բաղաձայն գրերով ևս կրնայ ըսուիլ, զի կանոնն նոյն է։

---

## 4. Մանկական բարբառ.

Թողումք թէ մանկական բառերն ևս՝ ի հարկին՝ կրնան Արկոտեանի տեղ գործածուիլ, հետաքրքրական է գիտնալ թէ հայ մանկտեաց բարբառք զանազան երկրաց և գաւառաց մէջ ինչ տարբերութիւն ունին 'ի միմեանց, և յետ ժամանակաց ինչ փոփոխութիւններ կը կրեն։ Այս նպատակաւ կը գրեմք Ակնայ մանկանց խօսած կամ անոնց հետ խօսելու յատուկ հետևեալ բառերն։

Մ ա ն կ ա կ ա ն.

| | |
|---|---|
| 1. Ապլի արէ | Համբուրէ։ |
| 2. Ապուճիկ | Կերակուր։ |
| 3. Աստա | Մայր։ |
| 4. Գոբպալ | Խոշոր, մեծ։ |
| 5. Դադա, դադա անել | Գիր, գիրք կարդալ։ |
| 6. Թաթիկ | Ձեռք։ |
| 7. Լօլօկ | Խաղող։ |
| 8. Խըշ (անել) | Ջեռուլ։ |
| 9. Խօ | Գայլ, երկիւղալի գազան և այլն։ |
| 10. Կաքար | Շաքար։ |
| 11. Կըծ արէ | Խածծ։ |
| 12. Կոկոկ | Ընկոյզ։ |
| 13. Կոքքոր | Մօրաքոյր։ |

| | |
|---|---|
| 14. Կուքկուլուլու | Աքաղաղ։ |
| 15. Հաքպա | Ուտելիք։ |
| 16. Հաքպա արէ | Կեր։ |
| 17. Հոքպա | Մեծ։ |
| 18. Հոքպալաճիկ | Ցատկել, գլորիլ։ |
| 19. Ճըրճըր | Ճրագ։ |
| 20. Ճուլ ճուլ | Հաւ։ |
| 21. Ումմա | Կով։ |
| 22. Ջօչօ | Ջորի, ձի։ |
| 23. Պաճիկ | Պառկիլ, քնանալ։ |
| 24. Պաչիկ | Համբոյր, պագ։ |
| 25. Պզպզ, պզպզ արէ | Մէզ, միզէ։ |
| 26. Պըլլիկ | Երախայ։ |
| 27. Պլօ | Ոջիլ, ճանճ, միջատ։ |
| 28. Պու | Ջուր։ |
| 29. Պու է | Ջերմ է, կիզիչ է։ |
| 30. Պուշ, պըշիկ | Մաքուր, նոր, լաւ։ |
| 31. Պուպուկ | Հարս, նոր հարս։ |
| 32. Պօլլօ | Մեծ, երկայն, խոշոր։ |
| 33. Տատէ արէ | Քայլէ։ |
| 34. Տըզտըզ | Ջութակ, չնկիւռ եւայլն։ |
| 35. Տոյհ տոյհ | Ձի, ջորի։ |
| 56. Տոտիկ | Ոտք կամ ոտքի աման։ |
| 37. Տոտոխ | Ոտք։ |
| 38. Տտիկ արէ | Նստէ։ |
| 39. Փափա է (եղեր) | Հիւանդացած է. կամ վէրք մը ունի։ |
| 40. Փիւ | Գառն, ուլ եւայլն։ |
| 41. Փսիկ | Կատու։ |
| 42. Քըթօ (անել) | (Պտղոյ եւն. կուտը) Կոտրել ակռայովն։ |
| 43. Քըխ է | Աղտոտ, գաղիր, վնասակար է։ |
| 44. Օշիկ, օշօ | Շուն։ |

45. Օշիկը հարպը կ'անէ—Ճուճը կ'ուտէ։

Աւելորդ է ըսել թէ սոյն բառերու հետ, պէտք եղած հայերէն բառն կը գործածուի, օր. Ապուճէ (կ'ուտես), Ատտան (եկաւ) եւայլն։

5. Խօսակցութեան օրինակ մը. (իբր 20 տարի յառաջ)։

Որովհետև նախընթաց գլխոց մէջ մեր սովորութիւնքն, խաղերն, առածներն, ասացուածներն եւայլն, և սոյն գլխոյն սկիզբն արտասանութիւնն գրեցի, իբրև նմոյշ մի ասոնց գործնականին, կարեւոր թուեցաւ խօսակցութիւն մի գրել։

## ՄԵԾԱՑՈՒՆՔ

—Բարի իրիկուն, Արթութիւն աղա 1)։

—Օ՛, ծառայ իմ կաճի՛ 2) աղա. հրամայեցէք. ատ ո՞ր հով է փչեր. (գալուստդ անակնկալ է)։

—Ի՞նչ կ'անես. պատուական քէֆդ 3) աղէ՞կ է։

—Փա՛ռք Բարերարին. հրամմնքդ ի՞շ (ինչ) կ'անես. քէֆինդ աղէ՞կ է։

—Օրհնեալ է Ասված (Աստուած), աղեկ իմ, ըմմա 4) բան մի լսեցի, [illegible] դպաւ 5)։

—Խէ՛յր օլա 6) աղա. ի՞շ կայ։

—Էֆէնտիմ 7) ի՞շ տիլլի. զավալլը— 8) Մարկոս աղբարը ասեօր բարով մի ծեծերին, տիւնը պառկեր է։

—Ան ալ թող իրեն հէտտը 9) ճոշնայ (ճանչնայ) էֆէ՛նտիմ։

—Աղէկ ըմմա, չի խօսելով կուլլի. մենք ալ իւր մարդ ինք նը, ասեօր իճրան 10) պիտի անինք. զահմէթ 11) է, երթանք իֆատէ 12) անինք, ծեծողին ճէզասըն 13) տանք։

---

1. տէր։ 2. Մահտեսի, մագտեսի։ 3. (քէյֆ) առողջական վիճակ, (երբեմն) հաճոյք, զուարճութիւն։ 4. բայց, թէ և։ 5. զգացուեցայ, տխրեցայ։ 6. Աստուծով բարի է։ 7. Տէր իմ։ 8. խեղճ։ 9. չափ, սահման։ 10. իճրան—գործադրութիւնն։ 11. նեղութիւն, ձանձրութիւն։ 12. խօսիլ, խնդրել։ 13. պատիժը։

—Նստէր ես, նստէ. լինչքուտ պէտք է. Թող իր չէ-չընթիշ եզածին 14) երթայ. գիտես իւր ոնցած տարի Թէհչէր 15) մի շինեցին նը, ան ալ խմչոյ 16) եր գրեր։

—Սոխը քանի կէղուես, կու կէղուըռուի. ձգէ կորսնցու (անյիշաչար, ներողամիտ եղիր), սըվոր խծոռը 17) նայինք. ջիրէ 18) սաեօր՝ անեօր է (անոր պատահած է), վաղն ալ (կարգը) մեր է։

—Մինչիւկ հըմա շատ արանք. գիտցեօղն եօվ է հաճէ տղա, հըմա նէ՛ 19) մեծը կու ճանչցուի, նէ՛ պզտիկը. բան մըն է կ՚երթայ, Թող տիւր ուր երթայ։

—Հախլըռ ես լոփըն 20) ձգելով ալ չիլլիր, էանաքը 21), քոախարէն 22) մեղք է. ազգային ատեանը խանգարեր է. Վարդապետն (Առաջնորդն) ալ վաղը կիւ ձգէ կերթայ։

—Բարլին տանի (երթայ բարով)։ Վարդապետը Թորոս աղայէն բերանը կու նայի, ան ալ անոր. Թորոս աղա՞ն վով է դըհա 23) երեկ մէկ, սաեօր՝ երկիւք. ան (Ա) տըհա նոր օրթայ ելաւ նը 24) հարուր տարի է ի իւր մեզի Կիրակոս Օղլի 25) ին ըսեր, նէ՛խոէ 26), ճոփէճոփ 27) հրամանքդ եկեր ես, չէ չիմ ըսեր. քախէլ 28) Սարգիս աղային, Ակոբ աղային ալ խապար տանք 29), մեյտեղ երթանք։ Զէղաւ նը Խարբերդ կու գրինք. դիւն թեքը նայէ. ա՛ռ սա ըրոխէն 30) մեյ մի նեռէ. (Ծառային ուղղեալ) մանչուկ (մանչուկ, ծօ) նա ԹոԹըլըռն 31) ալ բե՛ր, քանի մը օյէն 32) խաղանք։

---

14. իւր պաշտպանին, վստահացած անձին։ 15. հանրագիր։ 16. ստորագրութիւն։ 17. զարժանն։ 18. որովհետև։ 19. ո՛չ։ 20. իրաւունք ունիս, սակայն։ 21. արհեստաւորը։ 22. աղքատն։ 23 դեռ։ 24. հրապարակին վրայ երևաց, յառաջ եկաւ, յառաջ դիմեց։ 25. Կիրակոսեան։ 26. ինչ որ է։ 27. որովհետև։ 28. բայց։ 29. իմացնենք։ 30. օղին։ 31. նարտ։ 32. խաղ, խաղին ամբողջակի կամ մասնակի ըլ-լալուն։

(Ա) երբ մէկը խօսքի մէջ մէկու մը համար «չունի» կամ «էչ» և այլն պիտի յիշէ, «Խօսքս անոր ան... ը». երբ կինն, ամուսնութիւնն

—Հըմա **Եօվլուին վախթը** 33) չէ. ես վերինին երթամ. ան ալ հետերնիս լընի նը աղէկ է. դուք ալ հոն եկէք։

—Ես հոն կ'երթամ **հէչ** 34). ան թող գայ։

—Ակոր աղային կիւգամ։

—Կիւգամ։

—Առենք է ըը, ես հեռն կ'երթամ. վերինն ալ կիւգայ, դուք ալ **Թէշրիֆ** 35) արէք, **Մէշվէրէթ** 36) մի անինք. ծառայ իմ։

—Եւ ես ծառայ, էֆէնտիմ։

---

Նոյնն և արհեստաւոր մի (սոյն վերջինն խորին ակնածանօք)

—Նստէ նայիմ, **Եէկէ՛ն** 1) Թորոս. ինտէծր ես։

—Ծառայ իմ աղա. Աստուած կէնք տայ։

—Ի՞շ կայ ինչ չի կայ. եկէն։

—Պաստուական կենդանութեանդ **դուվասի** 2) ինք։ Հրամանքէդ **ռիճայ** 3) է մի իմ եկեր. ըսմա չի գիտիմ **թի** 4) **խապուլ** տանմս 5),

—Ըսէ նայիմ. **խապիլսէ** 6) գործ է **իսէ**, 7) **չօ՛խ** 8) աղէկ։

—Վեր՝ Աստուած, վար՝ (յերկրի) հրամանքդ. գլխօխս նեղի

---

33. ժամանակը։ 34. բնաւ։ 35. եկէք. Ձեր ներկայութեամբ պատուեցէք։ 36. Մէշվէրէթ—խորհրդակցութիւն։

1. Քեռորդի. (հեռաւոր ազգականութեամբ քեռորդւոյ մի կամ բնաւ քեռորդի չըլլացողի մը իսկ «բարեկամ, եղբայր» ըսելու պէս «քեռորդի» կ'ըսեն։ Նոյնպէս են տայի (քեռի) և ամու (հօրեղբայր) անունները)։ 2. բարեմաղթու։ 3. ռէճա—աղաչանք։ 4. թէ։ 5. կ'ընդունի՞ս։ 6. հնարաւոր։ 7. եթէ։ 8. չատ։

եալլն պիտի վիշէ, «Խօսքս համարձակ է». եթէ ախտ մի, դժբաղդութիւն մի եալլն զոր ունեցած չէ, «Սատըն-ին ականճը խօսաշաւ (կապար) եալլն, իսկ եթէ նողկալի իրի մը (թարախ, փորհարութիւն եալլն) անուն պիտի տալ, նախ, «հեռի սուրբ երեսնուդ» կ'ըսէ։

գտայ նը ձուր տ'երթամ. հէլպէթ 9) հէօս տի գամ: Թամպըլըղըն 10) չի տանք աղա. խնդիրքս աս է թը. առիւտուր մի կայ տըր անիմ. 1000 ղշ. (10 ոսկի) պակաս է, իհսան 11) արէ, տուր. Ֆայիզինը 12) կուտամ:

—Դահմիլ 13) մի գրէ: Կմրապետ, (որդւոյն ուղղեալ). մու սա բալլին, գնա ներսի դոլապէն 14) 1000 ղրշ. 15) բեր. Նիշ-նին տուր, տահմիլը մու:

—Շնորհակալ իմ աղա. Աստուած իշխանութեան (Ա) պահէ:

—Չարշը՞ն 16) իշ կայ չի կայ. առիւտուրները ինտէծր է:

—Աստուած պէրէքէթ 17) տայ, ըմմա առիւտուրները ֆէնա 18) է: Ցորեն, պանիր, (կամ խաղող և այլն) շատ կուգայ, շա-ֆին Բէֆէնտիները 19) էռէջքը կ'երթան, կու բերին: Եասախ 20) կ'անին քի 21) էռէջքը մարդ չի տ'երթայ, մտիկ չին աներ եինէ 22) կ'երթան. Էօնէջէքը նեղը կու մնայ, անիւնց ֆէր 23) մի կուտայ կ'առնէ: Բերողը (քուրդն կամ գիւղացին) կ'ուզէ իւր (որ) տնուորին տայ, ըմմա մտիկ անողն ով է. ջորին բեռնով ձեռքէն կու քաշին կ'առնին. քիչ մ'ալ դիմանայ նը կու ծեծին: Հէփտա չէ ըմա, չ'ելլիր իւր ժամը ծանիւցիւմ անոնց քի անիւնցմէ բան մ'առնէք. Հայն իւր անիւնցմէ չառնէ նը առածնին չին կրնան ծախեր, ալ չին առներ:

Ատ ըսածդ էռէջ էր. ան վախխինը ղասաբին 24) մեկը կամ

---

9. հէլպէթ—հարկաւ: 10. ձանձրութիւն: 11. շնորհ: 12. տոկոսին: 13. պարտամուրհակ: 14. դարակ: 15. դահեկան. 16. շուկայ: 17. օրհնութիւն, առատութիւն: 18. նուազ: 19. մրցավաճառ, խանութպան: 20. արգելք: 21. թէ: 22. ենէ—դարձեալ: 23. շահ: 24. մսավաճառին:

Ա. Ինչպէս գիտեն շատերը, Հայաստանի մէջ թերես այլ տեղեր եւ այն անձինք որ քաղաքին կամ գիւղին մէջ ազդեցիկ, հարուստ են, և հանրային գործոց կը խառնուին «իշխան» կը կոչուէին: Իշխան բառին բուն նշանակութեամբ հասկնալու չէ:

ուրիշը գիշըւթիւն մի աներ նը ժամը կ՚անիծէյին թը ան մարդէն միս կամ ուրիշ բան մ՚առնէք, չէյին առներ. մինչիւկ իւր գ·որ մէղայ ըսեր, նէօրէն ծանիւցիւմ անեյին ֆէ, առնէք։ Հըմա էռջի միաբանութիւնը չի կայ. ատենկ բաներ ծանիւցիմ չանուիր. անիին ալ նը, որը մտիկ կ՚անէ, որը չանէր։ Դիւն քիւ գործդ տեսար նը ատ նայէ։

—Ձեր **սայէսէն** 25) մարդ ինծի «Աչիցդ վերև ունք կայ» չի կրնար ըսեր. Աստուած ողորմի լիւսահոգի աղայիս հոգիւն, օր մը, Աստիւծիւ վախոտը աս վախիլէն եր, եկի. ինք ֆէտ նըստեր եր **չըպուխ** 26) կիւ խմեր, ես ալ ֆես (սատ) կոյնեցայ. «նստէ եկէն» ըսաւ. նայեցայ քի, **ղէլէ**, 27) մեծ է. «նստէ» ուր ըսաւ, չիլլիր, նստայ. պատուական գլէօխդ չի ցաւցնինք աղմ. ասենկ խօսք մի բացուեցաւ. ըսաւ թը «խելօք կեցիր ուր շատ ապրիս». ոտաց հող իմ **ըՆՆա** խելացի խօսքը կու ճոշնամ։ Իրաւ միտքս բան մի ինկաւ, հարցնիմ. Մանիւկ աղբարըն ու **պազը** 28) **էսնաֆներ** ինկերութիւն մի ին արեր. շաբաթը 40 փր. կիւ ժողվին դրպատան հըմար. ծառադ ալ գրուի՞մ։

—Քեզի ինկերիւթիւն, դրպատիւն պետք չէ. քիւ վախթդ ոնցեր է, տղատ ալ սաղմոսն ու ժամագիրքը **հէլալէն** կարդացեր է. **սէնէտ** 29) մի գրել ալ գիտէ նէ, ան ձեռը կուտայ. վարդապետ ո՛իլլի թը տերտեր։ **Իշտէ** 30) կ՚ըսիմ. ան կատիւշան տղին ակոնճ մի՛ կախեր։

—Իմ **հէ՞սս** է, աղմ. ծառատ ձեռացս **տէրսէն** 31) ու էռէջքը կիւ ճոշնամ. հրամանքդ ուր **ատ խըտար** 32) մի ըսիր նը ան հերիք է։ **Թաձիղըլըխըն** 33) չի տանք, աղմ, խանիւթս ալ բաց է. **էօմրիւնէ** 34) երթամ։ Ծառայ իմ։

— Բարով եկիր։

---

25. շնորհիւ, հովանաւորութեամբ։ 26. ծխափող։ 27. այո։ 28. ոմանք։ 29. Մէկէ մը պահանջին կամ պարզ հաշիւ մը։ 30. ահա։ 31. ցետոկոյս. 32. այդքան։ 33. ձանձրութիւն։ 34. էմրովդ—հրամանաւդ։

## ԱՐՀԵՍՏԱՒՈՐՔ

—Բարի (ի) րիկուն, Մարկոս աղբար։

—Աստուծու բարին, խո՛շ օլտւ 1) բարով եկեր։ Արև՛ելից ծաղիկ. (Ա) ի՞ւր ես չես երըւար։

—Ի՞ւր ա՛իլլիմ. հէօս իմ։

—Ի՞շկայ չի կայ։ (խօսքն կնոջն ուղղելով) Հարս՛ը, խէյֆէ (սուրճ) մի եփէ։

—Ողջութիւն։ Ասէօր չօրօխուն ցորենի ու պանիրի շատ խաղձա 2) կար. Աղբա՛ր. ցորենին գեշն ու բարէօվը մէկ գին կու կըլ-յին. եօլչւթոձին 3) բարովը անիւնց կիւ չափէ, մնացածն ալ մեղի.չափին 3—4 ղուրուշ փարղ 4) ունի եղեր. նայ՚օղն ով է. հին չօրպաձինները 5) պիտէին ի՞ւր ասենկ բաները նայէին. հմակ որուն ի՞նչ պէտք է։

—Աղբա՛ր, վախտուն չօրպաձինեբն ալ իրարու շատ նէֆօէնէյէն 6) կ՚անեին, պազիներն ալ դեշ խոսյեր 7) ունեյին, ըմմա մէկը իւր հօֆուս 8) անեյին նը, ձին կիւ հեծնեյին կ՚երթային, եա-խալու 9) խոզաթները 10) կիւ խըրկեյին կիւ խալխըէին 11). ու՛ց [illegible] վախտ ու՛ց։

—Աստուած ողորմի տատիս ու մօրդ հոգիւն. աղբար, գի-տես թը մեռելի հոգին ցաներ. ի՞նչ անիին, խօսող չի կայ, ըսես նը, կ՚ըսին թը ալ էռջի վախտը չէ։

---

1. Թէն, ըստ բառարանի, հօրաքոյր—հալա, և մօրաքոյր—թէյ-զէ է, բայց Ակնայ մէջ մօրաքեռորդւոյն խալա-օղլի կամ կրճատ-մամբ՝ «խալօղլի» և հօրաքեռորդւոյն՝ թերևս հօր կողմանէ՝ «եէկէն» կ՚ըսեն։ 2. Բանակռիւ։ 3. չափողն։ 4. տարբերութիւն։ 5. մեծատուն, երեւլիք։ 6. հակառակութիւն, վրէժխնդրութիւն. 7. ընութիւն, մո-լութիւն։ 8. բանտ։ 9. կամ։ 10. ծառայ։ 11։ կ՚ազատէին։ 12. (ի-մաստն է). ի՞նչ բարի ժամանակներ էր։

(Ա.) Ի Ննումն՝ այժմ ևս ոմանք՝ մտերմական խօսակցութեանց մէջ կ՚ըսէին «Արևելից ծաղիկ. ի՞ւր ես։ Արև՛դ սիրեմ։ Արև՛դ գաւ-կռտիմ։ Վ՚մչ, տիւնդ աւեր չիլլի» ևայլն։

—Իրաւ է. հըմա ճոխիլը նազիկցեր է 13). ըմմա միաբանութիւն իւր կենայ նը ասենկ չիլլիր։

—Աղբա՛ր. ղանը 14) առիտիւրը փէտաք է. զայհրայներն 15) ալ աղեց. մեկալ թարաֆէն 16) վէրկին 17) տիւր, պէտէլիէն 18) տիւր, դպրատանը տիւր. մինչիւկ եաքը տիւր իւտիւր. էօնէքը ալ ինտէօր կէչինմիշ 19) տ'իլլի. չէնը չօլախ չօճուխնիս 20) ժողվինք աժան մէմլէքէթը 21) մի երթանք, Մալաթիա, Խարբերդ։

—Իրա՛ւ, աղէկ միտքս ընկաւ. պէտէլիէն կու կոյեյին (կը կոտրէին, կը բաշխէին) նը լմնցա՞ւ։

—Լմնցեր է կ'ըսին. իս 20 ղշ. եւըլցուցեր ին. քու էօնէքիդ վրայ ալ քանի մի ղշ. զարկեր ին։

—Մենք ի՞նչ իւնինք եւըլցնելու։

—Աղային մէկը մեջն էր. իմ հետ ալ կիրք իւնի. եւըլցուցեր է. ըմմա գիտէ թը տի կըլլիմ. աղբա՛ր, չի խօսիս նը տանջէկ 22) վրայ կիւ հեծնին։ Վաղը թիւղթ մի գրելու է. Առաջնորդին տալիւ է քի, աս կօյածնին հոլն [illegible] 23) վրայ չէ եղեր, չինք ընդունիր։

—Պէլլի, չինք ընդունիր։

—Էօնէքէն ալ էմմէն ճոխիլը մէճլիսը 24) մարդ տի գընելլի (գտնուի) իւր էօնէքին հոլէն 25) հասկնայ։

—Բարով ըսիր խօճա՛ղըլէ, հետո իմ. պէլլի, էօնէքէն ալ մարդ տի գընելլի. աս խօսքին հետերնիս գալող շատ կուլլի (կը լինի)։

—Հ՛ը. պօչուս վրայ իւր կոխին նը թօփլանթըսին 26) հէսապ 27) ալ տի բաւիմ (բնտռիմ)։

---

13. փափուկ է։ 14. արդէն։ 15. ցորեան եալլն. պարէն։ 16. կողմանէ։ 17. տուրք։ 18. զինուորական տուրք։ 19. ապրիլ։ 20. տղաք. ընտանիք։ 21. երկիր, քաղաք։ 22. ուսիդ։ 23 հոլն՝ բեկանեալը—կառավարութեան համեմատ։ 24. մէճլիս—ժողով։ 25. արհեստաւորին, ժողովրդին վիճակէն։ 26. հաւաքից։ 27. հաշիւ։

—Աղայներուն միջէն ալ հեղղեմ մեզի տիրութիւն անեօղ մի կիւ գընուիր։

—Թէհիւ *) դիւն ճէժօ նայէ. անդինը (այս ինչ երևելի անձն ակնարկելով) մեր հետ է. դիւն իրիկուընէ Կոլիկ (Նիկողոս) ամուջին, Գիրգոր աղբորը, Օվընես (Յովհաննէս) աղբորը, մեր աղբրտացը ձան տուր. վաղն առտիւ ժամեն ետքը ժողուըտինք. տեսնես քի կիւ շտկի՞ թը չէ։

—Փէ՛ֆ աղէկ, ես խօպար 28) կուտամ հըմա։

—Գիշեր բարի։

—Քեզ լուս բարի։

---

## Պառաւանց խօսակցութիւնը

—Ը՛հ, ժամեն մինչիւկ իւր փոս եկի նը, եկի. ծնկուըներս կիւ կոտրի. օղորմի Աստուած, ձէռքդ պագնիմ, Մանիւշակ խաթիւն։

—Մեղայ. չափ մի տարուան կնիկ ես. ողորմի հեօգիւտ. ժամ՞ն ի՞չ կար։

—Մաղկըւորի տեր ողորմա ու բալլի (բանալի) մի կորսըւեր եր տեր պապան (քահանայն) ծանիւցում արաւ։

—Մէղայ, մեղայ. աս տարի ալ ի՞շ խըբար չըլաւ 1) մեռաւ ծաղկէն։

—Մ՚ըսեր. հոգի քիւրիւկ, դէմ Աստիւծիւ է. մեր մեղացն է. չէ նը մալըամիչըները 2) ի՞շ չաւնաւ 3) իւնիւն։ Հըմա ալ ելերին թը փարփին (պատուաստ) անինք ուր ծաղկէն խալըսի. ով գիտէ թը ինչ է. էմմէնը սուտ, Աստուած իրաւ։ Մինակը մեր

---

28. լուր։ *) ձայնարկութիւն մ՚է իւր անձին կամ խնդրոյ մի չաշողութեանն վստահ լինելոյն ՚ի նշան. ոմանք «թէհմ կ՚ըսեն, և ոմանք «թէ հիւ։

1. Մանուկ։ 2. Մասլում (մասում)—անմեղ մանկունք։ 3. մեղ

վոխիկը ասէնկ բաներ իւր չի կար նը ի՞շ կուլլեր (կը լինէր). խոլխոլողը կու խալլխեր, մնացողն է ալ կու մնաներ։

—Ատ ըսէ. ձիւհար խաթիւն. ատ ըսէ. քանի բարկըցան (բարակցան) նը ետ գնացին. Ակոբս հերու հիւըտցաւ (հիւանդացաւ) նը սուրբ Ակոբ խոստացայ. ը՛հ 4) խուրգան լընիմ 5) զօրացը. ոտէկս ըուըսցաւ (ապաքինեցաւ), գնացի մուռ վառեցի։ Ավըլըսո (հին ժամանակի) մարդիքը ըխտունացը կու հաւտային, հըմա թեթուըցեր ին. իլլէ 6) նորելուկները. հիւընտան ժի չէնը հէտեմ 7) կ'ըսին։

—Խաթիւն ողըլս 8) հարստ ինտէ՞օր է։

—Զոռող 9) է ըննա իս չի սեպեր. խօսելու եղէն 10) տըմի դէհէ 11) կունստի դիմացս տղոցը հետ կու խօրըթէ 12). երկանն հետ կու խորըթէ ջիւր կու խմէ. դասէ, դրացնէ կու խմնիմ. հոգի քիւրիւկ։ Մեծունաքն ըսերին թը «իմ սերս 'իքեզ, իմ դանգաստս ալ 'իքեզ». քեզի չի ըէղրոէմ 13) որքու ըէրոէմ։

—Բարի՞ իւր հացը կ'երթայ, մենք ետըւէն, հըմակուան հարսները հարսանիքթ հանին. ալ հըմա հարսնիւթիւն անեօղն ով է. Ան ովո՞ւն էր 14) ուր տարիներով անխօս կիւ կենայանք։ Ներս մնաւ գնաց, կծիկը ճերմկած խրէղէն կնիկ մը եր, պարնտատն ու մեծ տագրը անխէօս էր։

—Ը՛. գիշերոց գիշեր դուրսը [illegible] 15. [illegible] մատը նստեր իմ. քիւնն աչիցս կիւ կաթեր, չէյի քնանար մինչիւկ իւր պարնտատս կ'ելլեր, լաթերը կիւ հանէի, կիւ պառկըցընէի ձեռքը կու պագնէյի ու կ'երթայի։ Օր մի օրոնց ես պարնտատիս ու կեսրոջս քով ուչ (ոչ) ջիւր իմ խմեր, ուչ ալ տղոցս վրայ խնտացեր իմ։ Մեր ըրած հարսնիւթիւնը հըմա

4. ո՛հ։ 5. զոհ, մատաղ լինիմ։ 6. մանաւանդ։ 7. բժիշկ։ 8. տիկին քոյր։ 9. ժիր աշխոյժ և աշխատասէր։ 10. հրաման։ 11. տալուս համար, կամ ըրած չնորհէս զեղծանելով։ 12. կը խօսի։ 13. քեզի վիշտս չի լալոնեմ։ 14. հին ատենն էր։ 15. մաթ կակս—խու հանուց։

Քօվ կ՚անէ, հըմակուան բաները խժիշ բժիշ կ՚երըւայ։

—Քըլ քճուրիւկ. մեր վախենը ան 17) ուր (որ) տատին քով լըներնը, երեսն ՚ի վեր չէանք նայեր. հըմակու հարսները, մայհն իրենք ելլէ, երեսնուն ջիւրը գնացեր է. երկտացնուն հետ [illegible] [illegible] 18) կու նստին կու խօրըլթին։

—Խաթիւն ապլա, տղմտ ինտէօր է։

—Ե՛յ, ի՞շ տիլլի լիւկ. ժամընկու (ժամանակի) տղաք ին. տատին (հօրն) պէս քիչ մի տօր 19) պիծակ է, ըսնա բարով է. ապրի ու զօրանայ։

—Ողջ մնայ ու ատձըն 20) չի տեսնէս։

—Ա՛տ ըսէ, քճուրիւկ, ատ ըսէ, մնաք բարով։

—Քիշ մ՚ալ նստէ. նէնէ՛ խանիւն 21).

—Չէ. չիմ կրար (կրնար). աշնան ձմերայն վախեն է. ոնցած շաբթիւ ջույհը լմնցաւ. հացն իւ մալեզը արանք. սս շաբթիւ ալ մնացիւն տանինք, տիւն ու դռռ (դուռն) տի [illegible]-նինք 22)։ Քո՛ւրուկ. փուշքանենքն 23) շա՛տ է. հարսս բան բանելով հոգին կ՚ելլէ ըսնա, ի՞նչ անինք. ասիւնց ծըր կիւ ստի։

—Նէնէ՛ խաթիւն. դիւք դաս ու դրացին շատ իւնիք. պօղէ չի՛ն ժմներ (ժամաներ, օգնութեան հասնիր)։

—Ե՛հ, պաղի կուգան ըմա, ի՞նչ անիմ. Քո՛ւրուկ, մեծունաքը պօշ 24) տեղ չին թողուցեր. «Հաց ու գինի իւնիս, իմ սերը դիւն ես, հաց ու գինի չիւնիս, իմ դեռ դիւն ես»։

—Մի հոգար խաթիւն ապլա։

—Ի՞շ տի հոգամ. իմ արեւս քարին վրայ է. տղաս ու հարսս

---

16. սանդուղին։ 17. ամուսնոյն համար «ան» (այն, նա), նաև «մերինը» և նաև «աղբարտ»կ՚ըսեն. զի ամօթ կը համարին անունն տալ։ 18. ազատ համարձակ։ 19. դեղին։ 20. «դառն» ըսել է, բայց տստ «մահ» հասկնալի է։ 21. ծերունի տիկին։ 22. տի մաքրենք։ 23. ընտանիք։ 24. պարապ։

ողջ մնան, հելլակի մեր դարն ալ դուր կուլլի. Աստուած ողորմած է։ Մնաք բարով. շե՛ն կենաք։

—Բարով եկիր. խաթիւն ապլայ։

---

## Երկու կանայք

—Ձէռւքդ պագնիմ, խաթիւն ապլա։

—Մէղմյ. քըլ նէօր հմիրս ես։ Պատերը խազեցէք։ Հարս՛ը (հմրս), նա պէնեշը 1) քաշէ։

—Ձէ. Նստելիւ չիմ. ժամ տ՚երթամ։

—Ե՛ մէռւմյ, դիւն ալ։ Աղշի (աղջիկ), մըտից մ՚աներ. ղօքով 2) քաշէ։

—Քըլ մայհն ՚ի խոսյա 3) ելլէ. հիժվի երթամ նը ուշը կիւմնամ լիւկ։

—Մնաս նը մնաս. էմմէն վոխիլ չես իգար։ Բարով եկիր. ինտէօր ես. բոխ՞նո (լաւ, առողջ) ես։

—Դիւն գալով հմլ ես մնացեր 4)։ Դիւ՞ն ինտէօր ես. ըռլի՞նա ես։

—Ե՛հ, բոխնո իմ։

—Ի՞շ կայ բոխնո չիլլելու. էմմէնն ալ խոսրդել 5) ին ճամբեր. մինչիւկ իւր գնալ չելլի նը գալ չիլլիր. ողջիւթիւն թող լընի։

—Երկթէ ըէղլէղի 6) է քիւրիւկ, ըմմա իշ տանիմ։

—Ապրիս հարս՛ը, բարով խէյհնէ 7) եյիր եփեր. շեն կենաք մարմն խոլխոն։

—Անիւշ լընի։

---

1. Տնէն դուրս հագնելիք տեսակ մի վերարկու։ 2. Բռնի։ 3. Բնութիւն։ 4. Այս խօսքով թէ՝ «դալով հալեր ես», և թէ, ազատլու հալ (—վիճակ)ին մէջ ես մնացեր» կը հասկցուի, բայց հաւանականաբար առաջինն է ուղիղը և իմաստն այս է թէ «Դուն ալ չես գար»։ 5. Պանդխտութիւն։ 6. Խարկած սիսեռ։ 7. Սուրճ։

—Ե՛. Խեյնըւն 8) ըլնի, ճիւհար Խաթիւն. տալոջդ աղջիկն ալ կարգեցիք. տեղն ամուր մնայ. պատուող 9) աղբօրդ աղջընթին ըլնի։

—Տատեօղ քիւկիննէրուդ ըլնի։

—Հագուցածը թարեծով էր. աղշի։

—Բարով էր, ըմա Քէրէճէն վար էր. մէյ մ'ալ ծոյլը էնթէրին -նէ էլէ էր 10)։ Ե՛հ. ըխդա՛ըը 11) բաց ըլնի. ան հագուցածը անիւնց յօրա 12) չէր, ըմմա ինչերնի՞ւս պետք է. իրենց հարսին կիւ հագցընէին. տալս ճէհեզ մի 13), ճէհեզ մի տվավ իւր. տեսնելիւ լայըխ 14) է, հէմ 15) հինկ խալե 16) է. հէմ պէտէմէն 17) թարով. շէլլա 18) օր մի ճամբատ իյնի պէ երթաս տեսնիս փէ ըսածիս յօրա 19) կա՞յ։

—Ըլոխ տալտ խըզիկին ու բըզիկին աղշի՞կն է, նէ՞օր կուտորվի ճէհեզն թէ խնամութիւնը։ Զըսինք աս ժըմուս վրայ, վախթէն անեօր տասը իւր օէլւո 20) կիւգարնը, բէռներով ու բաշերով կիւգար. աղշըներուն ճէհեզն ալ ինք իր ձէռքովը կիւ բերեր։

—Մ'ըրա, վայն ի խե՛լքտ եըէ. անեօր խնամին գիտե՞ս գիւն. կոտիկ հաւուն պոչ կիւ դնէ. ընտիկն ու ծնտիկը կու թռէ (փնտռէ). հըըա կը՞նայ նը 21) քըլթնիկը պակաս թօ անէ, տեա թէ ինչե՛ր կապավրէ։ Իրա՛ւ. աղշնին տեղը թարով է ըմմա, տալեօջս ալ վայն 'ի վրան կիւգայ. ո՞րը օէլեան 22) կու խրկէ, ո՞րը գաղտուկ. խնամին կէնէ քնթին չի դներ. հոգի՛ քուրուկ, ճակտին եազըան 23) է պէհեր 24)։

---

8. Շնորհաւոր։ Շնորհաւորման կամ մխիթարութեան համար այցելութեան գնացող կանայք սուրճէն յետոյ կ'ըսեն շնորհաւորուածն եալլն։ 9. չնորհ կամ օրհնութիւնը։ 10։ լաւ չէր։ 11. Բաղդը։ 12. անանց պատուոյն համեմատ։ 13. օժիտ։ 14. արժանի։ 15. թէ։ 16. ձեռք. 17. բոլորն ալ։ 18. ինշալլահ—Աստուծով։ 19. չափ։ 20. հայրենիք (ընտանեաց քով)։ 21. ևթէ կը համարձակի։ 22. յայտնապէս։ 23. ճակատագիր։ 24. գույէ։ 25. 'ի սէր։ 26. պարս.—պտուղ եալլն.

—Ը՛. խօսքս քեզ Թնայ (գաղտնի պահէ այս խօսքս) քուրո՛ւկ. Տարուս մարդը սուղ է եկեր, չէ՛ որ քու ո՛ր տեղը է սիրելի, ի՞շ տանէ, աղջըկնին խօնեցին համար 25) տի քաշէ, հէմ փառք Աստուծոյ ինչ՞ պակաս է։

—Ա՛ղջընակ, խօսքս չէքրով կըյեցի (ասացուած մ'է քաղաքավարական). էռջիններուն վախէին ալ գիտես թը պէք 26) ու պէրէքէթէն կար. հըմա կ'ելլէ քի բան մի տանէ նը, երկընէն վախն 'ի վախը կ'անէ, երը մարդ է. ուր նամուսն 27) ինչ է չի գիտէ. ո՛ւչ տար. ո՛ւչ ալ թող բերին կ'ըսէ։ Հէլա 28) մեր ('ի Պոլիս) գնացողը Աստուծո՛ւ խնդրայ. բան չեր ըսեր։ Ան օրուանքը աղբօրս աղջընին ները չօլուխ եր բերեր, թղթովը չէվրէ ու ֆէսէքէյովը 29) Եմիշ 30) տարի, աղբօրս կնիկը շատ ղէմ կեցաւ ու չիւզեր, ըմմա ի՞շ ֆայտայ 31)։ երեսն երէսէն կիւ խմնի. ան մեր տիւնը հարկի հարսնիքի՝ առոնց խայմախի 32) ու խուզիի 33) չէ եկեր. ես ինտէ՞օր չէօրն 'ի չէօրը երթամ. լսեծըն իշ կ'ըսէ լիւկ։ Մայհն ինք ելլէ. օդդի (անդիի) գոլէօբն ալ ըսեր է ու, պասիւլին սինի 34) է տարեր, մ'արկըներ. մէռիւնը խռէօվ ու, ես սինի տարեր եմ։

—Մ'երդուըննար, քուրո՛ւկ, մ'երդուըննար. մեյն (մէկն) ալ իմ գլէօխն է. խնամիս սիւրբ Սարգիս ուխտը ձեննեցի. վարի եօխ 35) ըննելուն չի ձեննեցի սէհն, մըժվի հըմա հետս քինթ ու պոչ է։

—Էյի 36) է էղեր. ան օրուանքը ինքոնցը (...եանի տուննն) գնացեր է, ո՛ւչ թրաշ 37) ին արեր (չեն թախանձեր

---

(այստեղ՝ աժնութիւն, առատութիւն)։ 27. պատիւ. (ոչ թէ օրինական կամ բարոյական, այլ քաղաքավարական սովորութեանց մասին)։ 28. գոնէ, առ այժմ լաւ է, եայլն։ 29. թաշկինակ։ 30. Եմիշ—պըտուղ՝ խնձոր, տանձ, եայլն։ 31, օգուտ։ 32. սեր։ 43. գառն։ 34. պղնձէ՝ կերակրոց սեղան ըսել է, բայց աստ փոքր սինիի մէջ պատրաստեալ և՝ սովորաբար՝ փուռն եփուած խմորեղէնն հասկնալի է. 35. չիք։ 36. լաւ։ 37, սափրել։

կենալ), ուչ ալ լանրին փեղիւն ալ շիւն ես փի կատիւ ես, ան ճոխինքն 'ի վեր. ալ մերն ալ չի գար։

—Սէ՛ ու մուրր գայ. չի գայ նը տագաւներր (ագռաւ) սէ՞ տի հագնին։

—Մայհն ծնք ելլէ. ան զանը որնւ հետ բարով է։

—Իրաւ ես, քուրուկ, ոդլինին հետ ալ ժամիւն Քնտեըլեն 38) հըմար ժամը (ցեկեղեցուջ) դիպդրպեցան. ան լսաւ թը նիրօջս տեղն է, ես տի կոյնիմ. ան ալ լսաւ քի, ներտ մէռաւ գնաց, հետը սիրն ու բիրն էիք, ոնցուկը մուցուկ եղաւ. քեզի իւր ներ եր նը ինծ ալ քոր եր. կեսիւրը մեռած վոխտը ան տեղը քրօջս եր տըվեր, ան ալ իւր (ուր—որ) Ըստըմպօլ (Կ. Պոլիս) գնաց նը. ինծի տվաւ. ես տիկոյնիմ։ Ա)

—Մարիկ, չի գիտես թը ան ծիշ կապուտցած է. խանը— (ն) մարս, (սկեսրօջ ներն) լոս բխայ (բղխայ) գերըզմանը, կ'ըսեր թը ան (մարդն) իւր նշանաւոր (աչքն կամ ձեռքն եւայլն աւբատաւոր) է, անկէ վախցիք։ Զատկիւն շաբաթն օրը հարընցուն տաչեր 39) ժամ եյին բերեր, նստեր հաց կ'իւտէյին, բե-

38. տապաստակ։ 39. զարդարեր։

Ա. Քաղաքիս 2 եկեղեցեաց մէջ ես, հին ատեններէ 'ի վեր, տեղի կամ մասնաւոր տապաստակի համար վէճ և կռիւ անպակաս էին։ Յառաջակողմն հարուստք կամ մեծատունք գրաւած էին։ Ս. Գ. եկեղեցւոյ շինութենէն ցետոյ, հին բաշխումը փոփոխութիւններ կըրեց։ Նորերէն ոմանք որ ազդեցութիւն, հարստութիւն ստացած էին, հիներէն տկարացած կամ անհետացած ընտանեաց ոմանց տեղերը գրաւեցին։ Մերթ ընդ մերթ վէճեր և բանակռիւներ, երբեմն գանակոծումն իսկ տեղի ունեցաւ։ Ուստի այս անտեղութեանց վերջ տալու համար, 79-ին, գարունն, մէկու մը նախաձեռնութեամբ քանի մը հարիւր ղչ.ի հանգանակութիւն մ'եղաւ, և մասնաւոր փոքր Քնտեըլներն՝ երկար և հասարակաց Ծնդեըներու վերածեցաւ։ Ցայնմհետէ վերջ գտած է կռիւներն և կանուխ գնացողն ուզած տեղն կրնայ կայնիլ։ Վարը արանց տեղը, բաց 'ի հանրութեան վերաբերեալ կապերտներէ, մասնաւորաց վերաբերեալ Ծնդեըներն դեռ կեցած են, և սովորաբար իւրաքանչիւր ոք իւր Ծնդեըին վրայ կը կայնի, բայց կռիւ բնաւ չկայ։

րանը չի բացաւ փի եկիւ։ Օր մի օրանց չէ ըսել փի կիւշտ եկիւ ու անուԹի գնա. մեղւյրելն է սորվեր։ Իրաւ, բան մի տի հարցնիմ. ձերինները աշքի-յիւսին ինչ եյին եփեր։

—Խնամիս խաչմախ եր խրկեր ըմմա. ան չի բերին. տալըս եաղլը 40) խրկեր եր. ան օքեան բերին, եսքն ալ՝ աս Հախնօտն (եղանակին) էտէԹն 41) ինչ է նը, ան։ Քէշաք 42), խաղլամա 43), բանճրով կերակուր, պիլաւ 44), մածնով ապուր։ Ըմա կոյնըվորը (սպասուհին) նա վարի անտեր մնան եր տեղի, պիլաւը բարով չէր կրցեր. էռ ջրեր իջաւ վրայնին. քիշ մնաց խաղքը տի լընեյին։

—Աշշի, հոլա՛ ուր արիք. չէնը աս կիրակի Նամազին ԹուղԹը (աւելորդածախ սովորուԹեանց չափաւորման կանոնագիրն) տի կարդան կ'ըսին։

—Ս՛ մեռայ լուկ, ան անկրմայհն ալ քանի իւր կարդացին նը գիտես Թը օքտալախին պէքէփէնն ալ փախաւ։ Մարկըներ (մարք), ես ալ խոյեւ 45) չիմ ըմմա էփօխօշ էնէճի 46) տէրին, չանելով կուլլիլուկ. հէմ ալ իշ մնաց իւր տանիծին։ Ըլոխ էյնէ օխորե մի 47) բան տի շարին։ Հարկի հարսնիքի կիրակիւրը չէօրս ըչչեղն 48) եւել չի տ'իլլի, փեսին ու խնամուացը եւել խիլաւ 49) չի տի տաք, մայհ-տիւնը հաց չի տի ուտէք. սենկ չի տանէք, նենկ չի տ'անէք։ Անենկ տանին իւր տի չէօրցընին։ Ինչի՞ւս պէտք է. ես ա՛լ հըմա ուչ առնելիւ իւնիմ, ուչ տալիւ։

---

40. տեսակ մի խմորեղէն որ՝ ջռինիին պէս՝ խմորն գլանիկով չոյժ նոսր բանալով՝ իրարու վրայ կը շարեն, կը ծալլեն, ձեռաց չափ կը կտրտեն, և (տունին) տապակի մէջ իւղով կ'եփեն, և վրան մեղր ու շաքար կը լեցնեն։ 41. սովո-րուԹիւն։ 42. խորոված (երբեմն սանի մէջ իւղովն եփած)։ 43. ոչխարին կողերուն կողմը, բրինձ լեցուցած և եփած։ 44. միսն քիչ ջրով իւղովն եփած՝ կսկծցուցած։ 45. չօժար։ 46. կին, աղջիկ։ Հոս, աղջիկ հասկանալի է։ Տաճկ. բառական նշանակուԹիւնն «քղանցքը Թերի, պակաս» ըսել է կարծեմ։ 47. հոտ ըսել է, բայց աստ «կարգ մը, շատ մի եալլն» հասկնալի է։ 48. տեսակ։ 49. ընծայ։

—Ձեռքդ պագնեմ, խաթխուն աղբըր. մնաս բարով։

—Մը՛րա, տա քօր չաղ 50) է տըհա, ն'օխ ըընիմ քի տի թողում, տես թը Զատկեն 'ի վեր ոտք կոխեր ես։

—Ի՞նչ անիմ, քուրուկ, երը մարդու (էրիկ մարդ) ու գեղ գեղացիի տեր ինք. կրնամ ուր. խեյլէ 51) են աշկս տի բանամ։ Դարն 'ի դան օր մ'ալ կուգամ։

—Չէ, խաթն'ըս համար տի նստիս։

—Չիմ կրնար, քո՛ւրուկ. գոջնակը (կոչնակ) զարկին. էմեցի (յամեր). աղբօրս (կանայք ոմանք խօսակցին ամուսինն «եղբայր» կը կոչեն) արեւուն իս թող տուր իւր երթամ։

—Մէղմյ, անենկ բան ըսիր իւր, չէ չիմ կրնար ըսեր. գիտես թը կրակին վրայ եյիր. բարով եկիր. ճէնէ խաթխունին ձեռքը կու պագնիմ։ (Ա.)



50. ժամանակ։ 51. ղալլէ—զբաղում։

(Ա.) Ինչպէս սովորութեանց, նոյնպէս և լեզուի մասին Ակնայ և մօտակայ գիւղօրէից տարբերութիւնն աննշան է. զոր. Ակնեցիք կ'ըսեն. ձնացի, պաճա, դաշուն (տաշտ), վարդապետ, վարժապետ, պէկենք, արփիարենք, խասկլցոնց եայլն. անոնք կ'ըսեն. գցի, պոճա, դաշտըշուն, վարդըպետ, վարժըպետ, պէկինք, արփիարինք, խասկլցոնց եայլն։





# Գլ. Ժ.

# ԳԱՒԱՌԱԿԱՆ ԲԱՌԵՐ

*Նախընթաց գլխոյն մէջ Ակնայ գաւառաբարբառին վրայ բաւական ծանօթութիւնք գրուած ըլլալուն՝ այժմ սկսինք բառերն գրել: Հաւանական է թէ սոյն բառերէն բազմաթիւ բառեր այլ գաւառաց մէջ եւս կը գործածուին, բայց որովհետեւ ասոնք որոշեալ չեն՝ բոլորն ալ իբրեւ Ակնայ բառեր գրեցի:*

## Ա. ԳՈՅԱԿԱՆ ԱՆՈՒԱՆՔ

### 1. ԿԱՐԱՍԵԱՑ ՎԵՐԱԲԵՐԵԱԼ

*Բղուկ* Էխալէն մեծ և թակոյկէն փոքր, իբր 8—10 քիլոկրամ ջուր պարունակող։

*Գըճիկ տապակ* Փոքր և խորունկ տապակ։

*Գուշ թաս* Խորունկ շերեփ։

*Գռամման* (Տճ. ֆարաշ). Գէռ (Տճ. սիւփրիւնտիւ) աւլելով մէջն ժողվելու համար տախտակէ կամ թիթեղեայ աման։

*Դաճնա* Ջնջան կամ ջնջոց. հին լաթի կտոր մը որով կերակրոց սաները կը մաքրեն։

*Դաշուն* Պղնձէ բոլորակ տաշտ. թզաչափ խոր. լաթ լուալու, լոգնալու համար։

*Դէստըխան* Կերակրոց սեղանին ներքնի մեծ սփռոց ուր կը թափեն փշուրքը. (Տճ. սուփրա պեզի)։

*Էխալ* Փոքրիկ թակոյկ, 3—4 քիլոկրամ ջուր պարունակելու չափ, մէջն իւղ, պանիր եւայլն կը լեցնեն։

*Թաթիկ* Թղաչափ կոթով, ձեռաց միջիչափ, տափակ, երկաթեայ գործի մը՝ որով խմոր կը կտրեն և խմորի տաշտը կը քերեն։

*Թանիրի փարտիչ (հացի)* Փայտեայ ձող մի, ծայրը ցնցոտիք կապուած, որ՝ հացն եփել սկսելէ յառաջ, ջուրը թաթխելով թանիրին կողերը կը փարտեն, կը մաքրեն։

*Խալկին* Մեծ կաթսայ։

*Կաղաթ* Տաճ. քիւֆէ։

*Կասկրանք* Կասկարայի աղաւաղեալն է որ եռոտանի երկաթի նշանակութեամբ կը գործածուի։

*Կոտիկ (կօտ)* Ակնայ չափին (իբր 70 օխա ցորեան եայլն) $^1/_{24}$ մասն. չափ մ՚է կոլոլակի պէս։ Սևաստ, Գանկալ և ՚ի Գուրուչայ 1 քիլէին (2 չափ Ակնայ և աւելի) $^1/_{16}$-րդ մասն կը հասկցուի։ Աւելի փոքր չափ մի կայ որոյ «թափիկ» կը սեն, ՚ի Գուրուչայ եայլն, կոտիկին մէկ մասն է։ Նաև «Կոտիկ» կարճահասակ. տես ածականաց կարգն։

*Կրիճ* Հաւու, շան եայլ ուտելեաց համար հողէ աման, ուր կը լեցնեն փշուրք եայլն ՚ի կուր։

*Կոլվակ* Փոքրիկ կողովի տեղ ծառայող տախտակէ աման. (Տճ. քիւլէկ)։

*Ձարմաղ* Ալիւրի մաղ՝ բարակ։

*Ծառուտ* Ակիշ կրակի. (Տճ. աթէշ քիւրէյի)։

*Մըթիկ կամ Դսթիկ* Սենեկի թանիրին աթոռի վրային ներքնագոյն ծածկոցն է։

*Շարմաղ* Մաղ՝ բարակ ալիւր մաղելու։

*Շերեփ* Մեծ գդալ. Տճ. քէբճէ։

*Շիշ շամփուր* Թանիրն հաց եփելու երկաթէ բարակ ձողեր $1^1/_2$—2 հանգուն։ Մէկին ծայրը կեռ է զոր շիշ կ՚անուանեն և որ Տճ. է, և միւսին ծայ-

րը տափակ է, ձեռաց միջի մեծութ— , ,
շամփուր կ՚ըլլան։ Սոյն երկու գործիներն թրո
՚ի ձեռքին ունելով կողուած հացին բոլորտի
՚ի կողն կը փակցունէ և յետոյ, եփած հա
կողէն քերելով նոյն գործիներովը դուրս
հանէ։

Պարուշ — Գղնձէ դոյլ մեծ կամ փոքր (Տճ. պախրաճ)։

Սխտոր-զուշ — Խստոր ծեծելու փայտէ աման. (Տճ տիպէք)

Փարչ — Հողէ գաւաթ։

Քաղլակ — Փոքրիկ կողով. վրան կամարաձև կոթով մի։

Քնթառ — Մոմի պատրոյգն կտրելու մկրատն (Տճ. մու մագասը)։

Քուլպա — Փոքր բրիչ։

---

## 2. ՏԱՆՑ ՇԻՆՈՒԱԾՈՑ ՎԵՐԱԲԵՐԵԱԼ

Գաքոնք — Տանց միջի սանդուղներու վերի ծայրի դրն ձև կափարիչն։

Էուէջք կամ առաջք — Տան միջնայարկն գտնուած տանիքն կամ ե իքն։

Թառ — 1. հաւուց բոյնին միջի փայտեայ ձողն. լապտերին միջի փոքրիկ աշտանակն. (Տճ. մ տան)։

Թոկիկ — Փայտէ գործի մը որով տանեաց եզերաց րերը՝ որ անձրևէն կը թուլնան՝ կը ծ հաստատելու համար. (տճ. թօգմագ)։

Իշուկ — 1. մեծ գերաններուն (օխ) օժանդակ մը։ 2. երկճեղ (չաթալ) փայտէ յենալ րոյ վերայ մեծ գերաններ շեղ կանգնե լով կը սղոցեն։

Խոլլակ կամ սողնակ — Այգեաց դրանց փայտէ կղպակն զոր վ ատամնաւոր բանալիով մի կը բանան։

…արմունճ — 1. Կամուրջ (Տճ. քէօրփիւ). 2. երկանքին ներքեւի քարին կեդրոնն մատնաչափ երկաթի բեւեռին կամ լիսեռին վրայ անցուցած փոքր փայտը՝ որ վրայի քարին դառնալէն՝ շփումն մեղմելու կը ծառայէ, որպէս զի աղունն չափէն աւելի չի մանրի։

…ողունծ — Արտուճ ծառի կեղեւն, զոր թրջելով ուրագով կը կտրեն թզաչափ եւ տանեաց ցուիքը իբր 4 մատնաչափ իրարու վրայ կը շարեն, ուսկէց ցուիքին ջրերը կը կաթեն։ Այժմ նուազ գործածելի է։

Կրակք կամ կրակքուց — Խոհանոցն զետնուած հողէ թրծած կրակարանն։ (Տճ. օճագ)։

Ճաղ — Տանեաց շուրջը ճաղմարին վրայ վանդակաձեւ զամուած փայտեայ կարճ ձողեր.—2. դագաղ։

Ճաղմար — Բազկի եւ աւելի հաստութեամբ գերաններ որ տանեաց շուրջը իրարմէ հեռի զամուած բարձր ձողերուն վրայ, գետնէն բարձր, երկու կարգ կը դամեն երկայնութենէն, եւ որոց վերոյիշեալ ճաղերը կը դամեն։

Ճըմքիք — Խոհանոցի այն մասն, կանգնաչափ բարձր, ուր կրակարանքն կազմուած են։

…ալք — Հնձան. խաղող կոխելու տեղ։

…առապա — Թէ եւ ՚ի բառարանի «տախտակէ պէօլմէ» գրուած է, բայց աստ Տճ. սաչագ։ (Այս բառը յԱպուչեխ եւ ՚ի Կամարակապ կը գործածեն, եւ ոչ ՚ի քաղաքիս)։

…լ — Տեսակ մի կոթով դդում՝ մէջը պարապ, որ կը գործածուի իբրեւ աման գինւոյ կոթին գլխէն ծակելով, եւ իբրեւ շերեփ գինւոյ եւն., գըլտաձեւ մասին վրայ բոլորակ ծակ մի բանալով…

իսկ առանց ծակելու կը ծառայէ լուղորդաց
գիրենք ջրոյ երեսը պահելու։

*Փարսի* Քարէ պատէ սենեկին ճակատը, քիչ մը բարձրը գտնուած լուսամուտ կամ պատուհանն։

---

## 3. ՋԿԱՆՑ, ՍՈՂՆՈՑ ԵՒ ԱՅԼ ԿԵՆԴԱՆԵԱՑ ՎԵՐԱԲԵՐԵԱԼ։

*Աճ* Կ՚ըսեն թէ ջրոյ մէջ ճճի մ՚է փոքր ու թելի պէս բարակ զոր եթէ ոք անզգուշաբար ըն ջրոյ ըմպէ, ճճին որովայնի մէջ տակաւ կ՚աճի և ախտացեալն կ՚սկսի նիհարնալ և շատ ուտել և գրեթէ չի յագենար, այնպէս որ երբ մէկը շատ ուտէ, կ՚ըսեն թէ «Ա՞ճ ես կլլեր»։

*Անիծ* Ձու ոջլի։

*Առ մեղու* Վայրի մեղու. բորեխ. Տճ. եապան արըսը։

*Ծըկըրմար* Գետինը աղտեղութեանց մէջ կամ քարի տակ գտնուող կէս թզաչափ ճըճին, զոր ձկնորսք իբրև խայծ կարթն կ՚անցունեն։ Նաև մասնաւորապէս մանկանց «Բերնակ» ըսուած հիւանդութեան ՚ի դարման չորցունելով կը փոշիացնեն և կը ցանեն։ (Տճ. սօղուլճան)։

*Թեփիկ* Քէֆալ ձկան տեսակ մը, մինչև 3 օխա ծանրութեամբ կը գտնուի։

*Թստան ալոճ* Բոլորաձև և տափարակ միջատ մի 1 ղրուշնոց մէճիտէյի մեծութեամբ. կինամոնագոյն և պատենաթև է և որ ճիշդ մլուկի զազիր հոտն ունի։

*Ժիժի* Ամառն ծառերուն մէջ ժժացող թևաւոր. միջատ մի բզեզի մեծութեամբ։

*Ղամպ* Դեղին և սև գոյներով, խայտաբղէտ, մողեսի տեսակ, թզաչափ երկայնութեամբ, 2—3 բը-

թամամի թանձրութեամբ կենդանի մը, որ անմիս է։ Թէև ըստ ժողովրդական կարծեաց ըլամիայն կը ցատկէ մարդոյ երեսն և չի փըր-թիր, մինչև որ 7 կամ 40 էջեր 'ի միասին չի զանէ, բայց այս ցատկելու կարծիքն եր-բէք հաստատուած չէ։

**Թուտիկ պլոճ** Խնձորի միջէն ելած թեւաւոր կամ անթեւ որդ մը որոյ տուտնն 'ի մըթան կը փայլի։ (Փու-տուրայ կամ կայծոռիկ)։

**Ծոլեզ** Մողէզ (Տճ. քէրթէնքէլէ)։

**Կասկամ** Բուփ տեսակ մի։

**Կլորիկ** Նեպուկ. (Տճ. թէսպիհ պէօճէյի)։

**ճանազի** Երկայնատատուն, մատնաչափ, քառաթև միջատ մի, որ այլ և այլ տեսակներ ունի։ Տղայք կը բռնեն 'ի գրպանս և տտունէն թել մը կա-պելով կը խաղցունեն իբրև թռուցիկ։

**Մող** Տեսակ մը ձուկ որ սակաւ ինչ քէֆալ ձկան կը նմանի։

**Մըեղ** Նորածին ոջիլ։

**Շաղփուլ** Տեսակ մը ձուկ՝ մողին կամ շիշէկին կը նմա-նի, ուժով է և դժուարաւ կ'որսացուի, միսն ծանրահամ է։

**Շիշէկ** Հայ. և Տաճկ. նոյն է. քէֆալի ցեղէն. սովո-րաբար ուռկանով կը բռնուի, և Եփրատայ ա-մենէն մեծ տեսակ ձուկն է. մինչ 40 և աւելի օխա ծանրութիւն կ'ունենայ։ Շիշէկ կ'ըսուի նաև մալեալ խոյին. (Տաճկ. էօկէճ, թոխլու)։

**Ոսկի պլոճ** Լուքիայի կամ բակլայի մեծութեամբ պատե-նաթև միջատ մը որոյ պատեանը ոսկեփայլ մանիշակագոյն է։ Ոմանք փոշխացունելով զայն մեղրամոմի հետ կը խառնեն և մարմնոյ վրայ

| | |
|---|---|
| | կը կապեն, խարան մը բանալու համար։ |
| *Պլոճ* | Միջատ։ |
| *Ջորիի ճանճ* | Ջորւոյ և ձիոյ վրայ եղած տեսակ մը ճանճ։ |
| *Վազ* | Տեսակ մի ձուկ, որ ըղմարիտին կը նմանի, օխանոց և աւելին կ'ըլլայ. յարգի չէ այնչափ։ Նաև կայ խարփլող՝ որ վազին մէկ տեսակն է։ |
| *Վերնուկ* | Մարախի տեսակ մի նուազ վնասակար։ Նաև մեղուաչափ սև միջատ մի որ կ'ոստոստէ։ |
| *Վուիկ* | Թիթեռնիկի տեսակ մի, բզէզի մեծութեամբ, մոխրագոյն։ (Երբ սա դուրսէն 'ի տուն կամ 'ի սենեակ կը մտնէ, և մէկու մի ականջին հանդիպի զարնուիլ, պանդուխտէն լուր գալու եայլոյ բարեգուշակ կը համարին)։ |
| *Տափակ ըն-րան* | Ցուիկ ձկան չափ և երբեմն մեծ, մինչ 200 տրամնոց՝ քիչ կը գտնուի. (Պօլսոյ Տճ. գույա պալըղըն է)։ |
| *Ցուիկ* | Թզաչափ ձուկ. Տճ. գույա-ին տեսակէն, սովորաբար 10—20 տրամնոց. ամրան ակիզըներն շատ կը գտնուի։ |
| *Քոշուտ* | 2—3 տարուան վայրի նոխազ։ |
| *Քօմօ* | Գամբռ կամ խոշոր շուն։ |

---

## 4. ԾԱՂԿԱՆՑ, ՊՏՂՈՑ ԵՒ ԱՅԼՈՑ ՎԵՐԱԲԵՐԵԱԼ։

| | |
|---|---|
| *Բամպուզ խոտ* | Ցօղնաւոր խոտ ինչ. կոկոնաւոր, որ մէջն բամբակի պէս ճերմակ նիւթ մ'ունի։ |
| *Բաջուկ խոտ* | Բաղրջուկ (Տճ. էպէմ կէօմէճի) որ ծանօթ է։ |
| *Բհինճ* | Պտուղ ինչ կլոր, սիսեռէն փոքր. կարմրագոյն, կուտը մեծ. (Տճ. չէթլէմպիճ)։ |
| *Գուզի* | Խոտ ինչ ուտելի։ |
| *Թըլթուկիչ* | Թրթնջուկին աղաւաղեալն։ |

*Լովաս, լոլվաս* Լուբիա. (Տճ. ֆասուլեա)։

*Կաթնուկ խոտ* Խոտ ինչ, փշատի տերեւի մեծութեամբ. Տճ. սուտ չօյիէ կը նմանի։

*Կճան խոտ* Տճ. ըսըրկան օթու։

*Հացենի* Ծառ անպտուղ, որոյ փայտն շատ կարծր է. (Տճ. տիշ պուտաղ)։

*Ձնծաղիկ* Ձիւնածաղիկին աղաւաղեալն է։

*Ճապկի* Ճապուկ ճղերով փոքրիկ ծառ կամ թուփ։ (Հին ժամանակները դպրոցին յանցաւոր տղայքը ծեծելու համար ճապկի բիր կը գործածէին)։

*Ճիժվի (ճճիի) խոտ* Վարդագոյն, միաթերթ ծաղիկներ ունեցող վայրի խոտ մի զոր փորի ճճիներ թափելու համար իբրեւ դեղ կ՚ուտեն։ Կ՚ըսուի թէ «սարտենիա» ըսուած ծաղկին վայրի տեսակն է։

*Մասուր* Պտուղ վարդենւոյ որ թերթերն թափելէ յետոյ կը կարմրի եւ կը հասուննայ։

*Մորմիկ* Մոր. պտուղ ինչ (Տճ. ըզմավուլա)։

*Մրղիկ (մեղրիկ) վարդ* Սպիտակ, փոքր տեսակ մը վարդ յասմիկի (եասէմի) նման։

*Շան-լոլիկ* Մորմ. վայրի պտուղ ինչ, հաղարջի մեծութեամբ եւ գունով որ յետոյ կը սեւնայ։

*Պարկուկ* Ծիրան։

*Պորտիկ-լովաս* Տեսակ մի լուբիա որ սեւ պորտ մ՚ունի. (Տճ. պէօրիւճէ)։

*Ջղախոտ* Առուաց եզերքը բուսնող լայնատերեւ եւ ջղուտ խոտ մի որ ընդ երկար դալար կը մնայ եւ զոր խարանի վրայ կը դնեն կաթնսերով։

*Սախսիկ կամ սըլիկ* Կանաչ կամ թարմ լուբիա։

*Սուլթան վարդ* Տուղտ. (Տճ. կիւլ խաթէմ)։

*Վարդապետ* Կոնաձեւ, մութ լրջակապուտակ ծաղիկ մը, որ

վայրի ոչխարներուն տեսակ մը է։

*Ցախտեղ* (կամ տաք դեղ) դարապղպեղ. (Տճ. պատ պի–պէր)։ Կարմիր պղպեղին և փոշիացուցածին ևս ատախտեղը կ'ըսեն։

---

## 5. ԱՆԴԱՄՈՑ ՎԵՐԱԲԵՐԵԱԼ

*Ազոմէջ* Ազդերց մէջոցն. (Մայրն ազոմէջն առաւ (զոր–դին) և ծեծեց կ'ըսեն)։

*Ակոնծ թոռ* Քունք, մօրուարձակք. (Տճ. զուլաֆ թօղու)։

*Աճուկ* Ազդերաց վերին մասն. ամորձեաց քովերն։

*Գահ* Ուս. (յոքնակին՝ գահեր)։

*Գաղտընակ* Նորածին մանկանց ճակտին վերագոյն կողմն որ դեռ կակուղ է և որոյ տակ կը գտնուի, կ'ըսեն, ուղեղն։

*Դունչ* Ծնօտի այն մասն որ շրթանց անմիջապէս ներքև կը գտնուի։

*Թալ միս (թեւ-րեւս ղալմիս)* Ոչխարի ճարպին մէջ գտնուող դալկագոյն մսի մասն՝ որ համեղ է։

*Թայիկ* Տղայոց գլխուն մազը՝ առջևի կողմը, յօնքերէն 1—2 մատ վերև, ճակտին երկայնութեամբ դուր կտրած ձևը։ (Թուրք կանայք ալ այս ձևով կը կտրեն սովորաբար)։

*Թարթիչ կամ թարթինչ* } Արտևանունք։

*Թուշ* Այտ։

*Խըռթ ու փըռթ* Ոչխարի, լեարդի եւայլն (ճիյէրի) քովի գա-նազան տեսակ միսերը զորս կը խորովեն։

*Կաթն ակռայ* Մանկութեան ժամանակի ակռաներն որ յե-տոյ կը թափին և հաստատունները կը բուսնին։

*Կոպ, կոպեր* Կափարիչ աչաց կամ վերին արտևանունք։

**Կուլիկ** Գլխուն երկայն մազերը, վարսք. մանաւանդ՝ քունքերուն վրայ 1—2 մատնաչափ լայն և 1 մատի երկայնութեամբ կտրուած մազերն։ (Սովորաբար Թուրք կանայք այս ձևն կը կտրեն)։

**Կուց, կամկից** Երկու ձեռաց իրարու կցեալ գոգաւոր ձևն։

**Կօլ (կէօլ)** Աչքի՝ քթին կողմի ծայրը։

**Ճաղուկ** 1. Ոտից ջիղերը, (ինչպէս ճաղուկները դուրս է լցուեր «կ՚ըսեն. 2. Գուլպա հիւսելու ասեղ (շիշ)։

**Ճըլլի** Պարանոց, ճիտ, վիզ։

**Ջաչա ակռայ** Աղացող ակռայ։

**Պզտի լեզու** Կոկորդին բերանը գտնուող փոքրիկ լեզուաձև միսը։

**Պըլպլիկ** Բիբ ական։

**Վախընակ** Սրտին կեդրոնն զոր կը բռնեն փոր կամ սիրտ շփողներն. (դէպքէ մը վախցած ըլլալուն համար), և իբր թէ սրտին տրոփիւնը կը հանդարտի և հիւանդն կը բուժի։

**Օղըշար** Ողնաշար (Տճ. պէլ քէմիյի)։

---

## 6. ԶԱՆԱԶԱՆ ԻՐԱՑ ՎԵՐԱԲԵՐԵԱԼ.

**Ագիք** 1 (Այգիին, պարեգօտին) ստորոտը, եզերքը.— 2. (Ծառին բոյնէն վեր՝ այսինքն ճիւղերուն) վարի կողմերը։ Ագիք, հաւանականաբար, Ագի =պոչ բառին յոգնակին է։

**Ալայ** Երեսին կամ մարմնոյն մորթին վրայ գոյացած տափակ կամ կալկալ, դեղնագոյն տապաստներն կամ բիծերն։

**Աղըլա** Ժխոր, աղմուկ։

Աղուն Աղալի ցորենն և աղալոյ գործողութիւնն։

Աղունծ Լոսած, փշրուած, աղացած։ Աղուլոս (եղաւ) լոսեցաւ, փշրուեցաւ։

Ամպ-գոլ Ամառը երբեմն պատահած ամպամած օրուան տօթը։

Արղար եղ Կարագ, կոգի հալած (Տճ. սայեաղը)։

Բլիթ Խաղողի ռուփը. քաղցուն փոքր ամաններու մէջ կը լեցունեն, կը ցամքի և հանելով կը պահեն ձմեռն ուտելու համար։ (Բլիթ, 'ի բառարանի՝—գլուխ՝ հացի, պանրի և նմանեաց)։

Բնագոթ Փուռն հացագործաց այն տախտակն որոյ վերայ խմորի չափով կլոր փոսիկներ կան։

Բոնտ (Տես և ոստայնանկի բառից մէջի «բոնտոն»). Կոճակի օղակ։

Բուխուրիկ Ծխնելոյզ։ (Այս բառի արմատն Տճ. «պուխուր» բառն կը թուի լինել)։

Բունկալ 1. Հաւու բոյնի մէջ թողուած հաւկիթ մը զոր տեսնելով հաւն ուրիշ հաւկիթներ ևս կ՚ածէ.—2. Փոխաբերաբար, գործ մ՚սկսելու համար դրուած փոքր դրամագլուխն։

Գարաք Վէրքի մ՚երեսն կապած կեղևն. (որոյ փրթելէն յետոյ տեղն կը մնայ սպի (տաղ)։

Գարեկ Աչաց կոպերը, արտևանունքը ելած փոքրիկ կոծիկն։

Գարնակ Սովորաբար գարունն ոմանց ձեռաց կամ երեսին վրայ ելած փոքրիկ կոծիկներն (Տճ. սիվիլճիկ)։

Գետուտի Սովորաբար մատնաչափ կամ թզաչափ բարակ շիւղ և փայտի կտորներ և խռիւ՝ զորս անձրևն՝ 'ի գարնան և յաշնան՝ լեռներէն քշե-

լով չեփրատ կը լեցունէ և ատ գոգաւով կը քաշեն։

**Գէռ** — Աղտ, աւելով աւլուած խնշերանք. (Տճ. սիւփրինտիւ)։

**Գըլթիկ (թուլթ)** — (Թուլթ) խոշոր, երկակողմանի. (Տճ. չաթալ)։

**Գնծիկ (ասեղ)** — Գնդասեղ։

**Գնտոց** — Ոսկւոյ, դրամի ծրար՝ սովորաբար գաղտնի պահուած. ունեցողներէն ոմանք անութին ներքև կը պահեն եղեր, և քիչեր՝ տան մէջ. բայց զարդիս հազուագիւտ են այսպիսիք։

**Գշկուր** — Կովու և այլոց Թրիքն զոր շեղելով կտոր կտոր պատերը կը փակցունեն, գետնին վրայ կը չորցունեն, յետոյ իբր փայտ կը վառեն։

**Գոլ** — Ջերմութիւն 'ի հրոյ. (Թոնրի կամ սենեկի մէջ)։

**Գողգոտուկ, գողգոտալ** — Որոստումն։

**Գոս** — Սովորաբար մէզի խոնաւութիւնն գետնի վրայ զարկած։ Գոսի հոտ—մէզի գարշահոտութիւնն։

**Գօբ (զարնել)** — Կռուփ, բռնցի հարուած. (սովորաբար կրնակին զարկածին կ'ըսուի. Տճ. իւմրուգ։ Հաւանական է թէ «գօբ», և Պարսկ. «քիւպ» հարուած, զարնել, միևնոյն բառերն եղած լինին։ —Գօբ զարնել—բռնցի հարուած տալ։

**Դէմ(մի) եազմա, եւայլն** — Շղարշի, եաղմայի, և այլն. լայնութիւնն յերկայնութեան չափերով (կտրուած) քառակուսի մասն։

**Դոպըռտուք, դըռտուք** — Դոփիւն ոտից։

**Երեսք** — (Ծովու, գետի այս ինչ տեղն) ջուրը ծանծաղ է, խոր չէ։ (Ակռան) երեսք է—արմատ չունի շատ։

**Երկիր** — Ժողովուրդը, քաղաքացիք. (Տճ. հէրքէս, ալէմ)

զօր. «Երկիր գիտէթը», կամ «Երկըրի ինչ խօսք տի հասկցենք»։

**Թաղնա** — Ի հնումն, կանանց տեսակ մի գլխարկ. (Իր բառար. Թաղինա, Թահնա. տես գտակ), որ քահանայից արդի գլխարկին ձեւովն, բայց միայն առաջոյ կողման վրայ կարկառեալ, մէջն բամպակ և երեսն գոյնզգոյն կերպաս պատած է եղեր, այժմ անգործածելի։ Աղջկանց գտակին և վրայի ոսկեայ 3, 4, 5 շարքին ևս «Թաղնայ» կ'ըսեն եղեր։

**Թնճուկ** — 1. Կնճռեալ մազեր։—2 Տունկի մը, ծառի մը արմատին թելերը։

**Ժում** — Պահ, սովորաբար կերակրոյ, մերթ այլ իրաց։

**Ինքը, իք. իրքը, բանը** — Իմն ինչ, սովորաբար, կը գործածուի փոխանակ բառի մ'որ միտք չգար։

**Լիճ** — Նոսր խմոր և քաղցու (շիրէ) խառնած՝ (տաշտին մէջ)։ Նաև ջուր ու կուտ, խիճ ևայլըն. խառն ձևիցէ թանձր հեղանիւթ, հեղեղի ևայլն։

**Լիցք** — Գետին մը տան կամ պարտիզի մէջ որոյ հողն բնական չէ, այլ հին կամ նոր ժամանակի մը մէջ հող կամ խիճ լցուած է։

**Լողիկ** — Հալած ձիւն ճամբայներուն կամ տանեաց վրայ։

**Խաչք** — Ծառին բունին վրայի տեղն ուսկից մեծ ճիւղերըն կը բաժնուին։

**Խասապա** — Տեսակ մի գտակ կանանց. տախտակեայ, թզաչափ, հին սաղաւարտի մօտ ձևով, առաջքի կողմը քիչ մը ներս, վրան կերպաս պատած, և վրան քողով կարած։ Երբ աղջիկ մը հարս կ'ըլլայ, պսակման երեք օրն խասապան գլուխը կը մնայ, և յետոյ սովորական թաղնան կը դնեն

եղեր։ Իսկ «Զալման»՝ երկու քառակուսի մեթր ապիտակ սաւան մ՚է եղեր. մէկ անկիւնը խասապայլին վրայ անցուցած և մնացեալն կրնակն ՚ի վար կախուած, վարի ծայրը Նուրբ գործուած։

**Խարուկխ** Եփած հացի երեսն՝ երբեմն՝ գտնուած ալիւրէ տափակ բիծերն։

**Խզոտ** Գետին մ՚ որ բարակ երկայն դիրք մ՚ունի։

**(Խըմ) Խըլթ (ս)** Ըստ խս։

**Խժիլք** Կոտրած ընկոյզի կամ սոխի կեղեւներ որ «խըժեր» եւս կ՚ըսուի։

**Խժկաթ** Ծննդաբեր կանանց այն կաթն որ քիչ մը դեղին և ջրոտ է։

**Խուլուճուկ** Երեւակայական կենդանի մը, շան կամ կատուի պէս։ Տղայոց երկիւղ տալու համար կ՚ըսեն թէ գիշերը կուգայ յանցաւոր տղայոց ականջը կը կրծէ։ Ի բառարանի, «խուլուճուկ»—սիւմիւքլիւ պէօճէք. տես «շողոտ», «կողինճ»։

**Խուղու** Հանդերձին կամ վերմակին մէջ պարապ մնացած տեղ մի, կամ որմին մէջ ծակ մի «խուղու» է կ՚ըսուի։

**Կամնակ** Հիւանդին սիրտն ուզած կերակուրն, պտուղ, եւայլն։

**Կաւառ** (Թերեւս՝ «գաւառ»). Այգեաց (պարտէզ) ջրոյ առուակին ստորաբաժանեալ փոքր առուակաց ակիզբն. զոր. Կաւառը այս կողմ դարձուր. Առուին բերանը խցեալ, լաթ, քար, եւայլն բանալով ջուրը այս կողմ դարձուր, նաւ կապէ որ գայ։

**Կըքկըլիկ** Ծառոց, եւայլոց բարձունքը։ Մերթ փոխաբերաբար ապրանաց գնոյն յոյժ բարձրանալուն եւս կ՚ըսուի. «Կըքկըլիկին գլուխն ելաւ»։

| | |
|---|---|
| Կլիկ | Քակոր ոչխարի որ հատիկ հատիկ է։ |
| Կլոր | 1. Հաւկթի միջի ամբողջ դեղնուցն. 2. Աչքի միջինն։ |
| Կլոճ, կլոնճ | Հատուած մի, կոշտ մի, կտորմի. զոր. «Կլոճ մի թուք ձքեց երեսն»։ |
| Կճեք | Ընգոյզի, կաղինի և նմանեաց կեղևներն։ |
| Կոշտ | Թարխանայի, հողի, ևայլ իրաց կտոր մի։ |
| Կորի | Պարտէզներուն մէջ 2—3 քառակուսի մեթր տարածութեամբ դուր տեղ մը, ածու՝ ուր բանջարեղէն կը ցանեն։ |
| Հալաքոց (ընել, կամ վառել) | Խարոյկ վառել. (Ի տանիս կամ 'ի բացօթեայ վայրի)։ |
| Հատաղ | Ժամանակ, պահ։ Այս հատըղին կամ, հատաղային ուսկի՞ կուգաս։ |
| Հատարով (զնա', զործէ), (կեցիր): | Զգուշութեամբ (գնա, գործէ, ևայլն)։ Կարելի է Արաբ. «Հազէր» բառն եղած լինի որ Պասակար իբրէ զգուշանալ կը նշանակէ. կամ «Հատէր»—Իւր տեղն հանդարտ ևայլն կենալ։ |
| Հովրտիք | Գերեզմանատանց գետինն։ Ըստ կարծեաց հայկաբանի մը, «հող վայրք»ին աղաւաղեալն է։ |
| Հուրք | Սաստիկ ջերմութիւն, կամ հրոյն ջերմութիւնը։ զոր. «հուրքը երեսս զարկաւ, ևայլն»։ |
| Ձիթ | Մազմաքէ, խունկէ, կամ կանկարի արմատէ շինուած ծամելի։ |
| Ճենճ | 1. Արատաւորիլն իւղային իրերէ. 2. Նորա արատն։ |
| Ճերմակ ջուր | Օղի։ |
| Ճթիկ | 1. Ճարպով իւղոտած ու ոլորած, թզաչափ լաթի կտոր մի պատրոյգ շինուած (սովորաբար մոմ թափած օրն), զոր իբր մոմ կը վառեն. 2. փոքրիկ մնացորդ մոմի։ |

| | |
|---|---|
| Ծիժ | Փոքր տղայք, որ դեռ խօսք չեն հասկնար։ |
| Ծուկ (ծամքու) | Ծամքու անկեան դարձը. խոտորած տեղը։ Ծուկ տալ—Խոյս տալ։ |
| Մաղմաղ | Կրակին բոցն անցնելէն յետոյ, մոխրախառն վիճակն. մանր խարոյկ։ |
| Ման | Գործողութիւն մանելոյ, կամ, մանուած իրն։ |
| Ման կամ, Մուն | Թութի ռուփին երեսն արեւու ջերմութենէն գոյացած դեղին փրփուրն, նաեւ պտղոց եւ այլ իրաց կուսական վիճակը. զոր. «Մանը վրան է կամ, մանը չէ մոլըրեր»,—իւր նախնական վիճակին մէջ անեղծ մնացած է։ (Այս բառ՝ սովորաբար՝ փոխաբերութեամբ կը գործածուի)։ |
| Մաշուք | Մաշած՝ հատնելու մօտ օճառ։ |
| Մատնշունչ | Մատնաշուրթն. մատին ծայրն եղած։ |
| Մէռ. | Անզօրկ փայտէ կամ ելունդ տախտակէ ձեռքն մխուած փշաձեւ, փոքրիկ մասն։ Ձեռքը «մէռ է մխուեր» կ'ըսեն։ |
| Մղպատամ | Խոզ. Տճ. չըպան։ |
| Միզ | Կերպասեղինաց, եւայլ թելերուն միջին կողմն. զոր. Ջուրը, ներկը միզը մտաւ։ |
| Մլուլ | Մամուկներուն հիւսած ոստայնը։ Ոմանք սոյն սարդի ոստայնին աղտոտածին կ'ըսեն «մլուլ»ն։ |
| Մծիր | Մոծիր, ածուխի կամ կրակի մանրուք։ |
| Մոլ | Նոր արձակուած ոստեր։ |
| Մսամիլ, կամ մսամլիկ | Վերքի մը քովէն յառաջ եկած աւելորդ միս, զոր կտրելով կամ դեղով անհետացնելու է։ |
| Մօռուխ | Երտ. փայտ՝ կրակը խոթած կամ խոթելու։ Մօռուխ կու խոթէ—(փոխաբերաբար) կը գրգռէ։ |
| Նշանակ | Ծիածան։ |
| Շառափ | Տեղատարափ անձրեւ, հեղեղի պէս։ |
| Շարոց | (Տճ. սուճուգ). Ընկոյզի կամ ծիրանի կուտերն |

ծակելով թելով կը շարեն, և խաղողէ եփուած մալեզին մէջ կը թաթխեն քանիցս, որով կուտերն կը ծածկուի. յետոյ կը չորցունեն և ձմեռն կուտեն:

*Ճիլ* Խաղողն, թութն եփելէն և ճմլելէն յետոյ մնացեալն. թթինն՝ կովու, ոչխարի, հաւու, և խաղողինն՝ միայն կովու կը կերցունեն:

*Ճղքիկ* 1. Դրան տեսակ մը պարզունակ, զոր դրան կողմն եղած բլթակոմն վեր առնելով դուռը կը բանան. 2. (Ճղբիկ) զմելւոյ:

*Ճուտիկ* Խոզ:

*Ճվոտի ամիս* Անանուն մանաւանդ կատուաց զուգաւորման ամիսն, մանաւորապէս փետր.ն: (Այս անուն առնուած կը թուի «շուայտ» կամ «շուպաթ» բառերէն):

*Ոռք* Ամաններու յատակը և եփեալ կերակրոց յատակը փակած կամ երած մասը:

*Չեճ* 1. Մեղրի բջիջներու սև նիւթն. 2. Ցորեանն երբ կամնուած, զտուած և շեղջուած է:

*Պանցու* Սպասուհի:

*Պաղք* Սառոյց:

*Պատուակ կամ պատըկերը* Պատին կամ պատերուն տակը: Պատըկերը մընացած—լքեալ աստ և անդ ճնացած. (Տճ. քէօշէտէ, պուճագտա գալմըշ): Պատըկերը ժուռ կուգայ—պարապական, յանցաւոր լինելուն պատճառաւ գաղտագողի կը շրջի. կամ, ի և իցէ պատճառաւ աստ և անդ կը դեգերի:

*Պլոզ կամ պըլլոզ* Պարոյգի ձևով, մատնաչափ կլոր մի (խմորի, թանձր հեղանիւթի, բամբակի, ևայլն):

*Պոտոշ* Այտերուն վարի կողմը և ծնօտը ՚ի վայր. հակեալ ձև մը. դիրք մ՚որ, ամփոփաբար, ողա-

յոց լալու մօտ ատեն կ'ըլլայ։ Երբեմն ալ չափահասից արդողելու և տխրութեան պարագայից մէջ կը պատահի. զոր. «Պռոշը կախեր է»։

Պտղուց — Յուցամատի և բթամատի ծայրերովը բռնուած փոշւոյ (քթախոտի, ևն.) սակաւ ինչ մասն։

Ջրոտ — Ջաղացքին անիւն դարձնող փայտէ ձողն՝ զոր ջաղացպանն անուոյ ընթացքն կասեցընելոյ համար կը գործածէ։

Սնակ — (Թերևս սունակ) Դարապղպեղին միջի կողմը երակի պէս գծաւոր մասն՝ որ կծու կ'ըլլայ։

Սրմուք — Կորկոտն երկանի քարով քաշելով մանրածն։

Չանք չա-
ատակ — Մեծ տուն, մեծ շէնք մը։

Տիպուն — Լաւ վիճակ, կացութիւն։ «Տիպունը վրան» կամ, «Իր տիպունը» կ'ըսուի։

ուլփ — Մի քանի հատն միասին գտնուած կեռասի, սալորի, ևն. պտղոց փոքրիկ ողկոյզ. երբեմն, փոքր ճիւղով մի միասին եղածին կ'ըսուի։

էռ — 1. Հաւկթի դեղնուցն կամ ամբողջն, որ խաշած չէ և նոսր է. 2. Փոքրիկ մանկանց, երեխայոց կարիքն որ նոսր և սովորաբար դեղին է։ Ցռել—փորհարութիւն ունենալ, նոսր, ջրի պէս կարիք վճարել։

Երլթ — Կաշիի փոքր կտոր. Տճ. փինէ։ Նաև ապուխտի փերթ.

զիկ — Փոքրիկ խոց. Տճ. սիվիլճիկ։

որձ-տես — Եփելիք հացին ալիւրին որպիսութիւնն (որոմին չափն ևայլն) իմանալու համար, 'ի փորձ քանի մը հաց եփելն։

րմուտ — Դրամի կամ մետաղեայ ձուլածոյի մէջ դիրտ (թօրթու) կամ պարապ մնացածն։ Փորմուտ

ելաւ—խնդրոյն, գործին մէջ նենգութիւն, դժուարութիւն ելաւ։

*Փուլա* — 1—2 օխայ թարմ, ոլորած խոտ զոր կը չորցունեն 'ի կեր կովուն և ձիոյ։

*Փուր* — 1. Ընկոյզի, նուշի փայտեայ կեղևին վրայի կանանչ կեղևն. 2. (ած.) Ջի հասած, խակ, կծու։

*Փչըմրիկ* — (Թերևս փչմրրիկ)։ Երբ ձմեռն հողմ և մրրիկն 'ի բարձանց կը փչէ որ օդին մէջ փոշիի պէս կ'ըլլայ «Փչըմրիկ» կ'ըսուի։

*Քամազոլ* — Թօնիրի, ևն. ջերմութիւնն երբ նուազած է՝ «քամազոլ» կ'ըսուի։

*Քաշուք* — Կերպասի մը քովէն ելած՝ երկան բարակ կըտոր մի։ Տեղւոյ համար ևս կ'ըսուի։

*Քար-ըակ, կամ քար-փակ* — Զառ 'ի վայր քարուտ ճամբայ։

*Քարիչք* — Ցորենի միջէ մաղուելով ելած փոքրիկ քարերն։

*Փըստըլիկ* — Ջրխմիչի բերանին՝ իբրև խցան՝ փոքրիկ փայտըն որոյ մէջտեղն ծակ է, և ուստի ջուրն դուրս կը նետէ։ Նաև սոխին մէջի մասն։

---

## 7. ՋԱՆԸՋԱՆ ԲԱՌԵՐ

**ա. Կրկնուած բառեր։ Հայք և Թուրքք՝ երբեմն, խօսած բառին սկզբնատառին տեղ «մ» գիրն դնելով**

*(տուն) մուն* — կը կրկնեն զօր. տուն-մուն։

*(հաց) մաց ևայլն* — հաց-մաց, պանիր-մանիր. երթալ-մերթալ և այլն։ Կրկնեալն նշանակութիւն չունի, այլ մերթ իբր իմն ինչ իմաստով, և մերթ առաջնոյն կարևորութիւնը կորուսանելու իմաստով կը գործածուի։ Կան քանի մը բառեր

ալ որ առանց «մ» գրով կրկնելու, բառին հնչման մօտ բառով մը կը կրկնեն. զոր. Շուն-շպլեխ (մարդիկ) կային—Խառնիճաղանճ, կասկածելի մարդիկ կային։ Քըր-քուր—մանր ու մունր իրեր։

---

*բ. Բառեր՝ որք գրաբարի նշանակութենէն քիչ կամ շատ տարբեր նշանակութեամբ կը գործածուին, որոց միքանին գրեմ:*

| | |
|---|---|
| *Ած* | Պահ մը։ Իրիկուան ածը—Գիշերուան Ա. պահուն։ (տես և կենդանեաց բառերու կարգին «ածը»)։ |
| *Արգիլել* | Բանտարկել (զմարդ, զշուն, ևն.) ՚ի տնակի կամ այլ ուրեք։ Այս բառ. սովորաբար մօտ գիւղացիք կը գործածեն։ |
| *Բարի (կամ) Տազար բարի* | Ուտելիք զանազան տեսակ և առատ։ |
| *Բարութիւն (եղէ)* | (անէծք)՝ Վրաս խոց եղէ։ «Խօթիկ ու բարութիւն եղէ» կ՚ըսեն։ |
| *Դայեակ* | Մանկաբարձ։ |
| *Դատիլ* | Աշխատիլ։ Դատում, կամ—դատոնք աշխատութիւն։ |
| *Դար- դարեր* | Նեղութիւն, վիշտ։ Գլխուդ դար ու դուր չէ եկեր որ գիտնաս—նեղութիւն չես տեսեր որ, ևայլն։ |
| *Դրոշմ* | Բնական կազմուածքն (մարդոյ)։ «Այս ինչին դրոշմը անանկ է» կ՚ըսեն։ |
| *Ծախել* | Վաճառել։ |
| *Կաղկնծել* | («կու կաղկնծէ» կ՚ըսեն)։ Մէկէմը դրամ, ևայլն խնդրելու համար նուազ համարձակութեամբ կցկտուր խօսքեր ընել։ |

*Կոտել (զոք)* — Հրել (զոք) ձգելու կամ վանելու համար։

*Հարկ* — Խնջոյք, հարսանիք, ևայլն. զոր. հարկի հարսնիքի օրեր, չամ, հարկ հարսնիք ունի կ'ըսուի. 2. (գործ) հարկել—(գործ) յանձնարարել (ումեք)։

*Մեկնել* — Զհանդերձս ('ի վերայ գետնի, չուանի,) զհող կամ պտուղ ինչ ('ի վերայ գետնի) տարածել։

*Պարզեւ* — Ընտիր, ազնիւ, զոր. պարզև բան մը չէ—լաւ, ընտիր, ևայլն չէ։

*Սահմանել* — Ցօրինել, խնդիր յարուցանել, երևան հանել. զոր. բան մի՛ սահմաներ. խնդիր մի՛ յարուցաներ։

*Սնած* — Գործածութեամբ մաշած, կոկուած, ճկուն. Նեղութեան վարժուած (անձ). զոր. սնած մարդ, մուճակ, վէգ, ճամբայ, ևայլն։

*Վաստկիլ* — Շահիլ, (առևտրով, աշխատութեամբ)։

*Վատիլ* — Նիհարնալ, դժգունիլ։

*Փրփրիլ* — (բաց 'ի գրաբար նշանակութենեն) 1. Տախդեղ (պիպէր) ուտելով բերանը տաքնալ (այրելու պէս). 2. Զայրանալ, չամ, բարկութիւնն յոյժ սաստկանալ։

*Օգտել* — Բաւական լինել զոր. (ունեցածը, չամ, այդքանը) կ'օգտէ—բաւական է, կը բաւէ։

---

**գ. Միջանի բառեր (գոյ. և ած). որ՝ բացի սովորական նշանակութենէն՝ զորս չգրեցի, փոխաբերաբար, 1—2 կամ աւելի նշանակութիւն ևս ունին։**

*Ականջ* — 1. Ջութակի, ջնկիւլի, ևն. ականջներն.—2. Մանելու ճախարակի ականջն։

*Անիծել* — 1. Անէծք կարդալ մեկու մի. 2. Բանադրել զոք, որ «անիծած» կ'ըսուի, որոյ հետ ժողովուրդն առևտուր չընէր։

| | |
|---|---|
| Աչք | Ամբարի, պարակին ևն. կիսուած մասն։ |
| Բազուկ | 1. Բանջարի ցողունն.—2. Մատանւոյ օղակ կամ բոլորակն զոր 'ի մատն կ'անցունեն։ |
| Բերան | 1. Գահ խաղու և նուագարանի.—2. Բերան ամբարի, արկեղ.—3. Բերան մի սեր. (տապակի մէջ մի անգամ եփուած սերն ամբողջ.)—4. Բերան սրոյ, դանակի.—5. Բերան ճանապարհի.—6. Առջի բերան—առաջին անգամին կամ պահուն, 'իսկզբան.—7. Գործը բերան գալ— 'ի կատար հասնելու, լրանալու մօտ լինել։ |
| Բերել | (մանչ, աղջիկ) Ծնանիլ։ |
| Գլխատոր | (կնոջ) Այրն։ |
| Գլուխ | 1. Գլուխ զօրաց, ժողովրդեան, ևայլն.—2. Լեռան.—3. Սխտորի. նաև պոչ (գլուխ) մի պանիր։ |
| Գոռալ | 1. Փայլուն, զօրաւոր վիճակ մ'ունենալ. զոր. Ամպի պէս կու գոռային.—2. Դառնագին ողբալ սկսիլ, գոռալու պէս։ |
| Դիպղըպիլ | 1. Երկու անձինք իրարու ծանր և կծու խօսքեր ըսել.—2. 'Ի գալ հիւրի մը պատրաստութիւն տեսնել ուտելեաց։ (Ասաց. կարգն ես գրուած է)։ |
| Դիրք | Գատառ կտրտած և իւր եզրն եփելիք (խաւուրմայի) միսն, կամ այլ եփելի մը երբ շատ ըլլայ, Ա. Բ. ևն. մասի կը բաժնեն և կաթսայով կ'եփեն. ամեն առանձինն եփելի մասին «դիրք» կ'ըսուի։ |
| Զարնուիլ | Սիրահարիլ աղջկան մը. երբեմն, տան, ձիու, հանդերձի ևն. համար ևս կ'ըսուի։ |
| Թոռ | 1. Ձկան ուռկան.—2. Մատղաշ, փափուկ (տղայ ևն.)։ |
| Թաշել | 1. Տուժել, պատժել. —2. Սպանանել։ |

*Խօսիլ* Երկու կամ աւելի իրեր, կամ շինուածոյ, կերպասու եւն. երկու մասունք իրարու յարմարիլ։

*Կապել* 1. Խօսքով յաղթելով լռեցունել.—2. Սակարկութիւնը վերջացունել, որոշել.—3. Հմայել, դիւթել։

*Ձեռք* 1. Կարգ մը զգեստուց. Տճ. դաթ.—2. Ձեռք մը հաց եւայլն։—Կտոր մը հաց եւայլն։

*Մառ* Տան մը սենեակները, սրահ եւայլն, որ 6—10 կանգուն լայն. և 4—5 երկայն. և սովորական միջնորմով բաժանեալ են «մառ» կ'ըսուին և իւրաքանչիւրն մէկ մէկ մառ կը համրուին։

*Մատն* Կրչճանի, սանդուղի, պատուհանի մատն կամ մասունք։

*Մայր* 1. Մայր՝ ինչ ինչ խաղերու մէջ.—2. Մայր պարեգօտի, կերպասու ուղիղ և երկայն մասն որոց կը կցեն այլ և այլ մասունք. իսկ մայրք շրջազգեստի ըսելով կը հասկցուի շրջազգեստի մէջքէն վար եղած ուղիղ մասերն՝ 4—6 ըստ լայնութեան կերպասու. զոր. շրջազգեստն 4—6 եւայլն մայրէ է։

*Մէջք* 1. Տառի բոյն.—2. Այժ. զոր. խմորը մէջք չունի—խմորը նոսր է, չոր, ուժ չունի. չի բացուիր։

*Նստել* 1. Օղի ըմպել.—2. Պարծիլ. մեծ մեծ խօսիլ։

*Ոտք* 1. Սանդուղի աստիճան.—2. Ոտնաչափ.—3. (ոչխարի) Ոտք—(ոչխարին) զատուք, նիհար, անշահները։

*Ջարդել* Սուտ կամ մեծ խօսիլ։

*Փլչիլ* 1. (վրան եկաւ՝ հողի թումբ) Փլաւ—Բաղդը յաջողեցաւ և ժառանգութիւն, եւայլն ստացաւ.—2. Դառնագին լալ սկսաւ։

Քինք (քիթ) 1. Քիթ մոմի՝ (վառած պատրոյգն).—2. Քիթ կտաւի—Կտաւին վերայէ երեւցած մանր, անհարթ մասերն որ ընդհանրապէս բամպակի կեղեւին փշուրներէն կամ անհարթ մանուածքէն կը ծնայ։

Քսուիլ Ճամբուած պաշտօնեայն եւայլն վերստին բարեկամանալու եւ պաշտօնին անցնելու փափաքով այցելել, յարգանք կամ սէր, հաւատարմութիւն եւայլն յայտնել.—2. Քանի մը դահ. կամ ոսկի կորզելու համար, երկչոտ կամ հարուստ անձէ մը [illegible], պատուոյ եւայլ սովորաբար անարգար պահանջում մ'ընել, կամ դատ բանալ,

---

դ. Ընտանեկան եւ այլն անուանք.

Լուս-աղքար կամ լուսու աղքար. լուսու քոր — Միասին Երուսաղէմ ուխտի գնացած և ոմանք միասին Ս. Գերեզման մտած։

Ծալթուն մայր Սկեսրոջ ներն։

Հարս, հարսը Հարս (այրն իւր կնոջ՝ սովորաբար անունն՝ Մարիամ եւայլն եւ երբեմն Հարսը, ՚ի բացակայութեան՝ «Մերերը» կամ, «Մեր տնեցին» կը ըսէ)։ Նաեւ պարոն տէր, կեսուր, տագր եւայլն երիցագոյն ազգականք «Հարս» կամ «հարսը» կը ըսեն. թէեւ տարիներ անցած լինին։ Այժմ շատերը հարսին անունն եւ եթ կուտան։

Հարսա Մայր. (տղայք իրենց մօրն «հարսա» կը կանչեն). սորա պատճառը թուի թէ ՚ի հնումն մանկանց մեծ հայր և մեծ մայրերն չուզելով

| | |
|---|---|
| | որ՝ իւրեանց ներկայութեան՝ մանկունք իւրեանց ծնողքն «մայրիկ» կամ «հայրիկ» կոչեն վարժեցուցած են զանոնք զմայրն «հարս», զհայրն «աղբար» կոչել։ Զարդիս «հայրի «մայրիկ» բառերն սկսած են ընդհանրանալ։ |
| Հնքապապ | (Կնքակապ) կնքահայր։ |
| Մեծ-մայր | Մամ. հօրը կամ մօրը մայրը։ |
| Մեծ տատ | Պապ. հօրը կամ մօրը հայրը։ |
| Ներ | Տագերօջ կինն։ |
| Պարոն տատ | Սկեսրայր։ |
| Սան, սանուկ | Կնքահօրն՝ ի մկրտութիւն ներկայացուցած կամ մկրտութիւնն խնդրած երեխայն որ «սան» կը կոչի։ |
| Սանահայր | Սանին հայրը.—Սանը մար—սանին մայրը։ |
| Տագր | Առն եղբայրն։ |
| Տալ | Երկանը քոյրը։ |
| Տնորդօք. տանորդտվք | Տանն մեծ և փոքր (այր, կին, տղայ և այլն) ընտանեօք հանդերձ։ |
| Քէռիլին | Քեռիին (մօրեղբօր) կինն։ Մնացեալ անուանքն՝ հայր, մայր, եղբայր, քոյր, աղջիկ, տղայ, թոռ և այլն. և հօրեղբայր (ամու), մօրեղբայր (տայի), քեռայր (էնիշտէ) ծանօթ են արդէն։ Պատուանունք են ըստ կարողութեան և ըստ արժանեաց «էֆէնտի» չամ «աղա» և կամ «եղբայր» «պարոն», ուսուցչաց՝ «պատուելի», և քահանայից՝ «տէր-հայր» չամ «տէր-պապա» կ'ըսեն։ Իսկ ատոնց որդւոցն և երաժիշտ վարժապետաց ևս՝ «տիրացու»։ |

---

ե. Աստեղաց կամ համաստեղութեանց գեղական անուանք:

*Բոլք (բոյլք)* Համաստեղութիւն մ՝ որ կը բաղկանայ՝ ըստ երեւոյթին՝ 6 մանր աստղերէ և որ կ՚սկսի երեւիլ Յունիսի մէջ:

*Թէրազու (կշիռ)* Համաստեղութիւն մը բաղկացեալ 3 աստղերէ, իրարմէ քիչ հեռու ուղիղ գծի մը վրայ:

*Լուսու աստղ* Արուսեակ:

*Քէվրան—կորուստ* (Գիշերավար) որ նոյն ինքն Արուսեակն է: Իբրեւ թէ ուղևորք տեսնելով զայս՝ լոյսը մօտեցած կարծելով կ՚ուղևորին և կը կորսուին:

*Օխթն-աղբար (մեծ արջ)* Համաստեղութիւն մ՝որ կը բաղկանայ 7 աստղերէ 'ի հիւսիսային արեւմուտս, սայլի կը նմանի. 4-ըն քառակուսի մը կը կազմեն և 3-ն քառակուսիէն դուրս աղեղնաձև: Կան և սորբերու սեղան, կասկրակք, խաչաստղ (կամ) խաչ, շիշ ու շամփուրք, և այլն անուանեալ համաստեղութիւններ որ ըստ իւրաքանչիւր ձևոյ սոյն անուանումները ունին: Կ՚ըսեն նաև «Լուսնկին կալը—լուսնի բակն.—Լուսնկան փուլ է—վերջին փառօքը ճաշն է *)

գ. Տղայոց խաղալիքներու անուանք:

*Գոքալիճ* 3 մատի հաստութեամբ ճիւղ մը թզաչափ կըտրելով ծուծն կը պարպեն: Ծծկիչ փայտով մի մէջն խծուծ մի կը դնեն, և երկրորդ խծուծ մի ևս դնելով կը հրեն, օդին ճնշմամբ առաջինն կը նետուի և պայթման ձայն մը կը հանէ. յետոյ նետուածն գոլիճին մէջ դնելով կը

*) 'Ի բառարանի, «փուլ, փուլք». գոյ. փլչիլը, փլատակ: Եւս խուլ՝ նմանութեամբ, լուսնի պակսիլ սկսիլը:

հրեն, երկրորդն կը նետուի և կը շարունակուի ։ Կայ և տեսակ մը ուռկան քառակուսի ձևով որոյ «գօքալիճ Թոռ» կ'ըսուի։

Նետ ւ աղեղ Տախտակէ շինուած փոքրիկ աղեղն և փայտեայ փոքր նետ։

Նունուկ Գետուտիին հետ եկած եղեգնի պէս տեսակ մի դիւր փող. մէկ կողմն շեղ կտրելով ծար մի կը մնայ, և որոյ վրայ փչելով «նուռ» ձայն մի կը հանէ։

Պուկ Ուռիի բարակ ոստերէն կէս մատնաչափ կեղև մի կը հանեն խողովակի նման (բնականաբար՝ երկու ծայրն ծակ), մէկ կողմէն բերանը կը քերեն և կը փչեն. «պու»ի պէս ձայն մը կը հանէ։

Ջրխմիչ (Ջըր-խըմիչ) Թանթրունիէ (մի բվէր ադամը) շինուած գլ-րեխ. Վարդավառին կը գործածեն, մեկզմեկու վրայ ջուր նետելու համար։

Սուսուկ Տեսակ մի շչակ, որ է, ուռիէն մատի հաստու-թեամբ ոստ մի կտրելով՝ փչելիք կողմի կեղևը խողովակաձև կը հանեն, տուրլուճայի բերնի պէս շեղ կը տաշեն և շունչ ելնելիք տեղ մը (ծակ) շինելով կեղևն վրան կ'անցունեն ու կը փչեն, սուր ձայն մը կը հանէ։

## է. Ձայնք Մերաճերեալ

Գըպըր գըպըր Եփելու։

Լըվըր լըվըր Խօսելու (սովորաբար՝ Քրդաց)։

Խըզ խըզ Աղօցի։

Խոռ խոռ Խորդալու։

Կըռկըռ Գորտի, խօսակցութեան, ևն. փոխաբերաբար՝ գժտիլ. զոր. «Միջերնին կըռկըռը ինկեր է»— Գժտիլ կամ վիճել սկսած են։

| | |
|---|---|
| *Ծըզ ծըզ* | Ճռնչման։ |
| *Ծըթ ծըթ կամ, Չըթ չըթ.* | Ընկոյզ կոտրելու, և ն. նման ձայներ։ |
| *Ծըռթ ծըռթ* | Կտաւ, կերպաս, և այլն պատռելու։ |
| *Շըռ շըռ* | Տանիքի մը պատառուածէն կամ առաստաղէն հոսեալ ջուրց ձայնն։ |
| *Վըզ վըզ* | Բզզալու։ |
| *Վըռ վըռ* | Ճրագի և փայտի վառելու, երբեմն խօսելու։ |
| *Տըզ տըզ* | Ջութակի։ |
| *Փաթ փաթ* | Փայտով ծեծելու, չոռ, դռնահարն ուժգնապէս բաղխելու |
| *Փըթ փըթ* | Թելի մը կամ սորա նման իրի մը բան մը զարնելէն յառաջ եկած ձայնն։ |
| *Քահ քահ* | Ծիծաղելու։ |
| *Քըթ քըթ* | Մկան, և այլն կրծելու։ |
| *Ֆըռթ ֆըռթ* | Հեղուկ նիւթ մի՝ մածուն և այլն ըմպելու։ |
| *Ֆըս ֆըս* | Փուքի։ |

### ը. Զանազան անուանք

| | |
|---|---|
| *Անկոտ թութ* | Առանց կուտի մանր և ընտիր թութ, որոց զանազան տեսակները կան. ինչպէս՝ խնկիկ թութ, ախորժահամ և սպիտակագոյն թութ մը. գլթիկ թութ—խոշոր և սակաւ ինչ եռանկիւնաձև թութ մը. սև թութ—սև, մանր և քաղցրահամ. լոռ (թութ)—կուտով (թութ)։ Իսկ խոշոր թթուահամ սև թութին խարթութ կամ խարա թութ կ՚ըսեն։ |
| *Արջուշապ* | Մոխրագոյն ծաղիկ մը՝ մէկ ցօղնի վրայ երեք ծաղիկ ունի։ Թերևս «Արջասպն» է։ |
| *Բաշ (պարանի)* | Այլ և այլ կորիներ իրարմէ անջրպետող հողի բարձր և երկայն մասերն։ |

ուլիկ — Փոքրիկ դէզ (ոսկւոյ, եւայլն). Գուզուլիկ ընել —դիզել, պատրաստել։

սպարի ակիթ — Հաւուն առջի ածած հաւկիթ որ փոքր կ'ըլլայ։ Նմանութեամբ՝ այն մարդոց ալ կ'ըսուի որ սովորականէն աւելի կարճ, փոքր մնացած են։

վագ — Կրակարան. Տե՛ս. օճագ։

ր ծնած ե-խայի մը հա-ր) ծըմու չէ — (հաւանականօրէն) ծամու չէ. իննը ամիսն յարգանդի լրացուցած չէ։

ժմունք — Մանր մունր (խաղալիկ, ուտելիք, եւայլ իրեր)։

ամպօք կամ լամպոնք — Պղնձէ մեծ դոյլ կամ կուժի վրան կապած պարանի կտոր մը, որով կը բռնեն ու կը շալկեն։ Երբ երիտասարդի մը համար ըսուի «Ծըլլին լամպոքը անցուցին», փոխաբերաբար, կը նշանակէ «ամուսնացուցին»։

Լլիկ — Օղի, գինդի պէս կախուած շարժուն ադամանդ եւայլն. կոկորդին բերանը կախուած փոքրիկ միս՝ հարբուխի կամ այլ պատճառաւ։

Լընկըռտուք — Մեծ բոժոժ զոր ջորւոյ վիզն կը կախեն։

Լնտուք — Կերակրոց ամանը լուացուելուն՝ գոյացած ջուրըն, կամ աղտեղութիւնքն։

Խեւ կաքաւ — Տեսակ մը կաքաւ կամ թռչուն մը որ ծառերու վրայ կը թռչտի. կաքաւէն նուազ սիրուն է, բայց փետուրներուն ծայրը բաց կապոյտ, պայծառ գոյն մ'ունի. անծեղի պէս թեթ օրէն կը շարժի։ Տե՛ս. «Մէշէ գարկասը» կ'ըս

Խլուլ — Ծմելի բոյսին գլուխն յորում են սերմունքն

Կալ կալ — Մանր կամ խոշոր (սովորաբար բոլորաձեւ) | արատներ, կամ մարմնոյ վրայ հարու կարմրած։

Կոռապա — Ոչխարի կամ մարդոյ նստածակի ոսկրն։

| | |
|---|---|
| (Դաւոն) Կը-տաման(ը) | Հաւուն ստամոքսն։ |
| Կտիմ կամ կտում | Գուլպայի հիւսուածին մէջ մի օղակն։ |
| (լաց) Հըրըն-պուն, Հըրըն-պուկ | Ողբ և կոծ, հեծկլտալ։ |
| Ծընկըռտուկ | Բոժոժ։ |
| Ծու | Եփեալ հաւուց ազդրն։ |
| Մէնուշկի խաղող | Մթագոյն մանիշակագոյն խաղող մի։ |
| Մըմուռ | Կսկիծ, ցաւ։ Մըմռցնել—կսկծցունել (նիւթապէս կամ բարոյապէս)։ |
| Պարան | 1. Ձուան. 2. Կորի (ակօսաձև փորուածք ուր բանջարեղէն կը ցանեն)։ |
| Ջարնիճ կամ ջառնիճ է կամ, եղեր է | Կաթելով, վազելով շատ թրջած է։ |
| Վժիկ | Փոքր կաթսայ, գմբեթաւոր մասովն, օղի հանելու համար. այս գործիով օղին խիստ բարկ կ'ելնէ։ |
| Տեփուր | Կէս մատնաչափ թանձրութեամբ միակտուր տախտակէ, կէս մեթր լայնութեամբ կամ տրամագծով ափսէ մը, եզերքն սակաւ ինչ բարձր, ցորեանն մէջը լեցունելով և մաղելով, վեր նետելով ևայլն քարերն հանելու, զատելու գործի մ'է։ |
| Տոտող | Հաւուն սրբանն։ |
| Ցան (երեսի) | (սովորաբար) Սպիտակամորթ անձանց երեսին մորթին վրայի սակաւ ինչ թխորակ, ցանցառ բծերն։ «Ցանոտ է երեսն»—բծեր ունի։ |
| Քօլօլի կամ, գոլոլի | Երկայնակտուց, հաւու չափ թռչուն մի։ |

## 8. ԱՐՀԵՍՏԻՑ ՎԵՐԱԲԵՐԵԱԼ ԲԱՌԵՐ

### Ա. Ոստայնանկութեան վերաբերեալ (գործածուող մէկ խաչերով ընթացող կամ նախնականութեան կարգաւն)։

| | |
|---|---|
| Հոյել | Ձեռքով դատել (բամբակն). (ընտրել բային դաւ…դեալն է)։ |
| Աղեղն | Տանօթ աղեղն որոյ վրայ լար անցուցած |
| Ըղնել | Աղեղով զբամբակն գզել։ |
| Պայոզ | Եղնուած բամբակն բարակ բրով մը ոլորել ։ ու հաստութեամբ. $1/4$ կանգ. երկայն պա րոյգ շինել. ոչ ոեղմեալ. (պատրոյգին դաւաղեալն է)։ |
| Քուլա | Պատրոյգներն ամփոփելու համար իբր 15— համէ բաղկացեալ խուրձն՝ որմէ յետոյ մէկ պատրոյգ կ'առնուին մանելու համար։ |
| Ջահ | Ճախարակ բառին աղաւաղումն, տախտակէ ։ նուած, 1 կանգուն տրամագծով, 4 մատ լա կլոր անիւ մը, ներքևի յենարանովն և կազմուածքովն հանդերձ։ |
| Բուլթակ | Ջահին կեդրոնն, ոլորողին կողմն—1 թզաչ երկայնութեամբ բութ փայտ մը որոյ ։ կ'անցնի մանիչն։ |
| Մանիչ | Թզաչափ և մատի մը հաստութեամբ փայտ է, զոր բուլթակին վրայ կ'անցունեն, և ձեռքով բռնելով կը դարձունեն աջահն յա ՚ի ձախն։ |
| Ոլիկ (իլ) | Մախաթի (չուալ տուզ) հաստութեամբ, թ զաչափ երկաթ մը, սրածայր։ |
| Ծրջնկալ (շրջընկալ) | $1^1/_2$ մատն տրամագծով, նուրբ, կլոր տախտ մը, 5 Փրանկնոցի մեծութեամբ՝ իլիկին ։ |

րայ, մանածն եւ չերթալու համար պատուար մ՚ է։

**Ժոկկ** — Մասի երկայնութեամբ և կէս մասն լայնութեամբ, փայտէ կամ ոսկորէ կամ երկաթէ, կըլոր պտուտակաւոր գործի մը՝ իլիկին վրայ, ցետկոյս շրջնկալին. ջարջվանի միջոցաւ զիլիկըն դարձունելու համար։

**Ականջ** — Կաշիէ փոքր կտոր մի, գլուխը ծակած բևեռի պէս։ երկու հատ է, իլիկին երկու ծայրը մէջը կ՚անցունեն։

**Զարջըվան (Ճախրաչուան)** — Լարի հաստութեամբ մանած կամ լար, որ ջահին շրջանակին և ժռիկին վրայ անցած է, և կը ծառայէ ճախրակն դարձունելու առեն դարձունել ժռիկն և նովաւ զիլիկն։

**Մանել** — Ձախ ձեռքով, պայոցն իլիկին ծայրը դպցունելով, և աջովը մանիչն բռնելով ջահն դարձունել, և ձախովը թել քաշել ցետկոյս, և երբ կանգնաչափ թել լինի, իլիկին վրայ տալ զթելըն և դարձեալ մանելով թել քաշել շարունակել։

**Կաժար կամ Կաժառ (կարժառ)** — Կաժ կազմելու փայտեայ գործի մը իբր կէս կանգ. երկայնութեամբ. և է կազմեալ 2 ձուաձև շրջանակներէ որք խաչաձև իրարու մէջ անցած են և ՚ի վերուստ խաչաձև ուրիշ մասով մի միացած՝ բարակ լխռան մի միջոցաւ, որով իսկ կը դարձունեն սոյն գործին։ Մանածին ծայրը կարժառին մէջքին վրայ փակցընելով կը դարձունեն զայն՝ մանածը հոն փոխադրելու համար, որով կ՚ըլլայ կարժն։ Սոյն գործին կը բացուի (կաժ կազմելու առեն) և յետոյ կը գոցուի։

Կարժարին վրայէն առնուած մանածն որ 15—25 տրամ (50—80 կռամ) կը կշռէ։

(Թակ) Թրջած մանածը ծեծելու փայտեայ գործի մը իբր 1 կանգուն երկայնութեամբ. ծեծելու ծառայող մասին ձեւն է տափարակ, տրամագիծն է 3 մատ, երկայնութիւնն է իբր կէս կանգուն և լայնութիւնն իբր 1 թզաչափ, իսկ կոթն բազկաձեւ է։

ա

Իբր 25 կաժ մանած, շղթայաձեւ իրարու մէջ անցուցած։

ըքի փայտ

Երկու հատ է. Մեծն բազկի հաստութեամբ 1½ կանգուն երկայն. կլոր ցից մը ուր կ'անցունեն յիշեալ բոնտին մէկ ծայրն. իսկ միւս փայտը երկու թզաչափ կլոր փայտ մ'է, բոնտին միւս ծայրն ալ հոն կ'անցունեն և ձեռքով կը ձգտեն և կը պրկեն, որով մանածն թէ կ'ամրապնդի և թէ քիչ մը կ'երկարի։

Խաշիլ

Բարակ աղացած ալիւր՝ զոր ջրով կը մարեն և կ'եփեն, յետոյ ջրով դարձեալ կը նօսրեցունեն, և առէջին մանածը մէջը կը թաթխեն. աղէկ մը կը թրջեն, կ'ըճլռեն ձեռքով, որ ալիւրը միջը մտնէ։

Նազուկ

Կաժը դարտակներու վրայ առնելու փայտեայ գործի մ'է. ²/₃ կանգ. երկայնութեամբ և ¹/₄ կանգ. տրամագծով. գագաթն ու ստորոտն ունի 2 անուաձեւ մասեր, վերինն փոքր քան զստորինն որք իրարու միացեալ են նոցա շըրջապատներէն վերուստ 'ի վայր իջնող ձողաձեւ մասերէ։ Ներքին անուոյն կեդրոնն ծակ է, վերնոյնն 'ի ներքուստ խոռոչ մ'ունի։ Սոյն գործին գործածելի է անազկի քարօվ որ իբր

կէս կանգուն տրամագծով, բոլորաձև քար մը է, և ունի իւր կեդրոնին փարսեալ ցից մը՝ որ նաղկին ստորին անուոյն կեդրոնէն անցնելով կը հանի գագաթան յիշեալ խոռոչն, և այս ձողին վրայ կը դառնայ նաղուկն։ Խաշիլով թրջած մանածն կ՚անցունեն նաղկին վըրայ, և ջահի միջոցաւ մանածն կ՚առնուն դարտակներուն վրայ։

Դարտակ (Դաստարկ) 1 մատնաչափ հաստութեամբ եղէգն (Տճ. գամըշ) որոյ վրայ կ՚առնուն մանածն նաղուկէն՝ ջահի միջոցաւ։ 1 կաժ մանածին իբր 10 դարտակ պէտք է։ Կան նաև մանր դարտակներ որոյ վրայ կ՚առնուի գործելու կամ նետելու թելն։

Մասուրա Երբ մանածն դարտակներու վրայ առնուի, ոչ ևս դարտակ այլ մասուրա կ՚ըսուի։

Դաշճաղ Երկու թանձր տախտակ, ձեռաց լայնութեամբ և իբր 3 կանգուն երկայն. երկուքին մէջ տեղըն իբր կէս կանգուն բաց է, տախտակէ գօտիով իրարու գամուած։ Այս երկու տախտակաց վրայ, 20-ականէն 40 ցից կայ բարակ, դարտակին երկայնութեամբ՝ ուր կ՚անցունեն մասուրայներն, եթէ ուզուի, զոյգ տախտակ կամ երկու դաշճաղ կը դրուի, և 80 մասուրա։

Ըլճէկ Իբր 3 մատ լայնութեամբ և մէկ կանգ. երկայնութեամբ տախտակ մը, որոյ երկու եզրերը մէյմէկ կարգ ծակեր կայ, 40—80։ Դաշճաղին թելերուն ծայրերը ասոր մէջէն կ՚անցունեն, կամ տակ վրայ, կամ դիմացէ դիմաց։

Տօլապ Փայտէ քառակուսի մեծ գործի մը. $2^1/_2$ կանգուն երկայն. որ վերուստ ՚ի վայր ուղղաձիգ

| | |
|---|---|
| | թեամբ բազկի հաստութեամբ։ |
| Օղ | Մազպարին նման բայց փոքր փայտ մ՚է, գործողին վրայ, տատասպը՝ առանցքի վրայ։ Հենքը օղին և մազպարին վրայէն կ՚անցնի։ |
| Սալմինի ցից | Գետնէն մէկ թզաչափ բարձր. սալմինը հոն կ՚անցնի։ |
| Սալմին | Իբր 1 մեթր երկայնութեամբ քառակուսի փայտ մը՝ որոյ մէն մի երեսն թզաչափ լայնութիւն ունի. իսկ երկու ծայրերն որ բարակ կլոր են, յիշեալ ցիցերուն մէջ անցուցած է։ Գործողն սոյն քառակուսի փայտին վրայ կը փաթտէ հետզհետէ իւր գործածն։ |
| [illegible]անցից | Բարակ ցից մը, նստողին աջ կողմը, հինքին չուանը կապելու համար։ |
| Տըֆա (Թե-[illegible]եա՝ Արաբ. [illegible]ղէֆա) | Գործի մը երկու կանգնաչափ, երկու ցիցէ կախուած, ուր կ՚անցունեն զանոտրն և ամեն մագոզի գործողն տըֆան յինքն կը քաշէ, որ նետուած թելն խտանայ։ |
| Ճնճղակ | Ջերունէն թելով կախուած փոքր ճախարակ (մախառա)։ |
| Ծղանակ | Փայտեայ գործի մը՝ հենքին վրայ, չըլան յայտնի ըլլալու համար։ |
| Առիջ (Առէջ) | Կտաւուն հեն.քն կամ որ նոյն է, հենքին մանածն է, որ գործուելէ յետոյ կտաւին կամ կերպասին երկու երեսն կը կազմէ։ |
| Նետիչ | Կտաւին կամ կերպասին մէջի նետուած թելն է, զոր փոքր դարտակի վրայ առնելով մազոգին մէջ կ՚անցունեն։ |
| Մ՚թիթ | Փայտէ գործի մը զոր գործողն իւր առջև դեռ նոր գործուած կտաւին մասին վրայ կը զարնէ. մկրատի պէս է. ծայրերը ասեղի պէս կը փակցունէ կտաւին երկու ծայրը։ |

*Մազող (կկոց)* Թղաչափ գամիշի եղջիւր է. մէջը հաստ և ծակ երկու ծայրը սուր. սորա մէջ կ'անցունեն մասուրան և կը սփռին ատիչքին մէջէն՝ ալ ձեռքով 'ի ձախն և ձախէն յաջն նետելով գործել։

---

## Բ. Որմնաշինութիւն

(Առանց այբ ու բենի կարգի)

*Մոքոս (չաքուճ)—չէքիճ* Մուրճ. (մոքոս՝ մեծ ըսել է.) մէկ ծայրը սուր, և միւս ծայրը գունտ։

*Շավուլ* Գործի մը, որ է թելէ մը վար կախուած կապարի կամ երկաթի կտոր մը, որով որմին կամ քարին ուղղութիւնը կը չափեն։

*Սիլս* Կարմիր հող մ'է, զոր թրջելով չըփոտ թելն մէջը կը թաթխեն, թելն՝ երկու ծայրէն բռնելով՝ փայտին կամ տախտակին վրայ ուզած ուղղութեամբ կը դնեն ձգտեալ՝ և ձեռքով թելըն քիչ մը վեր առնելով կը թողուն, որով թելն կարմիր գիծ մը կը գծէ, ուստի ապա կը կտրեն։

*Փեշտըվան* Որմին երկու երեսը դրուած բաղկի հաստութեամբ երկայն փայտէ պահանգներուն (խաթըլ) փայտէ դօտիններն են, որոց երկու ծայրերն խաթըլըն գամուած է։ Այս բառ Պարսկ. կը նմանի։

*Դակուր* Տճկ. պաշնա փէօքը. մէկ կողմն տափար և միւս կողմն սուրագ է։

*Խըզար* Մեծ աղոց, դերանն՝ իշուկի մը վրայ՝ շեղ կը կանգնեցունեն, և երկու հոգի՝ մէկն՝ փայտին

վրան և միւսն ներքեն կանգնելով՝ խըղարոճը տախտակ կամ ձող կը քաշեն։

Իշուկ — Գերանն (տիրէկ) չեղ կանգնեցունելու համար, ներքեւի յենարան փայտն է, կանգնաչափ՝ գլուխըն Թզաչափ խաչաձև։

Դոլը — Բերանն լայն և սուր երկաթեայ, տափարակ, երկայն, փոքր գործի մ'է, որ զանազան տեսակներ ունի։

Ճէրպ — Երկաթ. դուրելու տեսակ մի խարտոց։

Առանցմէ 'իզատ հիւսան և ատաղձագործի վերաբերեալ շատ մի գործիներ կան, որոց մէկ մասին* հայերէն անուանքն կը գործածեն, ինչպէս՝ ուրագ, սղոց, ևայլն. և մէկ մասին տաճկերէնն, զոր. արշըն—կանգ. րէնտէ—քերիչ, ևայլն։

## Գ. Կօշկակարութեան

Հերում — Ասեղի պէս փայտէ կոթով գործի մը, ծակելու և ասեղով կարելու համար։

Ղալխըլըկ (Ղալխ-ըլըկ) — Մանած ոլորելու փայտեայ գործի մը, որոյ գըլուխն խնձորի չափ է և վրան կէռ ասեղ մ'ունի. ծայրն երկայն է, որոյ վերայ ոլորելով կը փաթտուի կարելու մանածն։ (Տուներու մէջ բուրդ մանողներն ալ այս ձևով գործի մ'ունին, որոյ «քիրման» կ'ըսեն. կ'ըսուի նաև թէ այս բառ քրդերէն է։ Չգիտեմ թէ Պարսկաստանի Քիրման գաւառին՝ ուր շալեր կը գործուին՝ անուան հետ այս գործի վերաբերութիւն ունի՞ թէ ոչ)։

Խըվալ — Մուճակի կաղապարին վրայ աւելցունելու սեպաձև փայտեայ գործի մ'է, որ կաղապա

վրայ առնուած մուճակին բերանն լայնցունելու կը ծառայէ։

*Փըսվալ* — Փայտեայ փոքր գործի մը. այս ալ նախընթացին պէս օժանդակ գործի մ'է։

*Քով-քսիչ* — Փոքր փայտ մը որով կարուած մուճակին եզերքը կը քսեն յղկելու համար։

*Ջըռընչան* — Ծակելու գործի մը. Տճ․ ճուվալդըզ։

Միւս բառերէն մէկ քանին հայերէն ծանօթ են, և Մնացեալք տաճկերէն են. ինչպէս՝ պէշխտահ—վրան գործ գործելու ընգոյզի կոճղն. ղըչքր—տեսակ մի դանակ. խաղխող—փայտեայ կաղապար. Տռաշխա—երկաթեայ և փայտեայ ծանօթ գործին, որոց առաջինն կաշին ծեծելու, տափելու և երկրորդն յղկելու կը ծառայէ։



---

Դ. Դերձակութեան

*Զագ* — Տճ․ Թիրիզ. պարեգօտին քղանցքին օժանդակ մասն. սովորաբար վերը նեղ, վարը լայն։

*Զփակ* — Պարեգօտին Թևին բերնին ներքևի կողմի բացուածքը։

*Մատնոց* — Տճ․ իւկիւֆ. ծանօթ է։

*Ջարկ-քաշ* — Նորեկ աշակերտողն ասեղն կտորի մը վրայ կը զարնէ կը քաշէ 'ի վարժութիւն։

*Փոթ* — Հանդերձի վրայ կարուածքէն դիտմամբ կամ պատահմամբ գործուած խորշերն։

*Որեալ* — Հանդերձի կամ կտորի մը շեղ կտրուած ձևն. Տճ․ չարբըգ։

*Վրայ կար* — Տճ․ գըվըրմա. կարուած կերպաս և աստառին հակառակ կողմի կարին եզրերն իր տեղէն վրայ ներս ծալլել և կարել։

*Վեր-կար* — Պարեգօտ կամ շրջազգեստն երբ հասակին չա-

| | |
|---|---|
| | փէն երկայն է, մէջքէն շուրջանակի 2—4 մատ ծալլելով կարուի, որով ուզուած երկայնութիւնն կը մնայ. երբ զգեցողն մեծնայ, կամ պէտք ունենայ, վեր կարը կը քակեն։ |
| *Ողջնծու* | Ձևի փորձ՝ առանց կարելու։ |
| *Կար-փակ* | Կարուածքի մը վերջն ուր միևնոյն տեղը կարուածքն քանիցս կը կրկնուի, չի քակելու համար։ |
| *Կցել* | Սովորաբար փոքր կտոր մի այլ կտորի մը կցել, յաւելուլ. (կցծել կ'ըսեն)։ |

Դիտելի լեցի որ վերոյ գրեալ բառերը՝ ըստ մեծի մասին, կանայք կը գործածեն. իսկ այր. դերձակները արհեստին վերաբերեալ բառերուն մէկ քանիին միայն հայերէնն կը գործածեն. ինչպէս՝ ձև, կար, ասեղն. իսկ մնացելոց տաճկերէնն, ինչպէս՝ փէշթախ, էնթարէ, մախաս, չաթը, թէյէլ, մանթաղա, Քըլէնկի ևայլն։

---

Ե. Անագագործութեան և պղնձագործութեան

| | |
|---|---|
| *Նայ* | Մէկ կանգունէ երկայն, տղայոց բազկի հաստութեամբ երկաթ մը որոյ ծայրն կ'անցունեն կաթսան և կը կռանեն։ |
| *Մէշիկ* | Ձեռաց ունելի մը։ |
| *Տասնը մեղ* | Կլոր երկաթ մի խնձորի չափ, որով նշատիր կը մարեն։ |
| *Միանէ* | Պղինձ ծեծելու մուրճ։ |
| *Գոյլ* | Ընգոյզի մեծութեամբ երկաթ մի, ծակիչին տակը դնելու համար։ |
| *Ծիպըրահան* | Թզաչափ, եռանկիւն, պողպատեայ երկաթ մը, պղնձի կամ երկաթի ծակ մը լայնցնելու։ |
| *Պորոտա* | Պղնձի երկու կտոր իրար փակցունելու (զայնաթմագ). փոշի մը անագի և արուրի։ |

| | |
|---|---|
| | Ածուխի և աղի փոշի, պորոտան հալեցնող։ |
| սկ | Ձեռքի կռան, մուրճ։ |
| ա | Կորակտուց փոքրիկ մուրճ մը որոյ ծայրով զոր հրաշ՚կ կը գործեն, պաղ [illegible] կ՚առնու գործաւորն և կը փակցունէ։ |
| Ռևի (եօրս) | Սալ մի որոյ վերայ պղնձեայ տաշտի շրթունքըն կը դարձունեն։ |
| ղլաշիկ | Ձեռաց ունելի մ՚է։ |
| ղկայպ | Աղ և հող ջրով կը մարեն և պղնձին վրայ կը քսեն, կը խաշեն. որով պղնձին կարմիրը կը բացուի։ |

---

## Զ. Երկաթագործութիւն

| | |
|---|---|
| Անցակ | Տճ. Խըսաճ. ունելի մ՚է։ |
| Գուռ | Քարէ մեծ աման մը քառակուսի. մէջը ջուր կը լեցունեն, հրաշէկ երկաթն հոն թաթխելով մարելու համար։ |
| Էռքար. | Տեսակ մը ճերմակ քարէ փոշի մը զոր երկաթ փակցունելու (գայնաթմագ) կը գործածեն։ |
| ծակիչ | Փոքր երկաթ մի, սրածայր, ծակելու համար։ |
| Կածառ (կայծառ) | Տճ. մաշա. կրակի ունելի։ |
| Ըղունկ | Երկաթին վրայ, ըղնգաձև դրոշմ մը (թամղա) որոյ մեծ և փոքրն կ՚ըլլայ, երկաթեայ գոլ ծիներու վրայ կը դրոշմեն ՚ի զարդ։ |
| Աճանա (տամղա) | Բարակ, փոքր և խիտ գիծերով դրոշմ, նմանապէս կը դրոշմեն առ ՚ի զարդ։ |
| Ծոռ (խըսաճ) | Ունելի մի (գսաճ) որոյ բերնին մէկ ծայրը կէ։ |
| Գայլ բերան | Ունելի մը որոյ բերնին երկու ծայրը կէ։ |
| Պօշ բերան | Տճ. Խըսաճ. ունելի մի բերանը բաց. |

## Է. Դարբնութեան

| | |
|---|---|
| *Մասկալ* | Բանալի ևայլն փայլեցնելու գործի մը։ |
| *Թէլիկլիսի* | Տեսակ մը խարտոց, փայլուն գամերը գծելու, խազելու համար։ |
| *Սալավար* | Երկաթեայ գործի մը նուան մեծութեամբ, մէջտեղն ծակ, որոյ վերայ տապար և բրիչ կը ծակեն։ |
| *Բալլոց կաղպար* | Փոքր, ծայրը կիսալուսնի պէս գործի մը, որոյ մէջ բանալւոյ մէջքն դնելով, կը ծակեն։ |

Դարբնի գործեաց մէջ կան տակաւին մի քանի գործիք որ երկաթագործք ևս կը գործածեն։

---

## Ը. Ոսկերչութեան

| | |
|---|---|
| *Խըշտակ* | Ձեռաց մեծութեամբ, բոլորաձև, տափակ, աբոյրէ գործի մը, որոյ վերայ կլոր անհաւասար փոսեր կայ, արծաթէ տախտակը անով կը կլորցունեն։ |
| *Մաֆու* | Երկաթէ բարակ կոր խողովակ մի, որոյ ճըրագին բոցին փչելով ուզած տեղն կը մղէ զբոցն։ |
| *Կրաթար* | Գրչի երկայնութեամբ պողպատէ քառակուսի բարակ ձող գործի մը՝ որով ադամանդին շուրջը գտնուած ոսկին կը յղկեն։ |
| *Ջճինէ* | Գրչի երկայնութեամբ տախտակ սայրասուր բարակ գործի մը՝ որ երբ ադամանդեայ և այլ քարերը իրենց տեղւոյն մէջ զետեղուին, ակնակապիճին շրթունքը քարին վրայ շրջելու և ամրացնելու կը ծառայէ։ |
| *Մարթելա* | Էճինէին վրայ զարնելու գործի մը՝ որ մուրճի պաշտօն կը կատարէ։ |

*Իստիքա* — Մատի երկայնութեամբ բարակ ոսկր մի ծայրը կպչուն մեղրամոմ, որով աղամանդը իր զետեղեալ տեղէն դուրս կը քաշեն։

*Ընկելա* — Զմելիի ձեւով գործի մը որով դամուած ադամանդին բոլորտիքը կը բանան։

*Փաֆտա* — Զերկաթն պտուտակ (վիտա) շինելու գործի մը։

*Իւրոքելա* — Թզաչափ երկայն, բթաչափ թանձրութեամբ կլոր փայտ մը, որոյ ծայրը կը փակցունեն այլ և այլ մատանւոյ շէնքերն և կը կերտեն։

*Փուշ* — Փշաձեւ, բարակ, փոքր երկաթ մի որով ոսկին կամ այլ ինչ կը ծակեն։

*Ծըմպըլ-տոտիկ* — Մանր աղամանդին ու քարին ներքեւ դրուած մետաղեայ փայլուն զարդի (ոյա) տեսակ մը.

*Պորկի սէտէֆ* — Կապարեայ փոքր աման մի 5 Ֆրանկնոցի և քառապատիկ մեծութեամբ։

*Պորա* — Մետաղեայ խառնուրդ մի զոր 'ի Կարին և այլ տեղեր կը շինեն՝ արծաթը եփելու համար։

*Չափլա* — Երկաթէ տափակ և բարակ գործի մը, որոյ ծայրովը արծաթեայ քանդակաց յատակն (զէմինն) կը յարդարեն։

*Փինչօ* — Բարակ փոքրիկ գործի մը, ծայրը փոսիկ, ոսկւոյ շէնքի գլուխները շտկելու։

*Փէստէֆ* — Երկաթէ տափակ թել մի, որով երկու արծաթէ կտորն առժամանակեայ իրար կը կապեն, փակցունելու համար։

---

## Թ. Մաշփոխագործութեան

*Քերի երկաթ* — Աղուխառ կամ այլ մորթն մաքրելու հասուրի ձեւ երկաթ մ՚է, որով կը քերեն մորթ

*Շոհէ, կամ* — Վերջը մորթը դուրելու համար թաթիկի

| | |
|---|---|
| *Թալթիկ* | երկաթ մ՚է։ Գուցէ «շոյէ» բառի աղաւաղումն է։ |
| *Գամելու տախտակ, կամ փէրտաճի (յղկել) տախտակ* | Երբ 2 քառակուսի կանգուն հացի սեղանի ձեւ տախտակ մի (քանի տախտակէ բաղկացեալ), որոյ վերայ կը գամեն տախտակ շինուած մորթը։ |
| *Ըմպիք կամ քիփ* | 2 կտորէ բաղկացեալ է, օղի հանելու գործիքի պէս է, ներքեւինը սափորի չափ է, վերայինը պմբեթաձեւ է՝ խողովակով մի, սափորին մէջ սև գլատր կը լեցունեն կ՚եփեն, իւղն խողովակէն կը թորի. սև ներկի համար է։ |

(Բաղադրդաց գործեաց և գործողութեանց անուանք գրեթէ ընդհանրապէս Տաճկերէն են. զի հին ատեններ այս արհեստ սովորաբար Տաճկաց (Թուրքաց) կը վերաբերի եղեր։ Իսկ ներկարարի գործիներուն վերաբերեալ հայերէն բառերն՝ ըստ նոյն արուեստաւորաց՝ կարի սակաւ են)։

## 9) ՀԱՅԵՐԷՆ՝ ԸՍՏ ՄԱՍԻՆ ԾԱՆՕԹ՝ ԶԱՆԱԶԱՆ ԲԱՌԵՐ, ԶՈՐՍ ԹՈՒՐՔԵՐ ԵՒՍ ԿԸ ԳՈՐԾԱԾԵՆ ՆՈՅՆՈՒԹԵԱՄԲ ԿԱՄ ՓՈՔՐ ԻՆՉ ՏԱՐԲԵՐՈՒԹԵԱՄԲ.

| | |
|---|---|
| *Ապրել (Ապրիլ)* | Ապրէլ *).—Ապրիլ ամիսն։ |
| *Բանճար (բանջար)* | Փէնձէր.—Ծանօթ է։ |
| *Գառ* | Գօջ.—բոյս ինչ, ցօղունն մատնաչափ հաստութեամբ, տափակ, թզաչափ և աւելի երկայն, |

*) Այս 9-րդ մասի մէջ Նօտր գրով նշանակեալ բառերն ցոյց կը տան Թուրքական արտասանութիւնը։

| | |
|---|---|
| | գագաթն ճղերով, համն թթու։ Իսկ զարծիլին «եշխուն» կ'ըսեն առ հասարակ |
| Գեօզէռ (զո-զառ) | **Գեօզեր**.—երկայն կոթով և փոս (գոգաւոր) ցանցով գործի մը, որով գետուտի կը քաշեն։ |
| Թըրթուր | **Թըրթըր**.—Մամոխի, սալորի են. ծառերու վրայ, 'ի զարնան գոյացեալ մնասակար որդն։ |
| Լոլիկ | **Լեօլէկ**.—տոմաթեսի մանր տեսակն։ |
| Լող | **Լող**.—սովորաբար իբր 1 կանգ երկայն. և մէջ-քի հաստութեամբ՝ գլանաձև տաշուած քար մի, որով սովորաբար անձրևէն յետոյ տանիսն կը լողեն, քարուածքն ամրապնդելու համար։ |
| Լող-կոթ | **Լողջոթ**.—բազկի հաստութեամբ փայտեայ գոր-ծի մը որ՝ զսպանակի պէս՝ փայտէ և չուանէ զօտի մ'ունի 'ի մէջքն. Արար. կամ Տաճկ. ^ (8) թուանշանի ձևոյն կը նմանի սակաւ մի, գլուխն միացած է և ոտքերն՝ դէպ 'ի ներս՝ ճանկաւոր՝ զորս լողին երկու ծայրի փոսերը կ'անցունեն, զօտին կը պրկեն, և 'ի գլուխն անցուցած չուանէն բռնած՝ կ'սկսին լողել (քաշել գլողն)։ |
| Լոռ | **Լոռ**—կաթնէն եղած պանրի պէս ուտելիք մը |
| Լուխճ | **Լուխճ**.—բանջարի տեսակ մը։ |
| Խժուկ (լինիլ) | **Խժէկ**. — հազալ սաստիկ. (հարբուխի, պաղի պատճառաւ)։ |
| Խիճ | **Խիճ**, խըճ.—մանր քարեր։ |
| Խրամ (բաց-ուած է) | **Խրամ** (աչըլմըշ). — որմէն, ցանկէն անցնելու տեղ բացուած է։ |
| Կափճին | **Կաֆճին**.—տեսակ մը, կպչուն հող կամ կաւ, զոր՝ երբեմն փոխանակ կաղճինի կը գործածեն։ |
| Կաղճին | **Կէաղճին**.—կապոյտ, կպչուն, տեսակ մը հող կամ կաւ, զոր՝ մարդակէն և շաղախէն յետոյ՝ |

տանեաց վերայ կը տարածեն (անձրեւէ պահ-պանելու համար), եւ կը լողեն, եւ որոց վերայ հակլթաչափ քարերով քարուածք (ըլխթըմ) կ'ընեն։ Քարուածքին վրայ մաղած բարակ հող կը լեցունեն, որով քարերուն մէջ տեղերը մը-նացած ծակերը կը գոցուին, եւ ջուրն քարե-րուն եւ հողին վրայէն անցնելով՝ տանիքին՝ դէպ 'ի ցած՝ խողովակն (օլուգ) կը ժողովուի, եւ անտի 'ի դուրս կը հոսի։

Կանկար **Քէնկէր**.—(վայրի) կանկար. Տաճ. (եապան) էն-կինար։

Կապան **Կէպան**.—քարուտ՝ նեղ անցք ճամբայ։

Կըշճան **Կըչճան**.—(Թերեւս «կըտոց-հան» կամ «կըտոցան») իբր 3 կանգ. երկայնութեամբ, բազկի եւ աւե-լի հաստութեամբ քառակուսի մայր փայտ մի, որոյ մէջքէն մեկզմէկէ թզաչափ հեռաւորու-թեամբ, իբր $2^1/_2$ կանգ. երկայնութեամբ, մատ-նաչափ հաստութեամբ երկաթեայ կամ փայ-տեայ սրածայր ձողեր կ'անցունեն, եւ յիշեալ մայր փայտին երկու ծայրերը կանգնաչափ փայ-տեայ թեւեր դամելով սոցա ծայրերը 'ի ձե-ղուն կը գամեն, որով մայր փայտն սենեկի ձե-ղունէն 1 կանգ. վար կը մնայ։ Թանիրի կամ փռան կէս չորցած հացերը յիշեալ ձողերուն վը-րայ կը շամփրեն իրարու վրայ, ուր լաւ մի կը չորնայ, եւ յետոյ, ըստ պիտոյից, կարգաւ կը քաղեն։

Հաւասար (հա-ւասար) **Հաւասար**. (զօր. այս ինչ վաճառքն, պտուղն, եայլն մեծ ու խոշոր, կամ կարճ ու երկայն են, հաւասար են կամ չեն)։

Ծաղ **Ձող**.—տանեաց շուրջ գտնուած վանդակաձեւ ձողերն։

| | |
|---|---|
| *Մալեզ* | Մալըզ.— Թթէ կամ խաղողէ եփեալ ալիւրախառն քաղցու. (Ի բառարանի՝ «մալէզ—պուլամած, խիւս»)։ |
| *Մարղակ* | Մէրթէկ.— Առաստաղին գերաններուն կամ ատոնց վրայի տախտակամածին վրայ խիտ առ խիտ շարուած, (սովորաբար՝ թթենիէ ճեղքուելով պատրաստուած), կանգնաչափ կամ աւելի կարճ, բազկի հաստութեամբ փայտերն են, որոց վերայ նախ տաշուք կը լեցունեն, յետոյ կը ծեփեն շաղախով և սորա վերայ կաղճինն կը լեցունեն և կը քարեն։ |
| *Մըրղիկ (համանականօրէն՝ մեղրիկ) տանձ* | Մէրջէն արմուտը.— Տեսակ մը տանձ՝ հաւկթի մեծութեամբ, որ յարգի է։ |
| *Շէն* | Շէն.— 1. յարկ մը որոց ներքևը շինուածք մ'է, և ոչ գետին. 2. ճոխ, ուրախ զուարթ (գիւղ, մարդ)։ |
| *Շէ՛ն մնաս* | Շէն օլասըն։—Բարեմաղթութիւն։ |
| *Չամիչ* | Չէմիչ.—Չորցուցած խաղող։ |
| *Չոքալիկ* | Չէօգալըկ.—Կաթնէն կամ թանէն եղած ուտելիք մը, որ յարգի չէ։ |
| *Պաստեխ* | Պաստըխ.— Թթի կամ խաղողի քաղցուէ շինուած՝ որ ծանօթ է։ |
| *Պարան (այգեաց)* | Պարան։ |
| *Պոչիկ* | Պոչիկ.—սրբանին վրայի ոսկրը։ (Ի բառարանի՝ «Պոչիկ—պզտի մարդ, ճիւճէ»)։ |
| *Ջրպան* | Ջրպան.—այգեաց ջուրերուն պահապանն, որ, մէն մի պարտիզի համար թաղեցւոց կամ գիւղացւոց կողմանէ որոշեալ ժամանակացոյցին համեմատ, ջուրը պարտիզաց կաւառները կը կապէ և կը հսկէ։ |

*Սամիթ* — **Սէֆի.**—ծանօթ կանաչեղէն։

*Վալա* — Իբր $1^1/_2$—2 քառակուսի մեթր ծաւալով ճեր-մակ կտաւ մի, զոր անկողնոյ եւայլն ներքեւ կը փռեն, կամ թութի ծառն թօթված ժամա-նակ թութն վրան թափելու համար ներքեւն կը բռնեն կամ կը տարածեն։ (Հայերէն թէ Տաճկ. է, յայտնի չէ։ Ի բառարանի՝ «Վալա—շալ, ցփսի»։)

*Տրամ (հող)* — **Տրամ.**—կարծր հող՝ մանր խիճերով, յոյժ դը-ժուարաւ կը փորուի։

*Ցուիք* — **Սիվիք.**—տանեաց եզրերն որ փայտեայ ձողե-րով պատապարեալ չեն, այլ սովորաբար կո-ղունծով են։

*Փողրակ* — **Փօրջէնկ.**—հողէ շինուած, թրծուած, սովո-րաբար բաղկի հաստութեամբ և իբր կէս կանգ. ջրի խողովակ։

*Քաղ-համք* — **Քէզ հէնկ.**—թուփերու պարաններուն մէջն փո-րել, որով հողն կը թուլնայ և բոյսն կը զար-գանայ։

*(Խմորը) Քըր-քիրը առեր է* — **Քիրքիրէնի ալմըշ.**—խմոր եփելու համար, պէտք եղած վիճակն առացեր է։

(Ասոնցմէ 'ի զատ կան ուրիշ բառեր ալ այս կարգի, բայց յիշածներս միայն գրեցի։ Թո-ղումք և այն բառերն որ Հայերէնի և Թուր-քերէնի մէջ հաւասարապէս կը գործածուին, հնչման դոյզն ինչ տարբերութեամբ, զոր.

Պանիր —փենիր։
Իւղ—եաղ։
Դարակ— տէրէկ։
Թութ—Թութ։
Շողգամ—շաղլամ։

...ր (կե- ...ր) Ջրով եփած կամ ջրոտ. «ժուր» «անժուր» կ'ըսեն։

...մակ ...ող) } Զուտող, չի խմող (հիւանդ)։

...ճ (ը) Խեղճ (ը). Թշուառ (ը)։

...ր (ուտե- ...ւայլն) } Ծատ, առատ (ուտելիք, դրամ, լոյր են.)։

...ողը (հի- ...մ'է) Անստոյգ և դէպ 'ի լաւն չը գարձող հիւանդ մ'է)։

...ամ նա) ...դ. մնան } (սա կամ նա են.) Խեղճն, հէքն, գծուծն։

...ղ (օտար) (Թերևս՝ «անփողոց,» (բնակութիւն չունեցող կամ դրամ չունեցող) .Բոլորովին (օտար), բարեկամ չ'ըլլացող, անծանօթ։ «Անփող օտարներն անգամ այսպէս չեն ըներ, կամ «Անփող օտար» մ'ըլլայ, մարդ կը գթայ։

...ծու- ...ործ եւն. Անկարգ, աղեղ, խառն 'ի խուռն, (գործ, խօսք են.)։

...ի Առոյգ։ Այս ինչ տղան «Առքենի. է» կամ «առքենի կու մեծնայ» կ'ըսեն։

...ուք Քըսըրտուկ, դանդաղաշարժ են.։ Հաւանօրէն «Արև-մանէն» ածանցեալ է. և վերջալուսին նուազուն երևութին նմանութեամբ «Արևմընուքի բաներ մ'աներ» կ'ըսեն. սովորաբար կանայք կը գործածեն այս բառն։

...ծ գլուխ Կունտ կամ ճաղատ։

...ստ ...մ՝ ...ստ) Ամբողջ (և ոչ կէսն կամ մասն) զօր. Պոլսոյ արունատ ոսկին—Պոլսոյ ոսկի անուանեալ վերջին սուլթան Մուսթաֆայի են. որով ոսկիին ամբողջն (և ոչ կէսն)։ Ակն արունատ, տունն արունատ, ժամն արունատ (ըսին, լացին են.)։ Ակն, տունն, ժամն ողջոյն (ըսին են.)։

| | |
|---|---|
| Բաղարջ (հաց) | (Բաց 'ի սովորականէն) Խմորը դեռ քըքէրը չ'առած՝ եփուած հացն, որ ջղոտ, կարծր կ'ըլլայ։ |
| Բանպառակ | Զուարճախօս։ |
| Բղըուջ (ճեր-ըեւ ըողըոջ) | Քըքըրուած, քնքուշ. (բրդեայ բազմոց ևն.)։ |
| Բուխ (սիրտ) | Դիւրազգած, գթած։ |
| Բռնած (հան-դերձ) | Գործածուած. |
| Գանգըռած (տանձ, խն-ձոր եւն.) | Կողովին կամ պարկին մէջ սեղմուելով ճըմ-լեալ կամ սեւցած (տանձ, խնձոր ևն.)։ |
| Գեր տոտիկ (մանուկ) | Գիրուկ, կայտառ։ |
| Գէնկէզ | Երկար և անիմաստ խօսք խօսող։ |
| Գիտ (է), կամ, գիտ ատեն (է) | Միս, պտուղ և այլն ամեն բան կըգտնուի, (ինչպէս աշնան եղանակին)։ |
| Գողի | Ծոյլ։ |
| Գոլթտոց (վասն մարդոյ) | Մեծ, խոշոր, երևելի։ (Թերևս «Գոլթոշ» բառըն է, որոյ համիմաստ է և այս)։ |
| Գունտ ու կլոնծ | Անկերպարան, տձև. (մարդ, իր և այլն)։ |
| Գուզի կուլակ | Մազերը իրար անցած, անխնամ, չի սանտըրուած, գռզընոտ։ |
| Գուլոք (վասն կնոջ) | Գէր, մեծ. (սովորաբար այն գեր կնոջ համար կ'ըսուի, որ բռնաւորի մը պէս երկիւղ ազդած է կանանց)։ |
| Դաքկուռ (վասն անձի) | Նիհար, չորցած, արիւնը քաշուած։ Կ'ըսուի նաև «Դաքկուռ—Դուքկուռ» (ձայն) ուրագի, և այլն հարուածի (ձայներ)։ |
| Դեք | Խստաբարոյ, բծախնդիր, շահելը դժուար, ամեն բանի խօսող, զայրացող։ |
| Դըմըշխի (վասն անձի) | Գիրուկ ու կռուն, դիմացկուն։ |

| | |
|---|---|
| *Դլին (վան աղ)* | Կնամարդի, թոյլ, մեղկ։ |
| *Դող (վան իրաց)* | Հին, մաշած (հանդերձ, տուն են.)։ |
| *Դօք դօք (խօսող)* | Անխոհեմ, անպատեհ կամ անքաղաքավար՝ վշտացուցիչ խօսք խօսող։ |
| *Ծալլոզ* | Զարաճճի, ստահակ։ (Այս բառ Տաճկ.ի կը նը-մանի)։ |
| *Ծրուկ* | Սովորականէն աւելի ջերմ (կերակուր, ջուր եւայլն) թերեւս «այրուկ»։ |
| *Զաղա* | 1. Զաղա Քրդերը.—2. համր.—3. խօսք չի հասկցող։ |
| *Զըղըրնոց* | Ցատ նեղ, անյարմար (ծածք կամ նրբանցք կամ այլ) տեղ մի։ |
| *Զըմպըրտուկ* *Զամ լըմպը-տուկ* | (ստորին, անկարեւոր անձանց, երբեմն իրաց համար կը գործածուի) Նա, ծօ են. Տճ. հէ-րիֆ, չէյ, զօր. նա զըմպրտուկը—նա անպի-տան, անկարեւոր անձը կամ իրը։ |
| *Զըռզա (ձոր, գետ)* | Սրընթաց (ձոր, գետ, կամ գետոյն են.) սրըն-թաց տեղն։ |
| *Զըռզօք (մարդ)* | Անխոհեմաբար, յախուռն գործող կամ խօ-սող։ |
| *(օղը) Զիշտ (է)* | Խիստ, ցրտաշունչ է։ (Այս բառ՝ ինչպէս յայտ-նի է՝ Պարսկերէն է. զիւշթ—սերթ, խիստ։ Զեշթ—տգեղ, գէշ)։ |
| *Էզ մի* | Կարգ մը, շատ մը. (էզ մի մարդ եկին, էզ մի խօսք եղաւ են)։ |
| *Էլճիկ (վան կնոջ)* | Թեթեւսոլիկ, գռեհիկ։ |
| *Թանը փոխի* | Խառնաշփոթ (վիճակ, գործ)։ |
| *Թթուըշաղ* | Թթուաշ, քիչ թթու. Տճ. մայհօշ։ |
| *Թոռ (տղայ եւն.)* | Դեռատի եւ փափկասուն։ («Թոռ» Տճ.— կան, որ երեք տեսակ է)։ |

Թոռթոշիկ — Քնքուշ, փափկիկ։

Թռթռիկ — Թեթեւամիտ, թեթեւսոլիկ։

Թստափոռիկ — Թեթեւակի ակնարկութենէ կամ քաղաքավարական փոքր թերութենէ մը վշտացող եւ մեղադրող անձ, որ տղայամտաբար յոյժ դիւրազգած է։

Ինչենի՞ (մարդ է) — Ի՞նչպէս (մարդ է)։

Լափստիկ — Թափթըփան, թոյլ եւ մեղկ։

Լէոճը պոպոզ (բան մ'է) — Ա՛յն բարակ երկայն անձն (այր թէ կին), որոյ հանդերձներն, քիչ մը հին է, եւ անկարգ, անյարմար հագուած է, մազերն խառն 'ի խուռըն են։

Լըբըռտուկ — Իրար անցած, խառն 'ի խուռն, ոչ յստակ խօսք, թութ եւն.։ (Լըբռցնել—արագօրէն եւ ոչ յստակ խօսիլ)։

Լխպիկ, կամ լխպըլիկ — Շատ թրջած (լխպիկ հաց), հասունցած (լըխպըլիկ թութ եւայլն)։

Լղըռճուկ — Խառն 'ի խուռն, անկարգ, անպիտան (իր, վիճակ, գործ, եւն.)։ (վասն մարդոյ եւս կը գործածուի)։

Լպուզ (գլուխ եւն.) — Լերկ, մազերը թափած (գլուխ)։ Թերեւս «լըպիրծ»ին աղաւաղեալն է։

Լօզօ, լօզօման — Կոշտ, գէր, կոպտաբանձն։

Լօղ — Խոնաւ (օդ) կամ ամպամած։

Լօլօզ — Իրի մը կամ իրաց երկայն կամ սրածայր ձեւն։ Լոլոզցնել—իրարու վրայ շարելով բարձրացնել. հաշիւ մը տոկոս եւն. բարդելով շատցնել։

Լօշիկ, լօշտիկ — Թոյլ, կակուղցած (հաց եւն.)։ (Ի բառարանի «լօշ» լաւաշ, լօշ, շօթ)։

Խաշլով — Նոր, չգործածուած։ Կարելի է կտաւի կամ կերպասուց (թելերն ալիւրով թրջած), խաշել բառէն է, որ Տճկ. է, կարծեմ։

*Խառխալթի* (Ի բառարանի «խառխալթի կենալ»—Անշարժ կենալ. (սա) անպէտ, անիծեալ (իր, ևն.) խառխալթի ըլլայ—(անորոշ անէծք մ'է). խառխալթի եղիր նստէ (անարգական է)։

*Խացակ* Խնձոր ևն. պտուղ որ խոց ունի. Թերևս՝ «խոցակ» լինի. («խակ ու խացակ» կ'ըսուի)։ (Ի բառարանի՝ խացակ կամ խացակ աչք—գաչացու, աչացու, տես և ցաւագար։ Աստ (յԱկն) ևս «խացակ աչք» նոյն իմաստով կը գործածուի)։

*Խեւանոս կամ Խենթանոս* } Խև կամ խենթ, շոշորթ։

*Խէղեը* Խեղըցած, շփացած (սովորաբար աղջիկ, տղայ)։ 2. Անօսր, կարճ, ծաղրելի իր ինչ (հանդերձ, ևայլն)։

*Խըժըրիկ (քար)* } Բոլորակ, տափակ, ողորկ (քար), իբր 5 Ֆրանկնոցի ևն. մեծութեամբ։

*Խըրեղէն* Մեծ, տարւոք (մարդ, իր), Տճ. գոսգոճա։

*Խնտամոլիկ* Ծիծաղկոտ, շատ խնտացող։

*Խոտկուռ —խոտկուր* } 'ի բառարանի «խոտէ տէօշէկ օրօրոցի») 1. Խոտ կռած բարձոց, օրօրոցի փոքրիկ անկողնի մէջ տարածուած խոտակուռ տապաստակ մը.—2. Նմանութեամբ՝ գէր, կարճահասակ (մարդ)։

*Ծափըլիկ* Բնաւորութեամբ կանացի, խեղըցած այր։

*Ծնտիկ* Փոքրիկ հատիկ (ուտելեաց, ևայլն)։

*Կակազ* Կակազելով խօսող. Տճ. քէքէճ, բէբէ։

*Կաղըջնա* Կոփոտ և չոր. փոխաբերաբար՝ ժլատ անձանց ևս կ'ըսուի։

*Կամկար* Ապիկար, դանդաղ (գործող)։

*Կապոտ-ցած (է)* } Ցոյժ ցասկոտ (է). (սովորաբար [illegible])։

| | |
|---|---|
| Կերկոխ | Ոտք ելնելու ժամանակին եկած, բայց ուռոտ և հիւանդոտ կամ տկար մանկան կ՚ըսուի։ |
| Կէվկէվ | Թոյլ, ապիկար ՚ի բանս, կամ զրախօս։ |
| Կըժկըժուկ | Բարկ ջերմ. (զօր. գինին, բանջրէ թթուն կըժկըժուկցեր է)։ Երբեմն բարեկամական կամ կարևոր նիւթի մը վերաբերեալ խօսակցութեան համար ալ «կժկժուկ տեսակցութիւն, խօսակցութիւն» կ՚ըսուի։ |
| Կըխկըխ (է) | Տկար, հիւանդոտ (է)։ Երբեմն քիչ մ՚աղէկ, բայց շատ անգամ տկար է։ |
| Կըկըրիկ (մուճակ, կամ; քայլել) | Թեթև, ոտքին չափէն քիչ մը նեղ մուճակ, կամ այնպիսի մուճակ մի հագած ոտոտելու պէս քայլել։ Երբեմն՝ «կըկըրիկ» կ՚անէ»—թեթևամտութեամբ՝ առանց երկիւղ ազդելու ցոյց կ՚ընէ՝ ըսել է։ |
| Կըյէ կտցուք | Ընդհատեալ, կցկտուր (գործ, ևայլն)։ |
| Կիպ (աչք ետն). | Կիսափակ, դժուար բացուող։ |
| Կըլպոր (տղայք) | Փոքրիկ, (երբեմն) կայտառ։ |
| Կոճոքա | Կարճահասակ (նախատական)։ |
| Կովու ծուծ | Խորամանկ։ |
| Կոտիկ | Կարճ, կարճահասակ. (տես և կարասեաց վերաբերեալ բառից մէջ)։ |
| Կուկիկ | Ծուռ, ծռած։ (Սովորաբար անձի համար կ՚ըսուի)։ |
| Կուռն (հաւկիթ) | Ամուր, կարծր (հաւկիթ)։ |
| Կսկուծ | Լաւ եփած կարմրած (հաց, ևն.)։ Երբեմն «կըսկուծ» խօսակցութիւն ալ կ՚ըսուի, «ջերմ» նշանակութեամբ։ |
| Կրճիկ (մազ) ետն. | (մազի) Գանգուր. (ոչխարի բուրդ) ոլորուն, ևայլն։ |

*Հեռուէ հեռուն (ազգական, խնամի)* (արենակցութեամբ) Շատ հեռուն (ազգական)։

*Հըռչօ* Ցաղթանդամ և անկիրթ։

*Հոգչած (կերակուր)* (հանգչած) Ջերմութիւնն անցած կամ նուազ տաք (կերակուր)։

*Հուպըտի* (Թերևս հովիտի) Անկիրթ մեծցած. (անքաղաքավարի)։

*Ձթիկ* (ուտելիք, ևն., որ մեղրի պէս) Կպչուն (է)։

*Ծըլըգ* Վտիտ, նիհար (հարս, աղջիկ)

*Ծըղըգ* Խաղի կամ առևտուրի մէջ կանոնն չի յարգող, իրաւունքն չի ճանչցող և յաճախ կռիւ, վէճ յարուցանող։

*Ծընկըռտուք* 1. Բոժոժ (գոյ.) 2. փայլուն, պայծառ, զարդարուն. (զոր. ճընկըռտուկ օդ, հարսն ևայլն)։

*Ծիժ, ճիժուկ* Փոքր տղայք (որ խօսք չեն հասկնար)։

*Ծող* Զգտուն։ Ծողած է—(անարգական) մեռած է։

*Ծռիկ (աղբիւր)* Մախաթի մը չափ, շատ քիչ վազած (աղբիւր)։

*Մահեա (բան մ'է)* Անսովոր, անորոշ (բան մ'է). մահեա համ մը ունի. մահեա մ'եղաւ, բան մ'եղաւ։

*Մանը վրան (է)—ուտելիք, հանդերձ ևն.* (Թերևս ռուսի «ման» ին նմանութեամբ) Ուտելիքն պատրաստուելէն, կամ հանդերձը կարուելէն յետոյ ձեռք դպած չէ, անեղծ, անթերի է։

*Մարդաշող (է)* Տեսնուած մարդոց հետ շուտով ընտելացող, պատուասիրող է. պաղ չէ։

*Մեծ-փոշ (է)* Մեծամիտ, դժուարահաւան (է)։

*Մըթըռիկ* Անհամբոյր կամ պաղ, անհաճոյ աչք, դէմք ունեցող (կին ևայլն)։

*Մըճըռիկ* Արագաշարժ և աշխոյժ (տղայ)։

*Միաչէն* (Թերևս՝ միաչն) Միականի։

| | |
|---|---|
| *Մոլըր մժիկ (անձն)* | Մանրաղնին, ուտելեաց, հանդերձից, ևն. պատրաստութեան կամ գործածման մէջ մանր ու մունր իրերն ու պէտքերն ևս անտես չառնող։ |
| *Մուզ (համ)* | Թթուէ և փոթոռէ, խառն համ մի է, սակաւ ինչ լեղի։ (Նաև ջաղացպանին ցորեան աղալու վարձքին փոխարէն առած ցորեանն ևայլն)։ |
| *Մուլլի* | Միամիտ կամ տխմար. (կամ ինքզինքն միամիտ ցուցնող)։ |
| *Մսակոտ (է)* | Նասա՝ կամ (ցուրտէն) շուտ մի մսող (է)։ |
| *Մսաճնուք* | (սովորաբար վասն կնոջ) Ծախք մը, խօսք մը, ևն. համարձակ չընող և չի խօսող. չափազանց զգուշաւոր։ |
| *Մտամոլիկ* | Մոռացկոտ։ |
| *Մտացիկ* | Այն հիւանդն կամ ապաքինողն որ մտքովը զանազան (անմիտս թէ մտասակար) կերպարաններ կ'անցունէ և կը փափաքի, «մտացիկ է եղեր» կ'ըսեն։ Այսպիսիներէն ոմանք կ'ակնկալեն որ ազգականք կամ դրացիք այս ինչ կերակուրը բերեն որ ուտէ։ |
| *Ներքն-գործ* | Նենգամիտ, խորամանկ։ |
| *Նոր-ելուք* | (երբ վասն մարդոյ) Նոր գաղափարի երիտասարդ. (երբ վասն հանդերձի, ձևի, սովորութեան) Նորաձևութիւն (մօտա)։ |
| *Շամշա* | Թութն՝ հասուննալէն քանի մը շաբաթ յետոյ, երբ առաջին թարմութիւնն անցնի, և պանիրն աղելով թակոյկն (քիւփ) դնելէն յետոյ, «Շամշա թութ», «Շամշա պանիր» կ'ըսուի, որ 1—2 շաբաթ կը տևէ։ Շամշա թութն ալ լաւ է, բայց շամշա պանիրն առաւել յարգի է։ |

*Շաշկալ* Նոշորթ (քայլող), ձախող։

*Շըփըռ* Արագ։ (Գոց եղած համարը շըփըռ գիտէ կամ ըսաւ—համարը արագ, առանց ընդմիջելու կարդաց)։

*Շըփըռտուք (անծըրև)* Տեղատարափ, սաստիկ (անձրև)։

*Շիլ* Աչքին բիբը ծուռ։

*Շինեա* Գեղեցիկ։ Հաւանօրէն արաբերէն Շահիտ մըկայ, ևն. և գեղեցիկ կին բառին աղաւաղեալն է։

*Շոլոր մոլոր* Ծուռ ու մուռ (քալուածք)։

*Շուշտիկ, կամ շուլթտիկ* Դիւրահաւան, ծանծաղամիտ, պարզամիտ. (սովորաբար վասն կանանց)։

*Ուզուզիկ* (աներեսաբար) Յաճախ ուզող, խնդրող։

*Չանչան* Անիմաստ խօսող կամ միևնոյն խօսքերն կրկնող շատախօս։

*Չէճիկ (վասն կնոջ)* Ցնցոտի հագած, կամ, խեղճ, թեթևամիտ, թափթըփան։

*Չնար* Հակառակ. (Տճ. զըտտ)։ Չնարս է (այս ինչ սովորութիւն, վարք ևն.)—Բնութեանս հակառակ է, (այս ինչ սովորութիւն, խօսք, ևայլն)։

*Չնհաւան* Բանի չհաւնող։

*Չնչաւատ* Անպիտան, անկարևոր (խօսք, իր, մարդ, ևայլն)։

*Չորըղած* Ցամքած, չորնալու մօտ (հաց, ևայլն)։

*Չպիտու (չպիտոյ)* Անշահ, անպիտան նիւթապէս կամ բարոյապէս։

*Չտես (ոմն) է* Աղքատութենէ լաւ վիճակ մի ստացող այն անձն որ մերթ ծաղրելի բաներ կ'ընէ, և կամ չնչին ծախք, բարիք մ'ըրած միջոցին մեծ կարևորութիւն կու տայ։

*Չտիկ (հաւ)* Խատուտիկ (հաւ)։

**Պըլըզըն** — Մինչ 'ի շրթունս լի (...

**Պըճըլիկ** — Փոքրիկ (տղայ, տուն, ոտք, ևն.)։

**Պոլլոզ** — Երկայն, սրածայր, կնգղաձև։ (Սովորաբար իրաց և մերթ մարդոց համար կը գործածուի)։

**Պոպոզ** — «Լոլոզ»ին իմաստով կամ իրարու վրայ անկարգ շարուած իրերու ստացած ձևն, նաև «Պոպոզիկ»—«Կըկըզիկ» ու մօտ իմաստով։

**Ջնճեխ** — Բարակ, նիհար (տղայ, ևն.)։

**Սէլլէր, սէլլիկ** — Ծանծաղամիտ (սովորաբար կանանց համար կը գործածուի)։

**Սըթըռըիկ** — Նեղ և կարճ (հանդերձ)։

**Սըպլտուկ (է)** — (կտաւատ, կորեակ, ևն. իր որ) Լպիրծ (է) ձեռքէ կը սահի։ (Յաճախ սպունին իմաստն ունի)։

**Սլուլիկ** — Բարակ, երկայն, տձև. (Սլուլիկ բան մ՚է—երկայն, տձև կին մը կամ իր մ՚է)։

**Սմանակ** — Առ երեսս անմեղաս, բայց գաղտնապէս, չարութիւն, ևն. գործող։

**Սմոք (ընգոյզ, ևն.)** — Փուտ, սմքուած։

**Սոպր** — Բիրտ, անկիրթ։

**Սպուն** — Ողորկ, սահուն (քար, տախտակ, ևն. տաշլով կամ գործածելով սպունցած)։

**Սապուկ** — Կոկիկ (հանդերձ, ևն.) Թերևս «(զ)սպուկ»։

**Սրտաւերք (կին)** — Ցղի կնոջ սրտի խառնուիլը և թթու, լե ուտելիքներէ ախորժիլն։

**Վայ վեր** — Անկարող, խեղճ, ապիկար 'ի գործս։

**Վանքամանատակ** — Մեծ՝ ընդարձակ (տուն ևն.)։

**Տափլոշ** — Ծանրաշարժ ու թոյլ։ (Տափլոշ նստիլ—ոտքերը առաջքը ծալլելով նստիլ)։

**Տնկոզ (եռի-** — Մէգ՝ որ նուազ կրթեալ է. ինքնահա

*Տասաարդ, պատանի)* գլուխը վեր բռնած, մեծին դիմադարձութիւն ընող կամ ընելու տրամադիր (երիտասարդ, պատանի)։

*Տոմկա* Բթամիտ, ծանրաշարժ, գէր և կոշտ։ (Այս ինչ կ'ինն «տոմպա» կամ «տոմպա բան մ'է» կ'ըսեն)։

*Տոփալ, կամ Տոփա* Գէր, ծանրաշարժ, դանդաղ։

*Փամփուլ (վասն կնոջ)* Քնքուշ։ Երբեմն կակուղ և երկայն մազերով աղուոր կատուի համար ևս կ'ըսուի։

*Փնթի* Աղտեղի, գծուծ, պիղծ։ (Տճ. ևս «փինթի» կ'ըսեն)։

*Փնճիշկ* Բծախնդիր, ուտելեաց, մաքրութեան, ևն. չափազանց հոգածու և դժուարահաճ։ Տճկ. խույսըզ, մէրագլը։

*Փննուկ* Փտած (վէգ կամ այլ ինչ)։

*Փոլթոտ (համ)* Թթուէն և լեղիէն խառն համ մի, զոր. փոթոտ գինի, փոլթիկ տանձ ևն.

*Փուտ (ընզոյգ եւն.)* Փտած, անամէջ. Տճ. չիւրիւկ։

*Փստուկ փստատ* Փստող. (դերձան անոլոր որ չի դիմանար. Տճ. չիւրիւք. Նաև սահուն, սահող ևն.)։

*Փրփուր կամ փրփրուկ (համ)* Դարապղպեղ (պիպէր)ին փրփուր համն, ոչ կծու, ոչ լեղի, և ոչ փոլթոտ է, այլ կծուի (Տճ. աճը) մօտ, բերանն ջեռուցանող համ մ'է։ Նաև աճառի փրփուր, Տճ. քէօփիւկ, յայտնի է արդէն։

*Քացխուն (հաց կամ խմոր)* Քրքիրը առած խմոր կամ հաց որ շուտ կը թրջի. «Բաղարջ»ին հակառակն է։

*Քեշպընոտ (է)* (փայտ, կերպաս կամ այլ իր մը որոյ վերան) Կեղևն ողորկ չէ։

*Քըլթնիկ* Փոքրիկ մաս մը, պարագայ մի ևն. զոր. Քըլթ-

նիկը (չի կորսնցներ), Քըթնիկ (չեմ խօսիր). ևն.—Հատիկ մը, փոքրիկ մաս մ՚իսկ (չի կորսնցըներ), ևն.։

*Քըս (է)* — Վարանոտ, կասկածոտ, գծուծ (է)։

*Քըսըրտուկ (Քսըրտալ բայէն)* — Դեղնող, տնտնացող, ժլատ, կարի զգուշաւոր։

*Քըստըրիկ* — Տկար, նիհար մէկը որ վրան գլուխը կոկիկ, քայլելն և շարժումն զգուշաւոր է։

*Քըստիկ* — Տկար, երկչոտ։

*Քըցըփուիկ (մարդ, գործ ևն.)* — Վարնոց, գձուձ, աննշան (մարդ, ևն.)։

*Քոս (է), (երբ խաղի մը համար)* — Հետաքրքրաշարժ (խաղ մ՚է) այնչափ որ մոլութեան կը տանի, ետ չի կեցուիր։

*Քուռ (զաւակ)* — Իր ծնողաց բարի (կամ չար) վարուց չի հետևող զաւակ։ «Օճախէն (ընտանիքէն, տոհմէն) քուռ ա՛ելլէ» կ՚ըսեն։

*Քօշ (համ)* — Տանր, անախորժ (համ)։ (Սովորաբար դմակաւոր ոչխարի մսէն կու գայ այս համն)։ Քօշ (աղջիկ)—մեծցած, տարիքն առած (աղջիկ)։ (Ի մեծ բառարանի, Քօշ. չկռտած արու այծ, թէքէ. էրքէճ նոխազ, քօշ, քաղ)։

*Օռցիկ կամ որճիկ* — Խաղի մէջ վատացողն իբր դասալիք։

Այլ և այլ իրաց նմանութեամբ կարգ մը ածականներ, որ անարգական են։

*Ապրի (ապուրի) շոգի* — Շատ փափուկ, դիւրազգած, տկար, (որ փոքրիկ կծու խօսքով մի կամ անհանգստութեամբ մը կուլայ, կը հիւանդանայ)։

| | |
|---|---|
| *Բաղի հաւկիթ* | Մեծկակ, կոպտարանձն, բայց ոչ կորովի։ |
| *Գետի պառաւ* | Գլխոյ հերքն քրքրուած (կին)։ (Ոմանք կը կարծեն թէ յԵփրատ կայ կամ տեսնուած է կենդանի մ՚ որ կնոջ դէմք ունի եղեր)։ |
| *Գողու ներտըրվան (սանտըղուղ)* | Նիհար և երկայնահասակ։ |
| *Դարղակ (զարտարկ) ուրախ* | Անգէտ իւր վիճակին՝ գոհ և զուարթ։ |
| *Դղում (է). ղը ղումն կուտչիկայ.* | Անխելք, տգէտ (է)։ |
| *Ծղած կաշի* | Տոկուն և դիմացկան. (Տճ. գոյըշ, կամ, գոյըշ կիպի)։ |
| *Թան-ըերան* | Թոյլ, ապիկար 'ի բանս և 'ի գործս։ |
| *Լըխըռտուկ ինկոզ (ընկոյզ)* | Համարձակ, զուարթ և՝ սովորաբար՝ նուազ իմաստալից խօսքեր խօսող, աղմկալի 'ի բանս և 'ի վարս։ |
| *Լոռ-թուլ* | Գիրուկ, տգեղ և թոյլ։ |
| *Լորտու աչուի* | Աչքն կամ արտեւանունքն լպիրծ և բաց. (սովորաբար՝ վասն կնոջ). |
| *Խժի տոլ* | Կուրծքը տկար, խժուկը շատ (սովորաբար կանանց համար)։ |
| *Կաղծինի թուխմախ* | Կարճահասակ և թիկնեղ։ |
| *Կատուի աչուի* | Սրատես, հեռատես։ |
| *Կզնիկ* | Վիզը կարճ, տձև. (սովորաբար վասն կնոջ)։ |
| *Կոյած (կոտրած) թախթա սէփէթ, կամ, կաղաթ* | Ծերութենէն կամ հիւանդութենէն խլխլկած. (խեղանդամի պէս)։ |
| *Կոյնուկ (կանգնուկ) մեռել* | Վտիտ, դեղնած և հիւանդոտ. իբրև մեռեալ մի որ կը շրջի։ |

| | |
|---|---|
| *Կովու ետեւի աւել* | Ծանրաշարժ և տխմար. (սովորաբար՝ վասն կանանց)։ |
| *Կովու մամա* | Տխմար և ապուշ։ |
| *Կոտած քայլա (քակլա)* | Երեսն ծաղկաւեր. չեչոտ։ |
| *Հաւու երես* | Յանդիմանութիւնն մտիկ չընելով դարձեալ եկող խնդրող, չամաչող։ |
| *Հինայի ղզալ* | Փոքրիկ, նուրբ և կոկիկ. (վասն կնոջ)։ |
| *Հին հաւ* | Դեռ չը ծերացած՝ ծերի մը պէս խօսող և վարուող, քըսրտուկ մարդ։ |
| *Մուլթվըխի (խոհանոցի) ղահնա* | Վրան գլուխը, հանդերձները աղտոտ, իւղոտ (վասն կնոջ) |
| *Ոլլի (անլի, անաղ) պանիր* | Խեղճ, ապիկար, միամիտ (տղայ ևն.)։ |
| *Չարուխ (տըրեխ) թուշ (այտ)* | Սնապարծ, խեղըցած, իւր չափէն բարձր կամ անպիտան խօսք խօսող։ |
| *Պոչը քաշած հաւ (կու մանի կը նմանի)* | Կծկտած, երկչոտ, սմքած (է)։ (Այս առթիւ կը յիշեմք, թէ երբ հաւն 'ի գարնան՝ չածեր, սովորաբար պոչին վրայ՝ «պոչիկ» մը կ'ունենայ, զոր կը կտրեն և կը սկսի ածել։ |
| *Ջաղջի (ջաղացքի) մուկ* | Պարարտ և այլն։ |
| *Վարի մամա* | Թոյլ, կնամարդի (վասն առն)։ |
| *Տոլապի (ղարակի) տիկին* | Աղջկանց շինած պաճուճապատանքն. չափազանց փափկասուն և արդ ու զարդի միայն հոգ տանող հարս կամ կին։ |
| *Փատ ծեղքող* | Բիրտ։ |
| *Փարթ երես* | Չեչոտ, ծաղկաւեր երես։ |
| *Փուտ ինկող (ընգոյզ է)* | Անպիտան (է)։ |

| | |
|---|---|
| *Փռան կատու* | Լաւ սնունդ ստանալով պարարտացած։ |
| *Քրղուքիր* | Երկայն, թխորակ և տակուն։ |

---

Կենդանեաց բնութեանց նմանութեամբ ածականներ։

| | |
|---|---|
| *Աղաւնի* | Շնորհալի և պարզամիտ։ |
| *Աղուէս* | Խորագէտ և ճարպիկ։ |
| *Արջ* | Կոշտ և հուժկու։ |
| *Էշ* | Տգէտ, բթամիտ։ |
| *Ծլէզ* | Նիհար, բարակ։ |
| *Ծոզ* | Դաժան, չար։ |
| *Կատու* | Ապերախտ։ |
| *Կով* | Ցոյժ անմիտ և յամրաշարժ։ |
| *Կրիայ* | Կարճահասակ, գիրուկ և պարանոցը կարճ։ |
| *Հորթ* | Դիւրահաւան, անփորձ, տխմար տղայ։ |
| *Ծանագի* | Բարակ. ձեռքով ոտքով նիհար։ |
| *Մուկ* | Զարաճճի. աղտեղող։ |
| *Ջորի* | Ջղոտ. դիմացկուն և հուապ կրթեալ։ |
| *Տէվէ (ուղտ)* | Մեծ, կոպտարանձն։ |
| *Օձ* | Խորամանկ, չար։ |

Կ'ըսուի նաև Արջու պէս նստաւ, զարկաւ, կատակ ըրաւ, կոշտ, կոպտաբար ևն.։ Իշու պէս կը մտմտայ. Կատուի պէս հու ճանկէ. Շան պէս կու խածնէ. ևն.։

Կան և տեսակ մի բարդ բառեր որք իբրև ածական կը գործածուին, որք են։

| | |
|---|---|
| *Աղջիկ-երես.* *(Տաց, տճ.)* | Նուրբ, գեղեցիկ (հաց)։ «Տղուն երեսը դահ (կարծր) կուլլի», կ'ըսեն կանայք։ |
| *Աղտ-կորուս* *(գոյն)* | Մութ, թուխ գոյն, որ աղտը չի ցուցներ։ |

| | |
|---|---|
| Անուշ քեր-նակ | Քաղցր կերակուրներէ ախորժող, անուշը սի-րող։ |
| Աւեր-հոգ | Փոքր վնասու կամ ներողութեան իսկ չդիմանա-լով շատ հոգ ընող։ |
| Գետն-զնայ (մինտէր, տա-պաստակ) | Գետնի վրայի, նոր տապաստակ, զոր ու-զուած տեղն կը ձգեն։ |
| Թեր-խաշ | 1. Քիչ, թերի խաշուած (հաւկիթ). —2. «Գ»ի տեղ «Դ», «Ք»ի տեղ «Թ», (ոմանք)՝ «Շ»ի տեղ «Ս» հնչող (լեզու). տես և ՚ի ստորև «Միս-բե-րան»ի բացատրութեանց կարգը։ |
| (Թեւին) Թեւ-ընկեր (է) | Օգնական (տղայ, աղջիկ, հարս ևն. (է)։ |
| Ծալ-մաշ (հան-դերձ ևն.) | Երկար ժամանակ ծալլուած մնալէն ծալքին տեղէն մաշած (հանդերձ կերպաս)։ |
| Կիսաեփ | Կէս եփուած (կերակուր)։ |
| Կուշտ (ը) պատառ | Քիչ ուտելով կշտանալիք կերակուր, ինչպէս են (խորոված ևն.) միս, խմորեղէն, ևն.։ |
| Ձագ-Փաթատ մայր (է) | Մի քանի մանկանց (մայր) է։ |
| Ձան-կտուր (մարդ) | (հիւանդութեամբ, ևն.) Ձայնն կէս մը կըտ-րած (մարդ)։ |
| Ձան-հաս (սեննակ, ևն.) | Դուրսի ձայնն շուտ հասանելիք կամ դրան, ճա-նապարհին մօտ (սեննակ, ևն.)։ Այս սեննակը ևն. «Ձան հաս է»։ |
| Մազ-կարօտ | Մազը քիչ (երիկ մարդ)։ |
| Մատն-խաղ մը (կարճ, երկայն, ևն.) | Մատին խաղին չափ (կարճ, երկայն, թարձր, ևն.)։ |
| Մար-տեսիկ (աղջիկ) | Մայրն թէ տան միջ լինի և թէ այլուր եր-թայ, անկէ բաժնուիլ չուզող (աղջիկ)։ |
| Միս-բերան | Թանձր խօսող։ Մէկը երբ կակազելով կը խօսի, |

«կակազ» կ'ըսուի, երբ թոթովելով «բէբէ» (Տճ.) կ'ըսուի. երբ «ք»ին տեղ «թ» ևն. (տես ի վերև «թերխաշ»ն) կը գործածէ, զոր. թա պաւոր դոլով թո ասխարհ. (թագաւոր գոլով քո աշխարհ). «թերխաշ» կ'ըսուի. իսկ երբ «ռ»ին տեղ «լ» կամ այլ տեսակ մի թանձր կ'արտասանէ, զոր. Ալաքել (Առաքել), բալի (բարի), ևն. «միս բերան» կ'ըսուի։

| | |
|---|---|
| Մս-կեր (է) | Բամբասող (է)։ |
| Ոտն-թաղ մը (ձիւն) | Ոտք թաղուելու չափ. (3—4 մատնաչափ) (ձիւն տեղացած է)։ |
| Պօլ (առատ)— Ճանկիկ | Առատաձեռն։ |
| Ջր-լոյս (կերակուր) | Ջուրը սովորականէն աւելի, անհամ ապուր կամ կերակուր։ |
| Սղ-ծախ | Սուղ գնով վաճառող։ |
| Սրտ-խաղ (համ) | Տեսակ մի անոյշ համ որ ախորժելի չէ այնչափ. զոր. մատուտակի (միան քէօքի) համն։ |
| Տաշտը-քեր | Խմորին տաշտին քերուքը։ Փոխաբերաբար զաւակաց վերջնոյն համար ևս կ'ըսուի։ |
| Քալ-ափակաս (տղայ, ևն.) | Քայլերը անկանոն։ Սովորաբար այն մանկանց կամ տղայոց համար կ ըսուի որ յաճախ կ'իյնան։ |

---

Հետևեալ մի քանի գոյականք ևս ածականի տեղ կը գործածուին։

| | |
|---|---|
| Արուն (քունիկ մէջ էի) | Խոր (քուն էի)։ |
| Ծով (տուն, այգի, գիշեր) | Մեծ (տուն, այգի, գիշեր)։ |
| Տարի (օր, ձմեռ, ամառն) | Երկար (օր, ձմեռ ևն.)։ |

Կան նաև մի քանի կրկնուած յանգաւոր բ— ածական կը գործածուին, զոր.

| | |
|---|---|
| (Լեռներն են.) Կանաչ ու կակաչ (են) | (Լեռներն, են.) Կանանչազեղ զարդար (են)։ |
| (Այս ինչ անծին ունեցած ուտելիքն, են.) Ուռն ի կուռն է. (կամ) չէ | (այս ինչ անձին ուտելիքն, ապրուստն ու լի է (կամ) չէ։ |
| (երկինքը) Պարզ ու պղինձ է | (երկինքը) Կապոյտ, պարզ ու անամպ է |

Գ. Բ Ա Ց Ք

| | |
|---|---|
| Ազըռկել *) | (հանդերձ, են. իր մը) Հապճեպով ժողվե ցունել։ |
| Ազինը տակն առաւ (տղայն են.) | (սովորաբար դանակոծելու համար) սրունքին ներքևը առաւ (զորդին կա ոք և ծեծեց)։ |
| (խոնջած է) | Ըստ դիպաց, յարմար անյարմար է |
| Ախկի ծախկի կու խօսի | (Կարելի է ահեկի, ձախեկի կամ ահձ ըլլայ)։ |
| Ակար զտնել | Պատճառանք, պատճառ մէջ բերել, մեղացունելու համար։ |

*) Այս «ը»երն որ արտասանութեան մէջ կը ...ուին, մերթ առաջին...վանկին, մերթ երկրորդ ... ն ես՝ թէև աւելորդ՝ գրեցի, ու

| | |
|---|---|
| Աղավուիլ (աղայուիլ կ'ըսեն) | 1. Տառապիլ, հեծել. 2. միշտ յայտնել իրողութեան մը վրայ։ |
| Անառը քաշուիլ | Նախ շռայլաբար վարուիլ, և ապա չափազանց խնայողութիւն ընել։ «Անառը քաշուեր է» կ'ըսեն. Թերևս՝ «Բան մը չառնուր, չգներ, ևն.» իմաստով ըլլայ։ |
| Անելոց եղաւ կամ է (այս ինչ վնասն հիւանդութիւնն, ևն.) | (այս ինչ վնասն, ևն.) Ոչ թէ անակնկալ կամ բնական էր, այլ անզգուշութեամբ եղաւ, կամ, անզգուշութեան, սխալման արդիւնք է։ |
| Անտընտիլ | Շփոթիլ, չյիշել։ Երբ մէկը չի հասկընայ կամ չի յիշէ դիւրին կամ սովորական խօսք մը, «ինչու անտնտեցար» կ'ըսեն։ |
| Անտիլկել (անտէր, անտիրուկ) | Կարասի մը տաղտկանօք տեղ մը զետեղել, կամ տաղտկանօք գործողութիւն մ'ընել. զօր. դրամը վճարել, ևն։ |
| Աչքը ծտել | Մէկ աչքը կէս մը գոցելու պէս ընել, խօսելու կամ այլ ժամանակ, զոր սովորաբար կարճատեսք կ'ընեն։ |
| Աչքս նուաղ չի մնաւ | (մտահոգութեան կամ այլ պատճառաւ) Չի քընացայ։ |
| (զիս կամ այն) | Միայն ինձ մ'ապաւինիր կամ բաւականանար։ |
| Ապով մի' լընիր | (վասն իրի, ևն.) Ան ապով մնացի—միայն զայն կրցի ունենալ կամ առնուլ և անով մնացի։ |
| Առազուց իյնիլ | Անսուաղ մնալէ կամ այլ պատճառաւ նիհարնալ, տկարանալ։ |
| Առկուիլ (Թերթ-լըմ՝ առակուիլ) | Ծեծկուիլ, գզուըտիլ. (սովորաբար տղայոց համար կ'ըսուի)։ |
| Առ ու ղիր չընել | (այս ինչ անձին, խօսքին) Ուշադրութիւն չընել։ |

| | |
|---|---|
| (վասն անձի) Առք է ղպեր | Իրարանցումով մը կամ փութաջանութեամբ կը ժողվէ, պատրաստութիւն կը տեսնէ, ևն։ |
| Աղընտիլ | 1. Իրօք ասեղով իր մը ծակծկել. 2. «մարմինս կ՚աղընտին»—այս ինչ հիւանդութեամբ կամ թմրելով փուշ փուշ կ՚ըլլայ. 3. Փոխաբերաբար.(ի լուր այս ինչ դէպքին, ևն.)—քըստըմնել։ |
| Աւկիլ | Գործէ, զբաղումէ շունչ առնուլ. սակաւ ինչ ժամանակ ունենալ։ |
| Արումէն արցունք կու թափէ | Կ՚ողբայ, կ՚արտասուէ դառնագին։ |
| Արուն քրտինք մտնել | (աշխատութեան կամ այլ պատճառաւ) Քրտինքըն վազելու չափ քրտնիլ։ |
| Արուխ փոշի արին (զայն) | Այն անձն որ յարգելի և օգտակար էր, անարգեցին։ |
| Արուց ելնել | (Թերևս՝ յառնել, ողջնալ) Կարօտացեալ սիրելին, նուազածութիւն, ևն. տեսնելով զուարթանալ, բերկրիլ, մխիթարիլ։ |
| Բաղեղիլ | Դալլրիլ. (զօր. ջուրը կու բաղեղի, այս ինչ անձին բերանը չի բաղեղիր.—շատ կը խօսի, խօսելէ չի դադարիր)։ |
| Բան-պնդել | Հարցաքննել և իմանալ, հետաքրքիր լինել. փորփըրշտել։ |
| Բարքարական լինել | Անհանգիստ և անկայուն վիճակ մ՚ունենալ. Թափառական. Տճ. տէտիրկին։ |
| Բերան-փոխ ընել | Սովորականէն տարբեր կերակուր մ՚ուտելով կամ կերակրոյ ժամանակ մէկ տեսակէն միւսն սկսելով բերնին համը փոխել։ |
| Բիտ ու ճիտ է (կամ ճիթ) է կըյնը | Գրգռուեր, զայրացեր է։ |

**Բզըռցնել** — Սիրտը դառնալ, փախել, ետ բերել։

**Բշտռկիլ** — Բուշտ բուշտ լինել. մարմնոյ մասի մը վրայ ուռեցքներ յառաջ գալ։

**Բոժոժեր է (Մածունն եմ).** — Թթուած կամ թթուելու մօտ է. պըղպըջակներ ունի։

**Բունալ** — Սիրել. (այս ինչ գործին, ևն.) սիրտս չի բունար—սիրտս չի սիրեր։

**Բուն բուն ընել** — Խմբակի մը մէջ 2—3 հոգի առանձնակի խօսիլ, խօսակցիլ։

**Գալընտել** — Կողոպտել, ևն. (զոր. հայրն որ անձուկ վիճակ մ'ունի, և ամուսնացեալ զաւակքն չեն օգներ, երբ մեռնի նոյն աղջկունք իբրև ժառանգորդ պիտի գան և ունեցած ստացուածքըն «Գալընտեն» տանին։

**Գագկայել** — Տզուլ, հարսի ևն. վրայ խրատելու, քննադատելու ձևով սաէպ խօսիլ, ձանձրացնել։ «Գագկայ» իբրև ած. ալ կը գործածի. զօ. Գագկայ (այր կամ կին)--ծերացեալ կամ փոքըրկանց վրայ շատ խօսող։

**(Ջուրն եմ.) Կու) գըըպռտայ** — Կաթսային կերակուրը կամ ջուրը երբ կ'եռայ և գըպըըռ գըպռ ձայն մը կը հանէ «Գըպըռտալ» կ'ըսուի։

**Գեսկռտալ (Թերևս 'ի մեծ քառարանի «քեսկռտալ» քառն է)** — Ցետ կերակրոյ, կերածին կուռթ կուռթ հեծկլտալու պէս վեր տալը։

**Գլմըլտկիլ** — Գլորելու պէս քովէ քով դպչիլ, բայց չիյնալ. խարխափելու պէս։

**Գոքտալ** — Նստած կամ պառկած տեղը հանգիստ չի գըտնել. (վէրքէն, ցաւէն, ևն.)։ Իբրև անէծք կ'ըսեն «պառկած տեղը [illegible]այ ու գոր[illegible]

(Ա՛յն հին կամ նոր մեռեալին համար կ'ըսուի որ չար էր)։

Գողըռտալ — Որոտալ. գոռալու կրկնումն.

(կու) Գուըրայ — Կը տատամսի, կը դեղևի (ի գործս)։ (Վասն կնոջ) Այս ինչն առ տնին աշխատութեան գործին վրայ կու գուըրայ—չի վերջացներ։

Գըռանալ — Մէկու մը պատուաբեր խօսքէն կամ մեծարանքէն ախորժիլ և հպարտանալ։

Գողընոտիլ — Մազերը ևն. գռուզնալ, բրդոտիլ. 2. Սաստիկ բարկանալ։

Գըմըխտալ — Քրթմնջել, դրդրալ։

Դանկըտել — Դանկով կտրտել, քանի տեղերէ վիրաւորել զոմն կամ զիր ինչ։

Դալըճ անել — Հիւանդին՝ սակաւ ինչ ապաքինումէն յետոյ, միասակար կերակուր մ'ուտելով կամ այլ պատճառաւ վերստին հիւանդանալուն կամ հիւանդութիւնն ծանրանալուն «դարձ արաւ» կ'ըսուի։ Նաև երբ հիւանդն հոգևարք է քովինները ճչելու, ողբալու ձայնէն կը զարթնու, «դարձ արաւ» կ'ըսեն։ (Տատերը կը զգուշանան ասկէ. զի հիւանդն քանի մը ժամ կամ քանի մ'օր սովորաբար անզգայ և ողորմելի վիճակի մը մէջ մնալէն յետոյ կը մեռնի)։

Դըպել — 1. Իրմը (չէզ.) իյնալ. (ներգ.) ձգել. 2. Մէկը այլ տեղ մի երթալ ներկայ գտնուիլ. սովորաբար, «յանկարծակի եկաւ» իմաստով. «դըպեց» կ'ըսեն։

Դոժկիլ (կերակըոյ) — Ինչ ինչ կերակրոց, զոր. փիլաւ ևն. եփելու չափն անցնիլն։

Դողըշտալ — Հարբուխի կամ այլ պատճառաւ դողալ, սարսռիլ։

| | |
|---|---|
| *Դուռը վրայ ընել* | Դուռը կիսափակ ընել. միջոց մը թողուլ։ |
| *Դախել կամ դըխսել* | Ձեռքով գանակոծել։ |
| *Ծկը կու տանի (այս լացող տղայն, խնդրողն)* | Զափազանց եղաւ (լալը, խնդրելը). երկար տեւեց։ |
| *Ծըղում կատարում կ'ընէ* | Երդնլով կ'երդնու։ |
| *Ծըերըն լինիլ (գործի մը, եւն.)* | (Առ տնին կամ այլ գործով մը) Զբաղիլ. (կամ անով) տնտնալ։ |
| *Զաղ կուտայ, կամ զաղը կուտայ* | Կը շողոքորթէ, կը գովէ զոմն. կը ճոռոմաբանէ։ |
| *Զըռխիթը տալ* | Զոմն ազդուապէս դրդել, ստիպել, մղել ի գործ, ի կատարումն պարտուց։ |
| *Զըրթցունել (ձի)* | Հեծեալ ի ձի վազցունել, փախցունել։ |
| *Զնկուտալ* | Ցրտէն դողալ։ |
| *Զըխլիկ ըէխլիկ ընել* | Շողոքորթել, ամեն ջանք ընել խնդրածն ստանալու կամ հաճեցնելու համար։ |
| *Էնթեղել կամ անթեղել* | Կրակը մոխրով ծածկել, փոխաբերաբար՝ այս ինչ դէպքն ծածկել. «իրենց մէջ էնթեղեցին» կ'ըսեն։ |
| *Ըպըռթկել* | Ձեռքով էճռել, ճըմըրտկել. ձեռաց մէջ սեղմել։ |
| *Ըղացեր է* | Ձեփիր. զոր. սխեռն խոյեր է չեփիր։ |
| *Ընտալը կը խօսի* | Կը զառանցէ, ի քնոյ կը խօսի. (Թերեւս՝ «ընդ այլ խօսիլ» ըլլայ)։ |
| *Ըռէն պռէն չի հասկնար* | Ցղայ կամ տգէտ է, հայ չի կայ չգիտէ եւ կը խնդրէ. գործն, նպատակն ինչ է չի հասկնար ու կը խօսի, կ'առաջարկէ։ |



(ոտքը կու) Թանկէ — Սակաւ ինչ կը կաղայ։ Ի բառարանի «թա... ոչ միայն սուղ (փահալը), այլ եւ ծանր (աղ... կը նշանակէ. թերեւս այս վերջին իմաստ... «ծանր»—էն առնուած ըլլայ։

Թարխրեր է — Մատին, ոտքին, են. խոցը թարախ կապեր...

Թաքիլ — Թուլնալ. թմրել. գոր. «չիմ թաքիր ուր քն... նամ»։

Թզկալ — Տղայոց՝ երկարօրէն լալու ձայն հանելը։

Թլթոտիլ (թուլթն) — Թարմ թութին քանի մը ժամ մնալով սակ... ինչ սեւնալն եւ սակաւ ինչ ճիպրոտելով փ... սուիլն. այնպէս որ թէ եւ կ՚ուտուի, բա... յարգի չէ։

Թնթընալ — Անձրեւն սկսիլ շատ սակաւ եւ ցանցառ կերպ... «Թընթընուկ անձրեւ կամ օդ մի կայ» կ՚ըսու...

Թոռիլ — Թրջելէն յետոյ ցամքիլ. ինչպէս հացը՝ թրջ... լէն յետոյ, եւ երդիքը՝ անձրեւէն քանի մը ժա... կամ օր մի յետոյ «թոռեցաւ» կ՚ըսեն։ Նա... «թոռ տղայ—մատղաշ, քնքուշ տղայ»։

(աճրեւը կու) Թորայ — Կու պտպտայ։

Թրատել — Կոխկռտել ոտքով բազմոցն, պարտէզն, են. աւրել զարդարեալ կոկիկ վիճակն։

Թքծեծ ընել (զոք) — Ցանցաւորին երեսին թքնելու պէս, «թ... ըսելով նախատել։ Կը յիշեմ թէ, ի հնու... 35—40 տարի յառաջ, օր մի, դպրոցին մ... վարժապետին հրամանաւ, ՚ի պատիժ, տղա... իրօք թքծեծ ըրին յանցաւոր տղայ մի (եր... սրն թքին)։

Ժաշկըլթիլ — Նստած կամ գտնուած տեղէն շարժիլ։ «Ժա... կլթելու տեղ չի կայ»—շարժելու տեղ չի կա... նեղ է։

Ժեխոտիլ — Խոնաւութենէ են. նեխիլ, ապականութեւ... մերձենալ։

*Ժըրա՛ (Համանօրէն՝ Ժրացի՛ր)* Շարժէ՛, տո՛ւր, գործել սկսէ՛, ևն.։

*Ժըղըլ կըյուիլ* Գործի մը, խոստման մը ևն. վերջին խօսքն իմանալով ակնկալու չըլլալ այլ ևս և մտահոգութենէ ազատիլ։ Կարելի է որ «ժըղըլ» և արաբ. «շուղլ» կամ յոգն. «շուղուլ»—զբաղում բառին աղաւաղեալն է։

*(Հովչի) Ժնտար* (Հով չի) Շարժիր բնաւ։ Երբեմն կ՚ըսուի նաև «տերև չի ժնտար»—տերև չի շարժիր։

*Իրար տալ* 1. Աճապարել, արտորալ.—2. Ցուցիլ, տրոփել. զոր. «սիրտս իրար կուտայ»—սիրտս կը տրոփէ, կը բաբախէ.—3. Արագ խօսիլ. զոր. իրար կուտայ—շատ արտորնօք կը խօսի, (այնպէս որ մերթ խօսքին մէկ մասն անհասկանալի կը մնայ)։

*Իրիկուընակ չոնի* Երեկոյները սովորականէն առաջ քնանալ քըն-կըրիլ կը սկսի։ Ոմանք կ՚ըսեն «իրիկուընակ ունի»—սովորութիւն ունի երեկոյները կանուխ՝ նստած տեղը պահ մը քնանալ, մրափել։

*Լալխոնել* Փղձկիլ։

*Լակել* Շանց կամ կատուաց լեզուաւ ջուր խմելն կամ հեղուկ կերակուր մի ուտելն։

*Լաղխոսնել* Հապճեպով յարմար անյարմար (շինել, կարել, ևն.) լրացունել։

*Լըլըուկինը կու խաղան (քրդերը, եւն.)* Քրդերը կամ գողերը կամ այս ինչ անձինք լեռները ճամբաները կը վխտան (այնպէս որ ճամբորդն չի համարձակիր երթալ)։ Երբեմն «մուկերը կամ այս ինչ անձինք լըլըուկինը կը խաղան» կ՚ըսուի։

*Լէլիկ (եղեր է)* Արբեալ է. ծաղրելի, թեթև բաներ կ՚ընէ։

*Լէռճել* Մատներով երեսը ճանկռտել. պտուղ մի տերևովն սկրթելով քաշել փրցունել։

*Լխոցունել* — Երերցունել, խառնել դուռ մը կամ կղպաք մը։

*Լկամեցայ* — Ախորժակս գոցուեցաւ։

*Լկել* — Սառած ուտելիք կամ այլ իր մը տաքնալով թուլնալ։

*Լղլըղցունել* — (խոստումը կատարելու, պարտքը վճարելու համար այլ և այլ պատճառաւ) Երկարաձգել, խաղցնել։

*Լղճոլկել* — (սովորաբար գինի, ևն.) Ըմպելի մը բերնին մէջ աստ և անդ տանելով կամ ամանին մէջ թօթվելով պղտորել»

*Լոսել* — (լեսու) Մանրել, փշրել։

*Լվլըղցնել* — Սովորաբար Քրդաց՝ և մերթ այլոց արագօրէն և անհասկանալի կերպով մը խօսելն «Լըվլըռ լըվլըռ կը խօսի կամ կը խօսին» կ՚ըսեն։

*Լֆել* — Կերպաս ևն. կտորի մը եզերքէն քիչ մը ներս ծալելով կարել.—2. ուտել։

*Խաղ կյնիլ* — Ախտն երևան ելնել վերստին և շարունակել. զոր. մելամաղձոտութիւն, թանչ, նախանձ (խիրա), ևն.։

*Խաղուիլ (երե-խայից)* — Որրանին մէջ կամ դուրսը խաղալիկով մը, երգով կամ ձայնով մը ժամանակ անցունել։ Չի խաղուիր—հանգիստ չի մնար, կուլայ, կու ճչէ։

*Խաչ կապել* — Հարսն, ծառայն, ևն. մեծին դիմացն կանգնած ժամանակ, ՚ի նշան յարգանաց, ձեռներն խաչաձև սրտին վրայ դնել։

*Խելըռիլ (ի քնոյ)* — Քնով ծանրանալ, աչքերը չի բացուիլ։

*Խէղընալ (խեղանալ)* — Տղայ մի որ շատ երես առնելով շփացած, մեղկացած է, չափազանց պահանջումներ կ՚ընէ, «խէղըրցաւ» կամ «խեղըրցած է» կ՚ըսեն։ Երբ չափահասք ևս շոյուելով կամ շահաւէտ գործ մ՚

ընելով ուրախութենէն տղայոց պէս խօսքեր ըսեն, «խեղըցաւ» կամ «մի՛ խեղըներ», կ՚ըսեն։

Խըլտըպժել — Խարէութեամբ ձեռքէն կորզել, շորթել։

Խըլտըրցնել — Գըլտըրցնել (գիր ինչ)։ Երբեմն «գողանալ»ի իմաստով ալ կը գործածուի։

Խըթել — Նոր հասած պտուղ մը կամ չկերած ուտելիք առաջին անգամ ուտել։

Խժիշ բժիշ մ՚երեւայ — Խառն 'ի խուռն, անկերպարան, անորոշ կ՚երեւայ։

Խիրա անել — Նախանձել (սովորաբար՝ այրն վասն կնոջն), չաբանալ։

(աչքը) Խըլրտել — 1. (աչքը) Խոժոռել, սպառնալ. 2. Նուաղման ժամանակ աչքը դառնալ կամ դարձնել։

Խոխալ — Մախալ կամ վշտանալ։ (Եթէ այս ինչ տեղ երթաս կամ այս ինչ գործը, առեւտուրը ընես, այս ինչ մարդուն կամ մարդոց անհաճոյ լինելով կը վշտանան)։

Խոշխովանցունել — (իրի մը նկարագրութիւնն) Զափազանցել։

Խոչել — Սովորաբար եղջերաւոր կենդանեաց (կով, խոյ, այծ, են.)՝ գլխովը, եղջիւրովը զարնելն։ Փոխաբերաբար, մէկը՝ բանիւ՝ խայթել, կշտամբել։

Խոր կամ խոռ չի ըռներ — (այս ինչ ուտելիքն) Պակաս, թերի չի լեցներ։

Խուզումթիւն մ՚անէ (տղայն) — (տղայն) Անառակութիւն կ՚ընէ, կը ծեծուըտի, հանգիստ չի կենար։

Խուլատկիլ (մարմինն) — (անվարժ և տկար անձանց՝ սովորականէն աւելի ձի հեծնելէն, քալելէն) Ազդրն, սրունքն բռնուիլ. Թմրիլ, ընդարմանալ։

Խուրուրիլ — Տրտմիլ, տխրիլ։

Խպնէ խոց եղայ — Շատ խպնեցայ, ամօթահար եղայ։

*ծփել* Հարկանել։ (Որքա՜ն՝ օղի խմելուն ալ կ՚ըսուի)։

*կալլել* Ունենալ։

*կախ ու կարիք մնալ* Բանի մը ակնդէտ մնալ, փափաքիլ, և կատարումն անորոշ մնալ. տարտամ կացութիւն մ՚ ունենալ։

*կածկլտալ* 1, Փայլատակիլ. —2. (վասն մարդոյ) Ամօթէն մտահոգութենէն շառագնիլ։

*կաղուեր է (ծեռքս կամ ոտքս)* (ձեռքս, ևն.) Շատ մսեր է, ընդարմացեր է ցրտէն։

*կաղպըրել* Խաբել զոմն. վաճառք մի նենգեալ կամ սուղ գնով վաճառելով։

*կայանք տալ (բանի մը)* Որոշումն տալ, եզրակացութեան մը յանգիլ։

*կայհայի (նստիլ)* Անհաստատ դիրքով (նստիլ։)

*կասկուս (ընել)* Սանկ նանկ բաներ խօսիլ, ժամանակ անցունելու կամ սովորութիւն մը յարգած ըլլալու համար քանի մը անկարևոր խօսքեր (կամ երգեր) ըսել։

*կըկըզ կամ կկուզ (նստիլ կամ ընել* Ծունկերը ծռած նստիլ, բայց այնպիսի դիրքով մի որ նստատեղին գետինը չի դպչի։

*կըկըրիկ (ընել)* Միգամճեմ, թեթեւութեամբ քայլել։

*կըռընծմռիլ* (խոտ, թել, ևն.) Փոթ փոթ լինիլ, խորշոմիլ։

*կըռթ կանէ* Նեղութեան, դժուարութեան, ևն. կը համբերէ, բայց վերջին սահմանին հասած է. այնպէս որ գուցէ չպիտի կրնայ համբերել այլ ևս։

*կլթել* 1. Կաթն, խաղող կթել. 2. խաղու մէջ շահիլ։

*կծկել, կամ կծիկը ընել* Խոյս տալ։

*(կու) կոքտայ,* (մատիս կամ ոտքիս, ևն. խոցն, կամ գլուխս

կամ կոթտայ ականջս, ևն.) Շատ կը ցաւի, մէջէն իվեր կը կսկծէ։

Կողել (զմաց) Հացին բացուած խմորը ռափատով թանիրին մէջի կողերը զարնել։

Կողկողցնել (զոմն) Շնորհաւորութիւն, մխիթարութիւն, ևն. առթիւ անդր քան զպատշաճն գովեստիւք խօսիլ. բանիւ կամ գրով ներբողել (գոք)։

Կողթլեր է (որմն) (պատին) Փորը դուրս եկած՝ փլչելու մօտ է։

(Վէրքը, խոցը) Կորզէ (խոցը, ևն.) Թարախ կապեր է, ի ներքուստ կը գործէ։

Կործել Աման մը, ևն. համեմատաբար փոքր ամանի մը վրայ շրջելով ծածկել. զոր. դաշունն կերակրոյ փոքր ամանի մը վրայ կործել—.2. սեղան, ևն. յերկիր կործանել. (Տճ. տէվիրմէք)։

Կպել, կպցունել 1. Իր մը իրի մը փակցունել.—2. ձեռքով կամ բռով մը զարնել։

Կռել Շատ կամ չափէն աւելի լնուլ, կոխել։

Կռնծիլ Ձեռքը, ոտքը քաշուիլ։ «Կռնծիս» անէծք է։

Կռտիլ (ոտքը ձեռքը կամ այլ իր մը) Խանձիլ՝ կրակով, հրաշէկ երկաթով, ևն.։

Կտացնել (զտղայ, զծառայ) Տղային երբեմն ուտելիք՝ և ծառային պարգև տալով շահիլ։

Կտմտալ (կըտմըտալ Մարդոյ վերայ տեղ մը սկսած ցաւն որ զգալի կը լինի։

Կտնել (բամպակի, ևն.) Կուտը հանել։

(ոտքս կամ ծեռքս) Կըրկոտ է (ոտքս, ևն.) Շատ մսած է։

(քան) Հեզնել Խնդիր յարուցանել։

| | |
|---|---|
| անծրեւը, յաւը, եմ.) Հերընտեց | (անձրեւ, են.) Սակաւ ինչ միջոց ւ քէչ մը դադրեցաւ։ |
| Հոգեսլաճ (լինել) | Քաղցեալն սակաւիկ մի հաց, են. ո շունչ առնուլ, ոգեւորիլ։ |
| Ձագ-խեղդ (լինիլ) | Հաւուն թուխս նստած ձագերէն այն ձա ն եւ իցէ պատճառաւ ձուի միջէն չի ելնել եւ կը խեղդուի, «ձագ-խեղդ» եղա սեն։ Առեւտրոյ են. գործի մէջ, ոմն՝ վ քին, գործին տէրը ստիպելով կամ խ վաճառքը ձեռքէն առնելուն եւ կ՚ըսու |
| Ձենել (ծայնել) | Հրաւիրել (դուստրն կամ զազգականսն)։ |
| Ծեղծիլ (մանկան) | Մանկան՝ որրանին մէջ՝ արթննալով չի նալն եւ լալն։ (Մ՚արթնցներ, կու կ՚ըսեն)։ |
| Ծզվըզցունել (զոք) | Նեղել, նեղը խոթել։ |
| Ծըծոշ կամ ծըծոզ ընել | Փախչիլ, խոյս տալ։ |
| Ծըմըրթկել (հանդերձ, եմ.) | Ձեռքով սեղմելով ճմլել քանիցս։ |
| Ծըրըզտալ | Փայլիլ, փայլփլիլ (զոր. «աստղերը կու տան»)։ |
| Ծղատկել | Ծիւղը բաժնել։ |
| (սիրտը) ծըղքալ կամ կըռչալ | Կերակուր կերած ժամանակ ակռայ պուածական կրճտիւնէ մը կամ երկա լու սուր կրճտիւնէ մը եւ կամ աղ քէ մը յառաջ եկած սրտի թեթեւ մըն կամ թալկացումն։ |
| Ծղտորկիլ | (գինւոյ եւ սորա նման հեղուկներո կի թոթվելով) Պղտորիլ (ն)։ |

**Ճողիլ** — Ջկտիլ (թել, կտաւ, եւայլն). Ճողեր է—մեռեր է (անարգական)։

**Ճուկ տալ** — Խոյս տալ մեզմէ, ճկուն լինել։

**Ճուտել** — Ձողով մը՝ որոյ ծայրը ճղքած է, խաղողի ողկոյզի կոթին անցունելով եւ ոլորելով փրցունել։ Ճըռտիկ մը (խաղող)—փոքրիկ քանի մը հատէ բաղկացեալ ողկոյզ կամ ճիւղ մը (խաղող)։

**Ճազիկ մոռիլ** — Սահմանէն աւելի թեթեւ ճնշումն կամ խախտումն ջղից։

**Ճաղաղու (ճինել)** — Մտահոգ եւ սրտաբեկ, ձեռքն ու ոտքն թուլցած վիճակ մ' (ունենալ)։

**Ճաղըզ կաթ**
**Ճղայ** — (լսելով նոյն խօսքն, դէպքն, եւն.) Դառն միշտ զգացի. ապշեցայ մնացի։

**Ճաղկայել (Ճայգայն ջուրը) կամ Մաղկան ծգել** — Առուին ջուրը ծառոց բուները կամ կանանչեղէնաց վրայ բաշխել եւ ժամերով այնպէս թողուլ որ սակաւ առ սակաւ ոռոգի։

**Մաղկտիլ** — Ձեռքը, ոտքը ցուրտէն շատ մսիլ. կսկըծալ։

**Մայզել** — Նշմարել։

**Մատ ածել** — (կերած կերակուրն, ջուրն, եւն.) Ետ բերելու համար, ցուցամատն 'ի բերանն դէպ ի կոկորդըն տանիլ, (որով ստամոքսն խառնուելով կը փսխէ)։

**Մզալ** — 1. Բարակ մը ցաւիլ սկսիլ.—2. մանուկն լալու պէս (հ'ը') բարակ ձայն մը ձգել.—3. կովուն նմանապէս բարակ ձայնն.—4. մեղմիկ ինքնին երգել։

**Մինչել** — Օր մի կամ ժամանակ մի միջոց տալով վերսկսիլ. զոր. «հաւն օր մի կ'ածէ, օր մի կը միջէ». ջերմ, եւն. որ օր ընդ մէջ տեղի կ'ունենան։

| | |
|---|---|
| *Մշտել* | Դրդել, ցնցել ձեռքով կամ իրով մը։ |
| *Մոլըրիլ (թեբեա մոլորիլ)* | Կերած կամ ըմպած ժամանակ կոկորդը մնա-ցածի պէս խեղդըդիլ ու հազալ։ |
| *Մուլլի մուլլի Խնդալ* | Ըստ երեւոյթին կամ իրօք միամիտ անձի մը միամտօրէն քըմծիծաղիլ (ն)։ |
| *Մռթել* | Խոշոր մոշոր, աճապարանօք կարել առանց հոգ տանելու։ |
| *Մռմռել* | Ցուրտէն՝ (ձեռք, ոտք) կամ գաւազանի, եւն. հարուածէն (հարուածեալ տեղն) կսկծիլ։ |
| *Մսահտիլ* | Ձեռքն, ոտքն, եւն. ճըմլուիլ, ինկնալով կամ կոխոտուելով և կամ գանակոծմամբ։ |
| *Նիզ—տալ* | Պնդութիւն ունեցողն լուծման՝ և ծննդաբերն ծնանելու համար տքալն. ինքնին ներքնապէս մղում (զօր) տալը։ |
| *Շաղավաթ ա-նել (ումեք)* | Պտուղ կամ այլ ուտելիք ընծայելով մեծարել, պատուասիրել. զոր. Այս ինչ կինն «շաղա-ւաթճի» է. Տճ. ֆիքրամճի է։ (Սոյն բառ հայ-թէ տճ. է չգիտեմ)։ |
| *Շըլըրուիլ կամ շըլըրիլ* | Դիտապաստ ինկնիլ։ |
| *(չ) Շըկրուալ* | (չի կրնար) Շարժիլ։ |
| *Շընթըռկիլ* | Ընկողմանիլ, պառկել (շան պէս կամ շան նմա-նութեամբ)։ |
| *Շխիկ անել* | Հակառակորդին, նախանձորդին դէմ անձնա-ցոյց ընել նուագարանով, խնջոյքով, եւն.։ |
| *(կու) Շղայ* | Հիւանդն (հոգեվարք կամ ծանր վիճակի մէջ) ձեռքով լերմակը կը շփէ, կը բռնէ, կը կը-մըթտէ։ |
| *Շշմըշկել* | 1. Հացը (ի սեղանի) կամ այլ ինչ մշտռկել, տեղաւորելու, կարգադրելու պէս ընել.—2. Գրգռելու մօտ ինչ ինչ խօսքեր, դիտողու-թիւններ ընել. յուզել խնդիր մը։ |

*Շշուեցնել* Գգուել, շոյել, սիրտը շահել. (սովորաբար մանկանց կամ տղայոց համար կը գործածուի)։

*Շոգշըգալ* Հարստութիւնը, առատ բարիքը (տան մէջ), ըստ հաճոյս վարել, վայելել։

*Շուլլուփել* Թեթեւակի՝ ծառի կամ այլ իրի մը փարելով ելնել։

*Շըջօք (քան քանիլ)* Սխալ, հակառակ, ձախողակի (գործել)։

*Շփըռցնել* 1. Զարնել ձեռքով.—2. Գումար մը շահիլ, ձեռք ձգել.—3. Գործ մը շուտով տեսնել.—4. Անձրեւին տեղատարափ գալը. «շփըռցնել»—շըփըռտալ։ (Յայտնի է թէ արմատն «շըփըռ»—արագ, շոյտ է)։

*Ոտ դնել (ստախսիկի, վառունգի թփին)* («ոտ» թերեւս «ոտքի» իմաստով գործածուած է). Թուփին քովն 'ի վեր և անկէց բարձր ցախ մի կանգնեցնել, որ թուփին ճիւղերն, ճանճիկներն անոր վրայ փաթթուին։

*Ոտքը առնել* 1. (չէզոք.) Նուաճուած եղանակն խաղալուն յարմարիլ։ Համբակն իրեն խաղուն յարմար եղանակ մի երբ նուագուի, «ոտքս առաւ», երբ ընդհակառակն՝ «ոտքս չ'առաւ» կ'ըսէ։ Վարպետ խաղացողն ամեն եղանակի կրնայ խաղալ. բայց երբ իւր սիրած եղանակն նուագուի, «ոտքս առաւ»—խաղալու փափաք մ'եկաւ—կ'ըսէ.—2. (Ներգործ). Առնուլ զոտս ուղևորին, որ է. երբ ճամբորդն չի կրնալ հեծնել, ջորեպանն ազդրն իբրև ասպանդակ կը ներկայացնէ ճամբորդին, որ վրան կոխելով՝ ջորեպանին օգնութեամբ-կը հեծնէ զգրաստն. ջորեպանին այս գործողութեան ևս (ուղևորին) «ոտք առնել» կ'ըսուի։

*Ոտք նստեցունել (զմանուկն)* Մանկան գլուխն 'ի գոգ դնելով և երկու ձեռքով ոտքերն բռնելով պէտքն հոգալ[illegible] *համ ոտք դնել* տալ։

*Չալթել* (ձեռքէն բան մը) Ցափշտակել։

*Չըլուխլ* Ամուսնանալ (անարգական իմաստով)։

*Չըմչըմալ* Սեղանի վրայ ախորժակ չունենալով, դանդաղօրէն փոքրիկ պատառներ առնելով ժամանակ անցունել։

*(ցաւած մատիտ եթէ այս ինչ դերը ընեմ (կու)։ Չքէ* (եթէ այս ինչ դերը ընես) Թարախ չի կապեր։

*Պետ անել (տանն, մարդոյ, ձիոյ, եւն.)* Նորոգութիւններ ընել (տանն). լաւ կերակրով խնամել (զմարդ, զձի, եւն.)։ (տունն) Պետք ինկեր է—(տունն) անխնամ թողուած է։

*(ջուրը կու) Պժըրտալ* (Ջուրը) Եռացած է, պղպջակներ գոյացած է և «ճըզ պըզ» կամ «վըժըր վըժըր» ձայն կը հանէ։

*Պլոզտիլ* Խառնուիլ (աչք կամ թելն)։

*Պլտել* Սովորաբար պտուղ մը ձեռքով ոլորելով փրցունել. (փերթ՝ հաւու, մարդոյ) «Գլուխը պլտել» եւ կ'ըսուի։

*Պլտըրցնել* 1, Ընգոյզ, խնձոր, եւն. ձեռքով ոլոր մը տալով թող տալ գետնի վրայ. այնպէս որ սկսի մէքանի կամ շատ անգամ դառնալ.—2. դերձանի կամ այլ թելի մանիչն ձեռքով ոլորել.—3. երբեմն գողանալու իմաստով ալ կը գործածուի։

*Պղկել* Դեղ կամ ջուր բերնին մէջ առնուլ, բերանն լուանալ կամ թրջել և դուրս թափել։

*Պղպըղցունել* Ջուրը, եւն. բերնին մէջ աստ և անդ տանելով լուանալ. Տճ. չալքալամագ։ Նաև սրուակ կամ այլ աման մը, ջրով փայլեցնելու պէս լուանալ։

*Պճըռկել* 1. Փոքր իր մը (ակռայ, ընգոյզ, եւն.) փորել,

փորփշտել. 2. խօսք մը իմանալու համար հարցաքննել։

**Պողթմայել կամ պողթկալ** Ջուրը՝ աղբիւրէն, կամ այլ հեղուկ մը սրուակէն յորդիլն։

**Պուտոշը կախել** Սրդողիլ, նեղանալ, առանց ձայն հանելու՝ ի նշան տրտմութեան՝ շրթունքն կախել. (սովորաբար տղայոց համար կ'ըսուի)։

**Պտղիլ (մելանն)** Գրելու ատենն մելանն թղթին վրայ տարածիլ, ջրոտ կամ այլ պատճառաւ գրչէն շատ վար գալով բիծ ըլլալ։

**Պտպըտալ** Անձրեւը կաթիլ կաթիլ, պուտ պուտ գալ սկսիլ։

**Պօղել** Տանիքին ձիւնն թիով սրբել, վար նետել։

**(Մարմինս) Ջախուպ է** Բոլոր մարմինս յոգնած, խոնջած, տկար է. իբրթէ գանակոծեալ է։

**Ջրել** (ի գրաբարի՝ ջնջել, աւրել)։ 1. Գրաստն, ոչխարն ջուր ըմպել տանիլ.—2. ջրել (գպարտէզ)—ոռոգել.—3. (խելքը) ջրել—խաբելով համոզել։ (Իբրեւ ասացուած՝ գրուած է)։

**Ջրծգել** Ջուր ցանել. (գետինը աւելելէ առաջ՝ փոշի չելնելու կամ զովանալու համար)։

**(Այս ինչ վաճառքը կամ ուտելիքն) Ըռըմպին կամ Ռըմպին ելաւ** Գինն թանկացաւ, աղեց։ Արդէօք, «առ ամպին բարձրացաւ» իմաստով թէ ռումբի պէս ըսել կ'ուզուի։

**Սալախ տալ** Ծանօթացնել, ցուցնել ուրեք տեղ մը կամ զամն. (սոյն «սալախ» բառն հմյ. թէ տճկ. է, չգիտեմ)։

**Սսկաթիկս կ'եռի (կայրի) կամ կ'եփի** (ի տես այն անձին կամ ի լուր այս ինչ դէպքին) Սիրտս կը ցաւի, կը մորմոքի. կը մեղքնամ։

**Սզեցաւ (ցաւը, եւն.)** Հանդարտեցաւ. լալէ դադրեցաւ սակաւ մի։

*Ցուրիշ տալ* Գործին, զբաղմանց առատութեանն բաւել։ Ցուրիշ չի կրնար տալ—չի կրնար ամէն բանի և ամէնուն հասնիլ, զի տղայքն, զբաղումը շատ են։ (Այս բառ պարսկ. կը նմանի, բայց կարելի է նաև հայերէն լինել)։

*Ցպըրկել (զոք)* Գանակոծել։

*(մանուկն եմ. զիս կամ մեզ) Ցռի վռին խաղցուց* (երեխայն) Գիշերը կամ ցերեկը, լալով, ևն. անհանգիստ ըրաւ (զիս կամ զմեզ). մեզ շուարեցոյց, հազար տեսակ դարձուց։

*Ցոխիլ* Ջորին, ևն. բեռուն տակ չոքիլ։

*Ցտիկ չի կըրնար ընել* Գործի մը, արհեստի մը մէջ չի հաստատուիր ու շարունակեր. անկայուն է, չի կրնար նստիլ։

*Ցքալ* 1։ Հեծել խուլ ձայնիւ. 2. (պնդութիւն ունեցողն) լուծման համար ինքնին տքալ.

*Ցողուել* Լուանալ (գաւաթը կամ սափորը), բայց ոչ ձեռքով այլ իր միջի ջրովը թոթվելով։

*Փաթուրկել* Պատուհասել։ Իբր երդումն «խաչը կամ աւետարանը իս փաթուրկէ, եթէ խօսած եմ, ևն.»։ Ամբարիշտ անձի մը նկատմամբ իբր անէծք «Աւետարանը, ևն. ինք փաթուրկէ» կ՚ըսեն։

*Փարտել* Ձեռքի գաւազանը կամ ձողը ուժգին տատանել։

*Փարտխտուել* Ի ճանապարհի թոթուըսելով քայլել. «փարտել» բայէն է։

*(տեղէն չի) Փերկանար* (չի) Փրթիլ. (տեղէն չի) շարժիր։

*Փէս փիւ ընել* (Թուրքք ևս կը գործածեն սոյն բառն) Խօսուած խօսքը շողոքորթութեան կամ անտարբերութեան պատճառաւ հաստատել. այո, այնպէս պիտի ընեմք. դիւրին է, ևն. ըսելով ժամանակ անցունել։

Փոթթոտիլ (երես, խնձոր, հանդերձ, ևն.) Խորշոմիլ. փոթթ փոթթ լինել։

Փսխել Ոտքով կամ ձեռքով պտուղ մը, ևն. ճզմել, ճըմլել։ (Ի բառարանի «փսխել»—սիրտը եռ գալ)։

Փստել (ծեռքը, ոտքը, ևն.) Ծահիլ։ (Ի բառարանի, «փստիկ ընել»—ոփփէշ էն-[illegible], իղերև ելանել, ևն.)։

Փրել (ընգոյզ ևն.) Թարմ ընգոյզին վրայի կանաչ կեղևն ի բաց հանել, կեղուել։

Փքնել կամ ըռքնել Մաս մը ցորենի ևն. հատիկներն տեփուրով կամ փչելով՝ թեփն զատել, մաքրել։

Քթուել (տղու, ևն.) Գլուխը ոջիլ գտնելու համար ձեռքով կրկտել։

Քնկրիլ Հիւանդին կամ այլ ումեք՝ որ քուն չունի, հուսկ ապա մրափելն։ «Քնկրեցաւ» կ՚ըսեն։

Քշքըշցնել (գշունն) Գրգռել (գշունն) մէկումը վրայ յարձակելու համար։ (Վասն մարդոյ ևս փոխաբերաբար կը գործածուի)։

Քուլթնիլ 1. Վէրք, տագնապ ունեցող հիւանդն սակաւ մի թմրիլ.—2. երիտասարդութեան եռանդը դադրիլ։

Քսըրտալ Դեգերիլ, տնտնալ

Քրեքը դնել (զոմն) Բանի տեղ դնել. կարևորութիւն տալ. յարգել։

(կու) Քքշէ Ընդ միշտ ուրիշէն բան մը կը յուսայ, կ՚ակնկալէ։

Օրկիլ (մինչ նստած է ընդ այլս) Մրափել, քնանալ սկսիլ՝ սովորաբար գլուխն օրօրելով. մերթ զարթնուլ և իսկոյն քնանալ վերստին։

Փըլթտիկ նետել Ընկերի մը հետ կամ հանդիսի մը մէջ խօսած ժամանակ թեթև սոլիկ կամ անպարկեշտ շարժումներ ընել, կամ նուագարանի առջև խաղացած ատեն փոր խաղցունել։

| | |
|---|---|
| Փիլթ տալ | Գրգռելն (զոք)։ (Հաւանական է թէ, այս բառ արաբ. «ֆիթնէ»—հակառակութիւն, գրգռութիւն, ևն. բառն է զոր կրճատելով և «տալ» բայով կը գործածուի)։ |
| Փուլթել | Մածունն կամ ապուրն բերանով խմել, որով «ֆըռթ» ձայն մը կ՚ելնէ։ |
| Փսալ | Քթէն ուժգին և արագ արագ շունչ առնուլ, նաև ցասմնալից լինել. (առանց յայտնելու)։ |

---

### Մի քանի բայք որ անարգական իմաստ ունին

| | |
|---|---|
| Ծըտկէ՛ | Կեր, խմէ՛։ |
| Մըրուէ՛ | Գնա։ |
| Ծնթըռկէ՛ | Պառկէ։ |
| Չորցի՛ | Նստէ։ |

---

Զանազան բայք և բայածականք, նաև արմատից կամ նորա մօտ բառի մը կամ վանկի մը կրկնութեամբ բայեր։

1. «ան» մասնիկաւ կամ վերջաւորութեամբ։

| | |
|---|---|
| Խածնան | Խածնող կամ շատ խածնող։ |
| Ուտան | Շատ ուտող։ |
| Վազան | Շատ վազող։ |

2. «ման» վերջաւորութեամբ։

| | |
|---|---|
| Գըրման է | (գիրն) Գրուած է։ |
| Դըքման է | (դուռն, ևն.) Դրուած է։ |
| Քաշման է | (պատուհանն, ևն.) Քաշուած է։ |

3. «ունի» վերջաւորութեամբ։

| | |
|---|---|
| Գտունի է | Գտնուած է։ |

*Կըյունի* Կտրուկ (խօսք, մարդ):

4. «Ուկ»

*Կարգուկ* Կարգուած:
*Կոյնուկ* Կայնած:
*Նստուկ* Նստած:
*Պառկուկ* Պառկած:
*Սուտ մէռուկ* Սուտ մեռած. չգիտնալ ձեւացնող:

5. Արմատից կրկնութեամբ իմաստին եւ սաստկութեան կամ տարբերութեան տուող բայք:

*Դեղղղել* Զանազան դեղեր կամ դարմաններ ընել:
*Թափթփել* Անզգուշութեամբ թափել:
*Խեղղըխտիլ* (Թերեւս՝ խեղդ խղդիլ) Խեղդուելու պէս լինել:
*Կիսկոտել* (քանի մ'անգամ) Կիսել:
*Հարհրել* Հարել (զթան). հարհրիլ—կառքին միջի ուղեւորն կառքին ցնցումէն ուժգնակի օրօրիլ, անհանգիստ լինել:
*Ձգձգել* Երկարաձգել:
*Քաշքշել* Քաշկռտել:
*Օրուիլ* Օրօրիլ:

6. Ինչպէս որ արաբերէնի մէջ կանոն մի կայ, որոյ համեմատ ներգործ. բայն «փոխադարձ» ի նշանակութիւն կը ստանայ, ի մեզ եւս (բաց ի գրաբարէն) աշխարհաբար մի քանի բայեր կան որ «փոխադարձ» ի իմաստն ունին. զօր.

*Ծեծուըտիլ կամ ծեծկուիլ* Փոխադարձաբար զիրար ծեծել. (ներգ. ծեծել):
*Պագուըտիլ* (փոխ.) Համբուրել. (ն. պագնել):
*Պըլլուիլ* (փոխ.) Իրարու պըլլուիլ. (ն. պլլել):
Նաեւ խառնուիլ, գգուըտիլ, եւն.:

## 7. Զանազանք

Թռուըռալ Թռչնոց՝ թռչելու. պէս թեւ զարնելն յաճախ։
Կամ թռչտիլ Թռուըռացնել—(զհաւն քշելով, հալածելով) թռցունել. (այնպէս որ խեղճ հաւն անհարեկ՝ թռչտելով խոյս կուտայ)։
Խտուըտալ (խնտալ) Ստէպ ծիծաղիլ, ժպտիլ։
Շփուըտիլ (շփել ներգործ.) Խարխափել. կամ իւր վրայ շփել։
Փախչտիլ (փախչիլ) Ձուկ տալով մէկ մի աստիս, մէկ մի անդին փախչիլ. խոյս տալ։ Իբրեւ սաստացուած եւս կը գործածուի. զոր. «կու փախչըտիս—կը խոստանայ, գալ պէտք է, բայց չի գար. մէյ մէկ պատճառաւ երեւան չելներ։
Քեըուըտիլ (քերել, ներգործ.) Ինքնին իւր գլուխը, մարմինն քերել։

## 8. Կան եւ հետեւալքն

Պէռուըռալ (մարդուն վրայ) Մորթն կէռալ. եռալ (կըրկնութեամբ)։
Ճըչուըռտել Ճիչ բառնալ. (կրկն)։
Ճըռուըռալ Ճռուողել։

Նոյն

Հընուտըիլ Հանդերձը հանել։
Փոխուտըիլ Հանդերձը փոխել։



Կան մի քանի թուրքերէն, պարսկերէն եւ արաբերէն բառեր, մանաւանդ բայեր, որ հայերէն բայից լծորդութեամբ կամ աներեւոյթ դերբայով մը կը գործածուին. սոցա մի մասն

տռուել կամ Նուազ գործածական են և ի Թուրքս և ոմանք գրեթէ գործածական չեն։

*Աճիզլիլ (չէզ.)* (աճզ, աճիզ, ևն. բառէն) Ձանձրանալ, զզուիլ։ Կ'աճիզլիմ, աճիզլեցայ, ևն.։

*Ավալը* (հաւանօրէն, արաբ. ավայիլ բառէն) Ի հնումն։ (Ավըլըքու մարդիկն—հին մարդիկն)։

*Թարկել (ներգ)* Արաբ. կամ Թուրքերէն՝ «Թէրք իթմէք» թողուլ, լքանել։ Թարկեցի, տի Թարկիմ, Թարկէ, ևն.։

*Խաթըր մնայ լինել (չէզ.)* (խաթըր (արաբ.)—սիրտ, ևն. «Խաթըր մանտէ, (պարսկ.)—Խաթըր գալուպ, ևն.) Վշտանալ բարեկամէն կամ յայլոց՝ պատուասիրելու կամ քաղաքավարական ձևերու մէջ թերանալուն և կամ այլ պատճառաւ մը։ «Որոյ վասն սրտմտեալ լեալ կաթողիկոսն (Մելքիսեթ) ի խանէն ելեալ գնաց ի վրաց տունն իբր խռովեալ ի խանէն։ ՌԿԳ.» (Առաքել պատմիչ Գլ. ԺԷ. երես 201)։ Հաւանականաբար զարդիս ի մեզ գործածեալ «խաթըր մնայ» բառն է։ «Խռովիլ» բայն ևս այժմ ժողովուրդն կը գործածէ, ոչ թէ «տակն ու վրայ ըլլայ, շփոթիլ», այլ «վշտանալ»—ի իմաստով։

*Խալըսել կամ խալիսել (ներգործ.)* Ազատել, փրկել. (արաբ. խլէչա բառէն). խալիսեցի, տի խալիսիմ, ևն. խալսիլ (չէզ.)—փըրկիլ. խալըսեցայ, ևն.

*Խալտենալ* Սխալիլ. (հաւանօրէն արաբ. ղալաթ—սխալ բառէն առնուած). խալտենամ, խալտեցայ ևն.։

*Խատատ (զատատ) առնիմ* (Գտպա, գողա) Փորձանք։ Կանայք իրենց զաւակաց կամ այլոց իբր օրհնութիւն կ'ըսեն. ըսել ուզելով թէ «քեզի գալիք փորձանքն ինձ գայ»։

*Նախշել (ներգ.)* Ծաղիկ ևն. նկարել կամ խատուտիկ ընել։

**Ճիքէ՞ք մի է** — (հաւանօրէն, պարսկ. «չիքեար»—որս բառն է)։ Յարգի, կարեւոր բա՞ն մ'է նուիրածս, աշխատութիւնս, ևն.—ոչ։ (քաղաքավարական խօսք մ'է)։

**Պէ խնայ** — Անխնայ, առատօրէն. (վառել, ուտել, գործածել)։

**Սազել (ներգ.)** — Յարդարել, զարդարել (զսենեակն, զկրպակն, զհանդերձս)։ Պարսկ. սազ բառն է։

**Սայպ (ը) տալ (ներգ.)** — Թող տալ (գիր ինչ կամ զոմն), արձակել։ (Հաւանական է, որ արաբ. «սէյպ» կամ «սէյպէպ»—այրի կամ արձակեալ կին բառէն եղած լինի. կ'ըսուի նաև «սողպը տալ»)։

**Վէջն անցնել (զոմն կամ գիր ինչ)** — (զոմն) Յարգել տալ. (գիր ինչ, կերակուր, ևն.) այնպիսի ժամանակ երեւան բերել, ընծայել որ օգտակար լինի. ընդունողն ուտողն շնորհակալ լինի։ (Հաւանօրէն, արաբ. վէջհ—երես բառին նշանակութեամբ է)։

**Տէրտել** — Յայտնել ումեք զվիշտս իւր, զօր. տէրտեցայ ևն. նաև ինքնին վշտակրել, տխրիլ։ (Պարսկ. կամ Թուրք. տէրտ—վիշտ արմատէն է։)

**Փաչըտկել** — (վասն աչաց, չէզ.) Շատ բանալ. (վասն կենդանւոյ. ներգ.) ոտքէն բռնելով փեռեկել (հաւըն, ևն.)։

**Քըֆրել կամ քըֆըրտել** — Հայհոյել. (արաբ. քիւֆր բառէն է)։

---

## Դ. ՄԱԿԲԱՅՔ

(մակբայք և մի քանի նախադրութիւնք)

**Այա** — Միշտ, ամեն անգամ։

| | |
|---|---|
| *Անարեւցած* | Արշալոյսին կամ արշալոյսէն յետոյ, դեռ արեւը չի ծագած։ |
| *Անտան հազար կամ համար հազար անգամ,* | Անթիւ, անհամար, շատ կամ շատ անգամ (ըսի), մարդ՝ (կային). քրտինք (կու թափէ), եւն։ |
| *Բարի՛ ուր (ասանկ կ'ըլլայ, եղաւ, եւն.)* | (Աստուածպաշտութիւնը, ծնողաց յարգանքը եւն. նուազելէն) Զէ՞ միթէ (որ ահա այսպէս կ'ըլլայ)։ |
| *Դարի հովի (ժուռ գալ)* | Անհոգաբար շրջագայիլ։ |
| *Դարն իղան* | Դէպ ի այն կողմ (գնաց)։ Երբեմն կ'ըսեն. «Դարըն իղան օր մի կու գամ, կամ կ'երթամ» — ոչ շատ հեռաւոր ժամանակի մը մէջ կուգամ, եւն.։ |
| *Դեռօք* | Պահ մ'առաջ։ |
| *Դըքըռ ղըքըռ (քայլել)* | Ուժով, դոփիւնով (քայլել)։ |
| *Ջարտ գ (հազուստն) (նախադր.)* | Բաց ի, կամ թողումք (հագուստն, զարդերն) (ուներ ոսկի, եւն.)։ |
| *Ջըքպըռ զըքպըռ* | Դիւրաւ, հեշտիւ իմն. չափէն, պէտքէն աւելի իսկ։ |
| *Ջըռ զըռ (կը խմէ, կամ կ'երթայ եւն.):* | Անպատշաճ կերպով անդադար (կ'ըմպէ, եւն.) առանց չափու։ |
| *Ջըտ կար լուսուն, թերեւ՝ զետ կոյր լուսոյ (կունայիմ)* | Գիշեր ցերեկ անձկանօք (անոր գալուն կամ այս ինչ լուրին կը սպասեմ)։ |
| *Ջոր ուր* | Մինչդեռ։ Զոր ուր (դրամ, ժամանակ, պատեհութիւն ունիս, խօսէ, գործէ, առ, տուր, եւն.)։ |
| *Ըճէլ չէճէլ (կը խօսի, եւն.)* | Անկանոն, անյարմար, խառն 'ի խուռն (կը խօսի, եւն.)։ |

*Ըհը* Ինչու, ընդէ՞ր,

*Ըհը՛. ըհընակ* Ահա։

*Թոլ կամ Թուլ* / *Թուլընկի* } Թոյլ կերպով շարժիլ, վարուիլ։

*Խորոզ խոսուն* Արշալուսին կամ աւելի կանուխ։

*Կըմէր թը (պի-տի առնէր)* Գրեթէ, կամ՝ քիչ մնաց որ (պիտի առնուր, երթար, ըսէր, ևն.) Թերեւս «կամէր թէ» ըլլայ։

*Կուշտ մի (ուտել, խմել խնդալ, ևն):* Յյագ, լիապէս (ուտել, ևն.)։ Կ'ըսուի նաև «կուշտ ու կուռ ուտել ևն.»)—առատօրէն լի-ու լի։

*Հիրաց (նախ. եւ մկբ.)* } Մէկտեղ, միասին։

*Ձիգկ (ծիգ է)* Ամրապինդ, ուժով մի, զոր. չուանին ծայրը ձիգ մի բռնէ կամ քաշէ.—2. (ստորոգելի) Թանձր, զոր. մեղրն, ևն. ձիգ է—Թոյլ, նօսր չէ։ Ձգկել—ոտքի ևն. վերայ կապուած լաթին, չուանին ծայրերը քաշելով, պրկելով հաստատել։ Իբրև ասացուած—(այս ինչին) կապը ձգկել. (ստորադաս անձի մը կամ որդւոյն) այլ ևս չթողուլ որ ուզածին պէս վարուի. այլ խիստ կանոններու ներքև առնուլ զայն։

*Ճըզըր ճըզըր* Կրակի կամ արևու ջերմութենէն եռալով, ճըզըր—ճըզըր ձայն հանելով (կ'եփի, ևն.)։

*Ճիք* Յոյժ։ (ճիք շատ է—յոյժ շատ է. ճիք հեռուն է—յոյժ հեռի է).

*Մըթընթըթախ* Դեռ մութ (է). լուսնալու մօտ (է)։

*Մինակը* Ա՛ն է որ, կամ՝ հիմակ կը հասկնամ որ (կ'ըսէր թէ, ևն.)։

*Յատօք (ն է)* Չափովն, կտորն, ևն. կարելիք, զետեղելիք տեղւոյն համեմատ (է)։

| | |
|---|---|
| *Նա՛ է ուր (որ) կամ, Նայէ՛ որ (չի տեսաւ, եկաւ, եւն.)* | Բարեբաղդաբար (չտեսաւ, եւն.)։ |
| *Շքառուն* | Իրիկուան դէմ, շուքերն սկսած ժամանակ։ |
| *Ոճը (կ՚ըսէ, կամ կուգայ թը)* | Միշտ (կ՚ըսէ կամ կուգայ թէ)։ |
| *Որգլխու (եկաւ, գնաց, եւն.)* | (Թերեւս «Վրայ գլխու» ըլլայ)։ Իսկոյն, անմիջապէս (եկաւ, եւն.)։ |
| *Ուլթիկ քուլթիկ (կուգայ, երթան կ՚ելնէ. եւն.)* | Շատ քիչ անգամ. դուն ուրեք (կուգայ, եւն.)։ |
| *Քալուն պահուն (կ՚ըսէ, եւն).* | Ամէն քայլափոխի կամ ամէն ժամանակ (կ՚ըսէ, եւն.)։ |
| *Օրն օրըրաքին (օր հասարակ) (կ՚ելնէ, կ՚երթայ, եւն.)* | (Իբրեւ սասց.) Արեւը ծագելէն շատ յետոյ (անկողնէն կ՚ելլնէ, եկեղեցի կ՚երթայ, եւն.)։ Բուն նշանակութեամբ ալ կը գործածուի. զոր. օրն օսըրակ է, կամ՝ եղաւ—կէս օր է, կամ եղաւ։ |

—

Կան տեսակ մը մակբայներ ալ որ «մընի» մասնիկով կը վերջաւորին, որք են.

| | |
|---|---|
| *Ահըռ մընի* | Ջարհուրեալ, խուճապեալ, իրար անցած։ |
| *Բըռնմընի* | Բռնուած, թմրածի պէս. (մէջքս բռնմնի է—մէջքս բռնուած է)։ |
| *Բոլորմընի* | Բոլորած։ (Բոլորմնի նստեր էին կամ էինք, եւն. Բոլորած նստած էին կամ էինք)։ |
| *Դաշմընի (քունալ)* | Կէս քուն, կէս արթուն (քնանալ). տե՛ս. տալըըն։ |

| | |
|---|---|
| *Ծողուըտմ՚ընի (էին, եւն.)* | Ծողուըտած (էին ազգականք, եւն.)։ |
| *Իրար ոնցմ՚ընի (անցմ՚ընի)* | Խառն ի խուռն, խառնաշփոթ (ի մեկնելն, ի գործելն)։ |
| *Հեւըրում՚ընի (երթալ, գալ)* | Արտօրնօք (երթալ, գալ, եւն.)։ |
| *Նեղըմ՚ընի (է)* | Սիրտը նեղ (է), վշտակրեալ (է)։ |
| *Վըշըտմընի* | Սրդողած։ (Վշտմնի մ՚անցաւ քովէն, եւն.— Սրդողած դէմքով անցաւ, եւն.)։ |
| *(Հանդերձ) Փոխմ՚ընի կամ փոխման է* | (Հանդերձ) Փոխած եմ (աշխատութեան կամ այլ պատճառաւ հինն հագած)։ |
| *Քըրքըրմ՚ընի* | Քրքրուած (սիրտ. անկողին, եւն.։ |

—

Արմատոյ կրկնութեամբ կազմուած մակբայք։

| | |
|---|---|
| *Գէշն ի գէշը* | Անքաղաքավար կերպով կամ շռայլաբար (ուտել, խմել, եւն.)։ Գեշն ի գեշը (Նայիլ ի կին) —(սովորաբար) գէշ աչքով (Նայիլ, դիտել)։ |
| *Գողն ի գողը* | Գաղտագողի (տեսնել, այցելել, գործել, եւն.)։ |
| *Իրաւն իրաւը* | Արջօրէն (խօսիլ, կռուիլ, եւն.)։ |
| *Խենթն ի խենթը* | Յիմարաբար (գործել, խօսիլ. (շռայլաբար) ուտել, խնդալ)։ |
| *Խեւն ի խեւը* | Թեթեւամիտ, խեւի պէս (խնտալ, խօսիլ, եւն.)։ |
| *Խոռն ի խոռը (Նայիլ)* | Աչքերը խոժոռելով (Նայիլ ումեք)։ |
| *Ծուռն ի ծուռը* | Ծուռ ծուռ (երթալ, քալել, եւն.)։ |
| *Կաղն ի կաղը* | Կաղալով, դանդաղօրէն (ընթանալ)։ Գործը կաղն ի կաղը կ՚երթայ, բայց թերի, ծանր և դանդաղ կերպով։ |
| *Մէռն ի մէռը* | (ապրուստն) Նեղ. (առեւտուրներն) անգոհացուցիչ, սկար (վիճակ մ՚ունի). Տճ. էօլմէյէճէք գատար։ |

*Մուխն ի մուխը* 'ի մթան, առանց լոյսի երթալ։
*Սուտն ի սուտը* Կեղծ, կատակով (խօսիլ, զարնել, լալ, ևն.)
*Վախն ի վախը* Վախնալով՝ խիստ զգուշութեամբ (ուտ... երթալ, ևն.)։

Նաև

*Ծոյրը ծոյրը* Ծանր ծանր (երթալ, կշռել)
*Մեծ մեծի* Մեծ մարդու մը պէս (վարուիլ, խօսիլ, ևն.)

---

*Լուկ* Մանիկ բայի, Կ. Պոլսոյ «կորչի» պէս. տարբերութեամբ որ մինչդեռ սա ներկայ և անկատար բայից հետ կը գործածուի, «լուկ»ն ամեն ժամանակաց հետ կը գործածուի, որ սակայն հիմակ բաւական դադրած է գործածութենէ։ Ունին և Արաբկերցիք «ընը», որ «լուկ»-ին պէս կը գործածուի։ Կան նաև շատ տեղեր այսպիսի մանիկներ։

---

## Ե. ՁԱՅՆԱՐԿՈՒԹԻՒՆ

*Ծհե՛* (Ծաղրական). Հայ և թուրք տղայք՝ զոմի ծաղրելու համար՝ սուլելու ծայրագոյն նշանակութեամբ խմբովին կը գոչեն։ Երբեմն հարսանեաց կամ հանրային հանդիսից մէջ ալ տղայք խմբովին «եհե» կը գոչեն ի նշան ուրախութեան։
*Էխք* Ի՞նչ զարշելի, պիղծ է (այս իրն)։
*Ըլոխ* Եյ ըլոխ եյ արթըզ—բաւ է այդ։
*Թէհա՛, թէհի՛* Անձի կամ գործի մը յաջողութեանն վստահ լինելոյ ի նշան։ Երբեմն արհամարհական իմաստով ևս կը գործածուի։
*Թո՛ղ է* Թո՛ղ ըլլայ, կը յօժարիմ։

Դի՛ — Մանկանց ուղղեալ՝ սիրոյ և գգուանաց արտայայտութիւն մի, կամ անոր ուշն, կամ հայեցուածն առ ձայնարկողն դարձունելու համար։

Ըը՛ըա — (զարմացական կամ զայրացական) Ո՞հ իմաստով։ Ե՛ մըրա, կամ, մըրմ ինչ կ'ըսես կամ կ'ընես. կամ մըրմ դուն ալ—Ո՞հ ինչ կ'ըսես, մ'ըսեր, ևն.։

ՀՀա — Իցէ թէ. կը մաղթեմ, զոր. «Շըլլա այս ինչն գայ, կամ գործը կատարի, ևն.»։ Ըստ կարծեաց ոմանց ինչպէս և իմ՝ արաբ. ծանօթ «Ինշալլահ»—Աստուծով, կը մաղթեմ առ Աստուած, ևն. բառին աղաւաղեալն է։

Ը՛շ, շի՛, շիշ — Աղղարարական կամ կոչական ձայն մի իբր «Ինձ նայէ, ուշադրութիւն ըրէ»։ (Թուրքք ևս կը գործածեն)։

Ըը՛ութ — Հեգնական, զորս մանկունք և տղայք միմեանց կ'ուղղեն, իրարու դէմ պանծալու, պարծենալու համար։

Քը՛լ — Ո՛, ո՞հ, զոր. Քը՛լ ինչ կ'ըսես—ո՞հ ինչ կ'ըսես։



# ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

---

Գիտեն ամեն Անեցիք, թէ ինչպէս ազգային հին սովորութիւնքն, նոյնպէս և հին երգերն տակաւ առ տակաւ կը ղափրին ու կը մոռցուին, և նոյն վերջնոց տեղ հայերէն և թուրքերէն նորահնար երգերն կը գործածուին։ Բայց ինչու մոռցուին այն օրօրներն ու երգերն, որք թէև չունենան այժմեան երգերու նրբութիւնն՝ գէթ մեր նախնեաց բանաստեղծական ոգին ու ճաշակը կը ներկայացունեն։ Եւ որովհետև մեր նպատակն է հնութիւնքն 'ի գիր առնուլ՝ կարևոր դատեցինք և յիշեալ երգերն գրել։

Ապաքէն յիշեալ օրօրներն, երգերն ու ողբերն բոլորն ալ մեր մեծ պապերէն ու մամերէն լսուած՝ հետևաբար բոլորն ալ հնութիւնք են, և ասոնց մէջ հարկաւ կան այնպիսիք, որք ըստ հնութեան և ըստ ճաշակի ազնուութեան մեկզմեկէ առաւելութիւն ունին, սակայն յայտնի չըլլալով թէ ո՞վ է այս ինչ երգին կամ երգերուն հեղինակն, կամ ասոնց հնագոյնն մինչ ո՞ր թուականն կը հասնի՝ ասոնց ընտրութիւնն ևս գըրքուկիս զանազան պարունակութեանց պէս՝ պատմագիտաց և հնագիտաց թողլով՝ սկսիմք մեր գործն։

---

## Գ․Լ․ Ա․

# ԵՐԳ ՕՐՕՐՈՑԻ

Օրրաններն երկու տեսակ են. մին ծանօթ կախ օրրանն
ոյ երկու չուանաց մէջտեղն կտաւով մի պատած և կա-
և սորա մէջ կէս կանգուն լայնութեամբ և մէկ կանգուն
նութեամբ տախտակ մը դրուած է, որով երկու չուանն
մէ բացուելով՝ մանկան տնակին յատակն կը կազմէ։
ակին վրայ է հող-լաթն և սորա մէջ կը դնեն մաղած
ձմեռն տաքցուցած. զոր շորով կը փաթթեն, գլխոյն
բարձ մը կը դնեն, մանուկն կը պառկեցնեն և փոքրիկ
կն վրան ձգելով օրրոց-կապոցն կը փաթթեն։ Իսկ միւս
կն գետնի վրայ «տախտակէ օրրան» կոչուածն է, որ փո-
ելի է ուր և կամին։ Այս վերջին տեսակն Կ. Պոլսեցւոց
Թ օրրանին հին ձևն է. իսկ կահաւորումն նոյն են ընդ-
նոյն։

Մայրն օրօրելով զօրրանն՝ կ'սկսի երգն, որ սովորաբար
է'''ով մի և կամ օր-օր-ով մի կ'սկսի, և որ պարզ ու
ր եղանակ մ'ունի։ Գիտելի է նաև, որ օրօրին երկու տա-
ուն մի կը կազմէ և երբեմն Ա. տունին Բ. տողն նորէն
իբր Ա. տող, և յաջորդ տողովն նոր տուն մի կը կազմէ։

1. Աղուոր ես չունիս խալաթ [1].
Երթամ ծով բերիմ *) պէ խալաթ։
Երթամ Լուսնկան բերիմ,
Լուսուն աստղերը պէ խալաթ։

—

2. Աղուոր ես. չունիս խալաթ.
Քու ամեն տեղդ է պէ խալաթ։
Դուն ալ խալաթ բան մ'ունիս,
Քուն չունիս արթուն կու կենաս։

—

3. Աղուոր ն'աղուորաց որդի,
Աղուորնաց քեռոց քեռ որդի։
Քու ծառդ ու ճեղդ ոսկի,
Քու տերեւդ վարդ կու մանի։
Քու ջուրն է անպակ գինի,
Քու կի-գէլը [2]) տեղ չի լինի։

—

4. Այ իմ հայվայի [3]) կեռաս,
Դիմըցի էեռը կու կենաս։
Ամառը կենաս կենաս,
Ցուրտ ձմեռն ինտոր տի կենաս։
Քանի ես ի քեզ կու պամ,
Դուն ինձմէ հեռուն կու կենաս։

—

5. Դուն ապրիս հազար տարի,
Հազար ալ ապրիս նը պիտի։
Ետի դին մեռնիլ չի պիտի։

—

1. Թերութիւն։
*) Բայերու «եմ»ին տեղ «իմ» կը գործածուի. ինչպէս և «չիմ — չեմ, անիմ—ընեմ, առնեմ, եւն. նաև ուր—որ (շաղկապ. տեղ—քի)։ Ու՛չ—ոչ (մակբայ)։ ա—ղ (յօդ)։
2. Գեղեցկութիւնդ։ 3. Սերկեւիլ։

6. Դուն ապրիս հօրով մօրով,
Հաց նստիս ջուխտակ աղբարով։
Ապրիս դուն հօրով մօրով,
Ու լցուի սրտիկդ արևով։
Սրտիկտ արևով լցուի,
Մեր դռուին կարմիր խնձորով։
Ո՛վ անցնի՝ վարդէտ առնէ,
Ո՛վ դառնայ, կարմիր խնծորէն։

—

7, Ես քեզ որձվ մեծցընիմ.
Նուշ ու շէքէր կերցնիմ։

—

8. Է՛ անիմ. օրօր անիմ,
Եզները քու բերին փայ [1]) անիմ։
Էմմէնուն քչիկ քչիկ,
Քու փայլիկդ ևուել տի անիմ։

—

9. Ծոցիկտ առաւօտ նման,
Առտուան շաղիկն է վրան։
Ծաղւոր ետ ու ետ գնա,
Ուր ցաթէ արևն ի վրան։

—

10. Ծոցիկտ ի պախճա [2]) անիմ,
Քեզ մէջը մորճ *) տի տնկիմ։
Ջրեմ ու պահեմ պոծառ,
Զինխա [3]) չի թոռմցնեմ։
Պահեմ ու հենեմ **) դարուն,

1. Բաժին։ 2. Պարտէզ։ 3. Թերևս պարսկ. «զինհար»—[illegible]ուշա-ցիր, են. բառն է, և տեղս «մի գուցէ» ի իմաստով գործածուած է։
*) Մորճ (հայ.)—տունկ, տճ. չպուղ։
**) Հենիմ (հայ.)—հանիմ. (այսինքն չի թառամեցուցած՝ ի գարուն հասցնեմ)։

Ծաղկունացս հաւասար ցուցնիմ։

—

11. Կարմիր վարդ ու լան տերև,
Բացուեցար օտայիս վերև։
Քանի ՚ր կայ պախճա տերև
Անխատար 1) կ՚ուզիմ քեզ արև։

—

12. Ծեծնաս դուն հազար տարի,
Ու չի դաս աւուր մի չարի։
Աւուր մ՚ուր չարի տիգաս,
Քու չարերը դառնայ բարի։

—

13. Պաղչա ունիմ, պար 2) չունիմ.
Հայվա ունիմ, նար 3) չունիմ։
Ինկեր իմ ծովուն օրթան 4)
Ալ ելլելու ճար չունիմ։

—

14. Պուլպուլը պաղճան է իջեր,
Վարդենույն թփիկն է թառեր։
Անուշ մէնէվշէն 5) հոտուն,
Աղուորիս քնիկն է տարեր։

—

15. Պուլպուլը վարդին սիրուն,
Ձի լնիր գիշերն ալ իքուն.
Ո՛ւչ գիշերը քուն կ՚ուլլի
Ուչ ցորեկն միժվլի 6) իրիկուն։
Պառկէ և անուշ քուն եղի,
Մինչուկ գայ լուսն առաւօտուն։
Լուսնայ, բարի լուսը գայ,

---

1. Ակնչափ. 2. պտուղ. 3. նուռն., 4. մէջտեղն. 5. մանուշակ.
6. մինչև.

Գիւլպիւլս ալ կ'ելլէ քնուն։
Գիւլպիւլս ալ կ'ըլլէ քնուն,
Կեան է քուն, կեան է արթուն։

—

(Տատ լացող երեխայից)

16. Քեզի քարէն մարիկ մը պիտէր,
Ուր պղնձէն ձանիկ մի կալլէր [1])։

—

17. Քնանաս՝ քնիկդ անուշ,
Արթննաս՝ երազդ իբարին։

—

18. Քու գինդ է հազար ոսկի,
Հազար ալ կուտամ եւըլլի [2])։
Հազար ալ անոր կուտամ.
Լոս երեսդ երկու պէնկ [3])։
Աղուոր ես ծոցուդ իվեր,
Երթամ ձվ բերիմ խաղ-ընկեր։
Երթամ լուսնկան բերեմ,
Լուսուն աստղը խաղ ընկեր։

—

19. Որ օր կանչիմ իմանաս,
Պառկիս ու անուշ քնանաս։
Քնանաս ու մեծանաս.
Մեծնաս ու մեծ մի ըլնիս,
Բոլըրիս ու գեղ մի ըլնիս։
Ան գեղն ուր մեծ չի կենայ,
Ան գեղին մեծը դուն ըլնիս։
Դուն ըլնիս անտառ մօրուն,
Զարնես փօփէկը [4]) խորուն։
Քոքիկտ խորուն զարնես,

1. Ունենար։ 2. Աւելի։ 3. Փոքր սև բիծ մարմնի վերայ։ 4. Արմատով։

Ծառդ շուք անէ ճեղերուն։
Ծմռ շքեր, վրայ եկէք,
Շուք արէք մեր պխուլպխուլներուն 1)։

—

20. Օր օր օր օր այըխ 2) ես,
Լահասա շալ 3) լայըխ 4) ես։
Լահուռ շալն ուր ինչ կանին,
Թագաւորի լայըխ ես։

—

21. Օր օր օր օր եղներն ին եկեր,
Եղներն ին եկեր, լեռներն ին իջեր։
Քեզ ալ անուշ քնիկ ին բերեր.
Բերեր քու ծով ծով աչերդ ին լցեր։
Անուշ քնովդ ին քնացուցեր,
Քաղցրը կաթնովն ին կշտացուցեր։

—

22. Օր օր օր օր իմ որրընոցին,
Որրընոցին ու գրկընոցին։
Որրընոցին օրերը շատնան,
Գրկընոցին տարեկն աւելնայ։
Տարեկդ հազար տարու մօտենայ,
Անձիկդ հազար բարու տիրանայ։

—

23. Օր օր օր օր Տէրը տայ քնիկ,
Մարիամ մար խաղաղութիւնիկ։
Մարիամ մար խաղաղութիւնիկ.
Դուն պառկիս և անուշ քնանաս։
Մարիամ մարը մար կ՚անինք.
Իր մէկիկ որդին եարտըմճէ 5)։
Երթամ եղկեցի մոնիմ,
Ուր բռնիմ սուրբը տուաճի 6)։

1. Սոխակներուն։ 2. Արթուն։ 3. Լահուրի շալ։ 4. Արժանի։
5. Օգնական։ 6. Միջնորդ, բարեխօս։

Սուրբ խաչն ալ աղբար անիմ,
Թևը վրայնիս պահէ։

—

24. Օր օր օր օր քներ ես,
Քներ ես ու քրտներ ես.
Գամ օտղանք 1) դան տանիմ,
Վարդի նման բացուեր ես։

—

25. Օր օր օր օր քուն ունիս,
Պեշիկին 2) մէջ տուն ունիս։
Ոսկիէ որրան ունիս,
Մարգրտէ եօրղան ունիս։
Ճէֆայիրէն 3) բարձ ունիս.
Ճար ու շամաթ 4) շոր ունիս։

—

26. Կարմիր վարդի նման բացուեր ես,
Անուշ ձայնով կանչիմ օր օր։

—

27. Հայրիկտ ապրի, մայրիկտ արևի,
Հայրիկտ ապրի, մայրիկտ ալվա 5) ծնի
Նա ալ օրան դնէ ու օրօրէ.
Օր օր օր օր իմ աղաւնիկ.
Քնացնիմ սիրով սրտիս։

—

28. Է''' պարտէզ իմ բոլորեր վարդ իմ բուսուցեր
Ապառաժ իմ կոտրեր ջուր իմ վազցուցեր.
Իմ պատուաւոր սիրելիս իմ թռուցեր,
Ժուռ կու գամ լեռներ ու սարեր։

—

1. Վերմակ. 2. Որրան. 3. Գոհար. 4. Բարակ, աղուոր բա[...] կուզուի, բայց ինչ լեզուի կը վերաբերի, չգիտեմ. 5. Դարձեալ.

29. Պիւլպիւլը ձան արեր ձագերուն,
Քուն է բերեր շահէն [1]) աչերուն.
Քուն է բերեր աչերն լցեր,
Անուշ քնով է քնացուցեր:

—

30. Օր օր օր օր կապիմ կախ օրան,
Ծառէ ի ծառ շուքերն ի վրան.
Ծառ շքեր վրայ եկէք,
Նուք արէք (անուն) վրան:

(Թ. 26—30 օրօրներն Խահուէճեանն գրած ղրկած էր):

—

31. Աղուո՛ր ես ու քեզ Թարֆ [2]) կ'անիմ.
Պիլպիւլին տալին [3]) վրայ.
Հագեր ես տիպայ [4]) ու զէրպայ [5]).
Կու վայլէ ալըալ [6]) վրայ.
Քէնտէրլինէրդ [7]) Թուղ [8]) կու քաշէ,
Կէրտանէդ [9]) խալին վրայ:

—

32. Պիւլպիւլը վարդին սիրուն,
Խև եղեր չի դահիր [10]) 'ի տուն:
Պիլպո՛ւլ, դուն ալ տիւն [11]) դահէ,
Խև եղեր մարիկս սիրուս
Մարիկդ սիրուս Թումեր,
Աչերս ալ քու կարօտուն *):

---

1. Բազէ. 2. Գովել: 3. Ճիւղ: 4. Դիպակ: 5. Ոսկեթել կերպաս: 6. Կարմիր: 7. Խոպոպիք, զանգուր: 8. Ի հնումն վէզիրութեան համար փաշաներու շնորհուած նշանն, որ ձիոյ մազէն կը պատրաստուէր եղեր: 9. Գարանոցը, ծնօտի տակ: 10. Դադրիր: 11. Տուն:

*) Այս երկու օրօրներն (Թ. 31—32) Վանք գիւղէն է:

# ԳԼ. Բ.

# ՀԱՐՍԱՆԵԿԱՆ ԵՐԳԵՐ

*Ինչպէս հարսանեկան հանդէսի նկարագրութեան մէջ ըսուած է, երբ փեսային կողմի խնամի կանայք աղջկան կողմը կ'երթան, ձեռաց թմբուկով տճկ. 4—5 հարեն (երգ) կ'երգեն. յետոյ կ'սկսին գովասանական երգերն՝ որ սովորաբար տաճկերէն են և որոց չեր կ'ըսեն։ Ներով աղջկան ծնողացն, եղբարցն և բոլոր ազգականացն, նաև փեսին ծնողաց և ազգականացն գովեստներ կը շռայլեն։ Յետոյ փեսին կողմանէ եկած ձեռք մը զգեստ հարսնացուին հագցունելէն զկնի սենեկին ներս կը բերեն և հետևեալն կ'երգեն։*

1. *Աղջիկ, քու հագածդ ալ է.*
*Աղուկ ֆէշէլէ 1) վեր ծալէ.*
*Քալէ ու մանտրտիկ քալէ.*
*Քու ալթուն 2) պօյկդ երըւայ։*

---

*Նախնթաց «Աղջիկ քու հագածդ, ևն.» երգելէն յետոյ, հարսնացուն սենեկին մէկ անկիւնն կը նստեցունեն և կ'սկսին հետևեալն երգել։*

2. *Առաւօտուն կ'ելլես, երեսդ վըլա 3),*
*Էպէշում 4) մազերտ դրեր ես հինա.*
*Ատ աղուոր երեսէտ պագ մի տուր հըլը 5)։*
3. *Ծածկէ թոռ 6) չիմէքը 7), մարդը կ'երես դուն,*
*Ճերմակ ճէվահիր ես, անգին քար ես դուն։*

(Յանգերգ)

—

1. Քղանցք։ 2. Բարձր վայելուչ։ 3. Լուա։ 4. Մետաքսէ։ 5. Դեռ միանգամ։ 6. Քնքուշ։ 7. Խոպոպիք։

4. Եկո՛ւր, աղուոր աղջիկ, հարս եղար մեզի.
Եախութ, զմրութ, անգին քար եղար մեզի։
(Այլ յանգերգ)

5. Արթ, ծով ծով աչեր (գ) իս մի՛ լացըներ,
(Զ) իս շատ է լացուցած, դուն մի՛ լացըներ։
(Այլ յանգերգ)

—

6. Առաւօտուն լուսուն աղուոր մի տեսայ,
Գոհութիւն Աստուծոյ էսօր [1]) եղաւ ինծի.
Եախութ, զմրութ, անգին քար եղաւ ինծի.
Եկո՛ւր աղուոր աղջիկ, ևն. կամ Ծածկէ, կամ,
Արի, ևն.։

—

7. Առաւօտուն կ'ելլես, արև կու ցաթէ,
Բերանտ ուր կու բանաս, մեղրը կու կաթէ.
Եկո՛ւր նստինք, անուշ անուշ խօրաթէ,
Եկո՛ւր, աղուոր աղջիկ, ևն։

—

8. Առաւօտուն կ'ելլես պաղ պաղ հովերուն,
Պէօշ-պէօշ չատըր զարկեր՝ վարդին բոլորուն.
Ո՛րը վարդէն կ'առնէ, ո՛րը քովերուն,
Եկո՛ւր, աղուոր աղջիկ, ևն.։

—

9. Կուզաս կ'ոսնիս [2]) կերթաս, չես իտար բարև.
Քըզ [3]) լուսնկան լուսով՝ քըզ գարնան արև.
Ես ալ չըսի՝ բարո՛վ եկիր, բարկ արև.
Եկո՛ւր, ևն..

—

10. Դուռն ի վեր ես կոյներ [4]), գրկածտ մոնչ [5]) էր.
Հագածտ օէբէօէր [6]) վրան կանաչ է.

---

1. Սիրուհի, սիրական։ 2. Կանցնիս։ 3. Քանզ։ 4։ Կանգներ. 5. Մանչ։ 6. Ամբողջապէս, ծայրէ ծայր։

Քեզ տեսնող կըյիճը [1]) սրտէն կու հառչէ։
Եկո՛ւր, աղուոր աղջիկ, ևն.։

—

11. Աղուոր մի՛ն է կոյներ դռանը կէսը,
Տարեր ոսկի ու՝ արծաթ ձգեր երեսը·
Հազար ոսկի կ՚արժէ, աղուո՛ր, քու տեսը։
Եկո՛ւր, աղուոր աղջիկ, ևն.։

—

12. Քանի՛ մէկ, քանի՛ մէկ ատ քու նազերդ·
Անմահութեան [2]) ջրով վըլա՛ մազերդ։
Ես ուր երթամ, որու տ՚անես նազերդ·
Եկուր, աղուոր աղջիկ, ևն.։

—

13. Վերէն ի վար կուգաս, բարակ ձանով ես·
Հետս չես խօսըլթեր, վախեմ քէնով ես։
Աղուորին սոյէն [3]) ես ոյա [4]) խառով ես·
Եկո՛ւր աղուոր աղջիկ, ևն.։

—

14. Նա՛զ արէ, նա՛զ ա՛րէ, նազդ վերցընիմ·
Այս քեզի նուշ ու շէքէր կերցնիմ·
Հազցընիմ, կապցընիմ, մարոնցդ խրկիմ։
(Յանգերգ)
Մի՛ լար, աղուոր աղջիկ, աչուխտ կ՚աւըրրի·
Քեզ պզտիկ կարգողին տնակն աւըրրի։

—

15. Բարձր (ը) քէօշկեր ունիմ չորս դին ճամբրով [5]).
Ներսի դիս լեցուն է տէրտ ու խամբրով [6]).
Եկո՛ւր քու հետ սէօհպէթ [7]) անինք ճէմբրով [8])։

---

1. Կըտրիճ։ 2. Սիրատաչ եղերքը ուխտատեղի մը, ուր աղբիւր մը կը բղխի։ 3. Ցեղ։ 4. Միշտ։ 5. Ապակի։ 6. Վիշտ։ 7. Զրոյց։ 8. Երկար ժամ։

Եկո՛ւր, աղուոր աղջիկ, ևն. կամ, Ծածկէ թուշ զիլիֆտ, ևն. կամ, Արի ծով աչեր, ևն.։

---

Ցետոյ կ՚երգեն հետևեալն որ կարի երկար եղանակ մ՚ունենալուն համար «քաշ հարեն» կ՚ըսեն։

16. Ա՛յ իմ հարստի դստրիկ,
Ծոցտ եղի [1]) ծառտ արմաւենի։
Արմաւտ քու ծառտ կու լըճի,
Պիլպիլըլը քու ճեղդ կու թառի։
Քու ծառն ու ճեղդ ոսկի,
Քու տերևը վարդ կու մանի։
Ես քու ծոցուն տէր պիտէի,
Ձըղերուտ արմաւ քաղէի։
Հարսնո՛ւկ, քէ խրատ մի տամ.
Թը տէօվլէթ ունիս նը մաէ [2])։
Զըտ ականջդ իս արէ,
Զինչ ըսիմ նը ան արէ,
Ուր գան ու հազար ըսին,
Հազրէն մէկ խօսքունկ մի խօսէ։
Ան ա՛լ չի գիտիմ ըսէ,
Դուն հազար չարէ խալիսէ։
Մեր տունն Աստուծոյ շինած.
Աստուծու շինած ու՝ օրհնած։
Հայր Աբրահամի քարուկը
Մեր տան Ընչքըն [3]) է դրած։

---

Երբ բոլոր երգերն ու արարողութիւնք լրանան՝ խնամիք մեկնած ժամանակնին ծափ զարնելով կ՚երգեն հետևեալն։

17. Խնամի՛. տունտ շէն կենա.

---

1. Այգի։ 2. Համբերէ։ 3. Հիմք։

Այս դռնակս բաց կենայ.
Զևառուկ որդեկս տաքրած կենայ։

—

Հարսնացուն ի պսակ երթալու համար հօր տունէն մեկ-նած միջոցին նուագածուք հետեւեալն կ'երգեն։

18. Մի լար, մայրիկ, մի՛ լար. ես ալքի [1]) տիգամ.
Աակի տանը հինգ օր տարկուս [2]) տիգամ։

—

19. Աղջիկ մի կու տանին լալով ու լալով.
Գլուխը փաթթթեր են լաճուռի շալով.
Ծամերը հուսեր ին ոսմայի [3]) թելով։
Մի լար, մայրիկ, մի լար, ևն։

—

Աղջկան՝ հայրենի տունէն մեկնած միջոցին, ի դիմաց նորա առ Ծնողսն հետեւեալն ևս կ'երգեն եղեր ի հնումն։

20. Մարիկ անօրէն,
Տատիկ անօրէն.
Ընը [4]) 'ես կ'երթամ.
Իմ հէլալ [5]) հացս.
Արդար պսակս։

---

Երբ յետ պսակի հարսն ու փեսայն եկեղեցիէն կը վերա-դառնան և տանն դրանը առջև կը հասնին՝ նուագածուք և հարսնեւորք կ'երգեն հետեւեալն, իւրաքանչիւր տողն կրկնելով։

21. Բարի լուս, աղուոր, բարի լուս,
Բարի լուսուն բարին վրատ.
Ուր ցաթէ արևն ի վրատ։

—

1. Դարձեալ։ 2. Էրիկ, ամուսին։ 3. Արծաթի։ 4. Ահա։ 5. Արդար։

22. Ա՛յ իմ, ա՛յ աննման աղուոր.
Չի կայ քեզի նման աղուոր, (Յանգերգ)
Աղուո՛ր, քեզ ո՞ր մար է բերեր.
Ան խնուխ աչեր մարն է բերեր:
Մարն է բերեր մեզի համար.
Մենք ինք եկեր քեզի համար:
Քեզ տի տանինք մեզի համար.
Շալ ինք բերեր պօյէօ [1]) համար:

—

23. Առաւօտուն աս ի՞նչ չաղ (ժամանակ, պահ) է.
Հարսն ի պաղճան փարդ կու քաշէ.
Նստեր ու շէքեր կու մաղէ.
Տեքրին Թօզն՝ [2]) ալ ինք կու թաղէ,
Ա՛յ իմ, ա՛յ աննման աղուոր, ևն.:

—

24. Առաւօտուն կանուխ կանուխ.
Հարսինը սիրտն է պուլանուխ. [3])
Մտնիմ պախճան. քաղինք անուխ, [4])
Ա՛յ իմ, այ աննման, ևն.:

—

25. Առաւօտուն Էեղ [5]) մի արև.
Թագւորը տայ մօրը բարև.
Բարով եկիր դուն, բարի արև.
Ցաթեցիր մեր տանն ի վերև:
Ա՛յ իմ, ա՛յ աննման ևն.:

—

26. Առաւօտուն իղէմ լուսուն,
Կոճակ շարեր հարուր իցծուն [6])
Ո՛րն հարուր, որն իցծուն:
Ա՛յ իմ, ա՛յ աննման, ևն.:

—

1. Հասակ: 2. Փոշի: 3. Պղտոր: 4. Բոլս մի: 5. Շուտ: 6. Յիսուն.

27. Առաւօտուն հետ խաղերուն.
Մայիլ [1]) իմ ոլորած մազերուդ.
Չիմ դիմանար քու նազերուդ։
Ա՛յ իմ, ա՛յ աննման, ևն.։

—

28. Երկու կաղնուկ արանք բունը.
Կու կաթէ երեսին գունը.
Դո՛ւն ես մեր տանն ոսկի սիւնը։
Ա՛յ իմ, ա՛յ աննման ևն.։

—

29. Ոլորեցար, բոլորեցար.
Աղուոր, ճամբան մոլորեցար.
Մոլորեցար ու ներս եկար,
Ա՛յ իմ, ա՛յ աննման, ևն.։

—

30. Թագուո՛րի մարիկ. դուրս եկո՛ւր,
Դրսէ ի դուրս դուռն ելի՛.
Քու թագուոր որդեկդ է եկեր.
Թէք [2]) գնացեր ու չիֆթը [3]) եկեր։
Ա՛յ իմ, ա՛յ աննման, ևն.։

—

31. Աղուընիի ձագ բերեր է.
Տեսէ՛ք թը կուտ ալ կերե՞ր է.
Տեսէ՛ք թը ջուր ալ խմե՞ր է.
Ոսկի կուտն ալ ի կթնուցն [4]) է.
Վարդէ ջուրն ալ ի էռէջն է։
Ա՛յ իմ, ա՛յ աննման, ևն.։

—

32. Կալանճէ [5]), պի՛լպիւլ, կալանճէ.
Ես գիտնամ քի քու տէրտը ի՞նչ է.

---

1. Աքանչացած։ 2. Միայն, միայնակ։ 3. Զոյգ։ 4. Կտուց։ 5. Խօսէ։

Քու տէրտը մէջ մ՚է ւ՛ երկուք.
Իմն հինգ ու վեց տաս ւ՛ երկուք։
Ա՛յ իմ, ա՛յ աննման, ևն.։

—

33. Մա՛ն եկո՛ւր, ա՛ղուոր, մա՛ն եկուր.
Դէպի մեր տուն իղա՛ն 1) եկուր.
Հիչ չես իգար մերը բանէ.
Թուխ աչերտ հոգիս կու հանէ։
Ա՛յ իմ, ա՛յ աննման, ևն.։

—

34. Ձեր տունը մեր տանն ի դիմաց.
Քանի ՚ր անիմ աչօքս իմաց.
Ելի՛ ւ եկո՛ւ կամաց կամաց։
(ոմանք կը յաւելուն և հետևեալ 2 տողն)
Ալ ծոցս փորս չի մնաց.
Աղուո՛ր, քու ուղուրտ գնաց։
Ա՛յ իմ, ա՛յ աննման, ևն.։

—

35. Թագւորը նուռ կու մանի.
Կանաչ կարմիր ուռ կու մանի.
Կոյներ է դռան եզերը
Ուր բացուելու վարդ կու մանի։
Ա՛յ, իմ, ա՛յ աննման ևն.։

—

56. Ելի՛ կոյնէ, Թա՛գւոր աղբար.
Ես քեզ գովիմ գլխուտ իվար։
Էռէջ ես քու պօյիկտ ըսիմ,
Ուր չինարի ծառ կու մանի 2)։
Անկէց ես քու երեսն ըսիմ,
Ուր լուսնկի կալ կու մանի։
Անկէ ես քու փէրչէմ 3) ըսիմ.

---

1) Այդ կողմը։ 2. Կը նմանի։ 3. Գլխի մազեր։

Կխուշաղպան 1) թել կու մանի։
Անկէ ես քու աչքերն ըմբիմ
Ուր շահենի աչք կումանի։

---

## ԵՐԳ ԹԱԳԱՒՈՐ ՀԱԳՑՆԵԼՈՒ *)

37. Ան բարձրը լեռներն ի վար, մեզի բարկ արեւ մըն է ցաթեր.
Ըմմենուն երդիքն իվար, մեզի դուռն ի ներս է ճառագեր.
Ըմենտ իվրայ եկէք, թագաւորին կապան կարեցէք.
Լուսնկան աստղը արէք, արեգակն երես ձեւեցէք.
Ան մոյ 2) ու խոշոր աստղեր. թեւերուն ոսկէկ 3) կարեցէք։
Հայ իմ պզտիկ թագւոր. կլորեր ես մեզ ծմերուն 4)
Ճովերդ ի երդիքն ելեր. կախուեր է խոշոր ճիղերուն։

(Ասկէ յետոյ կերգուի «աղջիկ, թէ խրատ մի տամ են. տես թ. 16)։

---

## ԳԼ. Գ.

## ԵՐԳ ԵՒ ՊԱՐ ԲԱՐԵԿԵՆԴԱՆԻ ԵՒ ԶԱՏԿԻ։

Որովհետեւ պարի վրայ պիտի գրեմք, աւելորդ չեմ համարիր նուագարանաց, խաղալու եւ պարի ձեւերն նկարագրել։ Ասնայ հին նուագարանքն են՝ ջութակ (քեմանչէ) եւ ձեռաց միակողմանի թմբուկ (թէֆ), եւ մեծ չնկիւռ (սազ). Նաեւ տաւիղ (սանթուռ), մեծ թմբուկ եւ փող (տավուլ զուռնա)։

---

*) Հաղորդեր է Վանք գիւղէն բժիշկ Եանի էֆէնտիի որդին պարոն Լազարին։

1. Կլապիտոն։ 2. Մանր։ 3. Կոճակ։ 4. Թերեւ՝ ծամ։

Նուագները են՝ նորաձև ջութակ (քեմանչէ), նորաձև տաւիղ (ք
-նոն) և արմոնիկ։ Տանկաց հարսանեաց մէջ սովորաբար
-վուլ զուռնան, քեմէնչէ, սազ, սանթուռ և փոքր թմբուկն
-գործածուի. իսկ Հայոց մէջ՝ բաց ի տավուլ զուռնայէն՝ մի
-ները կը գործածուին, բայց յաճախ գործածականն է քեմէն
-կեան քեմանչէ, տէֆ և սազ։

Խաղալու ձևերն գլխաւորաբար երկու տեսակ է, որք
-և—խաղ և հալայ (պար)։ Թևխաղն Կ. Պօլսոյ Թուրքակ
-ձևերին կը նմանի։ Զոյգ մը խաղացողք թևերնին բացած
-ներ մատներնին կամ բազուկնին քիչ մը ծռած՝ միմեանց դէմ
-մ կը խաղան, ջութակին, տէֆին և սազին նուագած
-ր կամ արագ եղանակին համեմատ։ Խաղացողն կ'ս
-խ ոտքը գետինը կոխել քիչ մը ծռելով. և ոտքին հետ
-թևն ալ կը խոնարհեցունէ սակաւ ինչ. և յաջորդ զարկ
-ձախ ոտքն կը կոխէ և ձախ թևն ալ կը խոնարհեցունէ
յաջորդաբար կը շարունակէ։ Արք՝ սովորաբար՝ թևերնին
-րածած և ձեռքերնին բացած կը խաղան և կանայք բազո
-նին և մատերնին կէս ծռած կը խաղան։ Ոմանք՝ զարկ
համեմատ, բթամատովն ու միջամատովն «չըլթ չըլթ» ձ
մը կը հանեն։ Ցարանց ոմանք երբեմն մէկ ձեռքն վեր բռ
-ռով միւսն մէջքն կը դնեն կամ երկու ձեռքերնին ալ մ
-քերնին դնելով, պահ մը նոյն ձևով կը խաղան, կամ ծ
կը զարնեն և յետոյ դարձեալ թևերնին տարածելով սովո
-կան ձևովն կը խաղան։ Վերջապէս, կան ոմանք որ մէկ կ
երկու ծունկերնին ի գետին դնելով պահ մը խաղալէն
-տոյ, անմիջապէս կը կանգնին, կը շարունակեն։ Նորեր
մէջ կան որ արագ զարկի (վրայ խայտէ) մասնաւոր եղան
մը համեմատ դողալով կը խաղան, իբրև այս ինչ գաւա
կամ նորահնար խաղալու ձև մը։ Սովորաբար 1 զոյգ (2
կամ երկու կին և կամ մէկ այր մէկ կին), երբեմն ալ 2-
զոյգ կը խաղան։ Նախ իրարու դէմ առ դէմ կ'սկսին
-ղալ, յետոյ իրարմէ սակաւ կը հեռանան, կը մօտենան,

դերնին (կողմն) կը փոխեն և կը շարունակեն։ Եւրոպական խաղերն հազիւ թէ 2—3 երիտասարդք գիտեն, և այն ալ հաւանօրէն՝ թերի։

Իսկ պար հոլլոյ քաշելու ձևն է այսպէս. պարագլուխն, որ հալայ պաշի կ'ըսուի, թաշկինակ մի կամ՝ եթէ հարսանեաց մէջ է՝ փեսայի թուրն աջ ձեռքն կ'առնու, մէջքէն կը բռնէ և կը բարձրացունէ, և ձախոյ ճկոյթն յաջորդին ճկոյթ մատըն կ'օղակէ և վեր կը բարձրացունէ. յաջորդն ալ իւր ձախ ճկոյթն իւր յաջորդին աջ ճկոյթն՝ և այսպէս բոլորն ալ իրարմէ անջատ և ճկոյթով միացած՝ բոլորակի կը կանգնեն և նուագողք կ'սկսին։ Պարն՝ ինչպէս և թեխաղն՝ սովորաբար նախ ծանր եղանակաւ մը կ'սկսին, ապա՝ արագ։ Պարագլուխն եղանակին համեմատ՝ 2—3 քայլ դէպ յաջն կը յառաջանայ, և քայլ մի կամ՝ կէս քայլ յետս կը նահանջէ. վերամբարձ թևն կը խոնարհեցունէ և իսկոյն կը բարձրացունէ։ Երբ ծանր է եղանակն, նախ աջ ոտքն, յետոյ ձախն, իւր դիմաց քիչ մը յառաջ դնելով ետ կ'առնու. դարձեալ աջ կողմէն 2—3 քայլ յառաջ կ'երթայ և կը շարունակէ պարն՝ ուր սկսուած տեղէն՝ բոլորակի ձևով՝ կը հասնի միևնոյն տեղն։ Պարագլխոյն յիշեալ շարժմանց նման (յառաջ, ետ, երբեմն նստած, ևն.) կը շարժին և միւս պարողքն։ Թեխաղն սովորաբար սենեկի մէջ կը խաղան, բայց պարն 5—10 կամ աւելի անձանցմէ կը բաղկանայ, ի տանիսն կամ՝ սրահին և կամ մեծ սենեկի մը մէջ կը քաշուի։ Պարագլուխն երբ մէկ երկու կամ աւելի շրջանն լրացունէ, երկրորդն կամ այլ պարող մի, հրաւիրեալ կամ՝ ինքնին կու գայ և թուրն (ի պատենի) կամ թաշկինակն առնելով ինքն կ'ըլլայ պարագլուխ, յետոյ ուրիշ մը և կը շարունակեն։

Եալլի-ին պարին ձևն տարբեր է և սովորաբար կանայք կը պարեն եղեր. թևերն իրարու անցունելով կամ միմեանց գօտի բռնելով կը պարեն կը ճորան եղեր. և պարագլուխն թաշկինակ չառնուր ձեռքը։ «Եղեր» կ'ըսենք. զի 30

և ասկէ տարիներէ ի վեր եալալին և իւր պարն դադրած է և անունն միայն մնացած։ Ուստի հիներէն եալալիի երգն հարցունելով գրեցի որ հետևեալն է։

---

Եալալի, եալալի. Եկանք ի բարկենտանք, երթանք ի Ջատիկ.
« » Աճապ [1]) մեկզմէկէ ինտոր տի զատինք.
« » Կինէ [2]) եկաւ գարնան երկան օրերը.
« » Հալեցաւ ձները, ելաւ գետերը.
« » Բուսաւ առուեզերուն կանաչ խոտերը։
« » Կածուուկ, ինդաս երկու ձագկանտ արևը.
« » Թռչիս ու իջնիս Ստամպոլու վերևը.
« » Շատ հաց ու շատ բարև խրկիմ խարիպիս,
« » Խարիպիս, խարիպիս, մէկիկ ազբորս։
« » Այ Եօրկէօ օրերը, Ջատկուն կիրակին,
« » Աւաղ, մեր խարիպներն ին խարիպ երկիր։
« » Ե՛լ եկուր, ե՛լ եկուր, խավլը [3]) խարար է [4])
« » Իրեք տարին մէկ կորիճին խարար է.
« » Շատ կենալը քու արևուն զարար [5]) է։
« » Ես ալ Ստամպոլու վարպետ պիտէի,
« » Ստամպոլ քակէի, նորուց շինէի.
« » Վազուց գնացողը օխլայ [6]) խրկէի։
(պատասխան) Սիլաուր միտքս ինկաւ, կ՚երթամ չիմկենար.
Եամոն աս փէրփէրուն [7]) ալ չիմ դիմանար։
Ստամպոլու սուրբ ժամեր ու սուրբ խաչեր,
Իմ տէր, Տօսքօփօ տէր, սիլաս իմ դարձեր։
Սիլաս ուր միտքս ինկաւ, ևն.։

—

Նա դիմացի պաղճան հօրս կու մանի [8])
Միջին ժուռ գալողն ալ եարս կու մանի։
Սիլաս ուր միտքս ընկաւ, ևն.։

---

1. Արդեօք։ 2. Դարձեալ։ 3. Պայման։ 4. Բաւ է։ 5. Վնաս։ 6. Հայրենիք։ 7. Ցաւ։ 8. Նմանի։

## ՊԱՐ ՋԱՏԿԻ

2. Եալալի, եալալի. Մեր Տէրն արտաց [1] ելել է,
» » Հաւը կարմիր ածեր է.
» » Պօղոս երազ տեսեր է.
» » Պօղոս. եարազտ ի բարին։
» » Շնորհաւոր Նոր տարի.
» » Նոր տարի ու Նոր բարի.
» » Աղբարս ի ուր և ի ուր է։
» » Պառկեր պախճան ի քուն է.
» » Խումաշ բարձը գլխուն է.
» » Ջուր վերեօքն անցեր է.
» » Խումաշ բարձը Թրջեր է։
» » Աղբա՛ր, ելի ատ քնուն.
» » Գինիի խմէ՛ աս գինուն.
» » Գինին անպակ է խմէ՛։

## ԵԱԼԱԼԻԻ ՊԷՍ ԵՐԳ ՄԸ

3. Ի՞նչ քաղցր ու անուշ է գարնան օրերը,
Ամպեր ու չի պարզեր սրտիս արեը.
Երկէ ու մի՛ կտրեր սիրուտ բաքեը։

## ԵԱԼԱԼԻ ՎԱՆՔ ԳԻԻՂԷՆ

4. Եալալի, Երեը [2] ծուռ կ՚երթայ, արեն ի մանը.
» Աղշըներ [3] աս ի՞նչ է ձեր ըրած բանը
» Անուշ անուշ կուգայ հարսներուն ձանը

—

5. Եալալի, Բերդը պարիսպ բոլոր չօմաշն ի վրան.
» Վարպետաքը բանին, ողանքն վրան։
» Վարպետացը ողան տօսախ կու չալէ.

---

1. (Թերևս) յարուցի 2. Արեը։ 3. Աղջիկներ։

Նալալը ի՞նչ Թուր ու Ըէֆէնկ 1) կայ, վրան կու կախէ.
» Կ'երթայ խանտար խաֆթան 2) Ըստամպօլ 3) կու ծախէ։

—

6. » Մարիկ, երբ որ հալի լեռներուն ձիւնը.
» Ոլըրի խորխոշի երեսը տունը։

—

## ՀԱՄԲԱՐՁՄԱՆ ՏՕՆԻՆ ՎԻՃԱԿԻ ԵՐԳ՝ ՎԱՆԻԳ ԳԻՒՂԷՆ

7. Վիճակ, վիճակ, ոսկի վիճակ.
Մարն է բերեր քեզ կորճուկ։
Հօռոփ, եկի տուն գնա,
Հացը եկեր տաշտէն կու վազէ։
Քու հացը Աստուծու լընի.
Քու սեղանը հայր Աբրահամայ։

---

# ԳՂ. Գ.

## ԱՆՏՈՒՆԻ

Ակնայ և շրջակայ գիւղօրէից մէջ հնաւանդ երգ մը կայ որոյ «Անտունի» կ'ըսեն ։ Ոմանք «Անտօնի» պէտի ըլլայ կ'ըսեն և՝ կարծեմ՝ ոմանք «Այնտօնի» կ'ըսեն։ Երբ ուսումնական ազգային մը առաջին անգամ կը լսէ, կը հարցունէ հետաքրքրութեամբ թէ «ի՞նչ է Անտունին», մեք չեմք կարող գոհացուցիչ պատասխան մը տալ։ Ըստ իմ կարծեաց հաւանական է թէ, ինչպէս որ Անտոն յատուկ անունն Ակնայ և շրջակայից մէջ «Անտուն» կը հնչուի, ինչպէս և Մովսէսն՝ Մուսես, պարոնն՝ պարուն, ոչն՝ ուչ, (յԱպուչեխ և ի Կամարակապ) Մելքոնն՝ Մելքուն, նմանապէս այս երգին հեղինակն Անտոն անուն հայ քանաստեղծ մը (շայիր) եղած լինի և նորա անուամբ «Անտունի» կոչած ըլլան. կամ տուն տուն բաժնուած

---

1. Հրացան։ 2. (երկու մասէ բաղկացեալ զգեստ) տեղւոյ անուն է։ 3. հաղուագիւտ իր։

չըլլալով «անտուն» ըլլայ և կամ՝ որովհետև այս երգ առաւելապէս պանդուխտներու (ղարիպ) կը վերաբերի, զայսու[illegible] անտուն նկատելով երգին անունն «անտունի» (ղարիպին երգը) դրուած ըլլայ։ Ճիշդն ատոնցմէ որն է կամ տարբեր նշանակութիւն մ՚ունի, չգիտեմ։

Այս երգ՝ որ ծանր ու քաղցրանուագ եղանակ մ՚ունի, հին ժամանակներէ ի վեր կը շարունակուի։ Անտունին, սովորաբար, հարսանեաց և խնջոյից մէջ կ՚երգէին ու կը նուագէին։ Ինչպէս ըսի, եղանակը քաղցր է և հիմնապէս «օր օր»ին, «Առաւօտուն կ՚ելնես», «Եկո՛ւր ազուոր աղջիկ» կամ «բարի լուս, ազուո՛ր, բարի լուս»ին եղանակաց կը նմանի, թէ և ծանր։ Ատոնք սովորաբար առ պանդուխտն ուղղեալ և սիրահարական են. Թէպէտ կան զանազան նիւթոյ վերաբերեալ անտունիներ ալ։

Բայց աւա՜ղ. ինչպէս զանազան հին խաղեր, սովորութիւնք ու երգեր, նոյնպէս և այս անուշ երգն ալ տակաւ առ տակաւ կը դադրի ու կը մոռցուի։ Դեռ 25—30 տարի յառաջ Վանեցի և Զորեցի կանայք որչափ անտունիներ կ՚երգէին. Ակնայ, Ապուչեխի և Կամարակապի հարսանեաց հանդէսներու և խնջոյից մէջ զանց կ՚առնուէր անտունին. մինչդեռ այժմ Զորակն քանի մը տուն միայն կայ աւերակ դարձած՝ և Վանքին անտունիներն ալ ո՛չ առաջուան չափ։ Որովհետև այս պատուական երգն ևս տարուէ տարի կը դադրի ու կը մոռցուի, գէթ մնացեալքն անմոռաց մնալոյ համար անտունիի և այլ հին երգոց այր կամ կին մասնագիտաց հարցունելով իմ արդէն գրածներուս վրայ բաւական թուով անտունիներ յաւելցուցի որ ինչպէս պիտի տեսնուի, հայերէն երգոց ամէնէն հարուստն է։

Անտունիներն երեք մասանց բաժնեցի, և իւրաքանչիւրն զատ զատ և այբ ու բենի կարգաւ գրեցի։ Ա. մասն ղարիպի վրայ է. Բ.ն սիրահարականք և Գ.ն զանազանք։

Պէտք է գիտնալ թէ անտունիի առաջին տողն «Հա՛ Նար»,

Հօս՛ եար կամ «Օգուտըմ եա՛ր» և կամ «Զուլըմ, գուլըմ» երգելով ակզաօրին. Ա. տողն վերջանալուն մէկ անգամ՝ ևս «հա եար» կ'ըսեն. և. երկրորդ տողն առաջնոյն հետ կ'երգեն որով տուն մի կ'ըլլայ։ Երրորդ տողն դարձեալ «հա՛մ եարով կ'սկսին Ա. տողին պէս, և 4-որդն Բ.ին պէս կ'ըսեն և այսպէս կը շարունակեն։

## ԱՆՏՈՒՆԻ ՂԱՐԻՊԻ ՎՐԱՅ

(Այրն պանդխտութենէն կը վերադառնայ իւր սիրելւոյն քով, կինն չի ճանչնար զայրն, և կը խօսին հետևեալ անտունին)։

Հա՛մ եար, հա եար

1. Աղուոր մի ծարուրթիւնէն, հա եա՛ր.
Նստեր է ջրին վրայ։ Հա եա՛ր։
Կտրիճ մի անոր սիրուն,
Գնաց ի դէմ խօսելու։
Նստաւ ու սէվտան ինկաւ 1),
Մոռցաւ ինչ բան խօսելու։
—Ըսաւ, խա՛հրըման 2) կըյիճ 3).
Դուն ինչ ժուռ կուգաս աս տեղը։
—Ըսաւ քի տէրտիս համար
Ժուռ կիւգամ հէքիմ բռնելու 4)։
Ի՞նչ արի, չեղաւ տէրման,
Հոս եկայ հէքիմ բռնելու։
--Ըսաւ քի տէրտդ ինչ է.
Մի՛ վախնար ըռնտցնելու։
—Խնծորդ է կապեր չալղայ 5).
Ես մատա 6) ունիմ ուտելու։
Զուտիմ նը մատաս կ'ուզէ,
Կու վախիմ քի դողցնելու։

---

1. Սիրահարեցաւ։ 2. Դիւցազն։ 3. Կտրիճ։ 4. Փնտրելու։ 5. Նորաբոյս, խակ։ 6. Ախորժակ, սիրտ։

Բացուեր է պախճիս վարդը,
Ես պաղպան լընիմ քաղելու։
Քաղիմ ու տէսթէ անիմ,
Գէլքի թը [1]) թմրիմ հոտերուն։
Ա՛յ իմ, աննման աղուոր
Ես քենէ պագիկ մի կ'ուզիմ.
Խարիպ երկիր եար ունիս,
Դուն սեպէ չէփէք [2]) արեւուն։
—Պագ մի չէ, երկուք կուտամ.
Խարիպիս քովէն գալողին։
Դուն ինծմէ պագ մի կ'ուզես,
Ես հազար կուտամ բերողին։
—Ա՛յ իմ խատուտիկ հարսնուկ,
Քու սիրուն ես հոս իմ եկեր։
Պագ մի տուր տէրտի համար,
Դուն ալլի ձոփէր [3]) մի՛ դառնար։
Ելլիմ ու ձիուս վրայ,
Խառնուիմ ի մէջ հովերուն։
Երթամ ի օտար երկիր,
Խարիպիտ տեղն տի գտնիմ։
Նստիմ ու հարցմունք անիմ.
Ըսիմ ուր ալ չի կենայ։
Ելլիմ բաահլան [4]) ձիուս,
Առնիմ խարիպդ ի եքսէս [5])
Խառնուիմ ամպին մէջը,
Իջնիմ սա ջրին վրայ։
Խարիպտ դուռտ բերի,
Ա՛ռ նստէ, անուշ խօրըթէ։
Քու եարտ քեզի բերի,
Հասուցի սրտիդ մուրատին։

---

1. Թերևս։ 2. Ողորմութիւն հոգւոյ համար։ 3. Խօտտումն։ 4. Սրընթաց նժոյգ։ 5. Ետևս։

Խօսք տուիր ու փոխ առիր,
Դուն քու խօսքտ կատարէ։
Քենէ հազար պագ կ'ուզիմ,
Անկէց ետև եռտ 1) առէ։
—Ես կուտամ հազար պագս,
Զիմ Յար քեզի պարտական։
Ա՛յ իմ խահրըման կըլյին,
Ես մինակ, դուն ձեր կու երթաս։
Դուն եղար գարնան առև,
Ցաթեցար աս Ջրին վրայ։
Քու սիրուն տաքը զարկաւ,
Ես եղայ ձնիկ հալելու։
Նստինք աս Ջուրին վրայ,
Խօսք ունիմ քեզի ըսելու։
Նուան հատ գինի ունիմ,
Անուշ լինի խմողին։
—Դուն խմէ՛ր (ուր—որ) ես ալ խմիմ.
Պէյտի արբենամ քու սիրուն։
Դուն սիրէ եարուտ նման,
Ես ճուղապ 2) կուտամ քու սիրուն։

---

Կը պատմեն թէ հարս մը՝ որոյ այրն ի պանդխտութեան է եղեր, դրացի հարս մը կը բերէ ու միասին կը պառկին։ Կեսուրը զգալով թէ տան մէջ օտար մի կայ, կը կատաղի, և առանց հարցունել քննելու կ'սկսի բամբասել զհարսն, և կ'ուզէ որ խայտառակ ընէ զայն։ Հարսն գետեզրն երթալով կ'սկսի տրտում տխուր շրջիլ. և կը մըտածէ ինքզինք ջուրը նետել։ Այս պահուն այրն ի պանդխտութենէ կը վերադառնայ և անոր տեսնելով իւր կինն, ա-

1. Թողուլ։ 2. Պատասխանատու լինել։

ռանց ծանօթացունելու զինքն, կ՚սկսին (խօսիլ) հեռուեւալ անտունին։

2. Ա՛յ իմ խատուտիկ հարսնուկ,
Ջրեզերն ի՞նչ կու բանիս։
—Խարիպս է խարիպ երկիր.
Ես անոր ճամբան կու պահիմ։
—Հա՛րսնուկ, եկո՛ւր պազ մի տո՛ւր,
Խարիպէն խապրիկ մի կուտամ։
—Պազ մի չէ, երկուք կուտամ.
Խարիպէս խապար բերողին։
Պազ կուտամ ու պազ կ՚առնիմ.
Պեհ կուտամ մէկալ օրերուն։
—Հա՛րսնուկ, ելի՛, վե՛ր եկու,
Ես ի քու խարիպտ եմ եկեր։
—Աչուիտ խարիպիս աչուին,
Ձանտ անոր ձանը չի մանիր։
Ծեպէտ ու ծոցէտ կ՚ուզիմ.
Տեսնիմ նշուռ կուտաս թ՛ը խնծոր։
Նուռ կայ հազար հատ ունի.
Հազար պազն ալ ձեր կու ըլնի։
—Երկու սէրն ուր մէկ ըլնի,
Հազար պազն ալ թեզ կու ըլնի։
Եկո՛ւ նիստ ձիուս ետին,
Ուր ըլնինք ձի ու ձիաւոր։
(Եւ երկուքն ի միասին կ՚երթան իրենց տան դուռն)
Մա՛րիկ, եկու դուռը բա՛ց.
Խարիպ որդեկտ իմ եկեր։
—Գնա՛ աս գեղին վերև.
Հէլղեմ [1]) աս գեղն ալ խան [2]) ունի։
Պառկէ ւ անուշ քուն եղի,
Հելպէթ աս մութը լոս ունի։

4. Հարկաւ, անշուշտ։ 3. Պանդոկ։

Մութն երթայ ու լոյսը գայ,
Մարիկն իր որդեկը ճանչնայ։
(Մօրն այս պատասխանին վրայ որդին և հարսն կը մեկ-
նին կ՚երթան այլ երկիր)։
Մութը գնաց լոյն եկաւ,
Ո՛ւչ (ո՛չ) որդեկ կայ, ո՛ւչ հարսնուկ։
(Ուստի մայրն լեռներն ելնելով կը հարցունէ)
Կանաչ դաշտ ու դուր Մէյտան [1]),
Ո՞վ տեսաւ իմ ծոյր [2]) ամիրան։
(Լերինք և դաշտերն կը պատասխանեն)
Դուն ալ որ սաօր եկիր,
Ան երեկ ոնցաւ [3]) ցերեկուան։

---

3. Ա՛յ իմ սարերու (կամ հարաւու) հովիկ,
Վար իջեր դռնակն է զարկեր։
Արթնցայ ու վեր ինկայ,
Գիտցայ թը խարիպս է եկեր։
Նորուկ ճահելուկ հարսնուկ,
Ուր իջեր դռնակն է բացեր։
Տեսեր ուր իր եարը չէ,
Մէլիւլեր [4]) ու ներս է գացեր։
Կեսրակն ալ հարցմունք արեր,
Հա՛րսնուկ, քու ո՞ր տեղտ է ցաւեր։
Մա՛րիկ քու որդուտ սիրուն,
Իմ ամէն տեղիկս է ցաւեր։
Մի լար, մի՛ խառղիր [5]) հա՛րսնուկ,
Գիր կ՚անեմ որդիս կու բերեմ։
Գիր անես, որդիտ բերես,
Աստուծու լուսուն տիրանաս։

---

1. Ասպարէզ. հրապարակ։ 2. Ծանր։ 3. Անցաւ։ 4. Տխրծ։
5. Մի յուսահատիր։

Գիր չ՚անես ու չի բերես,
Կ՚անիծեմ ուր քար կու դառնաս։

Հօրսն առ լուսինն, որ ցալթեր [1]) է ի տանիս։

4. (Հարսն) Ատ ծով, ատ երդիքտ եկեր,
Ատ օտար հողը կու կոխէ։
Թը մարդ ես նը վար եկու,
Թը շուշան ծաղկիկ գնալու։
—Ո՛ւչ մարդ իմ ի վար գալու,
Ո՛ւչ շուշան ծաղիկ՝ գնալու։
Պիւլպիւլ իմ ու ժուռ գալու,
Շատ երամ ունիմ գնալու։
Երթամ՝ շատ երկիր ռանիմ [2])
Շատ խարիպ տեսնիմ մէն ի քուն։
Ամենուն խարիպն է քուն,
Իմ ու քու խարիպն է արթուն։
—Խարիպս ո՛ր ճամբով կ՚երթայ,
Ես անոր ճամբէկ պիտէի։
Ո՛ր աղբիր ուր ջուր խմէ,
Ան ջրին ակնեկ պիտէի։
Յու. ծնար ան ջրէն խմէր,
Ես ալ իմ՝ մուրատն առնէի։
Երթար ո՛ր քաղաք իջնէր,
Ան քաղքին խանճի [3]) պիտէի։
Ուր գար ու խանը իջնէր,
Իմ էզիզ օտան տանէի։
Թուիկս ալ շըլլին ձգեմ,
Մանտրտիկ հետը խորըթեմ։

1. Ծագել։ 2. Անցնեմ։ 3. Պանդոկապետ։

5. Գետա՛կ, իմ եղման գետակ.
Ո՛ւր կ'երթաս. իւրոտ 3) ինծի ըսէ։
Գիշեր ու ցորեկ կ'երթաս,
Քուն չունիս, արթուն կու կենաս։
Գնամ ու գնամ կ'ըսես,
Ո՛ւչ կուգաս, ո՛ւչ կու մօտենաս։
Ուր գաս ու ինծի մօտենաս,
Ջիմ թողուր ասկի 1) հեռանաս։
Իմ եարն է գրեր ըսեր,
Եա՛ր, եկո՛ւ զիս զողցիր ու տա՛ր։
—Ինտո՛ր գամ, գողնամ տանիմ,
Ատ չէօլէն 2) ճամբեկն է դժար։
Մի վախեր, եար, մի՛ վախեր,
Ես կարմունճ կապիմ քո համար։
Ես կարմունճ կապիմ քէօ համար,
Մարգրիտ շարիմ լարէ լար։
Սփռիմ էպիշում 3) խալի,
Ուր գործած տաս և երկու տարի։
Ոսկեվզ ի վրան կոխես,
Ոսկեցդ փոշեկը առնիմ։
Ոսկեցդ փոշեկը առնիմ,
Ուր քաշիմ աչքիս թիւթիա 4)։
Ուր քաշիմ աչքիս թիւթիա,
Աչքերուս լուսը շատանայ։

---

Յ. Բնակարան։ 1. Ասկէ։ 2. Անապատ, ամայի։ 3. Մետաքսէն ոլորած մանածն. մետաքսեայ։ 4. Խոտ ինչ. հայ. «հազուագիւտ գեղ» իմաստ[illegible]ը գործածուի։ Կ'ըսեն թէ կապարն հալելով այս խոտը մէջը [illegible] ձգեն, որով կապարը ոսկի կը դառնայ։ Այս գիւտը վարդապետի մը կ'ընծայեն և կ'ըսեն թէ թագաւորը՝ իւր խոստման համեմատ այս նորահնար ոսկիէն շինած դրամին մէկ կողմին վրայ ալ նոյն վարդապետին պատկերը կոխել տուեր է եղեր։

Անտունի՝ պանդխտութիւն գնացողին կողմանէ

6. —Գնամ ու գնամ կ՚ըսիմ,
Ես կ՚երթամ, բարով մնացէք.
Ծաղիկ Ֆ՚ոմանքը [1]) կուտամ,
Վարդերուն մէջը պահեցէք:
Ամէնքդ հաւասար նստէք,
Իմ տեղս ալ խոռ [2]) պահեցէք.
Ամէնուտ խմածն անուշ,
Իմը՝ իմ տեղը փաթեցէք [3]):
—Կարմիր կապաւոր աղուոր,
Դուն ո՞ւր կերթաս միաւոր:
Կեցիր այ Եօրկի [4]) հետտ գայ,
Ու դէմդ ալ չելլէ ձիաւոր:
Այ Սօրկին իր ձին հեծնէ,
Այ Նիկոլ իր ճերմակ ջորին:
Այ Եօրկի, այ Տիմիթրի,
Ա՛յ Նիկոլ ձանս դուն լսեա:
Բռնես խարիպիս թեւէն,
Աներև [5]) լեռներն անցընես:

—

7. Եկին ու բերին խապար,
Թուեստ ելեր քու եարն ու կուգայ:
Ամէն բանս ի դան [6]) դրի,
Ջուր դրի մազս լուացի:
Հագայ շարաշար շապիկ

---

1. Աւանդ: 2. Թերի, պակաս: «Ամէնքդ հաւասար նստէք» տողն և նորա յաջորդ երեք տողերն ողբի հետ կ՚երգեն, և երբեմն փոխանակ երրորդ տողին հետևեալն կ՚ըսեն. «Ջուր ուզէ, գինի տուէք, աղուորին խաթրը մ՚աւըրէք»: Թուի թէ սոյն անտունիին երկրորդ մասին հեղինակութիւնն Վանքէն կամ Զօրակէն է: 3. Թափեցէք: 4. Սուրբ Գէորգ: 5. Աներև: 6. Մի կողմ:

Կապեցի լահոռ շալ գօտի։
Դղմակ մի նռան գինի
Ես առի ու դէմ գնացի։
Տուշմանս ալ երեսս ելաւ,
Ո՞ւր կ՚երթաս ան քու եարըտ չէ։
Թուլցաւ շահենին բազկի
Թափեցաւ նռան հատ գինի։
Տո՛ւշման, աչքտ քօ՛ր կենայ,
Նենգաւոր լեզուտ չորանայ։
Թող տուշմանս շատ ապրի,
Իր մէկիկ որդին մեռանի։
Մեյ մ՚ալ տուշմանս ուր տեսնիմ,
Տի հանիմ չախուեկս [1]) ի ճեպէս։
Չախուեկս ի ճեպէս հանիմ,
Տի մորթիմ սև ոչխըրի պէս։
Արունը գինի տ՚անիմ,
Տի խմիմ անպակ գինու պէս։
Մսիկն ալ քէպապ տ՚անիմ,
Տի ուտիմ կաքւու մսի սլէս։

—

8. Ես ալ անկիւմանն [2]) էի,
Անկիւման կիւման չունէի։
Ան բարձրը սարերն իվար
Ալ մեզի արև կու ցաթէ։
Ամենուն ը տունն ի ներս,
Մեր երդիքն ի վար ճառագեց։
Վաղո՛ւց գնացած խարիպ.
Ուր կ՚անէ տաս երկու տարի։
Ինչեխ [3]) իմ կարօտցեր,
Երեսիտ չէֆէն [4]) իմ մոռցեր։

---

1. Չախու, զմելի։ 2. Անյոյս։ 3. Այնչափ։ 4. Դէմքի գծագրութիւն։

Եկիր նը բարով եկիր.
    Դուն եկիր, ես իմ խնտալու։
Քու գալն է հազար բարի,
    Քու գնալն է խեղճ ու լալի։
Դուն մե՛րն ուր գալու էիր.
    Երեկով իմաց չանէիր։
Սփռիմ՝ էպիշում խալի.
    Գործած է տաս ւ երկու տարի։
Զգիմ խօշ Ռէօյէ փէօշէ [1],
    Քի վրան զէրպապ չուխանի [2]։
Սազեմ [3]) ոսկունքէն սեղան,
    Հաւ խորվիմ կաքաւն իվրան։
Շինիմ արծթէն խատէհ [4])
    Նռան հատ գինին իվրան։
Խմէ՛ ուր ըսիմ անուշ,
    Անտունի մ՚ըսիմ ուշէ ուշ։
Ինչեխ անտունի մ՚ըսիմ,
    Ուր թնտայ խատէհն ի ափիտ։
Խատէհն ի ափիտ թնտայ,
    Սըռմա թել պեխերն երեսիտ։
Սէրը սիրողին վայլէ.
    Այս գինին անուշ խմողին։

—

9. Լուսիկ [5]) բոլըրեր ւ եկեր,
    Ես իքու խարիպտ ի նման.
Խպնէ [6]) ու ամչնէ, լուսիկ,
    Ո՞ր տեղտ իմ խարիպիս նման։
Խարիպս թուխ աչք ունէր,
    Թուխ յունեը ու շուշման [7]) բերան։

---

1. Փետրալից անկողին։ 2. Ոսկեթել կերպաս։ 3. Զարդարել։ 4. Գաւաթ։ 5. Լուսին։ 6. Քաշուել, ամաչել։ 7. Գեղեցիկ։

Շրթունք, շուրթեզէն ունէր.
Աբա-մօ թել պեխերն իվրան։

---

## ԿԱՐՕՏԱԿԷՋ ՀԱՐՍՆ ԱՌ ԼՈՒՍԻՆՆ

10. Լուսիկ մի փրթաւ քարէն,
Կէսն է խոռ [1]) ու կէսն է բոլոր։
Քիչ քիչ ալ ի վեր եկաւ,
Բոլորեր զըննոր [2]) թագաւոր։
Լուսիկ, դուն լուսով կենաս,
Թը կենաս պահիկ մը հուտա։
Երկու խօսք զանկատ ունիմ,
Այն զանկտիմ, դուն ալվա [3]) գնա։
Գնա խարիպիս ըսէ,
Ջի կենայ ու ելլէ ու գայ։
—Խօսկունքդ ի գլխուս վրայ,
Զգիտիմ դուռը խարիպիտ։
—Եկուր, նշանով ցոյց տամ,
Ուր գտնես դուռը խարիպիս։
Իմ եարն է շէքէր խանին,
Նուշ դրեր շէքէր կու ծախէ։
Աչուին թէրազու [4]) արեր,
Ուներովը վեր կու քաշէ։
Էմմէնուն աժան աժան,
Իս տեսեր նը սուղ կու ծախէ։

---

## ԴԱՐՁԵԱԼ ԱՌ ԼՈՒՍԻՆՆ

11. Լուսիկ մի փրթաւ քարէն.
Կէսն է խոռ ու կէսն է բոլոր։

---

1. Թերի. 2. Ինչպէս նոր։ 3. Դարձեալ։ 4. Կշիռ։

Քիչ քիչ ալ ի վեր եկաւ,
Բոլորեր զընճոր Թագաւոր։
Լուսիկ, դուն կամաց կամաց՝
Խառղ եղիր [1]) մեր տան ի վրայ։
Երկու խօսք գանկատ ունեմ,
Ան գանկտեմ դուն ալվա գնա։
Գնա խարիպիս ըսէ.
Չի կենայ, Թող ելլէ ու գայ։
—Բարեւս ի գլխուս վրայ,
Չի գիտեմ դուռը խարիպիտ։
—Եկուր, Նշանով ցոյց տամ,
Բարձրը պատ ու ծառ շքերուն։
Նստեր է ծառին շքին,
Խաս ու մաս խատէհն ի ափին։
Խատէհն ուր ափիտ ունիս,
Կամ խմէ՛, կամ տուր խմողին։
Ա՛ն սազդ ուր կէօքսիդ [2]) ունիս,
Կամ չալէ, կամ տուր չալողին։

—

12. Կարմիր խնձորի պայուս [3])
Աճապ քեզ ո՞վ արաւ ալոց [4])։
Ո՛վ որ քեզ ալոց արաւ,
Ան կենայ ծովուն ւ երերուն։
Աճապ խարիպին տիրուն
Սիրտն ինտո՞ր արև կու ծագէ։
Ո՛ւչ սիրտս արև ցալթեր,
Ո՛ւչ երեսս է պարզ ծիծաղցեր։
Ես երկու խարիպ ունիմ,
Մէկն է հիւսիս մէկն է հարաւ։

---

1. Անստուգութեան մէջ, մնալ, չուարիլ։ 2. Կուրծք։ 3. Պա-տուաստ։ 4. Ալոց։

Սիրտունս 1) փրթեր ու գար,
Հարաւինս ալ հետը բերեր։
Աճապ տի ըլնի՞ օրիկ,
Խարիպ, գաս դուռս, առնիմ իտուն։
Թևիկս ալ շըլլիտ ձգիմ,
Մանտորտիկ հետտ խորաթիմ։

. . .

## ՀԱՐՍՆ ԱՌ ՋՈՒՐՆ ԵՒ ԱՌ ՂԱՐԻՊՆ

13. Ջրիկ, ո՞ր ակնէն կուգաս,
Իմ պաղուկ ջրիկ ւ անուշիկ։
—Ես ալ ան ակնէն կուգամ,
Հին ու նոր ձնակն է վրաս։
—Եկո՛ւր մէր պախճան տանիմ,
Վարդ ու նուռ ունիմ ջրելու.
Վարդ ու նուռ ունիմ ջրելու,
Ըռահանս փունջ հանելու։
Քաղիմ ու փունջ փունջ անիմ,
Արմուղան 2) խրկիմ խարիպիս։
Առնէ ու քնթին դնէ,
Կէօշ պէնպէ՞ 3) փաթերը շարէ։
Կիւլպէնտն ալ արև ըլլայ,
Իր եարուն սրտիկը ցաթէ։
— Խարիպ իմ, դուռըտ եկի,
Բաց դուռտ ուր մտնիմ իներս։
Քաղիմ վարդ ու ըռահան,
Կարմիր խնձոր տամ ի քեզ։
—Դուռտ բանամ ներս առնիմ,
Ինձի շատ ամօթ կու ըլնի։

---

1. Թերևս՝ հէւախփինա։ 2. Ընծայ։ 3. Հին զարդ մը։

Գնամ իջի ան գետը,
Հէլպէթ ան գետը խան ունի։
Գառկէ ու եղիր անուշ քուն,
Հէլպէթ աս մութս լոս ունի։
Մութն երթայ ու լոսը գայ,
Խարբալ ես ճամբեկտ երևնայ։
—Նարուկ, քեզի ինչ արի.
Ուր իս ճամբու դրիր քի գնամ։
Ո՛ւչ պագ մի պաշար տուիր,
Ո՛ւչ ճերմակ ծոցուտ նավալէ [1]։
Երթամ ու Վանքը [2] տ'իջնիմ,
Սուրբ Սարգիս տանիմ հավլէ [3]։
Քեզ առնէ ու ինծի բերէ,
Ուր ժողվէ ալէմս [4] իմրայ։
—Մօտիկ աղբիր [5] դէմտ գամ,
Ուր՝ եմրս խոռբրս չի մնայ։
Առնիմ ոտք-տկլիտ փոշին,
Ուր աչքս քաշիմ Բէ-Բէս։
Աչքս քաշիմ Բէ-Բէս,
Պէլքի լուսը շատանայ։

—

14. Վաղուց գնացած եարուկ,
Ն'ղ եկու խիստ իմ կարուտցեր.
Ինչեխ իմ կարօտացեր,
Ես իքու սըֆաթն իմ մոռցեր։
Տարին տաս ու երկու ամիս,

1. Մրգեղէն։ 2. Վանք գիւղի ներքև, եզեր Եփրատայ Հայ-հոռոմոց ս. Գէորգայ (Ալ Նօրկի) եկեղեցւոյ կից, յանուն ս. Սարգսայ մատուռ մի կայ։ Յիշեալ եկեղեցին, հաւանականաբար, յիշուածն վանք մ'է եղեր, և գիւղին անունն նոյն անուամբ «Վանքն» կոչած են։ 3. Փոխանցումն, յանձնումն։ 4. Բոլոր աշխարհն։ 5. Աղբիւր մ'է Ակնայ դիմաց, ուստի կը դառնուի Վանք գիւղի ճամբան 'ի հիւսիս։

Դուն ծովուն եալուն [1]) կու կենաս։
Ծովն ալ մահանայ [2]) կ՚անես,
Իս քենէ կարօտ կու պահես։
Եր ուր գալու ուր ըլնիս,
Դուն ինծի իմաց մ՚արէ։
Թևս կարմունճուկ շինիմ,
Անցնի ու դարձնի եկու տուն։
Բաղնիքը ի խալվաթ [3]) անիմ,
Ուր վլանամ սըռմա թել փէրչեմտ [4])։

---

## ԱՆՑՈՒԻՆԻ ՍԻՐԱՀԱՐԱԿԱՆ

15. Աղբիւր մի Մղրայ [5]) լեռը,
Ջուրն ուռուն տակը կը վազէ։
Օլուխն [6]) արծթէն դրին,
Ջուրն ոսկուն թասը կու վազէ։
Երկու թուխ և. աղուոր աղջիկ,
Նօշըպօմն [7]) իջուրն ին եկեր։
Երկու բէհլէւան կըյիճ,
Ջին հեծեր ու սէյր ին ելեր [8])։
—Աղջիկ, աղբօրտ արևուն,
Նօշըպէն պտիկ մի ջուր տուր։
—Ջուրս տաք է, չէ պաղեր,
Մեր սիրուն շատ մարդ է մեռեր։
—Թող խմինք ու թող մեռնինք,
Հաշուիմ թը մարս չէ բերեր։

---

16. Աղուոր մի սիրեր իմ ես.

---

1. Ծովեզր։ 2. Պատճառանք։ 3. Առանձնութիւն։ 4. Խոպոպիք։ 5. Մնձուր լեռն է. տճկ. Մունզուր տաղը. 6. Խողովակ. 7. Գաւաթ՝ ջուր խմելու։ 8. Զբօսանքի, պտոյտի ելնել։

Լոյս երեսն երեք պէնջ ունի։
Երեսն է վարդի տերև,
Ո՛վ տեսնէ խելաց կու թափի։
Բերանն է շէքրով ի լի,
Պըռկըներն ի վար կութափի։
Իր բերնին քաղցրութենէն
Բռնկեր սրտիկս ու կ՚երի։

---

## ՄԱՅՐՆ ՈՒ ԴՈՒՍՏՐՆ

17. Բարի լուսուն դուրս ելայ,
Ես աղուոր կըյիճ մի տեսայ։
Աղուոր կտրիճ մի տեսայ,
Զարկաւ իմ երեսն արունեց։
Մարիկն ալ հարցմունք արաւ.
Ատ երեստ ճվ արունեց։
— Ես ասօր պախճան իջայ,
Վարդենուոյն փշիկն արունեց։
— Զորնայ ան վարդին փուշը.
Ուր լուս երեստ չարունէ։
—Մ՚աներ, մ՚անիծեր, մերիկ.
Մէկ աղուոր կըյիճ մի պագաւ։
Պագաւ թը առնէ մուրատ,
Կ՚անիծես, կ՚ելնէ պէ մուրատ։

---

18. Ես աս գիշեր դուրս ելայ,
Մութ գիշեր՝ չկար լուսնկայ
Իմ եարն ալ ըռատ եկաւ,
Ձեռքը կար ոսկուն մաշալա [1]։
Թևէս բռնեց տուն տարաւ.

---

1. Ջահ։

Դուռ գրաւ, ախիկն ի վրան։
Զգեց խուշ Ռէսյի տէօշէք,
Սէրէսէր բարձերն ի վրան։
Սաղէր ոսկունքէն սեղան,
Հաւ խորված, կաքաւն ի վրան։
Խմէ՛ ուր ըսիմ անուշ.
Ես մէվզա [1]) բռնեմ քեզի նուշ։
Սէրը սիրողին վայլէ,
Աս գինին անուշ խմողին։
Ինչեխ անտունի մ՚ըսիմ,
Ուր թնտայ խատէհն ի ափիտ։
Խատեհն ի ափիտ թնտայ,
Ոսկեթել պեխերտ երեսիտ։
Սէր կայ մարդն ՚ի քուն կ՚անէ,
Սէր կայ մարդն արթուն կու պահէ։
Սէր կայ մարդն ի ժամ տանի,
Անաղօթք [2]) ի տուն կու բերէ։

—

19. Երեստ է արևի պէս,
Փէրչէմտ սումա թել նման.
Թուխ աչքտ ու քէման [3]) ընքուիտ,
Թարթինչուիտ եայ-օխի [4]) նման։
Պուկունքդ՝ ալ քիրազի [5])
Մէնէմշէ [6]) պէխերն ի վրան։
Եկուր նստինք միասին,

1. Աղանդեր։ 2. Փեսայն պսակուելու համար երբ գիւղերն (կամ առաւօտուն) եկեղեցի կերթայ, սովորութիւն է որ թէ պսակէն առաջ և թէ յետոյ չաղօթեր (չի ծնրադրեր). առ այս ակնարկութիւն մ'է, կ'ըսեն, «Եկեղեցի երթալ և առանց աղօթքի վերադառնալ» խօսքն։ 3. Աղեղն։ 4. Նետ-աղեղ։ 5. Կարմիր կեռաս։ 6. Մանիշակ։

Սէր անինք անուշ խօսքերով։
(Սոյն տողն կրկնելի է)
Զանցընինք մեր կեանքը տէրտ ու ցաւերով։

---

## ԱՆՏՈՒՆԻ ՆՈՐ ՍԻՐԱՀԱՐԱՑ

20. Խմեր իմ ու չիմ գինով
Ես կ'երիմ ու չիմ կրակով։
Հագեր իմ սիրու շապիկ,
Աղուորին դուռը կայնելու։
Աղուոր մ'ալ ներսէն ի դուրս,
Ծոցն ի լի կարմիր խնձորով։
Ըսի թը հատ մի առնիմ,
Թունտ ելաւ, թուխ աչքն ի լալու։
Լացաւ ու լալով ըսաւ,
«Եար, զլխ խաղք արիր ցորեկով։
Բռնեցիր զորով ծորով,
Պագ մ'առիր հազար նազերով.
Ան մէկ ցորեկուան պագը,
Ուր կ'արժէ հազար գիշերուան»։

---

## ԱՌ ԼՈՒՍԻՆՆ

21. Կարմիր կապուոր աղուոր,
Վար իջիր զօտեկ մի կապիմ։
Կապիմ ալ նը թուլ կապիմ,
Ուր հովերը տանի բերէ։
Հա՛յ տար ու բեր, տա՛ր ու բե՛ր,
Գեշը տար ու աղուորը բե՛ր։
—Ես ո՛ւչ գիշու՛ն տանողն իմ,
Ո՛ւչ աղուոր կուտան՝ տա՛ր ու բե՛ր։

Մէկ աղուորին տասը գէշ
Ես կուտամ, աղուոր մ'տռ ու բեր։
Աղուորն արեգակ նման
Սար ու ձոր հաւասար կու ծագէ։
Ան գեշն ի գշկուր [1]) նման
Ախոռին պատերն է կողած։
Աղուոր մի գիշուն ծոցը՝
Կու Թապլի [2]՝ քունը չի տանիր։
Ան գէշն ալ խայալ [3]) կ'անէ,
Իր սիրուն քունը չի տանիր։
Գիշուն տէրն արև չունի,
Աղուորին գիշերն է ցորեկ։
Գէշը գիշերով երթայ,
Աղուորին մազիկ չի խռուի։

—

21. Կարմիր ու ճերմակ երես,
Մազտ երեստ ի վար կու բերես։
Քանի որ պագնելու կ'անիմ,
Զոր արմունկտ ի դէմ կու բերես։
Զորնայ ատ չոր բազկիկտ
Ուր այա [4]) դէմ չի բերես։
Մարդը սիրու տէր կ'անես,
Կու դառնաս «ձնղբար» կու կանչես։
Ատ հալո [5]) ալ աղբար չիլլիր,
Սիրու տէր իմ, իս կու խաբես։
Օտար մարդն աղբար չիլլիր։
Դուն հոգիտ կրակը կ'նրես։

—

23. Կարմիր վարդ՝ կանաչ Թուփով,
Կանաչ Թուփ՝ կարմիր խնձորով։

1. Քակոր, կովու Թրիք։ 2. Այս այն կողմն դառնալ։ 3. Կ'ներեակայէ։ 4. Միշտ։ 5. Կացութիւն, վիճակ։

Քանի՜ ճեամ քեզ ապով.
Քանի՜ մ՚երիմ կրակով։
Տի սիրես, սիրէ սրտով.
Կշտացեր իմ սուտ խաբելով։

—

24. Մարդն ուր սիրու տէր լընի,
Անոր ալ ճարակ չի լընի.
Թող երթան գերեզման բանան,
Թող մտնէ ի մէջ կենդանի։
Ի մէջ սրտին բաց թողուն,
Ուր ելլէ բոցն ծիրանի։
Անցնող դարձող թող ըսեն,
«Սիրու տէր մարդ մի կու այրի»։

—

25. Պիլպուլն ի վարդին սիրուն,
Զայներով ֆիղան [1]) կու անէ։
Ես ալ խարիպիս սիրուն,
Եղեր եմ պիլպուլի նման։

—

26. Քանի՜ դուն հուտա՛, հուստա [1]).
Իմ հուսա [2] սիրտս կու դողայ.
Նա՛ ելլի եկու հուսա,
Նա ելլի տեղկացդ ու գնամ։
Հըմա կու մեռնիմ հուսա,
Արուն տէր կ՚անեմ քեզ հուտա։
Եթ ուր իս ուր չես ուզեր,
Ա՛ռ սուր մի մորթէ իս հուսա՛
Արունս ի խոտէհ մի առ,
Տեղ մի դի՛ր, թող երթայ ճեայ։
Եթ ուր սէրս ուր միտքտ ինի,
Դի՛ր բերնիտ պտիկ մի ըմպէ։

1. Աղբ, սուգ.

Սէրը սիրողին վայլէ,
Ան գինին անուշ խմողին։

---

## ՋԱՆԱՋԱՆ ԱՆՏՈՒՆԻՆԵՐ

Անտունի՝ զոր խօսած է դժբաղդ ոմն՝ որ մանկական հասակին մէջ, ծաղկի հիւանդութենէ աչազուրկ եղած է։

27. Ես աս գիշեր դուրս ելայ,
Ծընճղըմին կու ճըլվըլտային։
Կայնեցայ մօտիկ արի,
Իրարու գանգատ կ'անէին։
Մէկն ալ մէկալին կ'ըսէր,
«Ի՜նչ դիժար է մանկան հոգին»։
—Թո՛ղ ելլէ մանկան հոգին,
Թո՛ղ չելլէ աչերն երեսէն։
Ես քաշած ու տեսած եմ,
Ջի տեսնէ տիւշմանիս աչուին։

---

## ԱՆՏՈՒՆԻ ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱԿԱՆ, ԶՈՐ ՎՏԱՐԱՆԴԻՆ ԽՕՍԱԾ Է։

28. Ես շէֆթալուի [3]) մօրճ մ'էի,
Ապառաժ քարը բուսնէի։
Եկին քաշեցին տարին,
Զիս այլոց այգին տնկեցին։
Շէքրէն ալ շէրպէթ [4]) արին,
Ուր բերին ինծի ջրեցին։
Եղբա՛րք, եկէ՛ք զիս տեղս տարէ՛ք,
Ու ձնան ջրով ջրեցէ՛ք։

---

1. Այցատեղ։ 2. Սպասող։ 3. Դեղձ։ 4. Օշարակ։

## ԱՆՑՈՒՆԻ ՄԵՂՈՒԻՆ ԿՈՂՄԱՆԷ

29. Խաչին լուանկին նորուն,
Այվի մուխ տուին աչերուս։
Առին ճերմակ պաչերուս [1]),
Չի թողին աղուոր ձագերուս։
Խօսիմ, կ'ելլիմ արևուս, [2])
Չի խօսիմ, կ'ելլիմ ձագերուս։
Այվի կ'ելլիմ արևուս,
Չիմ անցնիր աղուոր ձագերուս։

---

## ԱՌ ԽՆՁՈՐՆ։

30. Հայվան [3]) ու ծառին ճղին
Սիրտն է սև, երեսը դեղին։
Երնեկ խնձորին ծառին,
Իր ծառին, և իր տերևին.
Գիտեմ դուն զօր [4]) դեղ ունիս,
Բե՛ր տո՛ւր, ուր ես լաւանամ։
Թ՚ը տաս՝ երթամ լաւանամ,
Թ՚ը չի տաս՝ երթամ մեռանիմ։
Թ՚ը չի տաս, երթամ մեռանիմ,
Քեզ ալ կանչիմ մարդապան։
—«Խնձորս է ծառ ու ճղեր
Խէկ, անուշ՝ դեռ չէ հասեր»։

---

1. Մեղր։ 2. Կեանքէս կը զրկուիմ։ 3. Սերկևիլ։ 4. Զօրաւոր։

## ԱՊՈՒՋԵԽԷՆ

(Այր և չէն)

31. Հա՛ եա՛ր. դուն ինչու կուլաս։
—Դուն կ՚երթաս, ես մէն կու մնամ։
Ցերեկն հըլա հըլա [1])
Ծով գիշերն ինտո՞ր տի մնամ։

—

32. Հարսնուկ մի հօրուն տունը.
Ան կուգայ շատ արմուղանով։
Ճեպէն ու ծոցէն կ՚ուզեն.
Աճապ նու՞ռ տայ թէ խնձոր։

---

## ԱՆՏՈՒՆԻ ՎԱՆՔ ԳԻՒՂԷՆ

33. Ա՛յ Եօրկի և ա՛յ Տիմիթրի,
Հետն ընկեր լընիս խարիպիս։
Առնես ու քէշէփ ներքին,
Աներևուն լեւնէն անցընես։
Բերես իր սիլան [2]) հենես,
Հասցնես սրտին մուրատին։
34. Աս գիշեր մինչի լուսացաւ,
Ես երկու խանդալ [3]) մանեցի։
Իմ եարն ալ ուր միտքս ինկաւ,
Թեզ մ՚ելայ ջահս կործեցի. [4])
Գցի [5]) իմ եարին դուռը,
Ձուն եկեր, ոտուիս կու մսի։
Իմ եարն ալ ի դուրս եկաւ
Թը, բարի եկիր իմ հոգին։

---

1. Այսպէս թէ այնպէս։ 2. Ծննդավայր։ 3. Մանածին կաժը։
4. Դարձնել մի կողմը 5. Գնացի։

Եկու գիրկ ու ծոց անինք,
    Ուր ոտքում մազկատը ոնցնի։

—

35 Աստղիկ մը երկնուցմէն իվար
    Կու սիրէ ձկնակ մի ծովու։
Ո՛ւչ աստղիկը վար գալու,
    Ո՛ւչ ձկնակ վեր գնալու։
Աստղիկ, սիրէ, ամայն ելն,
    Նաւն ու ծովն է այլի։
Ծովը տարէ տար տարաւ,
    Չի հասաւ (իր) մուրատին։

—

36 Ես երկու խարիպ ունիմ,
    Մէկն է հիւսիս մէկն հարաւ։
Հիւսիսինը փրթեր ու գար,
    Հարաւէն խապրիկ մի բերէր։
Խապար խարիպէս բերէ,
    Իմ սրտիկս կանգնեցնէ։

—

37. Խալտեցայ [1]) խալատ [2]) մի արի,
    Ան գեշէն պաչ մի ուզեցի։
Ան գեշն ալ ի նազն ելաւ, [3])
    Չիմ խտար, անուննս աւըրի։
Պագիկն աղուորէն ուզէ,
    Ուր գիտէ խաթրը կըյիճին։

—

38. Խարիպս հիւսիսէն փրթաւ,
    Պող ձիով սալթանաթով։ [4])
Բռնեցի ճորով ու զորով
    Պաչ մին առի հազար նազերով.

---

1. Սխալուել։ 2. Սխալ։ 3. Նազ անել։ 4. Փառաւոր կերպով, հանդէսով։

Ան պագին քաղցրութենէն
Բռնկեր սրտիկս ու կ՚երրի։

—

39 Կարմիր ու ճերմակ հարսնուկ.
Զարմնասս թը իս մոռանաս։
Զորնասս փուտ ուռի դառնաս,
Թը ծոցիկտ մարդու բանաս։
Ծոցիկդ ուր մարդու բանաս,
Տ՚անիծիմ ուր քար տի դառնաս։

—

40. Հագեր ես կանաչ կարմիր,
Նռանը հասը կու մանիս։
Կոյներ ես դռան վրայ,
Բարձրը նայիս, բարակ ծիծաղիս։
Աչօք ու յունօք կ՚անես,
Իմ մանուկ խելքս կուտանիս։
Կօնցնիս թուխ ամպին ետին,
Ամպը քով կ՚անես ւ իս կ՚երես։

—

41. Մենք ալ քօր պառուկ մ՚ունինք,
Մրջիւնին գալը կ՚իմանայ։
Աչք քօրնայ ականջ խլանայ,
Աղուորին գալը չիմանայ։

—

42. Մօրուց ի մանկութենէս,
Ես ազապ աղջիկ չիմ պագեր։
Ըսօր 1) աղուոր մի պագի,
Գնաց քի մօրկանը գոյտի 2)

—

43. Վարդիկ մի պխտէր գիրուտ.
Ուր ձգէի մէջն ի գինուտ։

---

1. Այսօր։ 2. Գանգատել։

Գինիիս ուր բերնիտ առնես,
Վարդը դէմ գայ շրթունքներուտ։

—

44\. Առաւօտուն լուսուն
Կուգային երկուքը եզուն 1)։
Մէկն է շալկեր վարդ ու մուրդ,
Մէկն ալ նուռ՝ կերթային ի տուն։

—

45\. Ես ալ խարիպին ձանը,
Կ'առնէի նը կ'արմճնայի։
Եկաւ իմ գլխակս ելաւ,
Կ'ողորմիմ ամէն խարիպի։

—

46\. Ծոցիկդ ադամայ պախճան,
Միջէն պաղ աղբիւր կու բղխայ։
Պտիկ մի ընկի 2) խմիմ,
Ան ալ իմ մատան կու բանայ։
Պտիկ մի չէ ու շատ խմէ՛,
Կու վախիմ թէ անիկս 3) կ'իմանայ։
Վախիմ թէ իմանայ անիկ,
Երթայ և ալ երկիրը չի գայ։

—

47\. Վարդենի ու նռնենի,
Դուն ալ մեր պախճան պիտէիր։
Ոլըրեր դարուն ուր գար,
Իրարու դիմաց բացուէինք։
Երբ ուր ուր աշուն ըլներ,
Հիրացուկ 4) իտուն դառնայինք։

---

1\. Այգիէն։ 2. Անկէ, անոր։ 3. Անիկայ, կամ ալրս։ 4. Միասին

# ԳԼ. Ե.

## ԶԱՆԱԶԱՆ ԵՐԳԵՐ

Բաց ի նախընթաց հարսանեկան և այլ երգերէն ու ա
տուններէն, կան նաև բազմաթիւ հին և նոր Թուրքերէ
երգեր։ Սոցա բանաստեղծական մասն՝ իւրեանց եղանակնե
քոչը հանդերձ՝ սովորաբար նուագածուաց և բանաստեղծ
(շուարա) ծանօթ են, որք են. Տիվան (Էրզրում), Գօշմա
Տիւպէյթ, Քէրէմ, Գուրպանի, Ղարիպ, Սէմայի, Տասիթա
Քէօր-օղլու, Տիվան (Տիարպէքիր), Եարըմ Իւրֆանի, Թէճնի
Սաղըր Գօշմա, Գալէնտէրի։ Նաև Ղազէլ, Փեշրէֆ (հաւա
օրէն՝ Փիշրէվ), են.։ Իսկ մնացեալ սիրահարական երգերէ
անոնք, որ ի Կ. Պոլիս յօրինուած են՝ «շարգի» կ՚ըսուին,
անոնք որ տեղական են կամ Խարբերդէն, Տիգրանակերտէ
կամ այլ քաղաքներէն կուգան՝ «Թիւրքի» կ՚ըսուին, Թէ
ոմանք անխտիր «շարգի» կամ «Թիւրքի» կ՚ըսեն։

Հայ բանաստեղծից (շայիր կամ աշուղ) կողմանէ և
բաց ի բազմաթիւ տաճկերէն շիքերու՝ ինչ ինչ հայերէն Սէ
մայի կամ այլ երգեր ևս գրուած են, սակայն ատոնցմէ միայն
2—3-ն իբրև նմոյշ գրեցի և մնացեալն զանց արի։

Գալով Ակնայ «Ալէ կէօզլիւ»ի և այլ հին երգոց, զայտ
արիկ ևս իւրեանց ծանօթութեամբ հանդերձ 'ի ստորև գրեցի

---

### ՍԷՄԱՅԻ

1. Սէմայի. (Սայէլ օղլուէն)

Գաղէրչէանն իջեր է խանը,
Աստուած աջողէ իր բանը,
Տէր լսէ խարիպին ձանը.
Հըմա կ՚արթննայ, կ՚արթննայ։

—

Գիշերը քուն, ցորեկն արթուն,
Սէրն ի՜նչ անուշ բան է մարդուն.
Առաւօտուն կարմիր վարդուն.
Հըմա կ՚արթննայ, կ՚արթննայ։

—

Սոյէլ օղլուն [1]) զարկաւ սազը,
Ի՞նչ անուշ կ՚ըլլայ աւազը.
Ինչու կ՚անես ճիֆէ նազը.
Հըմա կ՚արթննայ, կ՚արթննայ։

—

Սոյէլ օղլուն զարկաւ սազը,
Ի՞նչ անուշ կ՚ըլլայ աւազը.
Դուն ուր արիր ջիֆէ նազը.
Ես ալ արթնցայ, արթնցայ։

## 2. ՀԻՆ ԵՐԳԵՐ

2 Ուսկի՞ կուգաս, վարի եզուն.
Կող մի (ողկոյզ) խաւող առի գոգուն.
Պագեկ մի տուր, մօրկանդ հոգուն։
Աղուոր, նանօյ, նանօյ, նանօյ, }
Ես կու սիրեմ քեզ էմէն օր։ } յանգերգ։

—

1 Ուշիկ ուշիկ, կլոր թուշիկ.
Կլոր թուշիկ, պագդ անուշիկ.
Ձերմկուկ ես գեղ և անուշիկ։
Աղւոր, նանօյ, ևն.։

—

3 Ուսկի կուգաս դուն կալերուն.
Շըլլա ըռասա գաս գալերուն.

1. Հեղինակին մականուն կամ բանաստեղծական անունն է. Սայիլ (արաբ.)—Մուրացիկ կամ հոսող.

Քու մարըլտ քեզ ինծի չի տար.
Թող դնէ ներքև սալերուն.
Աղուոր, նանօ՛յ, ևն.։

—

Գեղին վերև հերկին ներքև,
Շապկեկս սիւրմէն իմ ներկեր.
Սիրեր իմ չիմ կրնար թարկեր [1])։
Աղուոր, նանօ՛յ, ևն.։

—

Գեղին վերև ծառ սալորի.
Սալորն իջնի, կու կլորի.
Քեզ գրկողը կու հալւորի։
Աղուոր, նանօ՛յ, ևն.։

—

Աղջիկ, քու անունտ է խասեր.
Եկուր երթանք, թութն է հասեր.
Պագէկ մ՚ալ տուր, մօրդ մ՚ըսեր:
Աղուոր, նանօ՛յ ևն.։

—

Պէ հէյ գմլըմ, անօրէն եար.
Չի կայ ծոցուդ պառկելու ճար.
Պառկիմ ի ծոցդ քնանամ.
Քու թուխ աչերտ չիմանայ։

—

Ա՛ղջիկ, քու անունտ է Նախութ
Քենէ պագ ուզելն է վախուտ։
Երեկ գողցայ ես քու չախուտ [2])։

—

Ա՛ղջիկ, քու անունտ է Շուշան,
Եկո՛ւր երթանք ի ս. Նշան.
Մաննեկս տամ քեզ ի նշան։
Աղուոր, նանօ՛յ, ևն.։

—

1. Ձեռք քաշել, հրաժարել։ 2. Դանակը։

Ձայնագրեալ եղանակ Թ. 17

—

Նա նա նա նա, նա նա նա նա. (եւն.) (Ծանր Թե-խաղ)
Նա նա նա նա, նա նա նա նա. (չափաւոր)
Նա նա նա նա, նա նա նա նա. որոյ հետ կ՚երգեն Հարսանեկան «Առաւօտուն կ՚ելլես երեսդ լուա» երգին «Առաւօտուն կ՚ելլես պաղ պաղ հովերուն» տունն։

---

Ձայնագրեալ եղանակ Թ. 18
Արագ պարերգ

—

Քելէ մը պարս դարձընիմ, կիւլիւմ եար
Երթամ եարս հարցընիմ, կիւլիւմ եար

---

Ձայնագրեալ եղանակ Թ. 19
Դարձեալ արագ պարերգ

—

Եկուր երթանք պաղճան ի վար, պզտի հարս.
Ես վարդ քաղիմ դուն ըռահան. պզտի հարս։

---

Ձայնագրեալ եղանակ Թ. 20
Արագ Թե-խաղ

—

Աչիկ մ՚անիմ,
Պաչիկ մ՚անիմ։

---

Ձայնագրեալ եղանակ Թ. 21
Արագ Թե խաղ

—

Աթլաս Փիստան մոռ փոշի,
Օրը սիրտս կումաշի։
Քու մեկ պագդ չիմ ի տար,
Հարուր հազար ղուրուշի։

---

Ձայնագրեալ եղանակ Թ. 22
Արագ Թև-խաղ

---

Մատնուս ակը մավի է.
Աս ի՜նչ դիժար տարի է։
Ծամն աղջրներ, բան բանեցէք,
Կարգուելու տարի է։

---

Ձայնագրեալ եղանակ Թ. 23
Արագ Թև-խաղ

---

Աղջիկ, իջի դուռը բաց, խայմախծին եկաւ,
Խայմախծին եկաւ ինչու, հիմա որու է սուչը։
(երկու տողն ալ կրկնելի են)։

---

### 3. ԱՅԼ ԵՐԳ ՄԸ

Մեր տունը բակ կու մանի.
Փէրչէմը իփէկ կու մանի.
Եկաւ ոնցաւ շան տղան,
Գիտես թը պէկ կու մանի։

---

Հագի կապպտ հագեր ես,
Ի՞նչ նոըւէս լինկեր ես.

Գնամ կորճ շան տղայ,
Դուն քու եարտ գտեր ես։

—

Աս գիշեր մարկոսակ է *).
Աղուոր չափտ խասակ է.
Եկո՛ւր ինծի պեհ մի տուր,
Վաղը եոփ **) պաակէ։

## 4. ՂԱՐԻՊԻ ՎՐԱՑ

Շատ թամբակ իմ ցաներ Խարբերդու օվան.
Մա՛րիկ, մի քրքրեր պիւլպիւլիս իւվան 1)
Ե՛լ եկո՛ւ, ե՛լ եկու, մռ պառւին տուան 2)։
(կրկնելի) Ճարը քենէ լընի, Մար Աստուածամար.
Խարիպս դուն իրկես, (կամ՝ անդարձս դարձ բերես),
սուրբ Աստուածամար։

—

Մարանը մեծցեր է պապս կու կանչէ,
Ան տեսնող կըյիծը սրտէն կու հառչէ.
Մա՛րիկ, ելլի դուն ալ Աստուծու կանչէ։
Ճարը քենէ լընի, ևն.։

—

Օխտը տարի կ'անէ Իզմիր ես գացեր,
Իզմիրի չէօլերը թիւքէն 3) ես բացեր.
Ձեռացս թըղթիկն ալ ինչու ես մոռցեր։
Աս տեղացը եարուն քուռք 4) ես հագուցեր,
Քու էօքսիւզ 5) եարիկս շատ ես լացուցեր։

---

* Մարկոսակ և խասակ բառերուն նշանակութիւնը յայտնի չէ.
**) Յետին, վերջին.
1. Բոյն։ 2. Օրհնութիւն։ 3. Խան…թ։ 4. Մուշտակ։ 5. Որբ, անտէր։

Տուն եկու, տուն եկու, աղաս, տուն եկու,
Արմուղան չիմ ուզեր, մինակ դուն եկու։

---

## 5. ԴԱՐՁԵԱԼ ՂԱՐԻՊԻ ՎՐԱՅ

Գիւլպիւլը կու կանչէ պաղճէ պարի պէս.
Մէյ մ'ալ չի գար՝ խապար բերէ խարիպէս.
Ինչեխ իմ կարուտցեր հայվա նարի [1]) պէս։
Գիւլպիւլը կու կանչէ ասօր գարուն է,
Մի խօսիք մարկլներ, սրտիկս արուն է.
Սիրական եար մ'ունիմ, ան ալ հեռուն է։

---

## 6. ԱԼԷ ԿԷՕԶԼԻՒ

Այնայ «Ալէ կէօզլիւ» երգն որ սրտաշարժ 2—3 տեսակ եղանակ ունի, ժողովուրդն՝ Հայք և Թուրքք՝ հաւասարապէս կ'երգեն։ Կ'ըսուի թէ հեղինակն՝ 40 տարի յառաջ՝ հայ կին մ'է եղեր, որոյ այրն յԵգիպտոս կը գտնուի, և որ առն քով գնացած է և տճկ. «էկիլ տաղլար, էկիլ տաշլար. ևն.» կամ հայերէն «Ցածցիր լեռներ, ցածցիր քարեր վրայէս անցնիմ (անցնիմ), ևն. (տես թիւ 7) հնագոյն երգին եղանակին մօտ եղանակաւ մը սոյն եղանակն յօրինուած է։ Այս երգ չի հիննար, այլ ամեն ոք իւր վիճակին կամ վշտին համեմատ հետզհետէ նորերն կը յօրինէ։ Հին թէ նոր հարիւրաւոր տուն կայ, և յայտնի է թէ միշտ նորերն կ'երգուին։ Աստ միայն մի քանի տուն նոր ելած հայերէնն գրեցի։ Պէտք է գիտնալ նաև, թէ մինչդեռ գրեթէ բոլոր երգերն երիտասարդէն առ կինն ուղղեալ է, այս երգ՝ ըստ մեծի մասին՝ կնոջմէն առ այրն ուղղեալ է։

---

1. Նուռն։

Եկու գիրկ ու ծոց անինք,
Ուր ոտքուտ մազկատը ոնցնի։

—

35 Աստղիկ մը երկնուցմէն իվար
Կու սիրէ ձկնակ մի ծովու։
Ո՛ւչ աստղիկը վար գալու,
Ո՛ւչ ձկնակ վեր գնալու։
Աստղիկ, սիրէ, ամպն ելնի,
Նաւն ու ծովն է ալի։
Ծովը տարէ տար տարաւ,
Չի հասաւ (իր) մուրատին։

—

36 Ես երկու խարիպ ունիմ,
Մէկն է հիւսիս մէկն հարաւ։
Հիւսիսինը փրթեր ու գար,
Հարաւէն խապրիկ մի բերէր։
Խապար խարիպէս բերէ,
Իմ սրտիկս կանգնեցնէ։

—

37. Խալտեցայ 1) խալատ 2) մի արի,
Ան գեշէն պաչ մի ուզեցի։
Ան գեշն ալ ի նաղն ելաւ, 3)
Չիմ խտար, անունս աւըրի։
Պագիկն ազուորէն ուզէ,
Ուր գիտէ խաթրը կըյիճին։

—

38. Խարիպս հիւսիսէն փրթաւ,
Պող ձիով սալթանաթով։ 4)
Բռնեցի ճորով ու զորով
Պաչ մին առի հազար նազերով.

---

1. Սխալուել։ 2. Սխալ։ 3. Նազ անել։ 4. Փառաւոր կերպով, հանդէտով։

Ան պագին քաղցրութենէն
Բռնկեր սրտիկս ու կ'երի։

—

39 Կարմիր ու ճերմակ հարսնուկ.
Զորանաս թը իս մոռանաս։
Զորնաս փուտ ուռի դառնաս,
Թը ծոցիկս մարդու բանաս։
Ծոցիկդ ուր մարդու բանաս,
Տ'անիծիմ ուր քար տի դառնաս։

—

40. Հագեր ես կանաչ կարմիր,
Նռանը հատը կու մանրիս։
Կոյներ ես դռան վրայ,
Բարձրը նայիս, բարակ ծիծաղիս։
Աչօք ու յունօք կ'անես,
Իմ մանուկ խելքս կուտանիս։
Կոնցնիս թուխ ամպին ետին,
Ամպը քով կ'անես ւ իս կ'երես։

—

41. Մենք ալ քօր պառուուկ մ'ունինք,
Մրջիւնին գալը կ'իմանայ։
Աչք քօռնայ ականջ խլանայ,
Աղուորին գալը չիմանայ։

—

42. Մօրուց ի մանկութենէս,
Ես ազատ աղջիկ չիմ պագեր։
Ըսօր [1]) աղուոր մի պագի,
Գնաց քի մօրկանը գոյտի [2])

—

43. Վարդիկ մի պիտէր գիրուտ.
Ուր ձգէի մէջն ի գինուտ։

---

1. Այսօր։ 2. Գանգատել։

Գլխիկս ուր բերնիտ առնես,
Վարդը դէմ գայ շրթունքներուտ։

—

44\. Առաւօտուն լուսուն
Կուգային երկուքը եզուն [1]։
Մէկն է շալկեր վարդ ու մուրդ,
Մէկն ալ նուռ՝ կերթային ի տուն։

—

45\. Ես ալ խարիպին ձանը,
Կ՚առնէի նը կ՚արճնայի։
Եկաւ իմ գլխակս ելաւ,
Կ՚ողորմիմ ամեն խարիպի։

—

46\. Ծոցիկդ ադամայ պախճան,
Միջէն պաղ աղբիւր կու բղխայ։
Պտիկ մի ընկի [2]) խմիմ,
Ան ալ իմ մատան կու բանայ։
Պտիկ մի չէ ու շատ խմէ՛,
Կու վախիմ քի անիկս [3]) կ՚իմանայ։
Վախիմ քի իմանայ անիկ,
Երթայ և ալ երկիրը չի գայ։

—

47\. Վարդենի ու նռնենի,
Դուն ալ մեր պախճան պիտէիր։
Ոլըրեր դարուն ուր գար,
Իրարու դիմաց բացուէինք։
Երբ ուր ուր աշուն լըներ,
Հիրացուկ [4]) իտուն դառնայինք։

—

1\. Աչգիէն։ 2. Անկէ, անտի։ 3. Անիկայ, կամ այրս։ 4. Միասին

# ԳԼ. Ե.

## ՋԱՆԱԶԱՆ ԵՐԳԵՐ

*Բաց ի նախընթաց հարսանեկան և այլ երգերէն ու անտունիներէն, կան նաև բազմաթիւ հին և նոր Թուրքերէն երգեր։ Սոցա բանաստեղծական մասն՝ իւրեանց եղանակներովն հանդերձ՝ սովորաբար նուագածուաց և բանաստեղծից (շուարա) ծանօթ են, որք են. Տիվան (Էրզրում), Գօշմա, Տիւպէյթ, Քէրէմ, Գուրպանի, Ղարիպ, Սէմայի, Տասիթան, Քէօր-օղլու, Տիվան (Տիարպէքիր), Եարըմ Իւրֆանի, Թէճնիս, Սաղըր Գօշմա, Գալէնտէրի։ Նաև Ղազէլ, Փեշրէֆ (հաւանօրէն՝ Փիշրէվ), ևն.։ Իսկ Յիշեցեալ սիրահարական երգերէն անոնք, որ ի Կ. Պոլիս յօրինուած են՝ «շարգի» կ'ըսուին, և անոնք որ տեղական են կամ Խարբերդէն, Տիգրանակերտէն կամ այլ քաղաքներէն կուգան՝ «Թիւրքի» կ'ըսուին, թէև ոմանք անխտիր «շարգի» կամ «Թիւրքի» կ'ըսեն։*

*Հայ բանաստեղծից (շայիր կամ աշուղ) կողմանէ ևս բաց ի բազմաթիւ տաճկերէն չէքերու՝ ինչ ինչ հայերէն Սէմայի կամ այլ երգեր ևս գրուած են, սակայն աստնցմէ միայն 2—3-ն իբրև նմոյշ գրեցի և Յիշեցեալն զանց արի։*

*Գալով Ակնայ «Ալէ կէօզլիւ»ի և այլ հին երգոց, զայսոսիկ ևս իւրեանց ծանօթութեամբ հանդերձ 'ի սորև գրեցի։*

---

### ՍԷՄԱՅԻ

1. Սէմայի. (Սայէլ օղլուին)

Պաղէրըշէանն իջեր է խանը,
Աստուած աջողէ իր բանը,
Տէր լսէ խարիպին ձանը.
Հըմա կ'արթննայ, կ'արթննայ։

—

Դիշերը քուն, ցորեկն արթուն,
Սէրն ի՜նչ անուշ բան է մարդուն.
Առաւօտուն կարմիր վարդուն.
Հըմա կ՚արթննայ, կ՚արթննայ։

—

Սայէլ օղլուն 1) զարկաւ սազը,
Ի՞նչ անուշ կ՚ըլլայ ավազը.
Ինչու կ՚անես չիֆտէ նազը.
Հըմա կ՚արթննայ, կ՚արթննայ։

—

Սայէլ օղլուն զարկաւ սազը,
Ի՞նչ անուշ կ՚ըլլայ ավազը.
Դուն ուր արիր չիֆտէ նազը.
Ես ալ արթնցայ, արթնցայ։

## 2. ՀԻՆ ԵՐԳԵՐ

2 Ոսկի՜ կուգաս, վարի եզուն.
Կօզ մի (ողկոյզ) խաղող առի գոգուն.
Պագեկ մի տուր, մօրկանդ հոգուն։
Աղուոր, նանօյ, նանօյ, նանօյ, } կրկներգ։
Ես կու սիրեմ քեզ էմէն օր։

—

1 Ուշիկ ուշիկ, կլոր Թուշիկ.
Կլոր Թուշիկ, պագդ անուշիկ.
Ճերմկուկ ես գեղ և անուշիկ։
Աղւոր, նանօյ, ևն.։

—

3 Ոսկի կուգաս դուն կալերուն.
Ծըլլա ըռաստ գաս գալերուն.

1. Հեղինակին մականուն կամ բանաստեղծական անունն է։ Սայիլ (արաբ.)—Մուրացիկ կամ հոսող։

Քու մարըտ քեզ ինծի չի տար.
Թող դնէ ներքև սալերուն.
Աղուոր, նանօյ, ևն.։

—

Գեղին վերև հերկին ներքև,
Շապկեկս սիւրմէն իմ ներկեր.
Սիրեր իմ չիմ կրնար թարկեր [1]։
Աղուոր, նանօյ, ևն.։

—

Գեղին վերև ծառ սալորի.
Սալորն իջնի, կու կլորի.
Քեզ գրկողը կու հալուորի։
Աղուոր, նանօյ, ևն.։

—

Աղջիկ, քու անունտ է խասեր.
Եկուր երթանք, թուղթն է հասեր.
Պագեկ մ'ալ տուր, մօրդ մ'ըսեր:
Աղուոր, նանօյ ևն.։

—

Պէ հէյ զալըմ, անօրէն եար.
Չի կայ ծոցուդ պառկելու ճար.
Պառկիմ ի ծոցտ քնանամ.
Քու թուխ աչերտ չիմանայ։

—

Ա՛ղջիկ, քու անունտ է Եախուտ.
Քենէ պազ ուզելն է վախուտ։
Երեկ զօղցայ ես քու չախոտփ [2]։

—

Ա՛ղջիկ, քու անունտ է Շուշան,
Եկո՛ւր երթանք ի ս. Նշան.
Մաննեկս տամ քեզ ի նշան։
Աղուոր, նանօյ, ևն.։

—

1. Ձեռք քաշել, հրաժարել։ 2. Դռնակը։

